

ԳՈՒՐԳԷՆ ՅԱՆԻԿՅԱՆ
1895 - 1984

Ձեր ձեռքին է հազվագյուտ մի գիրք:
Պահպանեք աչքի լույսի նման:
ԼՈՒՅՍ

# ԱՅՍ Ի՞ՆՉ ԳԻՐՔ Է

Ճուրջ մեկ տարի, 2000 թվականին, Լոս Անջելեսում հրատարակվող ԼՈՒՅՍ շաբաթաթերթը շարունակաբար իր էջերում ներկայացրեց Յանիկյանի ձեռքով գրված հուշերը, որը նա գրի էր առել 1973-ից մինչև 1979 թվականներին, բանտում:

Յանիկյանի հիշողությունները անգնահատելի են ժամանակաշրժանի այդ հատվածում կատարված իրադարձությունները վերլուծելու և հասկանալու համար: Ճատ հարցեր մտածելու առիթ են տալիս միայն Յանիկյանի պարզաբանումներից հետո:

ԼՈՒՅՍ-ին տրամադրված Յանիկյանի հուշերը պատմական արժեք ունեն, քանի որ հուշերում նկարագրված է հայ ժողովրդի ճակատագրի այն ժամանակահատվածը, որն սկսվեց ցեղասպանությամբ և հասավ մինչև մեր օրերը, որի ականատես վկաները եղանք նաև մենք:

Գրքում ներկայացված մեկնաբանումները Գուրգեն Յանիկյանի հեղինակային վկայություններն են: ԼՈՒՅՍ-ը իր կողմից Յանիկյանի կարծիքները վերլուծում էր լրացուցիչ փաստերով և եզրահանգումներով, որոնց մասին հասկանալի պատճառով Յանիկյանը տեղյակ չէր կարող լինել: ՅԱՆԻԿՅԱՆ-ԼՈՒՅՍ երկխոսությունը իրարից տարբերելու համար օգտագործված են տարբեր տառատեսակներ, և կամ փակագծերով անջատված են Յանիկյանի գրություններից՝ ԼՈՒՅՍ վավերականով:

Յանիկյանի «Իր և ուրիշների մասին» գիրքը հրատարակված է նույնությամբ, ինչպես տպագրված էր ԼՈՒՅՍ շաբաթաթերթում: Գրքում լրացուցիչ տեղադրված են լուսանկարներ և ուրիշների կարծիքները Գուրգեն Յանիկյանի մասին:

Յանիկյանի ձեռագրերը շաբաթաթերթին էր տրամադրել Հրանտ Սիմոնյանը, 20 տարի իր մոտ պահելուց հետո: Յանիկյանին հայ հանրությանը ներկայացնելու ընթացքում հայտնաբերվեց նաև նրա կենդանի ձայնը, ձայնագրված բանտում՝ ուղղված Ուրուգվայի հայ երիտասարդությանը:

Հրատարակման ծախսերը իրականացվել է ԼՈՒՅՍ շաբաթաթերթի ընթերցողների միջոցներով (բաժանորդագնով), և հրատարակչության խմբագիր Ալֆրեդ Ջանիբեկյանի անձնուրաց ջանքերով:

Ս. ՔԻՐԵՄԻԴՋՅԱՆ

# ԵՎ ԻՆՉՈ՞Ւ ԱՅՍ ԳԻՐՔԸ

Գուրգեն Յանիկյանը ոչ միայն ընդվզեց հայ ժողովրդին տառապանքներ պատճառած թուրքական կառավարության դեմ, այլև վիրաբուժի իր դանակը մոտեցրեց ազգային թարախապալարին, ընդդեմ՝ վախկոտության, դավաճանության, գոռոզամտության, գաղափարազրկության, քաղաքական կուրության և տգիտության:

Բնական տվյալներով և տաղանդով օժտված այս հայկազուն այրը լույս աշխարհ եկավ 19-րդ դարի սուլթանհամիդյան ջարդերի ժամանակ և իր վրա կրեց «Ջարդի Տղա» անունը: Նա ծնվեց 1895 թվականի դեկտեմբերի 25-ին: Ըստ իր մոր վկայության, նրա ծնունդը վաղաժամ կատարվեց, հավանաբար նա պետք է աշխարհ գար հունվարի 6-ին, բոլոր դեպքերում զարմանալի հիշարժան զուգադիպություն:

Ցավից և ցասումից ծնված Գուրգենը ցնցող դեպքերի ականատես և մասնակից եղավ: Նրա մանկությունն ու պատանեկությունը դաղված է Թուրքիայի կազմակերպած հայոց ցեղասպանության շնչով: Եվ պատահական չէր, որ նրա մոտ չստացվեց Աստծուն ապավինելու խնդիրը: Նա հոգևորական չդարձավ և փախավ ճեմարանից, արդեն մանուկ՝ հասկանալով, որ բոլոր չարիքները մարդու ձեռքի գործ են և Արարիչը անմասնակից է դրանց:

Ուշիմ, բացառիկ ընդունակություններով և հատուկ մտածողությամբ օժտված պատանին անցավ բարձրագույն կրթական կարգերով և առաջիններից մեկն էր հայ իրականության մեջ, որ ստացավ համալսարանական տեխնիկական կրթություն:

Տասնամյակներ և հարյուրամյակներ շարունակ հայ ուսումնասեր երիտասարդները իրենց կրթական աստիճանը բարձրացրել են գրականության, մշակույթի և արվեստների ոլորտում: Եղել են նաև բժիշկներ և փաստաբաններ, բայց ճարտարվեստի մտածողությամբ ու տրամաբանությամբ մասնագետ չի եղել՝ բացառությամբ Հովհաննես Ադամյանի, որը համաշխարհային

գիտության տաճար մտավ, որպես հեռուստամեխանիկայի և գունավոր հեռուստատեսության հայտնաբերող:

Ի տարբերություն Հ. Ադամյանի, Յանիկյանը գյուտարար և գիտնական լինելով՝ նաև հրաշալի կազմակերպիչ էր, գործարար, բանիմաց հետախույզ, պետական մասշտաբի մտածող և անլուծելի խնդիրներ լուծող:

Նա գրող էր, դերասան, քաղաքական գործիչ: Նրա բոլոր սկսած գործերը իր ժամանակին ունեցել են սկիզբ և բարոյական վախճան: Ահա ինչու, զարմանալի չէ նույնիսկ, որ նա անցնելով սովետական տնտեսական ՆԷՊ-ի թոհ ու բոհի միջով, հանգիստ լողաց բարենպաստ ու անվտանգ ափ, իր մերձավորների համար ստեղծելով ապահով կյանքի բավարար պայմաններ:

Պետական ծառայության անցավ սովետական ամենադաժան ժամանակաշրջանում: Ատելով կոմունիստական անճարակությունը, նա միաժամանակ մարդկային գործեր կատարեց հասարակ ժողովրդի համար: Յանիկյանի կերպարում ամուր նստած է հայ հասարակ աշխատավորի, բանվորի հոգեբանությունը:

Նա ընչաքաղց չէր և նրա նման միլիոնատեր, հայությունը դեռ երկար ժամանակ չի ծնի, քանի որ նա իր ազգի համար տվեց իր ամբողջ ունեցածը, իրեն չպահելով նույնիսկ գերեզմանի համար:

Նրա քաղաքական համոզմունքները համամարդկային էին, զերծ ազգայնամոլությունից և նեղ անձնականությունից: Նրա գրված 7 գրքերում երբևէ չի շահարկված հայոց ցեղասպանության հարցը, չնայած նրա կյանքի նպատակն էր ստեղծել միջոց ու պատժել ցեղասպան թուրքին: Յանիկյանը կարողանում էր գործն ու դատարկ խոսքը իրարից տարանջատել և գիտեր նպատակի նշանակետին խփելու գաղտնիքը:

Նա մեն մենակ, հունական Ատլասի պես, ուսին դրեց մահամերձ Հայ Դատը և կենդանացրեց այն, իր կյանքն ու վաստակած հանգիստը զոհելու գնով:

Կա՞ նման մեկը, եղե՞լ է անցյալում, ո՛չ իհարկե: Կլինի՞ ապագայում: Անշո՛ւշտ կլինի:

Յանիկյանը իր անձնական օրինակով սաղմնավորեց այն անհատ հային, որ հետո է գալու, բայց գալու է անպատճառ, հզոր, հարուստ քսակով, պայծառ բարոյականությամբ և

ազգասիրությամբ:

Եվ այդ Նոր Անհատը իր մեջ ամփոփելու է հայ գենի պաշտպանության և վերածննդի ներուժը, սերմնացած և թրծված Ցանիկյանի անմահ հոգով:

Ցանիկյանը գաղափարախոսություն թողեց: Դա ուժեղ անհատի, գեր մարդու, կիսաստվածի գաղափարն է, որը ծնվելով, սնվելով և գործելով մարդկային միջավայրում, իր կյանքի նպատակը կընտրի մարդուկության ցավոտ հարցերը և ճշմարտությունը նշանակետ դարձնելով արմատից կկտրի չարիքը, որը չեն կարող անել հազարավոր թույլեր, ինչքան էլ մեկտեղ գան և ինչքան էլ զարտուղի ճանապարհներ ընտրեն:

Ցանիկյանը նոր գաղափարախոսության հիմնադիրն է, որն իր խորքում ունի անժխտելի դասական ճշմարտություն՝ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԿԵՐՏՈՒՄ ԵՆ ՀԶՈՐ ԱՆՀԱՏՆԵՐԸ:

Ցանիկյանը նոր թեզ առաջ քաշեց՝ ԲՈԼՈՐ ՏԵՍԱԿԻ ԿԱՇԿԱՆԴՈՒՄՆԵՐԻՑ ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԱՆՀԱՏՆԵՐԸ, քանի որ նա հասկանում էր, որ անազատ ուժեղ մարդը շատ ավելի վտանգավոր է մարդկության համար:

Ցանիկյանը ամենաառաջնայինը համարում էր մարդու ներքին ազատությունը, ոչ կախյալ՝ կրոնից, խմբային հետաքրքրություն-ներից, այլոց շահերից և ձգտումներից:

Նա այս նյութական աշխարհում ամեն ինչից փորձել էր և ճաշակել: Համտեսել էր ճակատագրի դառնության և քաղցրության բոլոր տարատեսակները: Անցել էր մահվան մազե կամուրջները, վայելել պատվի և մեծարանքի գագաթները, իր միջոցները իր ձեռքով էր ստեղծել, չէր խաբել, չէր կեղեքել, ընդհակառակը, իր ստեղծած միջոցները հատկացրել է ուրիշներին և վերջապես ամբողջությամբ՝ իր ազգին:

Նա փորձել էր նույնիսկ մասոն լինել և հասկանալ այդ ընկերակցություն գոյության իմաստը: Որքա՞ն վեհ ու շիտակ մարդ էր նա, գիտեր երդման և պատվախնդրության արժեքը:

Նա մարդ էր մսից և արյունից, այնպիսին, որ ստեղծեց Աստված դեռ Ադամի կերպարանքով, անաղարտ, չգայթակղված՝ սատանայից ու դրամից:

ԼՈՒՅՍ



*1973 թ. Հունվարի 26-ին, երեկոյան, ընթրիքի էի հրավիրված մի ազնիվ օտարի՝ Հելեն Ռետիկի տանը, որը 26 տարի բարեկամություն էր անում իմ տիկնոջ հետ, միաժամանակ գործակցում էր ինձ՝ իմ գրությունները մաքուր անգլերենի վերածելով:*

*Երաժշտական բարձրագույն կրթությամբ այս ազնիվ տիկինը, ոչ միայն դրամ չէր ընդունում իր դժվար աշխատանքի համար, այլև արգելում էր իր անունը հիշել: Իրենից գաղտնի, ես իմ մի քանի գրքերի վրա, հեղինակի անունից բացի, գրեցի «ուիթ քոլեբորեյշն օֆ Հելեն Ռետիկ»:*

*Այս եղավ վճարումս այդ տիկնոջը, որն արժանի էր «**ԱՐԺԱՆԻ ՄԱՐԴ ԷԱԿ**» կոչումին: Լացեց, երբ կենսագրությունս գրեց: Նա գիտեր, որ ես բացի իմ գրքերից, զբաղված էի չարժանկարի պատրաստելով: Բայց ինչպիսի՞ն, տեղեկություն չուներ: Տեղեկություն չուներ իմ պատրաստած ծրագրի մասին, որն իրագործեցի հաջորդ օրը:*

*Մեր ազգի թե՛ պատմությանը, թե՛ ջարդերին լավատեղյակ էր: Դատարանում նա վկայեց, որ իր տանը եղած իմ երկու պայուսակ գրությունները էֆ .Բի. Այ.-ը, հակառակ իր կամքին առել էր ու տարել, իմ կատարածի երրորդ օրը... Մեղքն իմն էր, նրա անունը գտել էին իմ հրատարակած գրքերի վրա գրած իր անունով:*

*Ընթրիքից հետո, Հելենը ցանկացավ իր մեքենայով ինձ տուն տանել, որն արդեն չունեի: Մերժեցի՝ պատճառաբանելով, թե՝ տունս ներկելու եմ տվել և կցանկանայի ոտքով քայլել: Մի բլոք քայլելուց հետո տաքսի վերցրի և գնացի հյուրանոց, որտեղ արդեն ապրում էի: Բնակարանս պահում էի միայն հեռախոսի համար:*

*Իրերս ու կահկարասիքս նվիրել էի ինձ ծանոթ ուսա-*

*նողներին, պատճառաբանելով, որ տարիքիս պատճառով որոշել եմ հյուրանոցում ապրել:*

*Քնել չէի կարողանում և իջա ծովափ:*

*Մի անբացատրելի դրության մեջ էի: Ես ինձ չէի պատկանում: Մեջքի վրա պառկած ավազին, ձեռքով խաղ էի անում ավազի հետ, բայց փակ աչքերս տեսնում էին իմ երկար կյանքի զանազան դեպքերը՝ ուրախ, թե տխուր:*

*...Միացած ուսանողական 60 հոգուց բաղկացած կամավորական խմբին, Իգդիրում, Դրոյի մոտ, պայթեցնում էի թրքական զինվորական մեծ պահեստը:*

*...Պալատի հիվանդանոցում էի՝ Գեորգի Շքանշանը կրծքիս:*

*...Բոտիրկիի բանտում՝ պատի մոտ կանգնած, ինձ մեկնված չորս հրացաններին էի նայում, որ պիտի գնդակահարեին ինձ... կրակեցին... չընկա... վախեցնելու համար էին արել, որ ես մեր անարխիստների գաղտնիքները տամ, որոնց մեծերից մեկը Մոսկվայում ես էի:*

*Համրում էի մտքումս, թե քանի անգամներ մահից եմ ազատվել:*

*Եվ այդ բոլորից հետո, ես, 78 տարեկան, ցանկանում եմ վերջացնել իմ սկսածը: «Երևի այդ նպատակի համար եմ աշխարհ եկել»-մտածում էի ես, երբ տեսիլը ինձ տարավ դեպի պատանեկությունս:*

*... Տեսնում էի ինձ մեր Թիֆլիսի տանը: Մայրիկս ծալապատիկ նստած թախտի վրա, ողջունում էր ինձ դպրոցից վերադառնալիս. «Գուրգեն ջան, հոգնել ես, արի հանգստացիր»: Եվ ես, 16 տարեկան, ռուսական Կոմերչեսկի դպրոցի վերջին դասարանի աշակերտս, համբուրում էի մայրիկիս ու գլուխս դնելով ծնկին՝ խնդրում էի պատմել իմ մանկության մասին: «Հարյուր անգամ ես լսել, Գուրգեն, ի՞նչ պատմեմ»: Խնդրում էի մի վերջին անգամ էլ պատմել: Շոյելով գլուխս սկսում էր պատմությունը... «Քեզմով էի...*

*ամսեմ պիտի գայիր... Ան չուն ղասապը նոր զենք էր առել և փորձելու համար քեռուդ սպանել էր հայրիկիդ խանութի առաջը... Էպրումի ջարդը ատով սկսավ... Գիշերով, գողի պես, հայրիկդ Իլիջենա Համբարձումի հետ, աղբորս դիակը մեր տուն բերին... Հայաթի քյոշան փորեցին ու դիակը թաղեցին... Տերտեր, տիրացու չկար. ամեն մեկս իր գիտցած աղոթքը ասաց... Քեռիդ հսկամ էր, երբ կը քալեր, իր հասակով ու պայծառ դեմքով, բոլորը կնայեին... Նույնիսկ թուրքերը «աղա» կսեին... Զղիմացա... Ժամանակեն երեք չաբաթ առաջ դու աշխարհ եկար... Տերտեր չկար, հայրիկդ աղոթեց ու անունդ «ՋԱՐԴԻ ՏՂԱ» դրինք... Ջարդը քանի կերթար՝ կավելնար...Մեր տունը «աղջիկ ախպուրեն» քիչ հեռու, Աճամ Քոնսուլաթին մեծ պարտեզին կպած էր: Քսան օխտը (յոթ) մեծ ու պզտիկ տուներ թողեր ու եկել էին մեր տունը, որպես ավելի ապահով տեղ պահվելու: Պարսից Աճամ քոնսուլը հայրիկիդ լավ բարեկամն էր... Եկավ մեր տունը ու ըսավ հայրիկիդ, որ «ջարդը պիտի ավելի չատնա... Ձերոնց առ ու արի մեր քոնսուլաթին տակ մեծ ախոռ մը կա, դատարկ է, հոն պահվեք, ավելի ապահով է: Պարտեզս ալ ծառներով լեցված է և տաճիկների գալու վախը չկա»:*

*Յորղան-դոշակ, հաց-ջուր առնելով՝ 27 հոգի, մեծ ու պզտիկ, գնացինք քոնսուլաթին ախոռը: Քովքովի նստած, մեծ ու պզտիկ՝ սուս-փուս էին... Դուն կուլայիր, ինչ կնեի՝ ձենդ չէիր կտրեր... Ծիծս բերանդ կը կոխեի, դուրս կը թափլեիր և կշարունակեիր լալդ... Ներկաները բոլորը մեր հարազատներ էին...«Պրաքսիմա խանում, ադ տղու ձանը կտրե»-կսեին ինձի, «դրսեն լսեն՝ կու գան, բոլորիս ալ կը ջարդեն»: Ջէի կրնար ձենդ կտրել... Քեռուդ կնիկը ըսավ: -«Պրաքսիմա խեղդե ադ տղան, որ պատճառ չըլլա մեր բոլորի կորուստին»: Ճար չունեի, չալխս ծայրը բերանդ կոխեցի, որ խեղդվիս... Երբ սկսեցիր կապուտկիլ,*

*չըղխմացա, շալս եռ քաշեցի.... այդպես մի երկու երեք անգամ արի, նայեցի, որ շատերը գուլան... տեսա հայրիկդ, որ կը նայեր ինձի, առանց ձայնի արցունք կը թափեր... Ալ չեմ կրնա, ըսի, չեմ կրնա իմ ձեռքովս խեղդել տղաս, որը նույնիսկ մկրտված չէ... «Քա, (այսպես էր մայրս դիմում իր ամուսնուն), կեցի և ասոնց նայե, եթե Աստված կամեցավ՝ կը պաշտպանե տղուս։ Ես կերթամ այգին և հեռու քռշամը կը պահվիմ... Տղաս խեղդել չեմ կրնա։*

*Հայրիկդ հաստ յորղան վրաս գցեց ու համբուրեց քեզ ու Աստված օգնական լինի ձեզի ըսելով՝ ինձ էլ համբուրեց։*

*Քանի մը օր այդպես՝ մերոնք ախոռը, ես քեզի հետ պարտեզի մի անկյունը. գիշերները հայրիկդ հաց-ջուր կբերեր ինձի...*

*Ջարդը վերջացել էր և հայրիկդ որոշել էր փախչիլ Էրզրումեն միայն հագուստներով։ Ախոռին դուռին եռևը, հողին տակ, պահել էր մեծ թենեքե ղութիկի մը մեջ մեր ունեցած զարդերը, ոսկի քրիմիցաներ, մեր կալվածների թուղթեր և պատրաստ ունեցած հարյուր հատ տաճկական լիրա։ Քոնսուլի օգնությամբ երեք հատ սանկա էր վարձել և քոնսուլի վալադի առաջնորդությամբ, գիշերով ճամփա ելանք սարերով, որ հասնինք ռուսական սահմանը։ շատ բան չէինք կրնար հետներս վերցնել. շատվոր էինք, տեղ չկար։*

*Ճանապարհ չկար, ձուն էր ամեն տեղ... Վալադը առաջին սահնակի մեջն էր։*

*Լուսաբացին, երբ տեսա դուն բարուրի մեջ չես. «աման տղաս» -բոռացի։ Կանգնանք, մարդ չէր ուզում գնալ քեզ փնտրելու։ Երբ է ընկել չգիտենք։ «Ան հիմի սառած կը լինի»-ըսին։ Ես ըսի. «ե՛ս պիտի երթամ, սահնակները ձյունի մեջ ճանապարհ են շինել, անոց թողած ճամփով կերթամ տղաս գտնելու համար... Հակոբիս հոգուն մեռնիմ, եկավ քովս, ըսավ «մայրիկ ես ալ կուգամ հետդ»։*

*Սանկաների թողած հետքով քալեցինք, որքան ժամանակ չգիտեմ… գտանք քեզի ճանփուն մեջտեղ, համարյա մարած… Գրկեցի և մարմնիս տաքությունով կը տաքցնեի քեզի, մեմ ես, մեմ Հակոբիկս… Շունչերով երեսդ կըտաքցնեինք, սկսար լալ. տեսանք, որ ողջ ես… Հետևյալ կես օրին անցանք սահմանը: Կարս գնացինք: Հայրիկիդ գործերը չատ լավ էին… Դու մեծցար վեց տարեկան էիր… Հայրիկդ քեզի պարսկահպատակ էր դարձուցեր, որ գնած տունը քո անունով անի, որովհետև ռուսը իրավունք չէր տա թուրքահպատակներին սահմանների մոտիկ կալված առնելու: Հայրիկդ, չնորհիվ Էրզրումի քոնսուլի նամակին, լավ բարեկամ էր դարձել Կարսի քոնսուլի հետն էլ: Այս էր պատճառը, որ նոր եկած հայրիկդ հաջողվեց քեզի Թավրիզի ծննդական թուղթ ստանալով, քոնսուլաթում կնքել: Էրզրումեն փախած քահանա Վաղինակով՝ անունդ Գուրգեն դրինք:*

*Հայրիկդ ցանկացավ, որ ես, Հակոբիկը ու դու երթանք Էրզրում ու ախոռում թաղած սնդուկը հանենք և դու որպես պարսկահպատակ, տաս այնտեղի նոր պարսիկ քոնսուլին, որ նա ուղարկե Կարսի քոնսուլին, որ տա հայրիկիդ:*

**– Գուրգեն չեմ կըրնար ախոռի պատմությունը լսել… հազար անգամ լսել ես…**

*Մայրիկս հրաժարվում էր չարունակել պատմությունը ու ցույց տալով իր բուռը, ասում էր. «Տես, ինչքան ես կրծոտել իմ մսերը»:*

*…Տեսիլքը ինձ տարել էր արդեն Էրզրում, մեր տան ախոռը, որտեղ ես, 6 տարեկան, սեղմված իմ մայրիկիս, նայում էինք եղբորս, որն ախոռի դռան հետևը փորում էր և երկու ձեռքով հողը դուրս քաչում… «Գտա՛, մայրիկ» ասաց նա, դուրս հանելով երկու ձեռքով մի բավականին մեծ թիթեղյա տուփ: «Փառք Աստծո» մայրիկիս ասելն ու*

*ախոռի դուռը բացվելը մեկ եղավ…*

*Մի ակնթարթում երկու թուրք գազան ներս մտան և սկսեցին եղբորս մորթել…։ Մայրս սեղմում էր իմ բերանը, որ ես ձայն չհանեմ և… որ մեզ չտեսնեն։ Ես կրծոտում էի, որ ազատվեմ ու սկսեմ գոռալ։ Եղբորս կտրած վզից կարմիր չատրվանը ուրախացնում էր եկվորներին… և ես տեսա՝ նրանք բռով եղբորս արյունը մոտեցնում էին իրենց շուրթերին և բարձրաձայն քրքջում…։*

*–Ո՛չ, մայրիկ… բռռացի ես և վեր թռա պառկած տեղից։ Ծովի ալիքների ձայնը ինձ ուշքի բերեց… որպես խելագար՝ ես վազեցի ու ծովի ջրով սկսեցի զովացնել ինձ ու լվալ արցունքներս, որոնք չարունակում էին առատորեն թափվել աչքերիցս։*

*Ես դողում էի ամբողջ մարմնովս և ակամա իմ շուրթերից դուրս էին գալիս խոսքեր, որոնք կարծես հրամայում էին. – Հանգստացի՛ր… բավական է լաս… տեսածդ իրական պատկերն էր 75 տարի առաջ պատահած… «Դու գործ ունես կատարելիք, Գուրգեն»։ Այս մտքերն ինձ վերջնական բերին իրականությանը, որ ես մի քանի ժամ հետո պետք է անեմ մի քայլ, որ ես միշտ զգվանքով եմ հիշել իմ կյանքում… ՄԱՐԴԱՍՊԱՆ…*

*Այո, բայց ոչ՝ մեղադրելի…*

*Դու քո կամքով չես հասել դրան… Քեզ ստիպել է կյանքը և մարդկությունը, որը թույլ էր տվել քո տեսածը– ՁԵՐ ԱԽՈՌՈՒՄ։*

*Կարծես իմ դեմը լող կար, երբ ես չարունակում էի կիսաձայն խոսել։ Ես մեղավոր չեմ, որ մի քանի ժամ հետո զենք եմ գործածելու… Անխիղճ մարդկությունը ինձ այս օրին հասցրեց։ Ես զենքով նպատակիս հասնելու ցանկություն չունեի…*

*Մինչ այստեղ՝ չունեմ ցանկություն մոռանալ նպատակս, որը տասնյակ տարիներ եղել է այն մղիչ ուժը*

*ընդդեմ իրավունքի արդարության մթության, լուսավորելու իմ տառապած ազգիս համար…*

*Ժամացույցս ցույց էր տալիս մեկ և կես։ Ես ծովափ իջա երեկոյան 10-ին։ Երեք և կես ժամ… Ի՜նչ արագ է անցել ժամանակը։*

*Երկու թաշկինակներս թաց էին…*

*«Սթափվի՛ր, Գուրգեն»- հրամայեցի ես ինձ ու քայլերս ուղղեցի դեպի իմ սենյակը։ Հեռախոսեցի, որ ինձ արթնացնեն ժամը ութին։*

*Առավոտյան իննին գնացի և մնաս բարով ասացի իմ կյանքի ընկերոջը և տասին հյուրանոցի իմ սենյակում տեսնում էի վերջին պատրաստությունները՝ ընդունելության համար։ «ՀՈՒ ԻՋ ՀՈՒ» ամերիկյան հրատարակության հատորներից մեկում, որտեղ չորս տող կա նաև հայ ինժեներ, գրող ու զանազան շնորհքների արժանացած Գուրգեն Ցանիկեանի մասին, ես գերմանական պարաբելլումի համար տեղ էի պատրաստել դեռ ամիսներ առաջ, այնպես որ, երբ գիրքը բացվեր՝ մի կոճակ սեղմելով զենքը բուռս էր գալիս։*

*Առավոտը բավականին զով էր։ Վերարկուս գցած ուսերիս՝ սկսեցի զբոսնել բակում, հաճախ նայելով ժամացույցիս, որոհետև ասել էին, որ ժամը տասնմեկին կգան։*

*Շատ դանդաղ էր անցնում ժամանակը։ Ուղիղ 11-ին տեսա նրանց մեքենան, որի վրայի տաճկական փոքրիկ դրոշը փաստում էր, որ դրանք են իմ հյուրերը։*

*Ծանոթ էի միայն մեկին՝ օգնականին։ Գլխավորի հետ չէինք հանդիպել, բայց հեռախոսով հաճախակի էինք խոսել։*

*Դիմավորեցի։ Գլխավորը երկու ձեռքերը պարզած Աղայե Ցանի Խան կոչելով՝ համարյա փաթաթվեց ինձ։*

*-Ի՜նչ սքանչելի օր է, իզուր չցանկացար, որ մենք մեր տիկիններով գայինք, որ նրանք էլ հաճույք ստանային Ձեզ հետ ծանոթանալու և այս հազվագյուտ հանդիպմանը*

ներկա լինելու համար»։

Ես էլ իմ հերթին, թոթվելով նրանց ձեռքերը, պատասխանեցի.

– Տիկինները թող ներեն ինձ, որ հին սովորության մարդ եմ և ավելորդ մարդկանց չեմ խառնում իմ գործերին։ Համոզված եմ և խոսք եմ տալիս, որ մի մեծ «փարթի» եմ տալու և ձեր տիկիններին էլ հրավիրելով՝ «կավալերություն» եմ անելու նրանց, եթե ծերունիս չգրգռե ձեր նախանձը...

–Ի՞նչ նախանձ, Աղայե Ցանի Խան, մենք հիմա բարեկամներ ենք և գուցե միասին Անկարա գնանք։ Իմ տան դուռը միշտ բաց է Ձեզ պես անգնահատելի անհատի համար...

Այսպես խոսելով և իրար քաղցր խոսքեր ասելով՝ մենք մտանք իմ երեք համարի հարկաբաժինը։

Նայելով չորս կողմը՝ գլխավորն ասաց ժպտալով.

– Տեսնում եմ, Աղայե Ցանի Խան, ապրելու ձևը գիտեք... Ի՞նչ սքանչելի տեղ եք ապրում և ձեր դրամը ծախսելու եղանակն էլ գիտեք...

Ժպտալով պատասխանեցի.

–Ճիշտ եք, ես այդ սովորությունը հայրիկիցս եմ ստացել, որն իր հերթին Տաճկաստանում է սովորել...

– Է՛հ,– բացականչեց նա, – ուրեմն ձեր սերը դեպի մեր երկիրը դեռ հայրիկից է սկսվել։

– Այո, բարեկամս... և մեծ, անչափ սեր, որ նա հնարավորություն չուներ ցույց տալու...

Նա խոսքս կտրեց.

– Իր արժանի զավակը կուզե հոր մեղքերը քավել...

– Հա՛...Հա՛...հա՛...,–բոլորս սկսեցինք ծիծաղել։

Գլխավորին առաջարկեցի նստել լայն բազկաթոռին և երկրորդին՝ ոչ հեռու նրանից, որ երկուսին էլ իմ դիմացը ունենամ։ Հայտնեցի, որ այս սենեակը միայն պիտի

*օգտագործենք պաշտոնական արարողության համար և շամպայնը իր բաժակներով մեզ է սպասում։ Իսկական հրավերը նախաճաշով և երաժշտությամբ պատրաստված է «Հոթելի» մեջ։*

*Գլխավորը իր գրպանից մի կարմիր տուփ հանեց և բացելով ցույց տվեց ինձ մի գեղեցիկ շքանշան, մեջտեղի սպիտակ էմալի վրա իրենց կիսալուսինը.*

*– Այս է այն գնահատանքը, որ մեր երկիրը որոշել է տալ ձեզ, որ հպարտությամբ զարդարեք ձեր կուրծքը ու թող շրջապատը տեսնի, թե ի՛նչ հարգանքի եք արժանացել դուք մեր կառավարության կողմից, – և տալով ինձ շքանշանը շարունակեց, – ահա և շքանշանի հետ տրված է նաև պաշտոնական հրամանը։*

*Այս ասելով, նա գրպանից հանեց մի գրություն և բարձրաձայն կարդաց. որ՝ տաճկական կառավարությունը տեսնելով Աղայե Ցանի Խանի վերաբերմունքը և իր առատաձեռնությունը դեպի մեզ՝ որոշեց պարգևել նրան այսինչ անունով շքանշանը։ Թուղթը մեկնեց ինձ հարցնելով.*

*– Ո՞ւր է նկարը և այն տաճկական դրամը։*

*Տալով նրան տաճկական թղթադրամը, որի վրա կային տասից ավելի տաճիկ և պարսիկ հայտնի մարդկանց ստորագրությունները և որն ուներ պատմական մեծ արժեք, այդ թվում Իրանի Ռզա Շահի ստորագրությունը, գնդակահարված հայտնի մի թուրքի ստորագրություն և այլ հայտնի մարդկանց ստորագրություններ, որոնց հեղինակների հետ ես ծանոթացել էի և բարեկամացել սկսած 1930 թվականից։*

*Ես, իբր թե զբաղված էի գրությունը կարդալով, բայց ուշադրությունս նրանց վրա էր։ Երբ ես թղթադրամը սեղանի վրայից վերցրի, որ տամ նրան, ձեռքս մեկնեցի նաև «ՀՈՒ ԻԶ ՀՈՒ» հաստածավալ գրքին, որտեղ իմ*

*պարաբելումն էր։*

*Զննելով, որ թղթադրամի վրա իմ ստորագրությունը չկա «Է՜Հ Յանի Խան, ո՞ւր է քո ստորագրությունը» ասելով և գրպանից մի գրիչ հանելով նա մեկնեց ինձ՝ թղթադրամը ստորագրելու։*

*Ես թղթադրամը դրեցի ձեռքիս գրքի վրա և ստորագրեցի իմ իսկական անգլերեն ստորագրությամբ՝ իսկական անունով։ Ավանակները ուշադրություն չդարձրին, որովհետև զբաղված էին պատկերը տեսնելու ցանկությամբ, ասելով, թե մինչև պատկերի հանձնումը իրենց կցանկանային մի երկու խոսք գրեմ իրենց՝ իմ թանկագին հյուրերին։*

*Իր մեկնած թուղթը վերադարձրի իրեն, որ բռնել էր աջ ձեռքով, որովհետև ձախում գտնվում էր ստորագրություններով թղթադրամը։*

*Նրանք հարմարավետ դիրք գրավեցին բազմոցների վրա և պատրաստվեցին լսելու ինձ։*

*Որքան ժամանակ տևեց իմ խոսակցությունը՝ չգիտեմ... Դատավարության ժամանակ վկաների ցուցմունքով պարզ-վեց, որ մեր ներս մտնելուց 15 րոպե հետո ներսից լսվել են կրակոցներ։*

*Եթե հաշվենք, որ մեր ներս մտնելուց հետո փոխադարձ սիրալիր խոսակցությունների վրա ծախսվել է 5 րոպե ժամանակ, ուրեմն մնացած 10 րոպեն ես խոսել եմ, իսկ նրանք լսել էին։*

*Ցույց տալով ձեռքիս գիրքը՝ ասացի, որ երևի իրենք գիտեն, թե այս ի՞նչ գիրք է։ Գլխավորը ուզում էր պատասխանել, բայց ես կանգնեցրի նրան՝ ասելով և միաժամանակ գրքից զենքը դուրս բերելով, որ «այս վարկյանից նրանք ունեն միայն լսելու իրավունք և ո՛չ խոսելու..., եթե չեն ցանականում, որ իրենց կյանքը ավելի կարճ լինի»։*

*-Ես Յանի Խան չեմ, ես հայ եմ՝ Գուրգեն Յանիկյան*

*անունով, որի անունը կա և այս գրքում... Ես ունեմ մեկ այլ անուն՝ Նեգրուկ, որը երևի ծանոթ է ձեզ...*

*Այդ անունը ես հաճախ էի օգտագործում, երբ գրում էի հակաթուրքական հոդվածներ։*

*Գլխավորը իր բռնած թղթերը ձեռքից բաց թողեց ու ապշած նայում էր ինձ։ Երիտասարդը մի շարժում արավ և ես առանց խոսքի զենքս ուղեցի դեպի նա։*

*– Դուք երկու միլիոն իմ ցեղակիցներին սպանել եք, խեղդել եք, երեխաներին բռնաբարել եք։ Ձեր զինվորներն իրենց սվիններով հղի կանանց փորն են պատռել և լույս աշխարհ չեկած մանուկներին սվինահարել։ Դուք իմ հարազատների արյունն եք խմել։ Միայն դուք չեք մեղավոր այլ և մարդկությունը, որ տարել է ձեզ պես տափաստաններից եկած մոնկոլների ներկայությունը ու չի պատժել ձեր տաճիկ կոչված ցեղի ոճրագործությունները։ Ահա ձեր բերած չքանչանի արժանիքի ու իմ շնորհակալության փաստը, – այս ասելով չքանչանը գցեցի գետին և ոտքով փշրեցի։*

*Երիտասարդը շարժվելու փորձ արեց, բայց ես մատս դնելով ատրճանակի բլթակին՝ ասացի «Մի աշխատեք կարճացնել ձեր կյանքը»։*

*Երկուսն էլ սարսափած էին նայում իմ զենքին։ Գիտեի, որ դեմքիս արտահայտությունն էլ բավականին բան էր ասում իրենց։ Հրամայեցի՝ «Նայեք վերև», հնազանդվեցին։*

*– Տեսնում եք, այնտեղ պարաններ չկան ձեզ կախելու համար, ինչպես ձեր հայրերը պատրաստել էին հազարներով մեր ազգի սիրելի ու թանկագին հարազատների համար։ Հպարտ եղեք, որ ձեզ եմ ընտրել, որպես ձեր ազգի ներկայացուցիչներ և դուք կմտնեք պատմության մեջ։ Ձեզ ոչնչացնելով պիտի վառեմ մթության մեջ արդարության լույսը, որ աշխարհը լուսավորվի... Տալիս եմ ձեզ մի վարկյան, որ մտածեք, թե ո՞ւր եք գնալու։*

Չգիտեմ ինչն էր պատճառը, որ ես հայացքս դեպի դուռը դարձրի: Տաճկական հայհոյանքներ տալով, երիտասարդ օգնականը վեր թռավ իր տեղից և կողքի աթոռը վերցնելով հարվածեց թիկունքիս ձախ կողմին: Նրա հարվածը ետ չպրտելն ու առաջին գնդակով գետին տապալելս մեկ եղավ: Զենքը դարձրի գլխավորի կողմը, որը օգտվելով իմ զբաղվածությունից արդեն կատաղած մոտենում էր ինձ: Պարաբելիումի 9 գնդակները օգտագործեցի երկուսի վրա: Երկուսն էլ ընկած էին գետնին և կարմիր ներկում էին սենյակի գորգը: Պարաբելումը դրի սեղանին ու քայլելով ընկածների վրայով մոտեցա անկողնու կողքի սեղանին վերցնելով փոքրիկ ինքնաձիգ բրաունինգը՝ կրակելով գանգերին... «ՍԱ ԻՄ ԵՂԲՈՐՍ ՀԱՄԱՐ... ՍԱ ԻՄ ԱԶԳԻ ԿՈՂՄԻՑ... ՍԱ ԷԼ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ»:

Բրաունինգը 7 գնդակ ուներ, չկրակված թողեցի երեքը, ես ընդհանուր թվով մատս շարժել էի 13 անգամ:

Հեռախոսեցի հյուրանոցի աշխատակցին և խնդրեցի ինձ միացնել ոստիկանությանը, «որովհետև սենյակումս երկու դիակ ունեմ»...

«Ի՞նչ եք ասում, պարոն Ցանիկյան»,- չէին հավատում նրանք, որովհետև ես տարիներ շարունակ «Կորալ Կազինո Ակումբ»-ի անդամ էի, որը «Բալթիմոր Հյուրանոց»-ի մի մասն էր հանդիսանում և գիտեին իմ ուրախ կյանքը և բնավորությունը:

Կրկնեցի խնդիրքս և վերարկուս ուսիս գցած՝ դուրս եկա պատշգամբ և նստեցի մի սեղանի առջև: Մի բաժակ ջուր խնդրեցի: Ջուրը տվին և ես սկսեցի կամաց-կամաց խմել և հիշել, որ ամեն ինչ արդեն վերջացած է և ես կատարեցի իմ ո՛չ միայն ազգային պարտքը, այլ և՝ մարդկային... Մի հաճելի ջերմություն էի զգում մեջս:

Ցանկացողներ եղան սենյակս գնալու: Արգելեցի՝ ասե-

լով, որ միայն փոլիսը կարող է ներս գնալ։ Տասնհինգ րոպե տևեց, մինչև եկան իշխանության մարդիկ, բայց վախենում էին սենյակ գնալ, քանի որ անցնելու էին իմ մոտով և կասկածում էին, թե զենք ունեմ։

Ինքս կանչեցի, որ մոտենան, ասելով որ զենքս սենյակում է։ Տասնյակներով եկան. մեկը շնչառությունս էր փորձում՝ թե խմած չեմ արդյո՞ք, մյուսը վրաս զենք էր փնտրում, մեկն էլ ինչ-որ փոքրիկ թուղթ գրպանից հանած կարդում էր։ Ես ուշադիր չէի և մտքերս հեռվում էին։ Ուզեցին ձեռքերս հետև շղթայել, ասացի թևս հետ չի գնում, շղթայեցին ձեռքերս առջև և շրջապատելով ինձ զենքերը պատրաստի բռնած մարդկանցով տարան դեպի ավտոմեքենան։ Տեսա, որ դիակները դնում էին ամբուլանսի մեքենաների մեջ։

Սկսվեց մարդասպան ՑԱՆԻԿՅԱՆԻ կյանքը իր բոլոր վարդերով ու փշերով։

Տարան բանտ ու սկսվեցին քննիչների և բժիշկների այցելությունները։ Հայ կուսակցությունները չգիտեին ինչ անել..., հարցը կապված էր հայ ազգի հետ... Դիրքորոշումը դեռ չէր կատարված։ ԲՈԼՈՐԸ ՓԱԽԵԼ ԷԻՆ։

Ընդհանրապես սովորություն եմ ունեցել իմ գրությունների ու նամակները գրել պատճենաօրինակով։ Շատ հազվադյուտ էի առանց պատճենի գրում։ Դա անում էի, երբ գրությունս ուղղում էի այնտեղ, որտեղ պետք է՝ այն էլ ապագայի համար։

Այս գրությունը մեկ օրինակով է գրված և լինելու է իմ անձնական թղթերի մեջ, որոնք վերջնականապես պետք է ուղարկվեն Երևան, մնալու իմ անունով գոյություն ունեցող հայրենի արխիվում, որպեսզի մյուս թղթերիս հետ միասին լինի և հետագայում պատմաբանները կարողանան մի «խելառ հայի» կյանքին ծանոթանալիս, որոշ պատկերացում ունենան նաև ինձ շրջապատող և

*երբեմն ինձ հետ գործող մարդկանց մասին և նկարագրեն նրանց ևս։*

*1979 թ. փետրվարի 20-ին որոշեցի այս գրությունս հրատարակել Ամերիկայում։*

*Իմ թղթերը գտնվում են մի ազնիվ օտարուհու մոտ և մեր 25 տարվա բարեկամությունը իմ մահով չի վերջանալու։ Իմ բոլոր թղթերը պայուսակներով պիտի ուղարկվեն Երևան այդ անգնահատելի բարեկամիս անունից։ Այս մասին կասկած չունեմ։ Իմ անկեղծ, ամենամոտ օտար բարեկամիս մասին կկարդաք հետագա թերթերում։*

*Ի՞նչ ազնվություն... այդ դրության մեջ չի մոռացել իմ թղթերի մասին և յոթ կապոցներով արդեն տեղափոխել է մի ուրիշ ազնիվ բարեկամիս տուն, որ եթե ինքը հիվանդանոցից դուրս չգա, ապա թղթերս անտեր չմնան։*

*Մասնավոր հեռագրով տեղեկացրեց ինձ «Գուրգեն, սիրելիս, թղթերիդ մասին մի մտածիր։ Նրանք արդեն մեր բարեկամ... ....այսինչի տանն են։ Իրենք եկան իրենց մեքենայով և տարան։ Համբույրներ աշխարհիս ամենամոտ ու անկեղծ բարեկամիս՝ Գ. Յանիկյանին»... 5-21-1979.*

*Երբ իմ կենդանության ժամանակ լսում ու կարդում եմ թերթերում իմ մասին գրած տեղեկությունները, որոնք շատ հեռու են ճշմարտությունից, ապա պարզ է, որ իմ կյանքից հետո անճշտություններն ավելանալու են։*

*Նախ ինքս գրեցի երեք մասից բաղկացած իմ կենսագրությունը, որ ազատեմ ոմանց, ինչպիսին Վիլիամ Սարոյանի փաստաբան քեռին է, որպեսզի ինձանով չզբաղվի՝ ու Վիլյամ Սարոյանի նախաբանով գրված կենսագրությունովս դոլարներ չշինի, այլ բավարարվի այն գողացված դրամով, որ նա ստացավ որպես թարգմանիչ իմ դատավարության ժամանակ և գնաց Լոնգ Այլդ՝ բուիջ խաղալու։*

*Այդ դրամը, համաձայն մեր պայմանի, նա մտցնելու էր*

իմ պաշտպանության ֆոնդը, և այդ էր պատճառը, որ թարգմանչի պաշտոն ստացավ «միայն պրեստիժի համար», ինչպես ինքն ասած ինձ երեկ, խնդրելով ու աղաչելով, երբ եկավ Սանտա Բարբարայի բանտ։

Մեծ մասամբ, իր հնարած կենսագրությունս գրելով և իմ դատավարության ժամանակ որպես թարգմանիչ լինելով, նա չկարողացավ խուսափել դատարանում կատարված խայտառակությունից։ Նա պաշտոնապես սխալ թարգմանեց ու ստորագրեց և տվեց դատախազին իմ գրության մի մասը, որը կարող էր վնասակար լինել ինձ համար։ Դատախազը իր ձեռքին բռնած Սարոյանի թարգմանած իմ գրությունը, հայտնեց, թե Յանիկյանը գրում է. «...Մեր Սահմանադրությունը ծածկված է այնքան փոշով ու աղբով, որ միակ ելքն է ոչնչացնել այդ Սահմանադրությունը»։

Լսելով այս, ես գոռացի. «Սո՛ւտ է, պարոն դատավոր, դա դատախազի հնարածն է, ես այդպիսի բան չեմ գրել»։

Դատախազը հայտնեց դատավորին, որ ունի այդ թարգմանությունը, ստորագրած պաշտոնապես ընդունված թարգմանչից։

Դատավորը կանգնեցրեց դատավարությունը և առաջարկեց, որ ես ու Սարոյանը պարզենք այդ հարցը։

«Ապո՛ւշ, - ասացի Սարոյանին, -որտեղի՞ց ես դու դա հնարել»։ Պարզեցինք, որ իմ գրածը սա է։ «Մեր Սահմանադրությունը ադամանդ է, բայց ծածկված է փոշով և երիտասարդ սերունդը պիտի մաքրի այդ փոշին, բայց զգուշությամբ, որ ադամանդը չվնասվի»։

Քանի որ ես հայտնեցի, թե թարգմանությունը կատարված է ըստ դատախազի կարգադրության, իմ խոսքերից վիրավորված դատախազը խնդրեց դատավորին, որ թարգմանիչ Սարոյանին ինքն է ցանկանում հարցաքննել։ Բերում եմ դատական արձանագրություններում գրված

*այդ հարցաքննությունը։*

*ԴԱՏԱԽԱԶ.*

*-Պր. Սարոյան, Դուք դատարանի երդվյալ թարգմա-նի՞չն եք այս դատին։*

*ՍԱՐՈՅԱՆ.*

*- Այո։*

*ԴԱՏԱԽԱԶ.*

*- Այս երկու թարգմանություններից որն է ճիշտը, երեկվա տվա՞ծը, թե սա։*

*ՍԱՐՈՅԱՆ.*

*- Առաջին տվածս սխալ է... Այսօրվա տվածը ճիշտ է։*

*ԴԱՏԱԽԱԶ.*

*- Ես խնդրե՞լ եմ Ձեզ սխալ թարգմանել։*

*ՍԱՐՈՅԱՆ.*

*- Ո՛չ, պարոն դատախազ։*

*ԴԱՏԱԽԱԶ.*

*-Ինչո՞ւ եք սխալ թարգմանել այս գրությունը։*

*ՍԱՐՈՅԱՆ.*

*- ՈՐՈՎՀԵՏԵՎ ԵՍ ՈՒԶՈՒՄ ԷԻ ՁԵԶ ՕԳՆԵԼ, ԵՍ ՁԵՐ ԿՈՂՄՆ ԵՄ...*

*ԴԱՏԱԽԱԶ.*

*-Շնորհակալություն։*

*Իմ երկու փաստաբանները, ավանակի պես, նստած էին և ոչ մի բողոք։ Նույնը և դատավորը։ Սարոյանին փոխա-րեն բանտ նստեցնելու, թույլ տվին, որ շարունակի իր թարգմանչի պաշտոնը... մինչև վերջ և վճարվի լիովին,*

*Ո՞վ է ասում, որ մեր երկրում արդարություն կա. վկա Սարոյանի դեպքը։ Իմ խեղճ Ամերիկա, ո՞ւր ես գնում։*

*Այս Արամ Սարոյանի հետ կապ ունի և մեկ ուրիշը՝ Սարոյան Վիլիամ անունով, երես տված մի գրող, որի անունը լսելիս շատերը կորցնում են նույնիսկ իրենց տրամաբանությունը։ Ես ոչ մի նախանձ չունեմ դեպի նա։*

*Ամեն կողմից ես ինձ ավելի բարձր եմ դասում, քան այդ «**ՀԱՆՃԱՐԸ**», որ մի օրվա մեջ հայտնի գրող դառավ՝ երբ մերժեց ու ետ ուղարկեց «Բուլլեր»-ի անվան իրեն ուղարկած դրամը։*

*Ամերիկայում դրամն ավելի մեծ նշանակություն ունի, քան ինքը՝ **ԱՍՏՎԱԾԸ**։ Եվ Ամերիկան զարմացավ. սա առաջին անգամն էր, որ գրողը դրամը ետ էր ուղարկում։*

*Եվ մի օրվա մեջ նրա անունը գրավեց երկրի լրագրերի ուշադրությունը, և որպես անսովոր քայլ՝ նա արժանացավ համբավի...*

*Հայ **ԲԻԹԼԻՍՑՈՒ** հաշվարկը ճիշտ էր դուրս եկել և նա շուտ էր հասկացել ամերիկացու հոգեբանությունը։ Մինչև այսօր էլ նա օգտագործում է այդ և շարունակում է ամենուրեք մնալ որպես անվանի գրող։*

*Լինելով բանտում, ես զրկված էի պատասխանել նրա ամեն հայի համար վիրավորական մի գրությանը։ Ստիպված եմ բավարարվել այս կերպ, որ հետագայում հայերը իմանան՝ ոչ բոլորն էին կորցրել իրենց պատիվն ու ինքնասիրությունը, երբ այդ երես առած «**ՀԱՆՃԱՐԸ**» հրապարակ էր գալիս իր անթույլատրելի գրություններով։*

*Մեր լրագրերի խմբագիրներն էլ հետ չեն մնացել ժողովրդից և հիպնոսացած են երես տվածի անունով։ Ընթերցողի ուշադրությանն եմ հանձնում, որ ինձ էլ են Ամերիկայում, ամերիկյան և արտասահմանյան կազմակերպությունները գրող համարում, որոնք մեծարելով Վ. Սարոյանին պատվավոր անուններով ինձ էլ չեն մոռացել։*

*Համաշխարհային մի ինստիտուտ, որն ամբողջ աշխարհում կարող է ունենալ գրականության և գիտության բնագավառին պատկանող միայն **1800** ընտրված անդամներ, որոնց մեջ են Ամերիկայից հարյուրավոր անդամներ, և որոնցից հայ են ընդամենը*

*երկուսը՝ Վ.Սարոյանը և Գ. Ցանիկյանը։*

*Գոյություն ունեն այլ կազմակերպություններ, որոնք երկուսին էլ ընտրել են։ Կրկնում եմ, սա չընդունեք որպես նախանձ, այլ ընդունեք որպես փաստ։*

*Ի՞նչ էին երես տվածի գրածները, որ ինձ ստիպեցին գրել նրա մասին։*

*Մեր տարբերությունը բոլորի համար պարզ է, որ գնահատեն մեր ՀԱՅԿԱԿԱՆ ու ՄԱՐԴԿԱՅԻՆ տարբերությունների ու արժանիքները։ Ներկա դրությունս արգելում է ինձ հրապարակավ գրել նրա մասին և ստիպված եմ բավականանալու այս գրությունով։*

*1930 թվականներին արդեն անուն հանած երիտասարդ Վիլիամը գնում է Մոսկվա և տեսակցություն ունենում մեր ՀԱՅ ԱԶԳԻ ՊԱՐԾԱՆՔ՝ ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑԻ հետ։ Տեսակցության ժամանակ Չարենցը սրսկում է իրեն մորֆի ու շարունակում խոսակցությունը։*

*Որպեսզի այս երևույթը պարզ լինի ընթերցողին, պետք է որոշ տեղեկություններ հայտնեմ 1920-1930-ական թվականների այնտեղի կյանքի մասին։*

*Ռուսական հեղափոխության ամենադժվար տարիներն էին և երկրի կառավարիչների հետ գրողներն էլ էին լծված նոր ուղիներ փնտրելու գործերին։*

*Մոսկվայի Գնեզդիկովսկայա փողոցում ծնունդ էր առել հայտնի «Ստոյլ օֆ Պեգաս» գիչերային ակումբը, որը հայերեն թարգմանվում է «Պեգասի Ախոռը»։ Այդ ակումբի անդամներն էին ժամանակակից մտավորականները՝ Մայակովսկին, Եսենինը, Գոլչմիտը, Բյուրլուաքը, Այսեդոր Դունկան, Եղիշե Չարենցը, որին անվանում էին «ԱՐՄԵՆԻԱՆ ԴԺԻՆԻՍ» (Հայ Հանճար) և ուրիշները։*

*Ակումբին անդամակցում էին նաև երկրի կառավարիչները՝ Ռիկովը, Կալինինը, Ձերժինսկին, Տրոցկին, Չեչերինը և այլն։*

*Հասարակ մահկանացուն այնտեղ գնալ չէր կարող, որտեղ բոլորն զբաղված էին երկրի ապագայի հետ կապված մեծ խնդիրներով: Ակումբի անդամներն ազատորեն օգտվում էին սեղանների վրա անվճար դրված թմրեցուցիչներից՝ կոկաին, մորֆի և հաշիշ: Դրանում ոչ մի անօրինական բան չկար, որովհետև այդ ժամանակ երկրում ազատորեն վաճառվում էին դրանք և ավելի հեշտ էր դրանք ձեռք բերել, քան մի շիշ օղի:*

*ՉԵԿԱ-ն կազմակերպողի՝ Ձերժինսկու քույրը անարխիստական խմբի անդամ էր և իմ մոտ ընկերն էր մի քանի տարի: Շնորհիվ իր եղբոր՝ մենք, երկուսով, ստացել էինք այդ ակումբը հաճախելու թույլատվություն:*

*Մի անգամ, երբ մենք նստած սեղանի շուրջ շամպայն էինք խմում, Եղիշե Չարենցը տեղեկանալով, որ ես հայ եմ, մոտեցավ և նստեց մեր մոտ և շամպայն խմելով, սկսեց խոսել նախ ռուսերեն, հետո ներողություն խնդրելով Ձերժինսկու քրոջից, անցավ հայերենի:*

*Իմ ով լինելը իմանալուց հետո, հարցրեց, թե իրեն ճանաչու՞մ եմ: Իմ դրական պատասխանից հետո, նա ասաց.*

*– Լսիր, իմ սիրելի հայրենակից, այստեղ գալդ կարող եմ արգելել, որպես վարչության անդամներից մեկը, բայց չեմ անի, եթե դու ինձ խոսք տաս, որ երբեք չես փորձելու սեղանների վրա եղած թմրեցուցիչները, նույնիսկ հետաքրքրության համար:*

*Կյանքումս ես փորձած չկայի և հայտնելով այդ Չարենցին, խոստացա նրան չփորձել դրանք:*

*Նա համբուրեց դեմքս՝ ասելով. «չկարծես, թե ես գոհ եմ, որ փորձել եմ հետաքրքրության համար»:*

*Ես էլ իմ հերթին համբուրեցի նրան, ասելով «Համոզված եղեք, որ Ձեր խորհուրդը հրաման է ինձ համար»: Նա գլուխս շոյելով հեռացավ:*

*Սպասավորը մի շիշ շամպայն դնելով մեր սեղանին,*

*տասաց «վճարված է»։ Չարենցն էր ուղարկել։*

*Ես երեխա չէի, մեր ուսանողներից ոմանք էլ էին թմրեցուցիչներ օգտագործում, որն այն ժամանակ «հայ կլաս» (բարձր դաս) լինելու ապացույց էր։ Չարենցի խոսքերը փաստում էին, որ ինքը գոհ չէր իրենից, թմրեցուցիչ օգտագործելու համար։ Բայց դա արդեն ոչ միայն սովորություն էր դարձել նրա համար, այլ դարձել էր նաև մարմնի պահանջ։ Նա խոստովանվելով իր դժբախտությունը, աշխատեց հեռու պահել մի հայ երիտասարդի այդ հիվանդությունից։*

*1978թ. այսինքն մոտ 40-50 տարի հետո Վիլյամ Սարոյանը մի գրություն է գրում, որը հրատարակվեց թե հայ թերթերում և թե անգլերեն թերթերում, որտեղ պատմում է իր հանդիպումը Ե. Չարենցի հետ, թե ինչպես նա, իր ներկայությամբ թմրեցուցիչ օգտագործեց և հետո էլ սկսեց խաղալ «Ինտուրիստ»-ի աղջկա փարթամ կրծքերի հետ, որը որպես ուղեկցորդուհի հատկացված էր «անվանի ամերիկյան գրող Սարոյանին»։ Ոչ մի խոսք այն մասին, որ այն ժամանակներում թմրեցուցիչները Ռուսաստանում վաճառվում էին ինչպես Ամերիկայում կոկակոլան։*

*Թերթերի հրատարակիչներն էլ նրանից ոչ մի բացատրություն չէին ուզել, որովհետև գրողը հայ ազգի «պարծանքն է՝ Վիլիամ Սարոյանը» և կամ գուցե տեղյակ չէին։*

*Թե Սարոյանը, թե թերթերի խմբագիրները և թե հայերեն թարգմանիչները չհասկացան, թե ինչ վնաս են հասցնում հայ ժողովրդին ամբողջ աշխարհում։ Ես բանտումն եմ, 60 տոկոսը բանտարկված են թմրեցուցիչներ օգտագործելու կամ վաճառելու պատճառով։*

*Ի՞նչ մտածեցին ընթերցողները, կարդալով Սարոյանի այդ գրությունը, նամանավանդ մեր երիտասարդությունը, որի համար Չարենցը հայ ազգի Սրբերի Սուրբն է։ Չմտա-*

*ծեցի՞ն, որ եթե նա Ամերիկայում լիներ, ապա նրա տեղը բանտն էր լինելու, որպես ոճրագործ։ Ի՞նչ նպատակով է 40–50 տարի հետո գրել այդ եղելությունը։ Ինչո՞ւ, երբ Մոսկվայից վերադարձավ, չգրեց այդ մասին և սպասեց։ Երևի մի նպատակ ուներ բիթլիսցու խելքը։*

*Սպասում էի բանտում, թե կգտնվի մեկը, որ կգրեր նրան մի պատասխան, այս իր որոշ նպատակների համար գրած պատմության համար։ Իզուր սպասեցի, պատասխանող չեղավ։ Պատճառը. ինչպե՞ս քննադատել Սարոյանին։*

*Ենթադրում եմ, որ Չարենցին թմրամոլ ներկայացնելը Սարոյանը դիտավորյալ է արել, որ ընթերցողը մտածի, որ նա Ամերիկայում բանտում կլիներ, ոչ թե ամեն հայի սրտում, որին միայն ինքն է արժանի։*

*Անձնապես ինձ համար Չարենցի մի գրությունը՝ «Ամբոխները խելագարված»-ը, ես չեմ փոխի Սարոյանի բոլոր գրվածքների հետ։ Պատմությունը իր ժամանակին կգնահատի բոլոր հայ գրողների գործերը, անխտիր, ինչ լեզվով էլ գրված լինեն դրանք։*

*Դեռ բոլորովին չէի հանդարտվել Չարենցի մասին գրվածներից, երբ հրապարակ եկավ նրա մեկ ուրիշ խայտառակ գրությունը։ «Տեղեկատու»-ի 1978թ. հունիսի 9-ի համարում, թարգմանությամբ Շաքե Վարսեանի։ Իր «պատահական հանդիպումներ» վերնագրով գրությունում նա գրում է.*

*«...Եվ նա խելացի է վարվում, որովհետև տոմս գնողներից շատերը հայեր էին, բայց ոչ անպայման բիթլիսցիներ, քանի որ բիթլիսցիները չեն սիրում անխելքորեն դես դեն դրամ շպրտել։ Դա հատուկ է Վանի, Մուշի, Սասունի, Տիգրանակերտի և մեկ վեցյակ հայկական այլ քաղաքների նվազ դյուրազգաց մարդկանց»։*

*Ենթադրում էի, որ այս անգամ մեկը կգտնվի այդ նշված վայրերից, որ պատասխան տար նրան։ Այդ վայրե-*

*րում ծնվածներ Ամերիկայում շատ կան գրիչ շարժողներ։ Դժբախտաբար չգտնվեց մեկը, որ մի արժանի պատասխան տար նրան. բայց ինչպե՞ս կարելի է քննադատել Վ. Սարոյանի գրությունները, բոլորը կծիծաղեն։*

*Ուրիշ թերթերում էլ լույս տեսավ նույն գրությունը։ Գրագետները պապանձվել էին։*

*Լինելով Երզրումցի-Կարինցի, անպայման ես էլ, ըստ Սարոյանի «անխելքների և դյուրազգացների» շարքին էի պատկանում, և իրավունքիս մեջ եմ մի քանի խոսք ասելու նրան։ Գրեցի պատասխանը և ուղարկեցի լրագրերին... բայց չտպեցին։*

*Տաճկաստանի քաղաքներում ապրող հայերը բոլոր քաղաքներում ապրող հայերին ածականներ էին կպցրել։ Բոլորը չեմ հիշում, մի քանիսը բերում եմ, սկսելով իմ ծննդավայրից։*

*Էրզրումցիների մասին ասում են՝ «Լախնա փեչեր Արզրումցիք», Կանեցիների մասի՝ «Ճիլ կրծող ուստա կանցիք», Զիֆլիկցիների մասին՝ «էշ վընդող չիֆլիկցիք»։ Բիթլիսցիներին ասում են՝ «սատանա խաբող բիթլիսցիք»։*

*Եվ այս սատանա խաբողը, իր ժամանակին նույնիսկ երկրից փախավ թաքսի հարցով բանտ չընկնելու համար։ Եվ նաև թղթախաղի խաղամոլ էր, ժողովրդական լեզվով՝ ղումարբազ, որն օգտագործելով իր անունը, չատերին է պարտք մնացել՝ չվերադարձված փոխառություններով։ Լսեց արդյո՞ք մի բողոք կամ կարդաց արդյոք մի գրություն իր արարքների մասին։*

*Մենք իրար ճանաչում ենք 1945թվից, բայց ոչ մի խոսք չենք փոխանակել։ Նրան չհաջողվեց խաբել Էրզրումցուն։ Ես գոհ եմ, որ չեմ խաբվել այդ «հանճարից»։*

*1960 թվականին, Սանտա Բարբարայում տեղի ունեցավ «Գրողների կոնֆերանս»։ Որոշված էր հրավիրել մի հայտնի ամերիկացու։ Շնորհիվ իմ դիրքին և իմ հանդեպ տածած*

հարգանքի, ինձ հաջողվեց համոզել վարչությանը, որ Սարոյանին հրավիրեն։ Այդպես էլ արին։ Ես այդ արի ոչ թե Սարոյանի, այլ հայության համար։ Կոնֆերանսի ժամանակ երես-երեսի եկանք, բայց դարձյալ չխոսեցինք։ Պատճառները անձնական են։

Արամ Սարոյանի գրած իմ կենսագրության նախաբանը գրեց Վիլյամ Սարոյանը։ Գիտեմ, դա արեց, որ քեռին ավելի շատ գրքեր վաճառի։ Այս գրությունն էլ, որ բացի բիթլիսցիներից, բոլոր հայերին անխելքներ կոչեց, մնաց առանց պատասխան մինչև այսօր։ Ապրի՛ք տղաք, թող պատմությունը լինի ձեր դատավորը և դրա համար էլ գրում եմ այս, որ մի օր կհրատարակվի։

1973թ. հունվարի 27-ին իմ արածից հետո, Լոս Անջելեսում կազմել էին «Միջազգային Միջկուսակցական Կոմիտե», որի մասին ինձ տեղյակ պահեց նախագահը՝ Դոկ. Թոլիկեանը, որը հատկապես դրա համար եկավ բանտ։ Անդամներն էին՝ Ջորջ Մանդոսեանը, Լ. Սուրմելեանը, Ջո Խաչատուրեանը, Միքայել Հակոբեանը, Միքայել Մինասեանը, Լեօ Կարապետեանը,։ Հետագայում կոմիտեի խորհրդատուներ եղան Ջան Քյուրքչեանը, Քերոբ Առաքելեանը, պր. Ռիչարդ Հովհաննեսյանը, դոկ. Պիեր Հայգ, Արչի Տիգրանեան, Պր. Սուրեն Սարոյան։ Այս տեղեկությունը ինձ շատ ուրախացրեց և գլխավորն այն էր, որ բոլոր կուսակցությունները միացել էին՝ մի հազվագյուտ երևույթ մեր հայկական կյանքում։

Իմ ուրախությունը հայտնեցի նաև գրավոր. «Ուրախ եմ, որ կուսակցությունները միասին են ինձ պաշտպանելու համար»։

Մի քիչ անունը դուրս չեկավ՝ «Հայ Նահատակների Ամերիկյան Բարեկամներ», բայց ռուսական առածն ասում է. «դարենումու կանյու զուբի նե սմոտրյատ», այսինքն «նվեր տված ձիու ատամները չեն նայում»։ Հանձնախումբը

*մի անսպասելի և անգնահատելի նվեր էր ինձ և անունի համար էի նեղվելո՞ւ:*

*Առաջին անձը, որ եկավ տեսակցելու ինձ, փաստաբան Մինասեանն էր: Ամբողջ օրը նա չարչարվել էր ինձ հետ տեսակցության թույլատվություն ստանալու համար, բայց մերժվել էր, քանի որ ես բանտի ադմինիստրացիային նախօրոք չէի տվել որևէ մեկի հետ տեսակցելու ցանկություն: Վերջապես ինձ նամակ էր ուղարկել և շարադրել էր իր ով լինելը: Գրել էր, որ փաստաբան է Լոս Անջելեսում, մի քանի հայկական կազմակերպությունների նախագահ է, մտերիմ է Ալեք անունով միլիոնատիրոջ հետ և էլի ուրիշ բաներ, որ խոստանում էր տեսակցության ժամանակ հայտնել ինձ: Դա երկնքից իջած մանանա թվաց ինձ և ես ցանկություն հայտնեցի տեսակցել իր հետ: Երկար-բարակ խոսելուց հետո իրավունք տվի նրան իրականացնել իմ պաշտպանությունը:*

*Երկու օր հետո եկավ Սանտա Բարբարայի հայտնի փաստաբան Լինդզիի հետ, որը եղավ իմ երկրորդ փաստաբանը: Մինասյանը ասաց, որ դրամի մասին չմտածեմ՝ ամեն ինչ ինքը կկարգադրի:*

*Երբ նորակազմ կոմիտեի 5-6 անդամներն առաջին անգամ եկան բանտ, ձեռքերս էին համբուրում, որն ինձ դուր չէր գալիս: Ես ասացի, որ իմ երկու փաստաբանները նույնպես լինելու են կոմիտեի կազմում և աշխատելու են համատեղ բոլորի հետ: Համաձայնեցին:*

*Ես տեղեկություն չունեի, որ երկու մինասյանները՝ փաստաբանս և Դաշնակ. բյուրոյի գլուխ Մինասյանը «շունն ու կատու» են: Մոնթեբելլոյի հուշարձանը շինելիս, իրար մեղադրել էին հավաքած դրամների սեփականացման մեջ: Ո՞վ է ճիշտ, ինձ հայտնի չէ:*

*Կոմիտեի երկրորդ այցի ժամանակ ես բողոքեցի, որ իրենց հրապարակ հանած կոչը սխալներ ունի. իմ կինը*

*բժշկուհի է և ոչ թե՝ «անցյալում բժշկուհի» և ես երկրաչափ չեմ, այլ ինժեներ կամ ճարտարապետ: Ներկա խելացիներից մեկը սկսեց բացատրել, որ իրենք ճիշտ են: Ժպտացի, որովհետև պաշտպան կոմիտեի կարիք ունեի:*

*Ես խոսակցության ժամանակ հայտնեցի. «ինձ շատ լավ են պաշտպանում բանտում»: Ներկաներից մեկն ասաց. «Իհարկե, կվախնան, որ մենք կը փախցնենք ձեզ»: Զարմացած, մատս ցցելով հարցրի. «Ո՞վ է այս մարդը»: Պարոնը ջղայնացած, գրպանից հանեց մի ստացական ու դնելով առջևս ասաց. «Երեկ ինձ ընտրել են կոմիտեի խորհրդատու և ահա իմ տված փողիս ստացականը, անունս Ջան Քյուրքչեան է»:*

*Լրագրերում կարդացել էի, որ նա գնել է «Մուսա Դաղը» կինոնկար նկարահանելու համար: Ծանոթացանք և մի քանի խրախուսական խոսք ասացի իր ձեռնարկած գործի հաջողության համար:*

*Կուզեմ, որ ուշ թե շուտ, աշխարհը գիտենա, որ այդ գրքի հեղինակը հայ է:*

*Արձակուրդիս և ժամանցի համար Երուսաղեմում էի, «Քինգ Դավիդ» հյուրանոցում էի ապրում և հաճելի ժամանց էի անցկացնում: Մի օր ինձ տեսության եկավ նիհար, տանջված տեսքով, զարգացած բուն իմաստով, մի հայ վարժապետ սարկավագ: 45 տարի է անցել, անունը մոռացել եմ, չնայած թղթերիս մեջ գրված է նրա անունը և կենսագրությունը:*

*Նա մասնակից է եղել Մուսա Դաղի հերոսամարտին և հետագայում գրել է այս գիրքը:*

*Գիտենալով, որ իր անունով հրատարակված գիրքը պիտի չարժանանա պետք եղած ուշադրության, նա կապվում է գերմանացի հայտնի գրողի հետ և ինքը թարգմանելով հայերենից գերմաներեն (գերմաներեն լավ գիտեր), առաջարկում է, որ նա հրատարակի այն Գերմանիայում:*

*Գիրքը հրատարակվում է և մեծ աղմուկ հանում աշխարհում։ Մինչև այսօր էլ այդպես է։*

*Եկել էր ինձ տեսնելու, մի ինչ-որ Պարսկաստանի բարեկամի խորհրդով՝ թե ի՞նչ ընթացք տա։ Այդ հայտնի գերմանական գրողը իսկական հեղինակին խոստացել էր լավ վարձատրել, բայց չէր կատարել իր խոստումը և մի փոքր գումար տալով ցանկացել էր հաշիվը փակել։*

*Ի՞նչ խորհուրդ կարող էի տալ ես, ոչ պայմանագիր կար, ոչ ստորագրություն։ Ճիշտ է, այդ խաբված հեղինակը ուներ իր ձեռքով գրած գերմաներեն և հայերեն պատճեները, բայց չկար հնարավորություն փաստելու, որ հրատարակվածը իր գրվածն է, և իր մոտինն էլ հրատարակված գրքի թարգմանությունը չէ։ Հեղինակի վրդովված ինքնա-սիրությունը մի կողմից և աշխարհին իր անծանոթ լինելը, մյուս կողմից, չէին կարող անժխտելի փաստ համարվել, երբ իր դիմաց ուներ հայտնի անուն և դրամ ունեցող, կարծեմ հրեա մի հեղինակ, որի խիղճը հանգիստ էր, որովհետև կարծում էր, որ իր պարտքը կատարել է մի չնչին գումար վճարելով։*

*Ամեն մի ընթերցողի համար պարզ է, որ օրակարգով այդպիսի մանրամասներ կարող էր գրել Մուսա Դաղի հերոսամարտի մասնակիցը միայն։ Բացի դրանից, գրելու ոճը և ձևը բոլորովին տարբեր էին անխիղճ գերմանացու բոլոր գրություններից։ Խոստացա, որ անհրաժեշտության դեպքում, ես պատրաստ եմ հանդես գալու որպես վկա։ Այդ թալանվածից ոչ պակաս ինքս էի հուզվել։ Նա նույ-նիսկ չէր ցանկանում ինձնից օգնություն ընդունել, որը համեմատած իր կորցրածին չնչին էր։*

*1946-ին Ամերիկա հաստատվելու ժամանակ, մեր դրացի և հայրենակից պր. Արշակ Տիգրանեանը Բեվերլի Հիլզի իր բնակարանում մի ճաշկերույթ էր տվել և հրավիրյալների թվում, իմ և կնոջս հետ, ներկա էին նաև իմ բարեկամ,*

*փաստաբան Ֆերոյանը իր տիկնոջ, և գերմանացի հեղինակի կնոջ հետ։ Ամուսինը մեռել էր։ Կինոնկարի համար «Մուսա Դաղը» արդեն 30 հազար դոլարով ծախված էր ՄՋՄ չարժանկարի ընկերությանը։ Փաստաբան Ֆերոյանը արդեն գիտեր պատմությունը։*

*Ես քաղաքավարի, դիվանագիտական ձևերով սկսեցի գրուցել տիկնոջ հետ և կամաց-կամաց մեջտեղ բերել իմ իմացած տեղեկությունները։ Տիկինը չզարմացավ և ընդունեց, որ ամուսինն այդ գիրքը գրելու համար մի քանի հայերի հետ կապվել էր մանրամասնությունների համար և լիովին վճարել էր նրանց տված տեղեկություն-ների համար։*

*Մինչև այսօր էլ ես համոզված եմ, որ կան անհատներ, որոնք կարող են փաստել, որ «Մուսա Դաղ»-ի հեղինակը այդ գերմանացին չէ, այլ այն հայ գունատ վարժապետ-սարգավակը, որը եկել էր ինձ տեսության։*

*Իմացողները ինչո՞ւ հրապարակ չեն գալիս, որ հեղինակության դափնե պսակը գրավի իր արժանի տեղը, և եթե նույնիսկ գրողը ողջ չէ, գոնե ստանա իր արժանի գնահատականը իր մահից հետո՝ որպես հեղինակ՝ պատմու-թյան համար։*

(Այստեղ մի փոքր կանգ առնենք, քանի որ Յանիկյանի բերված փաստերը նաև ծանր, և կուլ չգնացող մեղադրանքներ են: Այսինքն հայության առաջ հարց է դրվում «Մուսա լեռան 40 օրը» ո՞ւմ գրչին է պատկանում: Մի կողմից այդ գիրքը համաշխարհային ճանաչման արժա-նացրեց Ֆրանց Վերֆելին, մյուս կողմից համաշխարհային հանրությանը ներկայացրեց հայերի օրհասական պայքարը օսմանյան Թուրքիայի վայրագ իշխանությունների դեմ: Մենք պարզապես երկու քարի արանքում ենք հայտնվել՝ ճշմարտության և ազգային շահի: Հայ ժողովուրդը ելնելով իրեն հատուկ բարոյական նկարագրից, ինքը պետք է ընդունի որոշումը՝ ճշմարտությո՞ւն, թե շահ:

Ընթերցողին հիշեցնենք մի քանի մանրամասներ Վերֆելի մասին, որին տեղյակ չէր Յանիկյանը և բացակայում է իր գրվածքներում:

Ֆրանց Վերֆելը ծնվել է 1890թ. սեպտեմբերի 10-ին, Պրագայում և մահացել 1945 թվականի օգոստոսի 26 -ին Բեվերլի Հիլզում՝ Լոս Անջե-լես, բայց համարվում է ավստրիացի գրող, չնայած 1912 թվականին ծառայելով ավստրիական բանակում, բանտ է նետվել պատերազմի մեջ գտնվող իր երկրում պատերազմի դեմ հանդես գալու համար: 1938 թվականին մեկնել է Կալիֆորնիա և նյութական գերազանց միջոցներ ունենալու հաշվին ապրել Բեվերլի Հիլզում:

Իր ողջ կյանքում բանաստեղծություններ և մի քանի պիեսներ է գրել: Մի քանի վեպ է գրել. առաջինը 1920 թվականին՝ «Ոչ թե սպանողը, այլ սպանվողն է մեղավոր» արտառոց վերնագրով:

Ութ տարի հետո, 1928-ին, գրում է «Ուսումնակիցները» վեպը, իսկ երրորդը հենց «Մուսա լեռան 40 օրն է», գրված անհայտներով լի պայմաններում՝ 1932-1933թ.: Երկու հատորով այն թարգմանվել է 1935 թվականին Ե. Տ. Անդրեասյանի կողմից. իսկ կինոնկարը թողարկվել է 1982 թվականին՝ Ջան Քյուրքչյանի ֆինանսավորմամբ: Վ. Վերֆելի վերջին գրվածքը 1944 թվականի գրված պիեսն է: Երախտագետ հայերը, իրենց սովորության համաձայն, Վերֆելի աճյունը տարիներ անց տեղափոխել են Վիեննա:

Հիշատակվում է նաև, որ «40 օրը...» նա գրել է Վիեննայի Մխիթա-րյանների մոտ երեք տարի ուսումնասիրելով հայոց պատմությունը և մշակույթը:

Ինչպես գիտեք, վեպը մի շնչով չի գրվում, պետք է լինեն սևագրության ձեռագրերը, բայց ինչպես երևում է, դրանք բացակայում են, քանի որ Վերֆելը գրվածքը պատրաստի է ստացել Յանիկյանի հիշատակած հայ հեղինակից:

Յանիկյանի փաստերն ու մեղադրանքները շատ հեշտությամբ կբացահայտվեն, եթե ստեղծվի համապատասխան հանձնախումբ

և պատմության մոխիրների միջից հանվի ճշմարտությունը: Անցյալը մեջտեղ բերելուց վախենալը և պատմության դասերից չսովորելն է այսօրվա մեր բոլոր ձախորդությունների պատճառը: ԼՈՒՅՍ)

*Հետաքրքիր է, որ բանտ ինձ այցելող ընտրված կոմիտեի ՀՅԴ-ի ներկայացուցիչ Մայք Մինասյանը ինձ ուճիկ և կնոջս հիվանդանոցի ամսական վճարում առաջարկեց, եթե ես դատարանում հրապարակ գայի որպես դաշնակցական: Իհարկե մերժեցի: Կարծեմ, այդ կուսակցությունը ինձ շնորհակալություն պետք է հայտնի, որովհետև, երբ իրենք ծախվեցին ամերիկյան շահերին, այդ ժամանակ ի՞նչ դրության մեջ էին լինելու, եթե ես առաջարկը ընդունած լինեի:*

*Փաստաբան Մինասյանի և փաստաբան Լինդգիի անուններն եմ հիշել և կարծեմ տեղին է գրել մի քանի տող նրանց մասին, երբ 1978թվին Լոս Անջելեսի ֆեդերալ դատարանում տեղի ունեցավ «հաբիս կորպուսի հիրինգը»:*

*Իմ փաստաբան Մինասյանը հայտնեց դատավորին, որ «Յանիկյան դիտ նոտ էքսպեքթ թու բի ֆաունդ նոթ գիլթի» (Յանիկյանը չէր սպասում, որ իրեն մեղավոր չեն համա-րելու):*

*Դատավարությունից հետո նայելով նրա աչքերի մեջ ասացի. «– Տո ախմախ, դու հա՞յ ես, թե թուրք»: Հիմարը չէր մտածո՞ւմ, որ եթե այդպես էր, ապա էլ ինչո՞ւ էի ես փաստաբան վարձել:*

*Փաստաբան Լինդգին ֆեդերալ դատավորին 1978թ. հայտարարություն արեց, որ 1973 թվին իմ պաշտպանության համար ստեղծված կոմիտեն իրեն հրավիրել է կոմիտեի ժողովին և առաջարկել 10 հազար դոլար, եթե Լինդգին կստանա իմ համաձայնությունը հրաժարվել փաստաբան Ֆորմանից և ընդունել նրա տեղը փաստաբան*

*Գարիին։*

*Ընթերցողը կարդալով այս մասին, կտեսնի թե ի՞նչ կապ կա այս հարցում, որի մասին ես իմացա 6 տարի բանտում լինելուց հետո միայն։*

*Շնորհիվ օտար բարեկամներիս, իմացա, որ տեխասցի փաստաբան Ֆորմանը Ամերիկայում համարվում է քրեական գործերի առաջնակարգ փաստաբան։*

*Մինասյանից իմացա նրա հասցեն և հանձնախմբից խնդրեցի, որ նրան վարձեն։ Կապվել էին նրա հետ և նա եկավ բանտ, ինձ տեսության։ Խոսակցությունից հետո հայտնեց, որ այս գործը ընդհանրապես մեծ գումարի կարիք ունի, բայց ես ցանկանում եմ քեզ պաշտպանել և դրա համար նշանակում եմ միայն 50 հազար։*

*Կոմիտեն պաշտոնապես պայմանագիր գրեց նրա հետ և որպես կանխավճար Ֆորմանին տվեց 10 հազար դոլար։ Բանտի առանձնասենյակում մի կես ժամ խոսելուց հետո հայտնեց, որ անհանգիստ չլինեմ՝ դատը շահելու ենք։*

*Տալով որոշ ցուցումներ մյուս երկու փաստաբաններին և ստանալով գործին վերաբերվող մի քանի գրքեր, նա մեկնեց Տեխաս, իր ուրիշ գործերը կարգի գցելու համար։*

*Իմ պաշտպանությունը ապահովված էր և ես հանգիստ էի։*

*Ինձ տեսակցության էին գալիս, անձանական բարեկամներս, հանձնախմբի անդամները և որոշ անհատներ։ Մի քանի ինձ անծանոթ «վաճառականներ» ինձ նամակ գրեցին, որ ես իրենց տամ իմ համաձայնությունը դրամ հավաքելու համար։ Նույնիսկ հարկ չհամարեցի պատասխանել, որովհետև դա հանձնախմբի կատարելիք գործն էր։ Նրանց չեմ ուզում հիշել, բացառությամբ Բեսոյան ազգանունով ֆրեզնոյաբնակ մի տիպի, որը նույնիսկ պատրաստի տպած «Փաուր Աթորնի» ուղարկեց, որ ստորագրեմ՝ մեկ տարի չեղյալ չկարողանալ հայտարարելու պայմանով։ Բերածը*

*տվի փաստաբան Մինասյանին և ասացի սրա ով լինելը (ամուսնացած է Ավագյան անունով մի հարուստի աղջկա հետ) և խնդրեցի միջոցներ ձեռնարկել դրա դեմ։ Ոչինչ չարեց։*

*Այդ տիպի հետ ծանոթացել էի 1947 թվականին Բեվերլի Հիլզում։ Մի օր հեռախոսով ինձ տեղեկացրին, որ նա հիվանդ պառկած է հոթելում և շատ է խնդրում գնամ իրեն տեսնելու։ Գնացի, նրա հիմնական տունը Ֆրեզ-նոյում էր։ Ասաց, որ մեծ կարիքի մեջ է և մեծ գումար է կորցնելու, եթե 3 հազար դոլար իսկույն չտա մի ընկերության, որն իրականացնում է իր սակարկելու գործերը։ Ֆրեզնոյից չի ուզում, որ տնեցիք չիմանան իր այս վիճակի մասին։ Ամերիկայի հասկացողությամբ ես անփորձ երեխա էի, և դեռ չգիտեի, որ Ամերիկայում մեկին բարև ես տալիս ու ձեռքը թոթվում, նայիր մատներից մեկը չհանի տեղից։*

*Չեքով տվեցի խնդրած գումարը։ Նա էլ մի մուրհակ գրեց երեք ամիս ժամանակով։*

*Ես բացակայեցի երկրից երկար ժամանակով և երբ վերադարձա հեռախոսեցի իր պարտքը վճարելու համար։ Խոստացավ, որոշ ժամանակ քաշքշեց և ես զայրանալով մուրհակը տվի իմ փաստաբան Մարությանին, որն այժմ դատավոր է աշխատում։ Որոշ ժամանակ հետո Մարությանը տեղեկացրեց, որ իր աշխատանքները արդյունք չավին, որովհետև մուրհակը այնպես է գրված, որ ուժի մեջ չէ։ Աշխատեց դատարանով՝ նույն արդյունքը եղավ։ Եվ այդ կեղտոտ սրիկան այդքանից հետո աշխատում էր օգտագործել ինձ իր անձնական շահերի համար։ Բանտից նամակ գրեցի և պահանջեցի պարտքս, օգուտ չունեցավ։*

*Ընդհանրապես ես եկել էի այն եզրակացության, որ շատերը ցանկություն ունեին իմ արարքը օգտագործել իրենց սեփական շահերի համար, և ոչ միայն անհատները։*

*Փաստաբան Ֆորմանի հետ հանձնախմբի պայմանագիր*

*ստորագրելուց երկու շաբաթ հետո, հանձնախմբի որոշ անդամներ սկսեցին ինձ համոզել, որ հրաժարվեմ Ֆորմանից և Գարի անունով մի հայ փաստաբանի հանձնեմ իմ պաշտպանությունը, որը 150 հազար դոլար էր գնահատել իր ծառայությունը: Մի հայ փաստաբան, որը չուներ Ֆորմանի դիրքը, ցանկանում էր 150 հազար կորզել մի հայ պաշտպանելու համար, և այն էլ ազգային հարցում: «Չեմ ուզում նման փաստաբան ունենալ»-հայտարարեցի ես և ինչքան էլ հանձնախումբը համոզում էր ինձ, ես անդրդվելի մնացի և մերժեցի:*

*1978 թվին, ինչպես գրել եմ, «հիրինգի» ժամանակ փաստաբան Լինդզին հայտնեց հանձնախմբի կողմից իրեն Լոս Անջելես կանչելու և 10 հազար դոլար առաջարկելու մասին, եթե ինքը համոզի ինձ փոխել գլխավոր փաստաբանս, Ֆորմանի տեղը Գարիին նշանակելով:*

*Այս խնդրից հետևություն է արվում, որ հանձնախմբի որոշ անդամներ այդ 150 հազարից ակնկալում էին իրենց բաժինը ստանալ: Ովքե՞ր են, չգիտեմ: Անկասկած հանձնախմբի նախագահը գիտե:*

*Լևոն Սուրմելյանն էլ եկավ բանտ տեսության և համոզում էր Գարի անունով փաստաբանին ընդունեմ, ասելով. «Քեզ ի՞նչ, թե որքան է նստելու փաստաբանը, դրամը դու չես տալու, ժողովրդից են հավաքելու»:*

*Սուրմելյանը իմ ընկերը լինելով հանդերձ, նույն օրը «ո՛չ» ստացավ ինձնից. «ես փաստաբան ունեմ և փոխելու ցանկություն չունեմ» ասի նրան:*

*Հարցը դրանով չվերջացավ: Լևոն Երկաթյան անունով մի մարդ, մի շաբաթ առաջ, մի դպրոցի աշակերտների հետ եկել էր ինձ տեսնելու և հետը մի «քեյկ» էր բերել՝ վրան իմ անունը գրած: Տեսակցությունը թույլ տվին հեռվից և իրեն էլ անծանոթ էի: Թխվածքը հեռվից ցույց տվին ինձ և իրենք էլ կերան:*

*Մի քանի օր հետո, երեկոյան առանձնահատուկ թույլտվություն էր ստացել ինձ հետ տեսակցելու, հայտնեց, որ 25 դաշնակցականներ իր տանն են հավաքվել և իրեն հանձնարարել են հանդիպել ինձ և համոզել, Գարիին ընդունեմ որպես փաստաբան՝ Ֆորմանի փոխարեն: Հայտնեց, որ ինքը 45 տարվա կուսակցական է և ընկերները իր վրա պարտք են դրել այդ լուրջ հարցը կարգավորելու: Նույն պատասխանը ստացավ, ինչպես մյուսները...*

*Ես այն ժամանակ միայն կասկածում էի, որ սա մի նպատակ է հետապնդում, բայց Լինդիի 1978-ին, իմ «հիրինգի» ժամանակ ասածը փաստում է, որ որոշ անդամներ մասնակցելու էին իմ անունով հավաքած հանգանակության ծախսելիք գումարներին:*

*Եթե մի օր հրապարակ գան հանձնախմբին ուղարկած իմ նամակները, որոնց պատճենները ես չէի պահում, ապա մի նամակում շատ լավ հիշում եմ, որ գրել էի. «Ես մի կյանք ունեի, նվիրեցի ազգիս: Քանի՞ խիղճ ունեն ձեր անդամները: Իմ դատավարության ավարտին, հանձնախումբը լուծարվելու է, որովհետև չեմ ցանկանում իմ անունն օգտագործելով կթեք հայությանը:*

*Տասնյակ տարիներ առաջ, երբ ժողովուրդը թիթեղներով բնակարաններ չինեց, կազմվեց «Որբերի Օգնության Կոմիտեն», և այդ որբերը այսօր «Քադիլաք» ավտոմեքենաներով են շրջում, բայց հանգանակությունը դեռ չի դադարել»:*

*Լեոն Սուրմելյանը տեսակցության ժամանակ գոռում էր. «Հանձնախումբը անկախ է»: Օգտագործելով իմ անունը, դրամ էին հավաքում աշխարհի չորս կողմից և իմ փաստաբաններին նույնիսկ չէին թողնում մասնակցել հանձնախմբի ժողովներին, չնայած ընդունել էին այդ պայմանը՝ փաստաբանները պիտի մասնակցեն, քանի որ, երբեմն իրենց հրատարակած նյութերը վնասակար էին*

*իմ փաստաբանների համար։ Մի խոսքով այս փաստը ինձ բավականին տհաճություն էր պատճառում։*

*Թող կուսակցականները, որոնք մասնակից եղան և ղեկավարում էին ինձ համար կազմած «Հայ Նահատակների Ամերիկյան Բարեկամները» անվան տակ հանդես եկող կոմիտեն, չկարծեն թե ես չէի հասկացել իրենց նպատակը, երբ ընտրել էին այս անունը։ Նպատակը պարզ էր. Յանիկյանի անունը միշտ չի մնալու, բայց «հայ նահատակները» ավելի երկար են մնալու։ «Ամերիկյան բարեկամները» կարող են օգտագործել այս անունը և ոչ միայն հայ ժողովուրդը կթել, այլ նաև հավանական է զանազան տեղերից «նահատակների» անունը օգտագործելով գումարներ ստանալ և ծախսել ըստ իրենց ցանկության։ Լույսի նման պարզ էր ինձ նրանց նպատակը։*

*Այն ժամանակ ես չէի կարող ասել, բայց հիմա ասում եմ, որ աշխարհը իմանա, թե ի՞նչ հեռատեսությամբ էին գործում կազմակերպողները։ Մեղավոր չեն, որ ստիպեցին իրենց լուծարելու հանձնախումբը, որովհետև «Ամերիկյան շահերը և Թուրքի բարեկամությունը ավելի կարևոր են, քան Յանիկյանի անձը ու Հայ Դատի շահերը»։*

*Ողջույն կուսակցություններին, որ քաջություն ունեցան* ***ՍՏԵՐ ՀՆԱՐԵԼՈՎ, ԻՐԵՆՑ ԿԱԶՄԱԾ, ՄԻՋԱԶԳԱՅԻՆ, ՄԻՋԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԽՈՒՄԲԸ ԹԱՂԵԼ ԱՌԱՆՑ ՊԱՏԱՐԱԳԻ, ՈՐ ԱՇԽԱՐՀԻ ՀԱՅՈՒԹՅՈՒՆԸ ՉԻՄԱՆԱ ՈՒ ԱՐԺԱՆԻՆ ՉՀԱՏՈՒՑԻ ՀԱՅ ԴԱՏԻ ԹՇՆԱՄԻՆԵՐԻՆ։***

*Այդ ազգային «ցեցերը» մոռացել էին, որ պատմությունը ներել չգիտի։ Գրությանս նպատակն է, որ փաստերը չանհետանան նույնիսկ իմ մահից հետո։*

*Այս Գարի անունով փաստաբանից հրաժարվելուց հետո, հանձնախումբը սկսեց լուրեր տարածել, թե Յանիկյանը այդ փաստաբանին չի ուզում, քանի որ նա փոխել է իր հայի անունը և դարձել է Գարի։ Այդ*

անխելքները չգիտեին, որ դա կապված չէ իմ որոշման հետ, որ ես իմ կնոջ հետ ամուսնացել եմ, երբ նա կրում էր ռուսական անուն և վերջապես իմ փաստաբանները օտար անուններ էին կրում: Պատճառը ես նշել եմ հանգամանալից:

Ջինոի բանտ ինձ տեսության եկած ուսանողների խմբից մեկը հարցրեց. «Ճի՞շտ է, որ ես Գարիին չեմ ընդունում անունի պատճառով»: Հարց տվողը ինչ-որ դաշնակցական մեծավորի որդին էր: Ծիծաղեցի և ասացի, որ ինքը տա դրա պատասխանը: Պատմեցի նրան ինչպես այստեղ գրել եմ: Ներողություն խնդրեց. «ինձ սխալ են բացատրել» ասելով: «Ամեն ասածներին մի հավատա և սեփական խելքդ աշխատեցրու»- եղավ իմ պատասխանը նրան:

Մի օր փաստաբան Մինասյանը ֆրանսերեն գրված մի նամակ բերեց որ կարդամ: Նամակը Բեռլինից էր և Մինասյանը չէր կարող կարդալ այն: Նամակը մի փաստաբանից էր, որը լիովին տեղյակ էր Թալիաթի սպանության հետ կապված դատավարության բոլոր մանրամասներին և անց ու դարձին: Ուներ դատավարու-թյունը և խոսացված ճառերը: Առաջարկում էր ձրիաբար օգտակար լինել և նույնիսկ, եթե ցանկանամ, կարող է մասնակցել իմ դատավարությանը նույնպես ձրիաբար: Շատ լավ պատեհություն էր: Մինասյանին առաջարկեցի իսկույն նամակով կամ հեռագրով ընդունել առաջարկը և հրավիրել: Ասաց, որ գրել է, բայց ինձ անհայտ պատճառ-ներով, այս «խելացին» ոչինչ չէր արել այս հարցում, որը շատ օգտակար կլիներ ինձ համար: Նամակի հեղինակը նաև Մինասյանից հարցրել էր, թե ինչպե՞ս կարող է տեսակցություն ունենալ ինձ հետ: Մինասյանը տվել էր Լևոն Երկաթյանի հասցեն ու հեռախոսը: Այսպիսով Մինաս-յանը շատ «հարմար» մարդ էր գտել: Ի՞նչ օգուտ էր ստացել Լևոնը այս մարդուց, չասաց:

*Դատավարության ժամանակ իմ փաստաբանները մի խուսք անգամ չասեցին Բեռլինի՝ 2, և Իտալիայի՝ 1, դաշնակցության տեռորիստների կատարածների մասին, որոնք ազատ էին արձակվել դատական «ժյուրիների» կողմից։ Մի փաստ, որը կարող էր բեկում մտցնել իմ դատական «ժյուրի» անդամների մտածողությունների մեջ, որովհետև խիղճը, ինչպես սիրո զգացմունքը, միևնույնն է համայն մարդկության համար։ Եթե իմ երդվյալ ատենակալները՝ «ժյուրին», իմանային, որ նմանօրինակ դատերում քաղաքակիրթ երկրների «ժյուրիները» անմեղ են ճանաչել մեղադրյալներին, որոնք նույնիսկ օգտակար ոչինչ չեն արել տվյալ երկրների համար, ապա համոզված եմ, որ նրանք մինչև ինձ «գիլտի»՝ մեղավոր է, ասելը, երկու անգամ կմտածեին, նամանավանդ Յանիկյանը Ամերիկայի համար օգտակար է եղել շատ և շատ անգամներ։*

*Ես իմ ապուշ փաստաբաններին ասացի. «Լինդզին հայ չէ և նա պարտավոր չէր իմանալ Բեռլինի և Իտալիայի դատավարությունների մասին, բայց Մինասյանը, որն իրեն ազգային գործիչ է համարում, գիտեր այդ դատավարությունների մասին։ Թե ինչո՞ւ նա այդ հարցը չբարձրացրեց դատարանում... պարզ է ինձ։*

*Հանձնախումբը, չնայած պայմանագիր էր կնքել և խոստումներ էր տվել, խաբեց Ֆորմանին, ասելով՝ դրամ չկա, երբ 60 հազար դոլար կանխիկ կար, այդ մասին նամակով ինձ տեղյակ էր պահել նախագահ Թոլիկյանը գրելով ինձ. «հանգիստ քնիր, Ֆորմանին իր ժամանակին կվճարեն»։*

*Հանձնախմբի թափած ջանքերը՝ մեկուսացնելու փաստաբան Ֆորմանին, ոչ մի արդյունք չէր տալիս, և իմ «պաշտպան» հանձնախումբը հեռագիր տվեց նրան. որ* ***«ԴՐԱՄ ԱՅԼԵՎՍ ՏԱԼ ՉԵՆ ԿԱՐՈՂ, ԻՐ ԿԱՐԻՔԸ ՉՈՒՆԵՆ ԵՎ ՀԱՆՁՆԱԽՈՒՄԲԸ ԼՈՒԾԱՐՎԱԾ Է»***։

*Եվ ի՜նչ ազնվություն Ֆորմանի կողմից. նա ստացած 10 հազար դոլարը վերադարձրեց հանձնախմբին։*

*Ամերիկյան կառավարության ձեռնարկած միջոցները, «**ՀԱՅ ՆԱՀԱՏԱԿՆԵՐԻ ԱՄԵՐԻԿՅԱՆ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ**»-ի աշխատանքներն ու **ՏԱՃԿԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԻԼԻՈՆՆԵՐԸ** տվեցին իրենց արդյունքը, և ինձ մեղավոր գտան ու դատապարտեցին...*

*Սրանով հարցը չվերջացավ։ Եթե հայ անուն կրող հանձնախմբի անդամները ինձ հանգիստ թողնեին ու մոռանային, հավանականություն կար, որ ես չհամարվեի առաջին կարգի մեղավոր։*

*Եվ հայ իրականության կյանքում մեծագույն խայտառակությունը եղավ այն, որ իրեն ինքնալուծարած, իմ պաշտպանության համար ստեղծված այդ հանձնախումբը, կատարեց ամերիկյան կառավարության իրեն տված վերջին հրամանը ու հայտարարեց Սանտա Բարբարայի միակ անգլերեն թերթում, թե. «**ՀԱՄԱՄԻՏ ՉԵՆ ՅԱՆԻԿՅԱՆԻ ԿԱՏԱՐԱԾԻՆ ԵՎ ՀԱՆՁՆԱԽՈՒՄԲԸ ՉԻ ԱՐԴԱՐԱՑՆՈՒՄ ՆՐԱ ԿԱՏԱՐԱԾԸ ՈՒ ՉԻ ՊԱՇՏ-ՊԱՆԵԼՈՒ ՆՐԱՆ**»։*

*Կարդալով այս հատարարությունը Սանտա Բարբարայի անգլիական թերթում, դատավարության ժամանակ լույս տեսած համարում, կնկատեք, որ հայտարարությունը տրված է հետին թվով։*

*Դատախազը այս հայտարարությունը լիովին օգտագործեց ու ապացուցեց երդվյալներին, որ իմ արածը «ոչ մի կապ չունի տաճկական ջարդերի հետ և նույնիսկ իր պաշտպան **ՀԱՅ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ՀՐԱԺԱՐՎՈՒՄ Է ՅԱՆԻԿՅԱՆԻՆ ՊԱՇՏՊԱՆԵԼՈՒՑ**»։*

*Կուզենայի իմանալ այդ բոլոր հայ անուն կրող տաճիկները, իմ դատավարությունից հետո, կարո՞ղ են հանգիստ քնել և կուսակցությունների ղեկավարները «**ԱՄՈԹ**» և*

«ԴԱՎԱՃԱՆ» խոսքերի իմաստը գիտե՞ն։

Տեղեկացա, իբրև թե, ստացած գումարները որոշ գեղջով հետ են վերադարձրել մարդկանց, որոնք իմ փրկության համար փող էին հանգանակել։ Մի քանիսը բոլորովին չէին ստացել և բողոքի նամակներ էին գրել նույնիսկ... ինձ։

Ֆրանսիայից մի տիկին, Արշալույս Բարսեղյան անունով (ԼՈՒՅՍ-ը փնտրում է նրան կամ նրա մասին տեղեկություններ իմացողներին), ոչ միայն բողոքի նամակ էր ուղարկել, այլ անեծքի էր կապել հանձնաժողովի բոլոր անդամներին։ «Նոր Սերունդ»-ի պատվարժան խմբագրությունը այս հարցը դարձրել էր հրատարակության նյութ։

Ես սկզբնական շրջանում, թե ուրախացել էի և թե զարմացել, թե ինչպե՞ս իրար ատող կուսակցությունները միացել էին մի նպատակի համար՝ պաշտպանել հայ ազգի իրավունքները ու պահանջները։ Իրավունք ունեի զարմանալու, որովհետև Ամերիկա գալու օրից, ես տեսել էի իրար ատելու արդյունքը ամեն քայլափոխում, թե եկեղեցիներում և թե ժողովրդական ձեռնարկներում ու թերթերում։ Տարբեր երկրներում տասնյակ տարիներ ապրելով, ես չէի տեսել հայը հայի նկատմամբ նման վերաբերմունք ցուցաբերի։ Եվ այդ անողները կուսակցականներն էին ու իրենց հրատարակությունները։

Առաջին անգամ տաճկահայերին «փունչի» անվանողը Զաքարեա անունով Մամուլյանն էր, Ռուբեն Մամուլյանի հայրը։ Երբ հարցը վերաբերվում էր տաճկահայ գաղթականներին, նա միշտ այդպես էր արտահայտվում և մենակ չէր։ Ստիպված եղա ուրիշների ներկայությամբ նրան զգուշացնել, որ եթե մեկ անգամ էլ լսեմ նրա այդ արտահայտությունը, ապա մեր ծանոթությունը կվերջանա։ Ինձ փորձում էր առանձնացնել, ասելով, որ ես ռուսահայ եմ, քանի որ կրթությունս ստացել եմ Ռուսաստանում։ Բայց

համենայնդեպս այլևս չկոչեց և տաճկահայերի անվանարկումը վերջ գտավ։ Եվ այլ կերպ լինել չէր կարող, քանի որ, այստեղ, Ամերիկայում էլ ազնվագույն մարդիկ կային ինձ թիկունք կանգնող, ինչպես փաստաբան Ֆերոյանը և Ֆրեզնոյի Դաշնակցական թերթի խմբագիր Անդրե Ամուրյանը, մի անկեղծ ու ազնիվ կուսակցական, որը երբեմն ինքն էր կարմրում իր սիրած կուսակցության փոխարեն։ Եթե կուսակցական ղեկավարները մի քիչ ունենային Ամուրյանի, Դարբինյանի, Համո Օհանջանյանի, Մելիք Շահի ազնվությունը, կյանքը մի քիչ հեշտ կլիներ։ Գալիքը փաստեց, որ Հրանտ Սիմոնյանն էլ այդ մարդկանց շարքին է պատկանում։

Չկարծեք թե միայն աշխարհականներն են սփյուռքի կյանքը ճահիճ դարձրել։ Աստծո ծառայողներն էլ հետ չէին մնում և երբեմն գերազանցում էին։

Որպես օրինակ մի դեպք եմ միայն գրելու. Ֆրեզնոյում լուսավորչական կոչված բաժանմունքին պատկանող կուսակցական մի քահանա կարիքի մեջ էր և դիմեց ինձ, որ 300 դոլար փոխառություն տրամադրեմ։ Տվի՝ ասելով. «կտաս երբ կունենաս, չտաս էլ մի բան չէ»։

Անցավ երկու տարի, տեղափոխվել էինք Սանտա Բարբարա, որտեղ շարունակում էի ծրագիրս իրագործել, որովհետև Ֆրեզնոն նպատակիս համար օգտակար չեղավ։

Մի օր հեռախոսով այդ քահանան հայտնեց, որ մեր քաղաքում է, եկել է պտույտի և կցանկանա, որ ես առաջնորդեմ իրեն։

Շատ զբաղված էի և ազատ ժամանակ չունեի։ Ասացի որ չեմ կարող, բայց քեզ կտրամադրեմ իմ լավ բարեկամին և նա ինքը քեզ կընկերակցի և ավելի հաճույք կստանաս քան ինձ հետ, որովհետև նա քեզ նման Աստծուն է ծառայում։

Հետաքրքրվեց, թե ո՞վ է։ Ասացի մի պատվելի է և

անունն էլ Մինասյան է։ «Ի՞նչ, պարոն Գուրգեն, դու այդ պատվելուն ինձ ընկերակցության կառաջարկե՞ս» վրդովվեց նա։ «Այո,–պատասխանեցի, – երկուսով ավելի ընդհանուր շահեր ունենք, քան ես ու դու։ «Գիտե՞ք ինչ, այդ պատվելի կոչվածը բողոքական է և քրիստոնյա չէ, անոնք թուրք են, հայ չեն։ Ինչպե՞ս, դու անոր հետ բարեկամություն ունի՞ս և ինձ էլ որպես ընկերակից կառաջարկե՞ս։ Պարոն Գուրգեն, ես չեմ կարող այդ ընդունել»։

Զսպելով ինձ, որ մի լավ չհայհոյեմ այդ Աստծո ծառային, ասացի. «Լսիր, ես շատ զբաղված եմ և աշխատեցի իմ լավագույնը անել քեզ օգտակար լինելու համար։ Գտիր մեկ ուրիշը, որ քեզ Սանտա Բարբարան ցույց տա։ Իմիջայլոց, եթե պտույտի ես եկել, երևի դրամ ունես, կարո՞ղ ես պարտքդ վճարել, կամ չկարողանալու պատճառը տեղեկացնես»։

Սկսեց «ը...ը...ը» ասել և ես հեռախոսը փակեցի։ Այլևս, ոչ տեսա, ոչ էլ լսեցի այդ իսկական «քրիստոնիային»։ Այս տեսակ վերաբերմունքը քրիստոնյա զանազան տեսակների մեջ նույնն է։ Դրանից հետո Ֆրեզնոյում նա լուր էր տարածել. «Յանիկյանը թուրքացել է»։

Մի քանի անգամ խնդրեցին ելույթ ունենամ Հայ հավաքույթներում։ Ընդունեցի և ելույթ ունեցա։ Դրանցից մեկի ժամանակ, որ նվիրված էր Լոս Անջելեսում անցկացվող Աճեմյան քույրերին կամ բարեգործական նպատակների, ճԱՌԵՑԻ ուրիշների նման։ Մի անգամ քիչ էր մնացել ինձ դուրս գցեին երեկույթից, որովհետև ասել էի. «Չլինեք լավ եկեղեցական կամ կուսակցական, այլ եղեք լավ մարդ, որովհետև լավ կուսակցականը, լավ եկեղեցականը կարող է լինել նաև վատ մարդ, բայց ԼԱՎ մարդը չի կարող ոչ վատ կուսակցական լինել և ոչ էլ վատ եկեղեցական։ Լավ մարդ դաստիարակեք ձեր զավակներին»։

Ինձ հավաքույթից չկարողացան հեռացնել, ինչպես

*պահանջում էին կուսակցականները և եկեղեցու հայրերը, քանի որ թեև ճառախոսն էի և պատվո սեղանին էի նստած տիկնոջս հետ, իրենց նման ազատ էի առանց տոմսակի օգտվելու և ընտրելու իրավունքից, բայց ես երկու տոմսակ էի նախօրոք գնել...*

*Զեմ կարող չգրել մի դեպք, որը շատ հին է, բայց կոմիտեի անարատ հայ անհատները օգտագործեցին իրենց նպատակների համար։*

*Թեհրանում աշխատելիս, երբ կառուցում էի Թեհրան – Ջանջան երկաթուղագիծը, դոկ. Մարտին Դավիդյանը, դոկ. Բալայանը, դոկ. Պողոսյանը, Բաբալյանը և ուրիշները կնոջս միջոցով խնդրել էին, որ մի գործ տամ Եղիշե Իշխանյան անունով մի մարդու։ Նշածս բոլոր բժիշկները կուսակցականներ էին և կնոջս և իմ լավ բարեկամները։ Մերժել չէի կարող։ Ընդունեցի ու մի հարմար պաշտոն տվի։ Նշանակեցի Ջանջանի գլխավոր պահեստի կառավարիչը և լավ ռոճիկ նշանակեցի։ Ոչ ծանոթ էի, ոչ էլ գիտեի ով լինելը, և ոչ էլ հետաքրքրվեցի։*

*Ըստ սովորության, պաշտոնյաների ընտանիքում ծնված երեխային գործատերն էր կնքում, այսինքն կնքահայր լինում։ Իհարկե պետք եղած նվերներով, ինչպես պահան–ջում է կարգը։ Այս Իշխանյանի կինը աղջիկ ունեցավ և ես, որպես գործատեր մնացի կնքահոր պարտականությունների մեջ։*

*Մոսկվայում ուսանելիս, գաղտնիք չէ, որ անարխիստ կուսակցությանն էի պատկանում և ղեկավարներից էի։ Իմ իջխայլոց, ես չեմ փոխվել և մինչև այսօր էլ նույնն եմ մնացել։ Իմ կենսագրության մեջ մանրամասը գրված է դա և չեմ կրկնելու, այլ տալու եմ որոշ համառոտ դրվագներ։ Պարսկահպատակ էի։ Զերբակալվել էի, որպես անարխիստ, հրաշքով ազատվել գնդակահարությունից։ Այստեղ կուզեմ ընդգծել, որ 1978 թվին, հարգելի Հրանտ*

*Սիմոնյանին ուղարկած մի գրության մեջ, իմ բանտից ազատվելու պատմությունը 15 տողով է գրված, որը ճիշտ չէ։ Բանտից ազատվելու պատմությունն ավելի բարդ ու երկար է, և իմ կենսագրության մեջ նկարագրված է տասնյակ էջերով։ Թող ների ինձ պրն. Հրանտ Սիմոնյանը, քանի որ դա արել եմ դիտավորյալ, որ չկրկնեմ կենսագրությանս մեջ գրածս, որը կապ ունի ուրիշների հետ և գլխավորը ԻՐԵՆ գրածս կենսագրությունս ներկայացնելու ցանկությունը չէր։ Նրան գրած նամակս ավելի լուրջ հարցի հետ էր կապված և կապ չուներ իմ կենսագրության հետ։ Հուսով եմ, որ մի օր կստանա իսկականը։*

*Սարատովի պարսկական կոնսուլը բոլշևիկ էր։ 1935 թվին նա վերադարձավ Թեհրան և ես էի որ մեջտեղ հանեցի նրա ով լինելը։ Նա ոչ միայն կոնսուլ էր ու թալանում էր Բաքվից Սարատով փախածներին, այլ և լրտես էր։ Նրան կախեցին Թոփխանա հրապարակում և ես կախաղանից քսան քայլի վրա կանգնած դիտում էի այդ հանցագործին։*

*Երբ Եղիշե Իշխանյանը իմացավ, որ ես ուզում եմ փաստերով ցույց տալ այդ կոնսուլի՝ Աբդուլահման Ալիի ով լինելը և իր արած գործերը, սկսեց ինձ համոզել, որ այդ չանեմ։ Հետագայում պարզվեց, որ ինքն էլ է վարակված կոմունիստական հիվանդությամբ։*

*Պատերազմի ժամանակ Այլները գրավեցին Պարսկաստանը և դա համընկավ ռուսների հյուսիսից ներխուժումին, որոնք գրավեցին Զանջանը, որտեղ մենք էինք աշխատում։ Մեր պահեստը դարձել էր ՉԵԿԱ-ի բաժանմունք։ Այստեղից էր կազմակերպվել Նիկոլայ Ունանովի սպանությունը Թեհրանում և Իրանում կատարված այլ տեռորիստական գործեր։ Մեր պահեստապետը դարձել էր նրանց մարդը։ Ցուցակ էր կազմել, թե ո՞ւմ հաշիվը պետք է մաքրել։ Այս տեղեկությունները ինձ հասնում էին և ես*

իմացա, որ իմ անունն էլ կա այդ ցուցակում։

Ես համարյա գործը վերջացրել էի և Ջանջան չէի գնում։ Ցույց էի տալիս, որ ինձ ոչինչ հայտնի չէ իր արած գործերից և նույնիսկ պաշտոնի բարձրացում կատարեցի, նշանակելով կառավարիչ, իհարկե ավելի բարձր աշխատավարձով։

Գործը ավարտվեց և բոլոր աշխատողներին ազատ արձակեցինք, երեք ամսվա աշխատավարձ, որպես պարգև նախապես միանվագ տալով իրենց։ Եղիշեն դրա կրկնակին ստացավ։ Երբ քաղաք եկավ, նա մի քանի անգամ «սև նամակ» ուղարկեց ինձ։ Բայց մտադրությունը չհաջողվեց անել, քանի որ ես Ամերիկա տեղափոխվեցի, այսինքն, որպես իմ կատարած աշխատանքի դիմաց ինձ արտոնվեց Ամերիկա գալ։ Երկաթգծի կառուցումը ռազմական պատվեր էր, որն ավարտել էի ժամկետից շատ շուտ և Ռուսաստան առաքվող օգնության ուղին վտանգավոր ծովային ճանապարհից շուռ տվել դեպի ապահով երկաթուղի։ Այդ պատճառով փրկվեցին բազմաթիվ զինվորների կյանք, որոնք կարող էին ջրասույզ լինել գերմանական սուզանա-վերից։ Այս մասին մանրամասը կա իմ դատական թղթերում և կենսագրությանս մեջ։

Եղիշե Իշխանյանը շարունակեց իր «բլաք մեյլը», երբ ես Ամերիկայում էի։

Լույս տեսավ իմ առաջին գիրքը՝ «Հուղա Իսկարո-տացու Հաղթանակը», և 1945-ին Փարիզում և հետագայում Ամերիկայում արժանացա Մարկ Տվենի անվան կազմակեր-պության պատվավոր ցման անդամակցության։ Եղիշե Իշխանյանը իր բարեկամ Հովսեփ Ինչյանի հետ մի գիրք են գրում, որով աշխատում են ցույց տալ, որ գրքի հեղինակը ես չեմ, ավել պակաս վիրավորական խոսքերով։ Ուղարկում են իրենց տպածը Ամերիկայում ցրելու և այդ պարտականությունը իր վրա է վերցնում դաշնակցության

*Բոստոնի կոմիտեն։ Այս գրքի երեք օրինակը ես ստացա էֆ.Բի.Այ-ից, իսկ 100 օրինակը ինձ ուղարկեց Ֆրեզնոյի դաշնակցական թերթի խմբագիր Անդրեյ Ամուրյանը, որին ուղարկել էին տարածելու համար։ Այդ ազնիվ դաշնակցականը տեղյակ էր և գիտեր, թե ո՞վ է հեղինակը և ի՞նչ նպատակով է այդ գիրքը հրատարակված։ Հրապարակվեցին իմ երկու գրությունները ևս։*

*Իսկ Իշխանյանը արդեն չափը անցկացնում էր։ Ես որոշեցի պատռել նրա դիմակը, ցույց տալ նրա ով լինելը։ Արդեն տեղյակ էի, որ նա ոչ միայն նախկին դաշնակցական էր, այլ նաև կուսակցության ներկայացուցիչն էր Պարսկաստանում։ Նամակով տեղյակ պահեցի իմ մտադրությունները կուսակցության բյուրոյի անդամ Ռուբեն Դարբինյանին, հարցնելով, արդյո՞ք իմ մերկացումները չեն վնասի կուսակցությանը, եթե դրանք հրապարակ հանեմ։ «Չեմ ուզում մի սրիկայի պատճառով կուսակցությանը վնաս հասնի»- գրել էի ես։*

*Ստացա նրա պատասխան նամակը, որը հայտնում էր ինձ, որ «Եղիշե Իշխանյանը և Հովսեփ Ինչեանը հեռացված են կուսակցությունից որպես բոլշևիկյան լրտես և դուք ազատ եք ձեր տեղեկությունները հայտնել հայությանը, որով չեք վնասի մեր կուսակցությանը։ Շնորհակալություն, որ մեզ տեղյակ պահեցիք եղելությունը։»։*

*Այս նամակից հետո, Ֆրեզնոյի անկուսակցական ՄՇԱԿ թերթում երեք երկար գրություններով պատմեցի Եղիշե Իշխանյանի ով լինելը և կատարած «քաջագործությունները» Թեհրանում։ Հարյուր օրինակ օդային փոստով ուղարկեցի Թեհրան և զանազան տեղեր։ Երբ նա ուզում էր Ամերիկա գալ էֆ.Բի.Այ-ը հետաքրքրվեց նրանով, ինձնից տեղեկություններ պահանջելով, իսկ ես ասացի որ իմ իմացածը բաց գրված է թերթում, իսկ մնացած տեղեկությունների մասին կարող են դաշնակցությանը*

*դիմել։*

*Իսկ իմ դեմ գրված, և Անդրե Ամուրյանին ուղարկված **100** օրինակ գրքերը անձամբ բաժանեցի իմ ծանոթներին։*

*Իմ դատավարության ժամանակ և հետագայում ինձ «պաշտպան» հանձնախմբի «ազնիվ» անդամները մեջտեղ էին բերել այդ գիրքը և օգտագործում էին ինձ վարկաբեկելու համար։*

*Նախ սկսեցին, որ ես Ամերիկա թմրեցուցիչ ներմուծող եմ (դա թելադրել էին թուրքերը) և հետո բոլշևիկների մարդն եմ, հատուկ ուղարկված Ամերիկա։ Ի՞նչ նպատակի համար էր դա, երբ ՍԻԱյՍի և էֆ.Բե.Այ–ը **400** էջ կազմող հետաքննությամբ վերջացրել էին գրությունը «Յանիկյանը կոմունիստ չէ» վերջնական որոշումով (կարդացեք դատական թղթերը)։*

*Աշխատեցին հետո ինձ խելագար ներկայացնել։ Թե դատավարությունը և թե ֆեդերալ դատարանը մերժեցին այդ կարծիքը և գրեցին «ֆանատիկ գաղափարական, իր հայ ժողովրդի ջարդը տաճիկ կառավարության կողմից հիմք են եղել իր կազմած ծրագրի իրագործմանը» (կարդացեք դատական թղթերը)։ Հպարտ եմ, որ գոնե մի կետում ամերիկյան դատարանը արդար է։ (մեջբերում անգլերեն տեքստից գրված գրավոր – **ԼՈՒՅՍ**)։*

*Դատավարությունից հետո փաստաբան Լինդգին եկավ Սանտա Բարբարայի բանտ և պարզեց, որ մենք ունենք վեց կետեր, որով խախտված է իմ մարդկային իրավունքները և իրավունք ունենք բողոքարկելու, քանի որ դատարանը շրջանցել է դրանք և ինձ ներկայացրել որպես հասարակ ոճրագործ։*

*Ինձ հասարակ ոճրագործ էին համարել համաձայն մի հայտարարության, որը հրատարակվել էր Սանտա Բարբարայում տպվող մի անգլիատառ թերթում։ Այդ հայտարարությունը տվել էր ինքն իրեն լուծարքի*

ենթարկած «իմ պաշտպան» հանձնախումբը:

Որոշեցինք, որ պիտի դատավճիռը բողոքարկենք: Ինձ ուղարկեցին Վոկերսֆիլ բանտ՝ Սան Ֆրանցիսկո: Նամակագրությամբ հայտնեցի Լևոն Երկաթյանին և Փոստաճյանին, որ կցանկանայի իմ անունով կազմվի պաշտպան կոմիտե և քանի որ դատը շարունակվում է, դրամահավաք անեն:

Փոստաճյանը դպրոցի կառավարիչ էր և եկավ ինձ տեսության: Որոշեցինք պատրաստել մի գրքույկ դատավարության մասին, իմ կարճ կենսագրությունով՝ երկու լեզվով: Կենսագրությունը հանձն էր առել գրել Թեհրանի դաշնակցական թերթի խմբագիր Ամուրյանը՝ հայերենով, որը ինձ գիտեր 30 տարի և Փոստաճյանը այն պիտի թարգմաներ անգլերեն: Կարգադրեցի կազմել երեք հոգուց կազմված մի ղեկավար մարմին՝ Երկաթյանը, Փոստաճյանը, և մի երրորդ հարմար մարդ, և Երկաթյանը որպես նախագահ: Շատ էին հավանել ծրագիրս և ուրախացած լծվել գործի:

Որոշ ժամանակ անց ինձ տեղափոխեցին Սան Լուիզի «Օբիսպո» բանտը, որ ավելի մոտիկ էր Լոս Անջելեսին:

Գործն առաջ էր գնում մեծ թափով: Ամուրյանը կենսագրությունս գրել էր և Փոստաճյանն էլ թարգմանել էր և պատրաստվում էին տպարան հանձնելու:

Պարզվեց, որ փաստաբան Լինդզին ինձ խաբել էր:

Փաստաբան Լինդզին, փոխանակ վեց կետեր օգտագործեր իմ բեկանման համար, ընտրել էր դրանցից ամենաթույլը և դրա մասին ես իմացա, երբ հրատարակվեց բեկանումների մասին ամսական տեղեկագիրքը:

Հեռախոսով պետք եղած խոսակցությունները ունեցա Լինդզի հետ և հայտնեցի, որ նա այլևս իմ փաստաբանը չէ: Նրան էլ էին հրամայել և նա էլ էր գործերը վարում ըստ կառավարության տեսակետի՝ «Ի՞նչն է ավելի կարևոր.

*Ամերիկայի շահը, թե անհատ Ցանիկյանը» Այս լոզունգը օգտագործվել էր ամենուրեք և բոլորի կողմից:*

*Իմ բողոքը պետք է ձևակերպվեր «Ի՞նչն է կարևոր. Ամերիկյան սահմանադրությունը, թե մի քանի անարժանների հակաօրինական հրամանները»: Պետք էր նոր փաստաբաններ գտնել:*

***5-19-79թ.***

*Իմ օտար բարեկամուհին լուրջ հիվանդ է և խնդրել է, որ իրեն ազատեմ իմ կտակի պարտականություններից: Խոստացել եմ, որ նոտարով հաստատած կտակիս միջից կհանեմ իր անունը և կփոխարինեմ մեկ այլ հայի անունով, որը մյուս օտարի հետ կիրականացնի իմ վերջին կամքը:*

***5-23-79թ.***

*Իմ հրեշտակը (խոսքը իր կնոջ մասին է- **ԼՈՒՅՍ**) հիվանդանոցում գործողության է ենթարկվել: Քաղցկեղ էր, կուրծքը հեռացրել են:*

*Շնորհակալություն բանտի ծառայողներից, այսօր **5-26-1979թ.**, ինձ իրավունք տվեցին բանտի հեռախոսով խոսել իրեն հետ, Սանտա Բարբարայի հոսպիտալում: Բարդություններ կան և մայիսի **29**-ին, երեքշաբթի օրը, նոր գործողություն են նշանակել:*

*Որպեսզի ընդմիշտ պարզ լինի իմ արարքի բուն պատճառը և բուն նպատակը, ես չեմ ցանկանում, որ դուք բավականանաք միայն իմ խոսքերով և դատավարության թղթերով: Իմ բողոքները երկրորդ փաստաբաններիս միջոցով դատարանից-դատարան անցնելով, հասավ մեկինչև երկրի բարձրագույն դատարանը և **1978**թ **76-3904 ԱԱԱ** համարով Լոս Անջելեսում տեղի ունեցավ «հիրինգ»: **1978**թ. նոյեմբերի **2**-ին Ամերիկյան բարձրագույն դատավոր Անդրե Հաուկի բաժանմունքում, Ռ. Կուոնեմ-բերգի մասնակցությամբ, իմ հաբեխ կորպուսը մերժեց և որոշման հրամանում գրել է... (հետևում է*

*ձեռագիր գրված անգլերեն տեքստ–ԼՈՒՅՍ)։*

*ՀՅԴ տեսնելով, որ իմ գործով հետաքրքրվողները մեծ մասամբ կուսակցականներն են, հրամայել էր իր անդամներին ոչ մի աջակցություն ցույց չտալ ինձ։ Երկաթյանը և Փոստաճյանը ստացել էին գրավոր հրաման։ Փոստաճյանը ենթարկվեց իր տերերին և անհետացավ։ Լևոնը սկսեց պայքարել իր իրավունքների համար, որ «Յանիկյանին օգնելը հակակուսակցական գործ չէ» ու շարունակում էր աշխատել, բաժանելով հայության շրջանում իմ անունով կազմված հանձնախմբի դիմումը՝ դրամական օժանդակություն հայթայթելու համար։*

*Երկաթյանը 45 տարի եղել էր ՀՅԴ-ի անդամ և երևի մի արժեք ուներ, որ բյուրոն գրավոր դիմել էր նրան՝ հրաժարվել իմ գործերի հետագա վարույթից, ապա թե ոչ կհեռացվեր կուսակցությունից։*

*Հետաքրքիր դրություն էր ստեղծվել։ Մի կուսակցություն, որ գիշեր ու ցերեկ խոսում էր մեր միլիոնավոր զոհերի մասին, և վրեժ ու հատուցում էր քարոզում կես դարից ավել, հիմա ամեն միջոց ձեռք էր առնում, որ իր անդամները չօգնեն մի հայ անհատի, որ լռության մատնած հայկական հարցը հրապարակ էր հանել մեծ աղմուկով ու դրել մարդկության առաջ։*

*Զարթնեք ձեր քնից, դուք հիմնադիրներ այս կուսակցության ու մահացու գավազանով քանդեք այս որջը, որոնք նստած իրենց տաք բազկաթոռներում, ոչ միայն իրենք են դավաճանում թե գաղափարին և թե կանոնադրությանը, այլ աշխատում են, որ շարքայիններն էլ իրենց նմանվեն։ Ես երբեք դաշնակցական չեմ եղել, բայց կռվել եմ Դրոյի կողքին։ Մեծ եղբայրս՝ Սուրենն էր թունդ դաշնակցական և դեռ 1919 թվականին դրա համար գնդակահարվեց Կրասնոդարում։ Քննեք ձեր հաշվեմատյանները և կտեսնեք, որ մի քանի տասնյակ հազար ռուբլիներ*

*դուք ստացել եք Յանիկյաններից՝ Կարսում, Թիֆլիսում, Ռոստովում և Իրանում: Քանի տասնյակ դաշնակցականներ իմ շնորհիվ այսօր ապրում են Պարսկաստանում և ուրիշ երկրներում, որպես ունևորներ:*

*Լսե՛ք դուք, «Ղեկավար Մարմին», կես դարից ավելի դուք կծեցիք հայ ժողովրդին, խոստանալով ամեն ինչ, բայց չտալով ոչինչ: Բայց մի անհատ Յանիկյան իր միլիոնները ծախսելով հրաշք կատարեց: Ինչո՞ւ եք ուզում քայքայել ձեր շարքայինների ներսում բարոյական հիմքը և նրանց ազգային զգացմունքները:*

*Ինչո՞ւ եք աշխատում սպանել նրանց հոգում սերը դեպի իրենց հայրենիքը և ցեղակիցը: Գիտեիք, եթե Յանիկյանը կարողացավ անկարելին իրագործել, նա կարող է և հետևանքը ձևավորել նույնիսկ իր մահով, շարունակելով իր ծրագիրը:*

*Եթե ես արժանի չե՞ի ոչ մի օգնության, ապա ինչո՞ւ բյուրոյի կողմից ինձ առաջարկվեց հրապարակ գամ որպես ՀՅԴ-ի անդամ՝ ինձ ռոճիկ և կնոջս հիվանդանոցի վճարումներ առաջարկելով:*

*Քամին ո՞ր կողմից սկսեց փչել, որ դուք փոխեցիք ձեր առագաստների դիրքը: Ո՞վ հրամայեց, որ դուք լուծարեք, ձեր իսկ կամքով ստեղծած ինձ պաշտպանելու հանձնախումբը: Լսե՛ք ՀՅԴ գլխավոր ղեկավարներ, ինձ հայտնի է այն միջոցները, որով դուք ազատվում եք ձեր ոխերիմ թշնամիներից, դա տեռորն է: Ես վախեցողներից չեմ: Նախ և երկրորդ, ես հասա իմ նպատակին և կատարեցի իմ ընդունած որոշումը և այս աշխարհում ես անելիք չունեմ, բացի հրճվանքով նայել ու ուրախանալ, որ ձեր շարքային կոչվածները, որոնց դուք ոչխարների տեղ եք դնում, հետզհետե աչքերը բացվում են և տեսնում են, որ տարիների ընթացքում դուք նրանց խաբել եք և միայն անդամական դրամներ հավաքել:*

*Այս շարքայինները իմ հարազատներն են։ Մինչև այսօր ՀՅԴ կենտրոնի մեր դատի լռելու պատճառը նրանք չեն եղել այլ դուք, որ մեծ քաղաքականություն եք իբրև վարում։*

*Դուք չկարողացաք ազգի, մանավանդ երիտասարդության զարկերակը գտնել և այդ է կարևորը։ Ձեր հնացած տեսակետները ու աշխատելու ձիրքը հնադարյան են, լավ Աֆրիկայի համար։*

*Դուք հետ եք մնացել այսօրվա կյանքի պահանջներից, ինքներդ զգում եք, և գիտեք, բայց ինքնասիրություն եք խաղում, իսկ հայ ազգի պահանջների հարցում ինքնասիրությունը գոյություն ունենալ չի կարող։ Ձեր ՀՅԴ կենտրոնական բյուրոն արդեն չափը անցել է, կրակի հետ մի խաղաք։ Ձեռներդ կայրեք։ Ես ավելի գիտեմ, քան դուք կարծում եք։ Դուք ձեզ երևակայեցիք, որ լիազորված եք հայ ազգի կողմից լինել նրա պահանջների լիազորը, տերը։ Որտեղից դուք ստեղծեցիք այդ մենաշնորհը։ Ձեզ ո՞վ իրավունք տվավ, որ դուք Ամերիկային ներկայացուցիչ Մոմճեանին, որը պաշտպանում էր ազգի շահերը միացյալ ազգերի ժողովում, ասել, թե նա չխառնվի հայ դատի հարցերին, որովհետև դա հայ կուսակցության մենաշնորհն է։*

*Ի՞նչ է, ցնդե՞լ եք, թե վիրավորված գազանի նման չգիտեք ինչ անել, երբ ձեր «դղյակը քանդվում է»։Հայ ազգը բախտ ունեցավ, որ գտնվեց Հրանդը (խոսքը հավանաբար Հրանտ Սիմոնյանի մասին է, որը ԼՈՒՅՍ-ին է տրամադրել Ցանիկյանի Հիշողությունների տեքստերը), ձեր նախկին ղեկավարներից մեկը, որը հրապարակավ ասաց Մոմճեանին. «Հայ դատը պատկանում է հայ ժողովրդին և ոչ թե կուսակցությանը։ Միք ստիպի ինձ տեղեկացնել ազգին դեպքեր, որ դուք չգիտեք, որոնք կփաստեն ձեր կուսակցության տված վնասը հայ ազգին։*

*Իմ անունով ստացված գումարները, որ պիտի ծախսեիք իմ պաշտպանության համար, հետ ուղարկեցիք «Յանիկյանի արածը անձնական էր և չէր ստացել մեր իրավունքը»։*

*Խելացիներ, ո՞վ եք դուք, որ ես ձեզանից իրավունք խնդրեի։ Ես կազմակերպեցի ու անհատի պատերազմ հայտարարեցի և եթե դուք մի քիչ տրամաբանություն ունենայիք, շնորհակալություն պետք է ասեիք ու փառաբանելով ինձ՝ գործի լծվեիք դուք և մնացած կուսակցությունները, բաժանված եկեղեցիները։*

*Հայ անհատն էր, որ անկուսակցական լինելով աշխատեց միացնել հայու զավակներին սփյուռքում, որ միաբերան իրենց իրավունքները պահանջեն։ Սկզբնական քայլերը կարծես այդ ուղղությամբ էին արվում,...բայց... հրաման եկավ, որտեղի՞ց, դուք ինձանից ավելի լավ գիտեք և «Ամերիկյան ձեր կազմած հանձնախումբը» թաղվեց առանց տիրացուի։*

*Ես իմ արածիս արժեքը գիտեմ, դուք չէ որ պիտի գնահատեք այն, այլ պատմությունը, որ ձեզ էլ չի մոռանալու։*

*Ազատ աշխարհում դուք ինձանից լավ գիտեք, որ* ***ԱՆՀԱՏԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՈՉ ՄԻԱՅՆ ՀՐԱՊԱՐԱԿ Է ԵԿԵԼ,*** *այլ իր արմատները այնքան խորն են, որ* ***ԴՈՒՔ ԶԱՐՄԱՆՈՒՄ ԵՔ***։

*Սկզբնական շրջանում դուք չհավատացիք և հետո սկսեցիք դիվանագիտություն խաղալ՝ թե ովքե՞ր են նրանք։ Եվ ամաչում եմ գրել, որ նույնիսկ պատրաստ էիք ուրախանալու, եթե նրանք իրենց գործունեության ժամանակ անհաջողություն ունենային։*

*Կատաղությունից դուք չգիտեիք ինչ անել։ Եթե ազատության մեջ լինեի, հավանականություն կար, որ ինձ համար մահավճիռ արձակեիք... Հրամայեցիք ձեր բոլոր*

*թերթերին, որ մոռանան իմ անունը և երբեք չհիշեն, նույնիսկ վճարումով իմ հայտարարությունները չընդունեն։ Ծիծաղելի է, եթե ցավալի չլիներ։*

*Միթե՞ խղճի խայթ չունեցաք, երբ հրամայեցիք ձեզ նման մի անխիղճ մարդու, որ չաբաթներ առաջ լծված ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՈՒ ՄԻՋԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ. ԻՆՁ ՊԱՇՏՊԱՆԵԼՈՒ ԿՈՄԻՏԵԻ ԱՆՈՒՆԻՑ, իմ առաջին դատավարության առաջին օրը, Սանտա Բարբարայի անգլիատառ միակ թերթում հայտարարություն տա և վճարի այդ «աքանչելի» հայտարարությանը, այս բովանդակությամբ. «Համաձայն չենք Յանիկյանի արարքին և չենք պաշտպանելու»։*

*Խելացիներ, չաբաթներ առաջ լուծարված հանձնախմբի անունից հայտարարություն տալը ԿԵՂԾԻՔ է, իսկ ձեր արածը ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ու դավաճանություն Հայ Դատին։ Եվ գիտե՞ք, որ ձեր տված հայտարարությունը գլխավոր փաստը եղավ ինձ ցմահ դատապարտելուն։*

*Զգարմանաք, որ գրելու եմ չատ փաստեր, որոնք վար են առնելու ձեր Հայ դատին ծառայողի դիմակը, որ ոչ միայն ազգս տեսնի ձեր իսկական դեմքը, այլ և աչխարհը։ Ձեր անօրինական գործերով նսեմացնում եք անցյալի փառահեղ գործերը։ Ձեր չարքայլինները չգիտեն, որ 1977-ին, երբ երկիրը հալածում էր իր սեփական պարսկական չահին, դուք էիք, որ կազմակերպել էիք ձրիաբար Վաչինգտոն գնացող խմբեր, հյուրանոցով, ծախսերով և այլն, որ այս մարդիկ դիմավորեն այդ մարդուն և «Բարի գալուստ» գոռային նրան, դեմ կանգնելով «Կորչի չահը» գոռացող ուսանողների խմբերին։*

*Ես կասկած չունեմ, որ Իրանի մեր հարազատները, պիտի զգան այս անխելք արարքը, որի համար վճարվել էին դոլարով։ Ինչ է սա՞, քաղաքականություն, թե ախմա-*

*խութիւն։*

*Տարիներ են անցնում և Ամերիկայի մեջ հայ կուսակցությունները պայքարում են միմյանց դեմ, պատերազմի դաշտ դարձնելով սփյուռքը։ Եկեղեցիները անմաս չեն այդ պայքարից, որպես անհաշտ թշնամիներ։ Ժողովուրդը հետևում է իր առաջնորդներին, որոնք ոչ միայն չէին աշխատում նրանց բացատրել, որ բոլորն էլ **ՀԱՅԵՐ** են ու **ՄԻ ՑԵՂԻ** պատկանող, այլև **ԱԶԳԻ** շահերը և Հայ դատի շահերը չէին ընդհանրացրել սփյուռքի միասնականությամբ։*

*Կարինում մի հարուստ ընտանիք կար, որի երկու եղբայրները մշտական մրցության մեջ էին իրար հետ։ Սովորություն ունեին առավոտյան գործի գնալիս գինետուն մտնել և «ռախի մը կոնծել»։ Վերջում եկող եղբայրը հարցնում էր գինետան տիրոջը «քանի հատ է խմել եղբայրս այսօր» և եթե իմանում էր հաշիվը, ապա մեկով միշտ գերազանցում էր նրան…*

*Թերթեք վերջին տասնեակ տարիների կուսակցական թերթերը և բացի վիճաբանությունից ու իրար հայհոյելուց ոչինչ չեք գտնի։ Պիտի ուրախությամբ խոստովանեմ, որ իմ կատարածից մեկ ամիս հետո կուսակցությունների թերթերը շատ սիրալիր էին և չէին վիճում իրար հետ և գրած խմբագրականներն էլ միևնույն երգն էին երգում։ Այս ուրախալի երևույթը մեկ-երկու ամիս տևեց, որից հետո առաջվա պատերազմը սկսվեց,*

*Երբեմն վիճում էին այնպիսի բաների շուրջ, որ ծիծաղելի էր դառնում։ Իմ գրություններից մեկում գրել էի, որ «վիճում են, թե Հերոս Անդրանիկի ձիու պոչը կարճ էր, թե երկար»։*

*Համերաշխության ոչ մի նշույլ։ Երբ Ռամկավար կուսակցության ղեկավարներից մեկը՝ Ա. Անդրասեան, լույս է հանում մի գիրք, որտեղ պարզ գրում է. «իրենց կուսակ-*

ցութեան հիմնադրութիւնից հետո, իրենք միակ իսկական, հայ ազգի պաշտպաններն են եղել և մյուս կուսակցութիւնները միշտ դավաճանել են ազգին և մինչև այսօր էլ դավաճանում են»։ Ի՞նչ համերաշխութեան մասին կարելի է խոսել, սկսվում է գրիչների մենամարտը, որի արդյունքը լինում է ատելութիւն դեպի գրողը և նրա հետնորդներին։

Իմ դատավարութեան հետ կապված՝ երկու կուսակցութիւններն էլ դավաճանեցին հայ ժողովրդի շահերին, որը ես ըստ իմ սովորութեան պարզ ու փաստերով, գրավոր կերպով հայտնեցի Սփյուռքին։ Բայց Սփյուռքը, ի՞նչ Սփյուռք, դա մի կատարյալ ճահիճ է, որտեղ մոծակները բույն են դրել և այդ ճահճի հեղինակները մեր հայկական կուսակցութիւններն են և քրիստոնեական սիրով լցված եկեղեցասերների բազմութիւնը, որը ստանում է հրահանգներ իր առաջնորդներից։

Մենք ունենք արժանի կրոնական առաջնորդներ և նմանապես ունենք շատ անարժաններ։ Հայտնի է, որ բաժանված եկեղեցիների առաջնորդների գործունեութիւնը նույնպես ղեկավարվում է կուսակցական բյուրոներից և հրահանգները լինում են համաձայն փչող քամու։

Ինձ համար հատկապես ծանր է հիշել Արևմտյան Թեմի առաջնորդ Գեր. Տ. Վ. Արք. Հովսեփյան անունը, և նա երբեւիցե կարժանանա իմ կողմից համապատասխան վերաբերմունքի։

Շատ ծանր հիվանդ էի Սան Լուիս Օբիսպոյի հիվանդանոցում։ Ենթադրում էին, որ բաժանվելու եմ այս աշխարհից։ Մի հայ բանտարկյալ աշխատում էր այդ հիվանդանոցում և այս հայը աշխատում էր ամեն կերպ ինձ օգտակար լինել իր ազնիվ վերաբերմունքով, նաև պատմելով հիվանդանոցի մարդկանց իմ ով լինելը և բանտարկութեանս պատճառը։ Նրա շնորհիվ ես վայելում էի հիվանդանոցի անձնակազմի հարգանքը՝ սկսած բժիշկ-

*ներից մինչև հատակ լվացողները: Այս հայը աշխատում էր հիվանդանոցի դեղատանը՝ որպես դեղագործ: Իր ասելով ունևոր էր, ուներ շատ այցելուներ, որոնք ես չունեի: Նրան տեսության էր գալիս վերոհիշյալ կրոնավորը, 200 մղոն վարելով ավտոմեքենան:*

*Առանց ինձնից թույլատվություն ստանալու, իր անձնական ցանկություններով առաջնորդված, այս բարի հայը իր ցանկությունը հայտնում է արքեպիսկոպոսին. «Յանիկյանը բանտի հիվանդանոցում է, ծանր հիվանդ է և այցելող չունի: Ես վերցրել եմ բանտի կառավարիչից իրավունք և մենք երկուսով այցելենք Յանիկյանին»:*

*Ի՜նչ հրաշալի վերաբերմունք այս լավ հայից, ուղղված ինձ:*

*«Ի՞նչ Յանիկյան, այդ ո՞ր Յանիկյանը, Սանտա Բարբարայի՞, որ երկու մարդ է սպանել, ո՛չ, ես չեմ կարող նրան այցելել, նա մարդասպան է և իմ դիրքը թույլ չի տալիս ոճրագործին տեսության գնալ»:*

*Այդ ագնիվ հայը եկավ ու լացով պատմեց իր ցանկությունը և արդյունքը:*

*Շնորհակալություն ազնիվ ՀԱՅԻՆ:*

*Թող իմանա կրոնքի ղեկավարը, որ ինձ «ոճրագործ» անվանողը չի սիրվելու, Էջմիածինը պիտի իմանա:*

*Եթե Սփյուռքի մեջ գոյություն ունեն այսպիսի առաջնորդներ, ի՞նչ միասնության մասին կարելի է խոսել:*

*ՀՅԴ գլխավոր բյուրոն, կարծեմ երկրորդ նամակով տեղեկացրել էր Լ. Երկաթյանին, որ կհեռացնեն կուսակցությունից, եթե նա շարունակի օգնել ինձ:*

*Արդեն զզված էի կուսակցությունների խայտառակ արարքներից և որոշել էի մի պարզ նամակ գրել իրենց: Լևոնը գիտեր իմ ցանկությունը և մոտավոր պարունակությունը: Համոզում էր այդ չանել և մի երկու ամիս նամակս ձգձգեց: Մի տեսակցության ժամանակ Սան Լուիզ Օբիսպո*

եկավ ինձ անծանոթ հայ՝ Շվեյցարիայից: Այս անծանոթը պարզվեց մեծ մարդ էր և դիմելով Լևոնին ասաց «Ապրիս Լևոն, շարունակիր մի երկու ամիս ևս, մինչև տեսնենք ինչ որոշում ենք ունենալու բյուրոյում Ցանիկյանի հարցում»:

Այս գրեցի՝ ընթերցողը գիտենա, որ ՀՅԴ բյուրոն զբաղված է իմ անձիս վերաբերյալ «դիրքորոշում կայացնելով»: Նամակ գրեցի և տվի Լևոնին՝ ուղարկելու, չէր ուղարկել: Ես ուրիշի միջոցով ուղարկեցի և լույս տեսավ համառոտ կերպով Բեյրութի «Սփյուռք» թերթում: Լևոնը իհարկե ջղայնացել էր և հայտնեց, որ բյուրոն չէր սիրել ու զայրացել էր և նամակս ազդել էր իր դիրքորոշումների ժամանակ:

Նամակում գրել էի որոշ պատմական ճշմարտություններ և զարմանք էի հայտնել, որ այդ բոլորից հետո դաշնակցությունը արգելում է իր անդամներին և թերթերին Ցանիկյանի անունը գործածել:

Պետք է խոստովանել, որ ամեն տեղ ուր գնում է Լևոնը «Անհատական պատերազմի» գաղափարով, բջիջներ կազմակերպելու և դրամական օգնություն ստանալու, նրան երիտասարդությունը ընդունում էր գրկաբաց: Հանդիպումների մասին նամակով գրում էր ինձ և ես հպարտ էի մանավանդ, երբ Լևոնը նրանց կողմից ջերմագին համբույրներ էր հղում:

Միթե՞ հպարտանալու չէ, որ հեռավոր Բեյրութից երիտասարդ հայուհին հատկապես եկել էր Ամերիկա, որ փաթաթվի ծերունի Ցանիկյանին ու համբուրելով, արցունքոտ աչքերով հայտնի. «Կարժե Ամերիկա գալ, նույնիսկ միայն տեսնելու ու համբուրելու ազգի Ցանիկյանին, ես բախտավոր եմ այս րոպեիս Ցանիկյան Ջան, դու չգիտես, թե ինչ արիր...»:

Անհաշիվ տեսակցությունները անհատների, երիտաս-

*արդ խմբերի և ինձնից էլ հասակավորների հետ, փաստում էին, որ ես հասել եմ իմ նպատակին և իմ կոչը «Բավ է որքան հավատացինք, բավ է որքան խաբվեցինք, եկել է ժամանակը, որ մենք հայտնենք մարդկությանը, որ այլևս լռելու ու համբերելու ցանկություն չունենք», տեղ էր հասել, ոտքի հանելով մատաղ սերունդը։*

*Քանի քանի անգամներ դատախազը դիմել է դատավորին, որ արգելեն ինձ խոսել՝ «Թող դատական Թղթերը ասեն», ասելով, բայց դատավորը մերժել է, ասելով՝ նա իր իրավունքի մեջ է։*

*Նույնիսկ փաստաբաններս զարմացել էին, որ 6 օր անընդհատ հարցաքննվող մեղադրյալի խոսքը կազմում է ամբողջ հարցաքնության ժամանակի 80 տոկոսը։ Ես ստիպված էի պատմական դաս տալ ոչ միայն իմ փաստաբաններին, դատախազին և ոչինչից տեղյակ 12 ընտրյալ ատենակալներին, այլև դատավորին, որը կարծեմ ցանկանում էր լսել մի պատմություն, որից անտեղյակ էր։*

*Պատի վրա կախված էր իմ ձեռքով նկարած քարտեզը, որի վրա ցուցափայտով ցույց էի տալիս այն վայրերը, որոնց մասին խոսում էի։ Երբ հիշում եմ, ծիծաղս է գալիս, որոհետև նմանվում էի մի վարժապետի, որը պատմության դաս է տալիս լեփ լեցուն լսարանին։*

*Դասախոսությունը հասավ իր գագաթնակետին, երբ ես սկսեցի բացատրել տաճիկ կոչված ժողովրդի առաջացումը, որն այսօր ապրում է իմ հայրենիքում։*

*Հետագայում հնարավորություն ունեի իմ կարդացած դասախոխսությունը գրավոր տեքստով նորից ընթերցել, քանի որ ամեն խոսացածներս գրվում էր և հանձնվում իմ փաստաբաններին։ Դրանք տրվում էին դատավորին, դատախազին և Թուրքական կառավարության ներկայացուցիչներին, որոնք հատուկ վճարումով ստացել էին դրանք ունենալու արտոնությունը։*

*Մի քանի տող իմ «դասախոսությունից, որը 8 թերթ էր դատական թղթերում։*

*«Ասիական տափաստաններում թափառող մոնղոլական ցեղին պատկանող կիսավայրենի թափառականները, որոնք ապրում էին թալանով ու կողոպուտով, չափ վարժ ձիավարներ էին և երկար սուր էին օգտագործում։ Չինացիք հոգնել էին նրանց հարձակումներից և կառուցել էին Չինական պարիսպը, որ այսօր աշխարհի զբոսաշրջիկների սիրած վայրն է։*

*Մի հարձակման ժամանակ պարիսպի պաշտպանները սկսեցին տուփեր թափել հարձակվող մոնղոլների վրա, որոնք պայթում էին։ Չինացին գտել էր վառոդի գաղտնիքը։ Մոնղոլները փախան, իրենց հետ տանելով մի քանի չպայթած տուփեր, հասկացան գաղտնիքը և սկսեցին իրենք օգտագործել։ Եվ բոլորիդ հայտնի Չինգիզ Խանը մեռավ և իր գրաված տարածքները բաժանեց երկու մասի՝ տղայի և Թեմուրլան զորավարի միջև։ Թեմուրլանի մասին կարող եք կարդալ պատմության գրքերում, որտեղ նա և իր զինվորները նկարագրված են մարդկային արյուն խմողներ, որպեսզի առողջ մնան։ Որտեղի՞ց գիտեին այդ վայրենիները արյան մեջ մտնող հեմոգլոբինի մասին, երբ հետագայում մարդիկ նույն եղանակով անասունների արյունից պատրաստված բաղադրությունները տալիս էին թուլացած մարդկանց…*

*Այստեղ դատախազը բողոքում է, որ սա դատարան է և ոչ թե դպրոց և դատարանը ցանկություն չունի Ցանիկյանի դասախոսությունը լսելու։ Իմ փաստաբանները պաշտպանում են ինձ և դատավորը տալիս է ևս 10 րոպե ժամանակ, որ ես վերջացնեմ իմ այդ օրվա ելույթը։ Ես համաձայնվում եմ, քանի որ ջրով մաքրել եմ կոկորդս, որովհետև բարձր ձայնով էի խոսում, որ ամբողջ սրահը լսեր։*

*...Այդ Թեմուրլանը մտել է պատմության մեջ, որ ասիական տափաստաններում ոչնչացնում է մի ուրիշ Թափառական ցեղ և նրանց կտրված 50 հազար գլուխներով մի բուրգ է շինում և ամբողջ գիշեր նրանց արյունը խմելով ու շուրջը պարելով տոնում է կատարած հաղթանակը, -եթե չեք հավատում, գնացեք գրադարան և պահանջեք այս գիրքը և կարդացեք։*

*Եվ գրեցի գրատախտակի վրա գրքի անունը և էջը։*

*Այդ Թեմերլանը իր արշավանքները ուղղեց դեպի հարավ ու արյունով ծածկեց ամբողջ երկիրը մինչև պարսկական ծով։ Նրա զորավարներից մեկը անցնելով իմ հայրենիքի վրայով կրակի և սրի մատնեց իմ ժ ողովրդին և հասավ փոքր Ասիա, որն այդ ժամանակ մեր դաշնակից Բյուզանդիոն երկիրն էր։ Նրանք հաղթեցին նաև Բյուզան-դիոնին և հիմք դրեցին ապագա Օսմանյան կայսրության։ Այս պատերազմը մարդկության հայտնի է Մանազկերտի պատերազմ անունով։ Եվ 1071 թվականին (գրեցի մեծ թվերով գրատախտակի վրա) մարդկության համար դժբախտություն կատարվեց։ Մինչ այդ թվականը ոչ մի մոնղոլ չէր ապրում այդ հողերի վրա։ Այդ թվականից սկսվեց Օթոմանյան բռնակալությունը, որն է Մոնղոլական բռնակալություն աշխարհի այս մասում։*

*Այսօր տաճիկ կառավարությունը հայտնում է, որ ինքը տիրանում է իր պապենական հողերին։ Նրա պապենական հողերը Ասիական տափաստաններում են, այսօրվա նրանց երկրի մի մասը պատկանում է հայ ազգին, մյուս մասն էլ ուրիշ ազգերին, որտեղ կան հազարավոր տարիների փաստող կոթողներ։*

*Ես՝ անհատ Ցանիկյանս, պատերազմ հայտարարելով տաճիկ կառավարությանը, պահանջում եմ մեր հողերը։*

*Աշխատելով ազատվել իսկական տիրոջից, այդ վայրենիները, որոնց մարդկությունը տաճիկ կառավարություն*

է կոչում, անխիղճ կերպով ջարդեցին երկու միլիոն իմ հարազատներին, բռնաբարեցին 10 տարեկան դեղջուկ-ներին։ Ես վրեժի համար չէ, որ ոչնչացրի չարիքները, ի՞նչ վրեժ։ Ես նրանցով վառեցի ջահը, որ լուսավորվի աշխարհը, որ խավարը անհետանա և մարդկությունը տեսնի իրողությունը ու ստիպի ոճրագործ գազանին տա մեզանից գողացածը։

– Ես վերջացրի ձերդ գերազանցություն, –դիմեցի ես դատավորին։

Սրբելով թաշկինակով քրտնած ճակատս ցած իջա։ Լսվում էին խեղդված լացի ձայներ։ Դատավորը փակեց նիստը կես ժամով։

Գրատախտակի վրա գրածս 1071 թիվը մնաց մինչև դատավարության վերջը։

Քանի որ իմ դատավարության համար հանգանակած դրամի մասին շատ խոսակցություններ կան, ուստի հարկ եմ համարում այդ հարցին անդրադառնալ մի կարճ բացատրությունով։

Լինելով բավականին ունևոր ընտանիքի զավակ, ես փոքրուց սովորել եմ դրամը ծախսել տեղին և անտեղին։ Հետագայում, Պարսկաստանում, բացի անուն վաստակելուց նաև մեծ դրամի տեր դարձա։ Երբ ես և կինս որոշեցինք իրագործել մեր համատեղ ծրագիրը, մեր կարողությունը 3 միլիոնի էր հասնում, և այդ փողերը գտնվում էին զանազան բանկերում։

Ընթերցողին հայտնի պատճառներով ես արդեն փող չունեի, երբ իրագործեցի իմ ծրագրած Անհատական Պատերազմի գաղափարը։ Իմ պաշտպանության համար ստեղծված և հետագայում լուծարված առաջին հանձ-նախմբի հավաքած գումարներին և հաշիվներին ծանոթ չեմ։ Նախագահ դոկ. Թոլիկեանը դատավարության ժա-մանակ տվեց երեք հազար դոլար, որը ես տվեցի իմ

առաջին փաստաբան Լինդգիին: Լևոն Երկաթեանը, որպես իմ անունով կազմված ինձ պաշտպանող հանձնախմբի նախագահ, դրամ հավաքելու համար կատարել էր մի շարք ճանապարհորդություններ, որով ծածկվում էին բոլոր ծախսերը: Իմ անուշադրության հիմնական պատճառը հավաքված դրամը ծախսելու գործում եղել է իմ դրամի նկատմամբ եղած երկրորդական նշանակություն տալը կյանքում: Երբ փաստաբաններիս վճարելու կարիք ունեի նա ինձ Ջինոյի բանտում տվեց 1300 դոլար, Մ իասին այն կազմեց 4300 դոլար: Ծախսերը եղել են 45 հազար դոլար, որը վճարել եմ ես իմ անձնական գրպանից և կամ մեծ մասը իմ օտար բարեկամներն են վճարել:

Թող ընթերցողը գիտենա, որ Հայ Դատին կյանք տվող Յանիկյանը սփյուռքի հայ ժողովրդից իր փաստաբանական ծախսերի համար, որը միայն ես էի կատարել, ամաչում եմ գրել, միայն 4300 դոլար եմ ծախսել:

Եզրակացությունը թողնում եմ պատմությանը ու ընթերցողներին:

Դրամական հարցի հետ կապված մի դեպք պարտքս եմ համարում գրել.

Մ ի անծանոթ ամերիկացի եկավ Ջինոյի բանտը ինձ տեսության: Հայտնելով, որ կարդացել է տարիների ընթացքում իմ գրած ու լույս տեսած անգլերեն լեզվով հրատարակված ութ գրքերս, նա իրավունք խնդրեց մի անձնական հարց տալ: Թե ճի՞շտ է, որ «ես իմ փաստաբաններին պարտք ունեմ 13 հազար դոլար: Զարմացած պատասխանեցի, որ ճիշտ է և ուզեցի իմանալ, թե որտեղից է ինքը իմացել այդ մասին և ինչո՞ւ է հետաքրքրվում:

Հայտնելով, որ իմացել է իր ընկեր փաստաբաններից մեկից, հանեց գրպանից մի չեք, իմ անունով, որի վրա գրված էր 13 հազար դոլար գումար և դնելով իմ առաջ, ասաց. «խնդրում եմ չմերժեք, վատ կզգամ եթե չընդունեք:

*Ես ձեզ գիտեմ երկու տասնյակ տարիներ և կարդացել եմ ձեր բոլոր գրքերը և հիացել եմ ձեր գաղափարների երկաթյա տրամաբանության վրա։ Դուք Ձեր գրքերով ստեղծում եք մի հայելի, որ մարդկությունը ոչ միայն տեսնի իր թերությունները, այլ ցույց եք տալիս այն ուղին, որով պետք է դուրս գա դեպի չիտակ ճանապարհ, եթե չի ցանկանում ինքնասպանություն գործել։»*

*Պարզ է, որ ես շատ էի ազդված նման գնահատական լսելուց, այն էլ մի ընթերցողից, որին չէի ճանաչում։*

Հավանաբար այցելուն փաստաբան էր, ինչպես փաստում է Յանիկյանը նրա «իմ փաստաբան ընկերոջից իմացա» ասածից և կամ ոչ, դա կարևոր չէ, բայց կուզեինք բաղդատական անցկացնել այս օտար մարդու արածի և այն վերաբերմունքի միջև, որ կատարվեց հատկապես ԼՈՒՅՍ-ի հետ, երբ ուղեկցող նամակով «ՀԱՅԱՍՏԱՆ» քառալեզու գիրքը ուղարկվեց 250 հայ փաստաբանների, որոնցից շատերի հետ առնչություն եք ունենում հարաբերվել զանազան գործարքներով: Նամակի մեջ գրված էր, «հայրենի հայրենակից Ձեզ է ուղարկվում այս գիրքը, որի արժեքն է առաքումներով հանդերձ 15 դոլար, եթե ցանկանում եք դառնալ ԼՈՒՅՍ-ի բաժանորդ և այլն...»: Գրքերը և փոստային ծախսերը միասին նստեցին մոտ 4250 դոլար: Իսկ արդյո՞ւնքը...

Քալիֆորնիայում բնակվող և գործող փաստաբաններից... 22 փաստաբան գտնվեց, որոնք վճարեցին գրքի արժեքը: 13 - ը կարդալով նամակը և գիրքը ետ էին վերադարձրել «Մենք չենք հետաքրքրված» գրությունով: 7 մարդ բացելով ծրարը և հետո փակելով փոստատարին հայտնել էին, որ «հասցեի սխալմունք կա» և այլն: Այսպիսով, 4250 դոլար ծախսի դիմաց ստացվեց 330 դոլար, փաստորեն հայ փաստաբանների հետ բռնած «մշակութային հարաբերությունից» ԼՈՒՅՍ-ը կրեց 3920 դոլարի մաքուր վնաս:

Յանիկյանի հիշատակած մարդու և 22 հայ փաստաբանների արարքը ԼՈՒՅՍ-ը հպարտությամբ է հիշատակում:

*Հայտնելով շնորհակալություն այդ գնահատական խոսքերի համար, ես չգիտեի ինչ անել: Տեսնելով, որ իմ աչքերը թրջվում են, վերցրեց չեքը և իմ գրպանը դնելով ասաց. «ընդունեք... ես ունևոր եմ, զարմանում եմ Ձեր ցեղակիցների վրա, որոնց մեջ շատ կան մեծահարուստներ: Ինչպե՞ս կարելի է ըմբռնել ու բացատրել Ձեր ունեցած պարտքը, այսինքն դրամի կարիքը, երբ Ձեր կյանքն եք զոհել հայ ազգի նպատակի համար: Համալսարանականները քայլում են ազգային իրավունքների պահանջով, բարձր բռնած իրենց Յանիկյան հերոսի նկարը: Դուք դառել եք խորհրդանիշ ոչ միայն Ձեր ազգի համար, և այդքանից հետո կարիքի մեջ եք»:*

*Իմ աչքերից արդեն արցունք էր գալիս, որը ես աշխատում էի զսպել, բայց չէի կարողանում: Տեսնելով այդ, անծանոթը բարձրացավ և ներողություն խնդրեց, որ պատճառ էր դարձել իմ անզսպելի արցունքներին ու հանելով գրպանից իր այցետոմսը դրեց սեղանին և մեկնեց իր ձեռքը ասելով. «կարիք կունենաք առանց քաշվելու դիմեք, պատիվ է ինձ համար Ձեզ նման մարդուն հասնել օգնության»:*

(Խնդրվում է այն հայ փաստաբաններր, որոնք ստացել են «ՀԱՅԱՍՏԱՆ» գիրքը և այս տողերը կարդալիս, հետքերը ծածկելու համար կփորձեն ոչնչացնել դրանք, չանեն այդ, ու գիրքը տանեն և դնեն փողոցի մի անկյունում, այն կվերցնի որևէ օտար, գուցե դա լինի Յանիկյանի հիշատակած մարդու որդին կամ թոռը և շնորհակալ կլինի գիրքն այնտեղ դնողից, քանի որ գիրքը գրված է անգլերեն, ռուսերեն, ֆրանսերեն և նաև հայերեն: ԼՈՒՅՍ)

*Սեղմելով նրա ձեռքը մի խոսք կարողացա արտասանել «շնորհակալ եմ», այլևս ոչ մի խոսք չկարողացա ասել՝ այնքան հուզված էի:*

*Նույն օրը չեքը ուղարկեցի փաստաբանիս, որ*

*ուշացրած հաշիվս փակի։*

*Ճիշտ է չեքը ինձ ուրախացրեց, բայց ավելի շատ մտահոգ էի այն բարոյական ապտակի համար, որ այդ անծանոթ, բայց ազնիվ մարդը տվեց սփյուռքին, որտեղ ապրողներից ոմանք ավելի ունևոր էին, քան նա։ Այս դեպքի նկարագրումը լույս տեսավ «Նոր Սերունդ» լրագրում, ոչ իմ ստորագրությամբ։*

*Ես տեղեկություն ստացա Գաղտնի Բանակից, որ նրանք մտածում են ինձ բանտից անօրինական կերպով ազատել։ Լուր ուղարկեցի, որ մոռանան ինձ և զբաղվեն ավելի լուրջ գործերով։ Նույն Լևոնի միջոցով տեղեկացրի ում պետք էր։*

*Գաղտնի Բանակի հրապարակ գալով, ես որպես անհատ Յանիկյան, ֆիզիկապես օգտակար չէի կարող լինել, եթե նույնիսկ նրանց ցանկությունը իրագործվեր։ Նրանց նպատակը, ինձ ազատել բանտից, մեծ զոհերի և մեծ դրամի կարիք ուներ, բացի այդ, ես չէի կարող հրապարակ գալ և այլևս գործել։ Ես ավելի օգտակար կլինեի, որ մնայի որպես խորհրդանիշ ՆՊԱՏԱԿԻ ՀԱՄԱՐ և դա ճիշտ ժամանակին էր նոր հասակ առնող հայ երիտասարդների համար։*

*Ես պիտի շարունակեի իմ պայքարը դատարաններում, իմ փաստաբանների հետ՝ իմ օտար բարեկամների օգնությամբ։*

*Բացի որոշ լրագրերի և մի քանի ազնիվ հայերի, որոնք գրիչով աշխատում էին ինձ օգտակար լինել, ես ինձ պաշտպանող ոչ մի կազմակերպություն, կուսակցություն, միություն չունեի։ Տեղին է հիշեցնել «Նոր Սերունդ»-ի խմբագիր պրն. Ս. Նաիրին, որը ոչ միայն թերթն էր տրամադրել ուրիշներին, որոնք գրում էին Գաղտնի Բանակի և իմ դատավարությունների մասին, այլև իր խմբագրականներն էր զետեղում թերթում՝ իմ, Գաղտնի*

*Բանակի և Հայ Դատի մասին։*

*Մի քանի անգամ եկան բանտ ինձ տեսության, որի ժամանակ խոսում էինք մեր ազգի ցավերի մասին։ Այդ տեսակցությունների ժամանակ գալիս էր լավ տրամաբանությամբ օժտված «Քաջ Նազար»-ի խմբագիր Բալայանը, որը իմ և իմ մասին գրությունները դնում էր իր թերթում, ետ չմնալով «Նոր Սերունդ»-ից։ Տեր և խմբագիր Բալայանին մի քանի անգամ խորհուրդ էի տվել վերջացնել էշով ճանապարհը ու սկսել ձիեր օգտագործել, որ իրեն լսեն ու խելացի մարդու տեղ դնեն։*

*Բացի ՀԳԲ-ի հետ թղթակցություններից, պարզ է, որ տեսակցություն ունեցա ղեկավարների հետ։ Անունները պահում եմ ինձ համար, բայց մի օտար բարեկամ, որը զբաղվելու է իմ մահից հետո իմ կտակով, գիտի ապագայի համար, քանի որ իմ բալիկները կապ ունեն իմ պաշտոնական կազմած կտակիս հետ։*

*Գաղտնիք չէ և բնական է, որ պրն. Լևոն Երկաթեանը, որը հեռացվեց կուսակցությունից, չնայած 45 տարվա անդամ էր, ցանկանալով գործել նոր հրապարակ եկած* ***ԱՆՀԱՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄ*** *-ի գաղափարին՝ հանդիպելու էր տեսակետների և մտքերի տարաձայնությունների։ Ես դա բացատրում եմ նրանով, որ նա իր դաստիարակությունը ստացել է ՀՅԴ դպրոցում, լինելով 45 տարվա անդամ։*

*Ձի կարելի ժխտել, որ նա քաջություն ունեցավ լսել իր ներքին ձայնը, քան բյուրոյի հրամանին։ Իմ կարծիքով նա ավելի լավ է հասկացել այդ կուսակցության նպատակը և գաղափարը, քան իրեն հեռացնողները։*

*Ես շատ նեղացա, երբ նա էլ շատերի նման գնաց Վաշինգտոն, շահ Փահլավիին բարի գալուստ մաղթելու։*

*Մի քանի տող եմ գրել այդ շահ կոչվածի մասին, թեև իմ փաստաբաններիս միջոցով գրել եմ այնպիսի տեղ, որ*

Նա կմտնի պատմության մեջ իր արժանի տեղը։

Այդ շահ կոչվածն է պատճառը, որ ես զենք գործածեցի իմ նպատակի համար և այսօր բանտումն եմ։ Նրա հայրը, որի զավակը լինելու պատիվը չունի այսօրվա շահը, իր ձեռքով զարդարել է իմ կուրծքը իր երկրի շքանշանով, որպես գնահատանք իմ տված ծառայությանն իր երկրին, որը նույնիսկ իմ ծննդավայրը չէր։

Իմ բանտարկության պատճառի մասին դեռ կկարդաք։ Հիմա ես կտամ երկրից փախած Իրանի շահի դիմագիծը։

Հայրը՝ Ռզահ Շահը չատ մեծ գործեր կատարեց իր երկրի առաջադիմության համար, ճիշտ է իրեն էլ չէի մոռանում, բայց դա գրությանս հետ կապ չունի։

Նա մեծ հարգանք ուներ իմ հանդեպ։ Իմ Շիմրանի ամառային տունը կպած էր պալատի այգուն, այսինքն մենք հարևաններ էինք։ Մյուս հարևաններն ինձ չէին սիրում, որովհետև ես եղա պատճառը, որ նրանք ծախսի տակ ընկնեն։ Դա պատահեց այսպես։

Ես գնեցի այդ հողամասը, որը մոտ հինգ էկր տարածությամբ, երկու հարկանի տնով և փողոցին նայող ցեխով շինած 8 ոտք հասարակ պատով սեփականություն էր։ Քանդեցի և եվրոպական ճաշակով երեք ոտք բարձրությամբ գեղեցիկ հենքի վրա տեղադրել տվեցի երկաթյա ձողերով գեղեցիկ շարունակություն՝ մինչև վեց ոտք բարձրությամբ։ Անճոռնի պատը չկար այլևս և փողոցից երևում էր պարտեզի ծաղիկները և մրգատու ծառերը։

Ռզահ Շահը, որ օրը մի քանի անգամ մեքենայով անցնում էր այդ փողոցով, այնքան էր սիրել այդ տեսարանը, որ հրամայել էր Շիմրանի քաղաքագլխին, որ մի ամսվա մեջ ամբողջ փողոցի երկու կողմից քանդեն այդ պատերը ու «Արմանի Մահադիզի» պատի պես շինեն։

Հրամանը՝ հրաման էր, և մի ամիս հետո այդ փողոցը նմանվում էր եվրոպական առաջնակարգ առողջարանային

քաղաքների փողոցներին: Հարևաններիս ատելությունը թուլացնելու համար, հայտնեցի, որ բոլոր պատերի պլանները ձրի եմ տալիս: Հինգ տեսակ պատերի նկարներ պատրաստեցի և իմ գրասենյակը մեծացրեց գծագրերը և դրեցինք նրանց առջև, որ ընտրեն իրենց հավանածը և ստանան պատճենը: Անձնապես ես մի ժամ էի աշխատել, բայց հարևաններիս ատելությունը հարգանքի վերածվեց:

Թող ընթերցողը չմեղադրի ինձ, որ երբեմն շեղվում եմ գրությունիցս, բայց դա լավ նպատակ ունի, տալիս է միջանկյալ տեղեկություններ և հետաքրքիր է:

Պարսկաստանում ես արդեն անուն հանած «մահադիզ» էի, պարսկերեն՝ ճարտարապետ: Ես միայն կառավարական գործեր էի վերցնում: Նույնիսկ իմ անձնական տունը ես կապալով էի շինել տվել:

Այդ ժամանակ ես զբաղված էի զինվորական նախարարության համար ստորգետնյա զինագործարանի շինարարությամբ, որը քաղաքից 10 մղոն հեռու էր: Այդ պատասխանատու և լուրջ գործ էր և ես այն վերցրել էի աճուրդով, մրցակցելով Չեխոսլովակիայի կառավարության հետ: Դա զարմանք էր պատճառել բոլորին և նույնիսկ շահին: Նա հրամայել էր, որ գործը տան ինձ, պայմանով, որ եթե ես չվերջացնեմ դա կամ սխալ շինեմ ապա բանտ պիտի գնամ: Այս հրամանը հասկանալի էր, քանի որ մինչ այդ նման դեպք չէր պատահել, որ տեղական մի շինարարական գրասենյակ մրցեր եվրոպական շինարարական ընկերության հետ: Երկրի պատիվը և շահի ինքնասիրությունը նույնպես հաշվի էր առնվել:

Չեխոսլովակյան ընկերությունը աճուրդից իմ դրած գնից ետ քաշվելուն պես, և իմ պայմանագիրը ստորագրելուց մի օր առաջ, երեկոյան կողմ մի մարդ էր ուղարկել ինձ մոտ, ձեռքին 100 հազար դոլարի մի չեք, որպես կաշառք ինձ, որ ես հրաժարվեմ գործից և իրենց տամ գործարանի

կառուցման պայմանագիրը։

Նրանք չգիտեին, որ գործ ունեն ՀԱՅԻ հետ, որն ուներ իր կյանքի նպատակը և ձգտում էր միշտ դեպի դրան, որ դրամ հավաքի և սկսի իր նպատակի իրագործումը։

Ձեռքը պատռեցի և ասացի, որ հայտնի ուղարկողին, «կյանքում ամեն բան դրամով չի գնվում, նամանավանդ ինքնասիրությունը»։

Գործարանը 50 ոտք գետնի տակն էր լինելու։ Պլանները և մեքենաները տալու էր գերմանական «Կրուպ» ընկերությունը։

Այս գործի ավարտը ապահովելու էր իմ նպատակի հաջողությունը և դրա համար ես մոռացա ամեն ինչ և մյուս գործերս թողի իմ օգնականներին, հայտնելով որ ոչ մի դեպքում ինձ չանհանգստացնեն։ Վրաններ խփեցի շինության մոտ ու այնտեղ տեղափոխվեցի իմ փորձառու օգնականների հետ։ Միայն շաբաթը մեկ անգամ էի հանդիպում կնոջս, որը գիտենալով գործի հաջող ավարտը մեր նպատակի իրագործումն է ապահովում, մեր խոհարարին կարգադրել էր գալ մեզ մոտ և առանձին վրանի տակ խոհանոց սարքել, մեզ տնական կերակուրներ պատրաստելու համար։ Ես տառապում էի ենթաստամոքսային գեղձի ցավերով և կազմակերպված սննդի ռեժիմի շնորհիվ հիվանդությունս ինձ չէր անհանգստացնում։

 Որպես հասարակ բանվոր, ես էլ արտահագուստ հագած, երկար, մինչև սրունքներս հասնող ձեռնոցները հագիս, պարանից շինված սանդուխքներով իջնում էի գործի տեղը։ Ամիսներ էին անցել և գործը մեծ թափով առաջ էր գնում։ Պիտի հիշեցնեմ, որ չափազանց պատասխանատու ռազմական պատվեր էր և չնչին իսկ սխալվել չէր կարելի։

Ես չգիտեի և հետո իմացա, որ Ռզահ Շահը, ամեն շաբաթ, առնվազը մեկ անգամ այցելում էր գործի վայրը,

*որը համարյա կպած էր զինանոցներին։ Ամեն անգամ գալիս հարցնում էր. «ո՞ւր է մահաղիզը»։ Պատասխանը լինում էր. «գետնի տակ»։ Ենթադրելով, որ գործի վրա հսկողության կարգված գնդապետը ինձ պաշտպանելու համար է ամեն անգամ «գետնի տակ» ասում, մի օր շահը ջղայնացած ասում է. «կանչե՛ք վերև»։ Գնդապետը հեռախոսով հրաման է տալիս գետնի տակ աշխատողներին, որ ուր որ է, գտեք մահաղիզին թող վերև բարձրանա՝ առանց ասելու պատճառը։*

*Կեղտոտ, գլուխս ու ոտքերս ցեխի մեջ կորած, ես սանդուխքով վեր բարձրացա։ Լույսից աչքերս կիսաբաց պաշտպանելով տեսա Ռզահ Շահին և իր կողքին 8-9 տարեկան իր որդուն, որը հետո շահ դարձավ։*

*Ըստ սովորության ողջունեցի ու «Բալի ղուբան» հարցականով մի քայլ առաջացա։ Նայեց, ժպտաց ու «Փետար սուխտե» ասաց, որը պարսկերեն համարյա նշանակում է «սան օֆ բիչ»։ Հրամայեց գործիս գնամ, առանց ուրիշ խոսք ասելու։ Նա գոհ էր, որ իրեն չեն խաբել և ես իրոք գետնի տակ եմ եղել։*

*Գործը հաջողությամբ վերջացրի և «Կրուպ»-ի հանձնախումբը եկավ քննելու կատարածս աշխատանքները։ Տեղադրելով մեքենաները նրանք մի ակտ էին կազմել, որտեղ նշել էին. «Գործը կատարված է այնպես, կարծես մենք ենք կատարել»։*

*Ես ստացա նրանց կազմած ընդունման ակտի պատճեն և յոթերորդ երկնքում էի...*

*Բացի անունից և պայմանագրային վճարումից, ես ստացա շահի կողմից պարգևատրություն՝ 100 հազար թումանի չափով, որովհետև ես փաստել էի աշխարհին, որ Պարսկաստանը ևս ունի կարողունակ մասնագետներ։*

*Մի շաբաթ հետո ինձ հրամայեցին պաշտոնական հագուստով ներկա գտնվել զինվորական ակումբի թեյա-*

րանում։ Ես դիմավորվեցի զինվորական նվագախմբով։ Իր շքախմբով շրջապատված Ռզա Շահը նույնպես այնտեղ էր։ Ժպտալով մոտեցավ ինձ և նորից կրկնեց «փետար սուխտե» և կրծքիս ամրացրեց «Թաջ Գոզարի» կոչված շքանշանը։ Բոլոր ներկաները զինվորական բարև տված կանգնած էին, մինչ նվագախումբը կատարում էր ազգային քայլերգը։ Երկու ժամ հետո Շիմրանի թագավորի պալատում ես ունեցա իմ առաջին նախաճաշը Ռզա Փահլավիի հետ։ Համով էր։

Այդ դեպքից հետո շահը հաճախ էր հրամայում ինձ պալատ այցելել՝ զանազան շինարարական հարցերով։ Այսպիսի մի հրավերի ժամանակ, Ռզա Շահի հետ կանգնած պալատի լողավազանի մոտ խոսում էինք, երբ պարտեզ մտավ որդին՝ 9–10 տարեկան։ Տեսնելով նրան, շահը մոտ կանչեց ու երկու ձեռքերով բարձրացնելով ու հայհոյելով «փետար սուխտե», «փետար սուխտե», պատրաստվում էր գցել ավազանը։

Ես շփոթված, չգիտեի ինչ անել։ «Ղուրբան», ղուրբան» ասելով ուզում էի ազատել երեխային, բայց նա արդեն ջուրն էր նետված և լողալով դուրս էր գալիս լողավազանի մյուս ծայրից, իսկ հայրը շարունակում էր հայհոյել «շան ձագ, շան որդի, անպիտան, գեոթվերան և այլ խայտառակ ածականներ»։ Երբ տղան դուրս եկավ ջրից, Շահը գոռաց «կորիր աչքիցս»։

Ես երբեք չէի տեսել նրան այդպիսի կատաղած տեսքով։ Երբ նայեց ինձ, աչքերից կարծես կրակ էր թափվում։ Ինձ այնպես էր նայում կարծես ես մեղք ունեի։ Ինքն իրեն խոսում էր. «պարսից շահը ազատ է իր հաճույքների մեջ, բացառությամբ, որ ինքը պասսիվ դեր չունենա, գեոթվերան շահ... այն էլ ոչ թե մի անգամ այլ շատ անգամ». Կարծես նոր հասկացավ, որ ներկա էի։ Ճակատը շփեց ու ասաց «դու էլ գնա և մոռացիր տեսածդ»։

*Հայրը՝ Ռզահ Շահը իմացել էր, որ իր որդին, ապագա թագաժառանգը պասսիվ սեռական դերի մեջ էր եղել իր հասակակիցների հետ շատ անգամներ և նախագահ Աղայե Մանսուրն էր այդ մասին տեղեկացրել շահին:*

*Այդ դեպքից հետո, նրան ուղարկեցին Շվեյցարիա, մի ինչ-որ հայտնի դպրոց-պանսիոն, որտեղ բրիտանական լորդերը և եվրոպայի ազնվականությունը ուղարկում էին իրենց զավակներին կրթելու:*

*Իհարկե, ես մոռացել էի տեսածս ու լսածս շատ երկար տարիներ և նույնիսկ կնոջս չէի պատմել:*

## (ԸՆԴ ԵՂԵԳԱՆ ՓՈՂ ԲՈՑ ԵԼԱՆԵ... Լույս)

*Այս նույն բանը մի հայ էլ գրեց ռուսերեն և ցույց տվեց թե ինչպես ծնվեց և ինչպես շարունակեց հայերեն:*

"Í å ï î ä  ì î òèâ ãîâîòà,
Í å ï î ä ëàñêàþ ùè ìåíóýò-
Ï îä áàðàáàí í û é áîé òåì í îãî âåêà-
Èç ìåðÿåò ñòóïåí è æèçíè ýøàô îòà-
Ðî æäåí íèé ðååí îê ïðî øëîãî âåêà,
È ìåíå ì Ãóðãåí-Ñû í ×åëîâåêà'.

Այս հրաշալի մենախոսության հեղինակը Գուրգեն Յանիկյանն է, ԼՈՒՅՍ–ը խնդրում է ռուսերենի մեջ սխալներ հայտնաբերվելու դեպքում, ներողամիտ լինել: Այս տողերը թարգմանության կարիք են զգում, հայության ավելի լայն շրջանակներին ծանոթացնելու նաև Յանիկյան –բանաստեղծին:

*Բանտում ժամանակի պակաս չկար: Չնայած տասնյակ զանազան կենսագրականներ են գրել իմ մասին, որոնք հեռու են ճշմարտությունից, ես որոշեցի դեռ 1974 թվին ինքս գրել, և դրանք իմ բոլոր թղթերի հետ պատկանում*

*են ՀԱՅԱՍՏԱՆԻՆ, որտեղ իմ անվան արկղում մոտ քսան կիլոգրամ թղթեր կան՝ թե իմ գրածները և թե իմ նամակագրությունները: Դրանց մի մասը ես հետս տարա Հայաստան, երբ 1972 թվին այցելեցի այնտեղ, իսկ մնացածները ուղարկված են հետո իմ օտար բարեկամիս կողմից:*

(Այստեղ մի տող անընթեռնելի է-ԼՈՒՅՍ)

*Այս գրությունս փաստացի է Ցանիկյանի կյանքի մասին:*

*Երբ այս տղան աշխարհ եկավ, կնունք չեղավ, տերտեր չկար և անվանվեց «Զարդի տղա»: 27 մեծ ու փոքր թաքնվել էին թաքստոցում: Կարնո Ջարդն էր, հայ արյունով փողոցները ներկվեցին: Տղան լալիս էր ու ճչում: Որոշեցին խեղդել նրան, որ մնացածը փրկվեն: Երկու անգամ թաշկինակը նրա բերանը կոխեցին...*

*Մայրը խղճաց ու սիրո պտուղը կրծքին սեղմած թաքստոցից դուրս փախավ ու անհետացավ պարտեզի ծառերի մեջ: Մի ամիս հետո, բուք ու բորանի մեջ, սարերով սահնակները լիքը մարդկանց հետ ամբողջ խումբը փախուստ տվեց ու գիշերը ճանապարհին բարուրի մեջ քնած երեխան անհետացավ: Մայրը գոռաց «աման Աստված, տղաս կորավ»: Ոչ ոք չէր ուզում ետ վերադառնալ և փնտրել մանկանը: Իրենք հազիվ էին մահից փրկվել: Միայն մայրը դարձավ ետ փնտրելու զավակին: Եվ նաև ավագ եղբայրս հետևեց նրան:*

*Զարդի տղային կիսասառած նրանք գտան ձյուների մեջ: Մայր ու որդի իրենց շնչով հետ բերին նրան դեպի կյանքը: Եվ այդ տղան հետո, արդեն վեց տարեկան տեսավ, թե ինչպես իր աչքի առջև թուրքի դաշույնը կտրեց եղբոր վիզը...*

*Զարդի տղան դարձավ Գուրգեն: Աստծո կամքով նա չէր մեռել: Որոշեցին, որ նա դառնա Աստծո ծառան ու*

մասնավոր դպրոց տարան։ Տղան փախավ անհետացավ։ Նորից տարան, այս անգամ էջմիածնի ճեմարան։ Նորից փախավ։ Չէր ուզում լիներ ծառա, նամանավանդ Աստծո, որի արժեքը արդեն լավ գիտեր։ Տեղի տվին և հաշվի առան իր ցանկությունը։ Ավարտեց դպրոցը, ուզում էր շարունակել, բայց հայրը ցանկանում էր իր կալվածներին տեր դարձնել նրան։ Նորից վիճաբանություններ։ Այժմ Ջարդի տղան անլեզու չէր, թողեց տունը հայրական և չեղավ զոհը հարստության, գնաց Մոսկվա՝ համալսարան։ Մերժեց ծնողական ամսական դրամը, դառավ բանվոր-ուսանող։

Կռիվ էր նորից հայրենի երկրում։ Մեկ նպատակ դարձած, մեր առաջին ուսանողական խումբը կռվի դաշտ մեկնեց և Ջարդի տղան դարձավ նրանց շարքում առաջին հայը։

Կռիվը կատաղի էր։ Արյունի ծարավ թուրքի դեմ էին ելել «ԱՐԴԱՐՈՒԹՅՈՒՆ» պաշտպանող ռուսական բանակը և վրեժի ցասումով լցված հայ ֆեդայինների կամավորական խմբերը, իրենց մեջ առնելով ԱՐԴԱՐՈՒԹՅԱՆ ԾԱՐԱՎՈՎ ոգևորված ուսանողներին։ Փորձված ֆեդայիններ քմծիծաղ էին տալիս ուսանողների վրա «տղաք դպրոց եք բացելո՞ւ այստեղ և դաս եք տալո՞ւ» ասելով։ Իսկ օրեր անց «Ծո աս տղաքը վախ չունին» բռւաց մեկը, կռվի մեջ տեսնելով կրակ կտրած ուսանողներին։ «Գնդակը սրանցից հեռու է փախչում» հաստատեց մյուսը։ «Սա ռուս աղջիկները, չգիտեն ինչպես պետք է իրենց գործը կատարեն, մի ձեռքով վիրավորին են վիրակապում, մյուսով կրակում են, և դեռ ժամանակ են գտնում վիրավորի դեմքը պաքել և խնդրել, որ դիմանա»- պատմում էր երրորդը։

Մոսկվայից եկածները հետ չմնացին, ոչ բանակից, ոչ հայ ֆեդայիններից և ոչ էլ արյունածարավ թուրք սրիկաներից։ Գազաններ դարձած, արյունածարավ, մենք մոռացել

էինք ամեն սրբություն և թե գթություն հանդեպ թշնամուն։ Այրել, ջարդել, սպանել և որքան շատ այնքան լավ։ Մեր աղջիկներն էին գնդացիրներով սատկացնում թուրքին և հրդեհում նրանց թաքնված գյուղերը։ Մեր կատաղությունը դառնում էր կրկնակի, երբ զոհ էինք տալիս։ Ձեմ կարող չհիշել Տանիա Բրոցկուն։ Այդ հիասքանչ աղջկան մենք թաղեցինք Վանա լճի եզերքին։ Սիրելի Տանյա, դու ցանկացար օգնել ՀԱՅԻՆ, որպես պարտքդ մարդկային։ Քնիր հանգիստ, եթե աշխարհը մոռանա, քո Գուրգենը չի մոռանա, որ քո արյունով դու իմ երկրի հողը ներկեցիր ու քո կյանքը իմ ժողովրդին տվիր։

Միայն դու չեղար, շատերին թաղեցինք։ Ես դառել էի կատաղած մի գազան և ափսոս այդ չտեսավ Տանյան։ Առանց հաշիվ տալու իմ արարքներին, ես դարձա հերոս։

…Երբ Թիֆլիսի փոխարքայի տան մեջ սարքված հիվանդանոցում 15 օր մահվան քնի միջից ես արթնացա, կրծքիս ԽԱՁ շքանշանը տեսա և ինձ ժպտացող Տանյաին։ Բայց սա ուրիշ Տանյա էր, փոխարքայի դուստրը, որը գթության քույր դարձած օգտակար եղավ շատերին, իսկ ինձ հասցրեց կյանքի շեմին։

Մի հետախուզության ժամանակ, առանց իմանալու այդ ռազմական շինության կարևորությունը, պայթեցրել էի այն, որը եղել էր այդ ռազմական շրջանի գլխավոր զինապահեստը։ Պայթյունի ալիքը ինձ շպրտել էր ձորը, որտեղ ինձ գտել էին ուշաթափված և փոխարքայի կարգադրությամբ հասցրել էին Թիֆլիս։ Թերթերը և լրագրերը մեծ աղմուկ էին բարձրացրել, Մոսկվայի թերթերն էլ հետ չէին մնացել։ Ուսանողները ցնծության մեջ էին և պահանջել էին իմ լուսանկարը, թերթերում տպելու համար, որ երկիրը իման, թե ինչ օգուտ են տալիս ուսանողները։

Ես ամեն միջոց գործադրեցի, որ երկար մնամ հիվան–

դանոցում, որը ինձ համար դրախտային վայր էր հիշեցնում։ Ես չէի պատկերացնում, որ աշխարհում մեկ այլ դրախտատային վայր կա, իմ պառկած հիվանդանոցից բացի։ Բայց դրա վերջն էլ եկավ և ինձ հիվանդանոցից դուրս գրեցին... որ գժուլժյան քույրն էլ հանգստանա։ Պետք է ենթադրեմ, որ հիվանդանոցից ինձ դուրս գրելուն նա էլ մասնակցություն ունեցավ։ Քանի որ ես հետագայում համոզվեցի, որ ամեն մարդ արարած իր ինտիմ կյանքում հանգստության կարիք ունի, որը ես այդ ժամանակ չէի հասկանում... Երկու սեռին էլ սա վերաբերվում է... Սա իմ իջայլոց։

Պատերազմը քանի գնում թեժանում էր։ Ռուսները վերադրավել էին Կարսը։ Արշակ փեսաս, որն իր ժամանակին ընտանիքը կարողացել էր ուղարկել Թիֆլիս, մնացել էր այնտեղ իր որդու՝ Քաջիկի հետ։ Արշակը հայրիկիս կառավարիչն էր Կարսի գործերում։

Հիվանդանոցից տուն դարձա և տեսա քրոջս իր մյուս զավակների հետ, մեր տանն էր ապրում։ «Աման Գուրգեն ջանս, գնա Կարս, տես մերոնց ի՞նչ է պատահել։ Մերժել չէի կարող Վարսենիկ քրոջս, որի կրծքի կաթը ուտելով էի մեծացել։ Գուցե իմ մեջ ավելի շատ քրոջս կաթը կա, քան մորս։ Մի զարմացեք։ Նրա առաջին որդին ինձնից մեկ շաբաթ առաջ էր ծնվել և մայր ու աղջիկ կերակրում էին իրենց երեխաներին՝ ով ազատ էր լինում, կամ ով շատ կաթ ուներ։ Ես մայրիկիս ութերորդն էի։ Իհարկե պակաս կաթ կունենար, քան թե իր աղջիկը, որի առաջնեկը նոր էր աշխարհ եկել։ Հետագայում շատ անգամներ, երբ քույրս զայրանում էր վրաս, ասում էր. «Ասոր նայեք, կսե իմ հարցերուս մեջ մի խառնվիք։ Արշավիրս անոթի կթողնեի, աս լակոտին կաթ կուտայի»։ «Թող չտայիր» պատասխանում էի ես։ «Ձտայիր կսե, անոթութունեն կը սատկեիր» ասում էր քույրս։ Մայրիկս մեջ էր ընկնում և հարցը

փակվում էր։

Ինձնից համար մարդ չկար Կարս գնալու համար։ Ուսանող, կամավորությունից եկած, կամավորական համազգեստով ԽԱՉ ՊԱՐԳԵՎԸ կրծքիս և ռուսախոս։ Գնացի Կարս, երբ այն գրավված էր ընդամենը չորս օր առաջ։

Անհավատալի էր և զարուհուրելի։ Ամբողջ փողոցները կրակի էր մատնված և ոչ մի կենդանի էակ չկար։

Երբ ես խոսում էի քաղաքը գրաված գնդապետի հետ, լուր եկավ, որ հայոց եկեղեցու բակում դիակներ են գտնվել։

Զոեսնեի այդ եկեղեցու բակը, որը լիքն էր հազարավոր գլխատված դիակներով։ Մերկ աղջիկների մեջքին անչունչ պառկած, սեռական մասերը կտրած անշունչ մարմիններ... անմարմին գլուխներ՝ տղամարդու կտրված անդամներով պղծված...

Կես եղած մարմիններ, ամեն կողմ ցրված ձեռքեր, ոտքեր, մարմնի զանազան մասեր և այլն։

Տաճկական հրամանատարությունը կարգադրել էր քաղաքը թողնել, այրելով բոլոր հայկական տները, խանութները։ Իհարկե դրանք թալանելուց հետո։ Ոչնչացնել քաղաքի հայ բնակչությանը՝ մեծից փոքր և պղծելով և բռնաբարելով կանանց և աղջիկներին։

Այս տեսարանը հետագայում իմ մեջ պատճառ դարձավ, որ սկսեցի ատելությամբ լցվել դեպի թուրքը, և նաև, չզարմանաք՝ դեպի մարդկությունը։

Քրոջս ամուսնու գլուխը գտա՝ երկար բեղերի շնորհիվ, մարմինը չկար ու չկար։ Խեղճ Քաջիկի մարմինը գտա, կես գլխով, ուսից կախված։

Ռուսները ցանկանում էին հենց նույն տեղում փոսեր փորել և թաղել դիակները։ Շնորհիվ կրծքիս ԽԱՉԻ զորության, կարողացա փոխել այդ որոշումը և երեք զինվորական մարտասայլեր ամբողջ օրը դեպի քաղաքից դուրս

գտնվող հայկական գերեզմանոց էին տեղափոխում դիակները, որտեղ իմ խոստումների և արաղի շնորհիվ ռուս զինվորները պատրաստել էին տասը հսկա փոսեր:

Երեկոյան գործը վերջացած էր և զինվորները ստանալով իրենց նվերները ինձնից, փոխանցում էին փողոցներում արդեն երևացող ՀԱՅ վաճառականներին, որոնք Ալեքսանդրապոլից օղի էին բերել և շահով վաճառում էին ռուս զինվորներին: ...Միթե սա չի փաստում, որ հայերը նաև ճարպիկ վաճառականներ են...

Անելիք այլևս չունեի, որովհետև ամեն ինչ գետնին էր հավասարեցված:

Երբ խսկուեթյունը հայտնեցի քրոջս, նա արցունքներով փաթաթվեց ինձ և սեղմելով կրծքին գոռում էր «Գուրգեն, երբ պիտի դադրեցնեն մեզ կոտորելը, ո՞ւր է ԱՍՏՎԱԾ»: Հանգստացնելով նրան ասացի: «Երբ մենք էլ իրենց կոտորենք, իսկ Աստծո հասցեն գնա և տերտերին հարցրու»:

Մի քանի օր հետո մերոնք եկել էին կայարան, ինձ Մոսկվա ճանապարհ դնելու: Մեկնում էի ուսումս շարունակելու: Հայրիկիս տված դրամն այնքան շատ էր, որ զարմացած հարցրի պատճառը: Նայելով աչքերիս ու շփելով մազերս պատասխանեց. «Տար հետդ, տղաս, պետք կգա, շատ ընկերներ ունես»: Հայրս չգիտեր, որ ես մեծ եղբորիցս և մայրիկիցս ստացել էի բավականին մեծ գումարներ՝ որպես գաղտնի օգնություն:

Մոսկվան չէր փոխվել: Կյանքը եռում էր և հեղափոխություն էր սպասվում: Ուսանողները առաջնակարգ տեղ էին գրավել այս կարևոր գործում: Տասնյակ զանազան գաղափարներ էին ցանված ամենուրեք. դրանք աճել էին և բռնել էին երկրի ողջ կյանքը: Գտա հին ընկեր-ընկերուհիներիս և բնակարան վարձեցի՝ վեց սենյակից բաղկացած, որոնցից երեքը նվիրեցի կարիքավոր ընկերներիս: Խոհարար վարձեցի, որ հոգա բոլորիս կերակրելու

*հոգսը և մենք ազատ լինենք մեր ուսման հարցերում:*

*Կարծես ծնված օրից ես ԱՆԱՐԽԻՍՏ եմ եղել և դրա համար զարմանալու ոչինչ չկա: Ես միացա միացյալ հոսանքին և այնքան առաջ գնացի, որ ընտրվեցի մի ամբողջ բաժանմունքի ղեկավար: Կյանքը առաջ էր գնում և մենք ավելի շատ ժամանակ էինք հատկացնում մեր կուսակցական գործերին, քան թե ուսմանը:*

*Պատերազմի դաշտից եկած վատ լուրերը անհետևանք չէին մնում: Հեղափոխության հոտը ամենուրեք գալիս էր: Օր չէր լինում, որ այս կամ այն կազմակերպությունը քաղաքում ցույց չաներ: Բանվորությունն էլ միացել էր ցույցերին: Անարխիստներն էլ հետ չէին մնում և կարմիր դրոշը պարզած գոռում էին* "Äàëîé öàðÿ, Äà çäðàâñòâóåò íàðîäíàÿ ðåâîëþöèÿ" (*Կորչի ցարը, կեցցե ժողովրդական հեղափոխությունը–ԼՈՒՅՍ*):

*Եվ... պայթեց հեղափոխությունը, թագավորը ընկավ, Եկավ Կերենսկին, որը երկրից հետո կանացի շորով նույնպես փախավ: Երկրի ղեկը անցավ Լենինի ձեռքը: Պատերազմին վերջ տվին ու բանակը ցրեցին: Երկիրը վերածվեց եռացող կաթսայի: Հարյուրավոր վայրերում իրար էին զարկում աջերը և ձախերը: Ռուսաստանը քայքայվում էր: Ուրախ էր ուսանողությունը, որ նոր կարգեր են ստեղծվում երկրում:*

*Անարխիստները անգործ չէին և ավելի ու ավելի մեծ պահանջներ էին ներկայացնում երկրի նորելուկ ղեկավարներին: Դանակը ոսկորին հասավ և բոլշևիկյան կառավարությունը որոշեց նրանց հաշիվն էլ փակել, որովհետև անարխիստները դարձել էին Մոսկվայի տերն ու տիրականը:*

*Մի գիշերվա մեջ 14 հազար ուսանող, բանվոր, տեսուչ, ուսուցիչ ու զինվոր ձերբակալվեցին և բանտարկվեցին: Բանտերում տեղ չկար և որոշ հյուրանոցներ բանտերի*

*վերածվեցին։*

*Ես նույնպես այնտեղ էի և դեռ ավելի խորը։*

*Ինձ տեղավորեցին ԲՈՒՏԻՐԿԱ կոչված Մոսկվայի հայտնի բանտում։ Ենթադրում էի, որ ապրում եմ կյանքիս վերջին օրերը։ Եթե իմ ձերբակալությունից հետո գնացել են իմ բնակարանը խուզարկելու, ապա փրկության ոչ մի հույս չկար այլևս։ Բնակարանումս եղած թղթերը կապացուցեին, որ ԷՐԻՏՈ իտալական անունով և ՆՈՎԻԿՈՎ ռուսական անվամբ հանդես եկող անձինք միևնույն մարդիկ են և իսկական անունը Գուրգեն Յանիկյան է։ Ես իմ մասին չէի մտածում, այլ այն հարյուրավոր ընկերներիս մասին, որոնք պիտի մեղադրվեին կառավարությունը տապալելու մեղադրանքով, որը մի պատժաչափ ուներ՝ ՄԱՀ։*

*Արդեն մի քանի անգամ ապացույց եմ ունեցել, որ ամենանեղ տեղն ընկած ժամանակ էլ, անտեսանելի մի ուժ ինձ պաշտպանում է և այն էլ ամենաանհավանական ձևերով։*

*24 ժամ էլ չէր անցել իմ բանտարկությունից, երբ փակված լինելով բանտի ամենախիստ մենախցերից մեկում, բանտապահը բացելով դռան վրայի փոքրիկ պատուհանը ինձ մի փաթեթ սիգարեթ տվեց «Առ, օրիորդ Նադիան է բերել քո տնից, որ առանց ծխախոտ չմնաս» ասելով։*

*Պատուհանը փակվեց և հրաշք... ԱՄԵՆ ԻՆՉ ՓՈԽՎԵՑ։*

*Նադիան մեր համալսարանի ուսանողուհիներից էր, Ռուսական գաղտնի ոստիկանության (ՉԵԿԱ-ի) գլխավոր՝ Ձերժինսկու քույրը։*

*Նադիան Ձերժինսկու քույրը լինելով հանդերձ, մասնակից էր մեր խմբի աշխատանքներին և ոչ միայն մասնակից էր, այլ նաև իմ ամենամոտ ընկերուհին էր ամեն տեսակետով։ Նա էլ անարխիստ կուսակցության անդամ էր։ Տրամաբանությունը ինձ հուշեց և հետագայում դա փաստվեց, որ Նադիան իմանալով իր եղբորից գալիք*

ձերբակալությունների մասին, վազել էր ինձ զգուշացնելու, բայց ուշացել էր: Նա իմ սենյակի բանալին ուներ և կարող էր գիշեր թե ցերեկ ներս մտնել: Նա բացել էր իմ սենյակը և առանց քննելու, ժամեր շարունակ մեկ առ մեկ այրել ոչնչացրել էր բոլոր նամակները, ցուցակները, գրքերը, մի խոսքով ամեն ինչ, թողնելով միայն անկողինս ու եղած ծխախոտները: Հավատացած էր, որ ես կհասկանամ, որ իմ սենյակի ծխախոտները ինձ բանտ հասցնելը շատ բան կպատմի ինձ և կնախապատրաստի իմ հետագա քայլերին: Դա արել էր օգտագործելով իր եղբոր անունը և ես այդքան էլ հիմար չէի, չհասկանալու, որ նա մաքրազարդել է ինձ պատասխանատվության ենթարկող բոլոր փաստերը: Դրանից ոգևորված, ես սկսեցի ծխել նրա ուղարկած ծխախոտները և հետո էլ երգել:

Ãàðè, ãàðè ì îÿ çâåçäà
Çâåçäà ëþ áâû çàâåòíàÿ,
Òû n ìåíÿ îäíà çàâåòíàÿ
Äðóãîé íå áóäåò íèêîãäà

Հարցաքննությունը սկսվեց: Ես անմեղ ձևացա և նույնիսկ ինձ ձերբակայելու «պատճառը» չգիտեի... «Ես անկուսակցական մի հայ ուսանող եմ և ուզում եմ վեր-ջացնել ուսումս և տուն վերադառնալ: Երբ շատ պնդեցին իմ ով լինելը պարզաբանեմ, ծիծաղելով մի հայելի խնդրեցի, որ «տեսնեմ այդ ի՞նչ մեծ մարդ եմ եղել, որ ինքս էլ չեմ իմացել»:

Իմ անձը պարզաբանել չկարողանալով, համենայնդեպս տարան բանտի բակը՝ գնդակահարելու: Գնդակահարում էին գիշեր թե ցերեկ: Ոչ մի փրկության հույս չէր մնացել: Մտածեցի, այսպես թե այնպես սպանելու են, վերջս եկել է: Ինչո՞ւ մեռնեմ տանջված կամ սարսափած դեմքով, որ գնդակահարողներին էլ ուրախություն պատճառեմ: Սկսեցի ժպտալ, ծիծաղել և կատակներ անել: Ոչ մի ազդեցություն

*նրանց վրա, նրանք իրենց գործն էին անում։ Կանգնեցրին բանտի պատի տակ։ Զորս զինվորներ հրացաններով նշան բռնեցին և կրակեցին։ Վայր չընկա, զարմացած նայում եմ, թե վերջն ի՞նչ է լինելու։ «Կրակ» հրաման տվողը, զայրացած գոռաց զինվորների վրա, որ քսան քայլի վրա էլ չեն կարողանում նշանին խփել և հանձնարարեց, որ վաղը վերջացնեն ինձ։ Պարզ էր, որ վախեցնող «գնդակահարությունն» էին սարքել, որ մահով վախեցնելով ինձնից իմ անձի ինքնությունը կորզեն։ Ես տեղյակ էի նման մեթոդներին, որ քննիչները կիրառում էին արդեն։ Քննությունը շարունակվեց և նույնիսկ դատավարություն եղավ և ինձ տվին ամենաթեթև պատիժը՝ «ցմահ տաժանակիր աշխատանքներ Սիբիրում»։ Իմ ով լինելը իմացել էին, բայց ձեռքներին փաստեր չէր եղել։ Իհարկե, նա ով մատնել էր ինձ, լավ գիտեր իմ ով լինելը և կարող էր որպես վկա հանդես գալ, բայց նպատակահարմար էին գտել այդ գործակալին մեջտեղ չբերել և նրա անունը հայտնի չանել, հետագայում ավելի նոր տեղերում օգտագործելու համար։*

*Մի քանի օր հետո, ինձ նման հարյուրավորների հետ տարան երկաթուղու կայարան և լցնելով ապրանքատար վագոնները ճանապարհեցին դեպի Սարատով։*

*Նորից հրաշք, նույն ծխախոտները ստացա։ Դրանք ինձ հանձնեցին մեզ հսկող պահակները։ Երկու տուփ ծխախոտ էր, մեկի միջից երկտող գտա, ձեռագիր տպատառերով գրված «Ես քեզ սիրում եմ, դու էլ շարունակիր ինձ սիրել, ինչպես սիրում ես»։ Նադիայի ձեռագիրը ճանաչեցի և գրության իմաստն էլ հասկացա. «Պիտի շարունակեմ անել ինչ կարող եմ, շարունակիր քո ընթացքը»։*

*Այս պատմությունը երկար է լինելու, բայց ես ուզում եմ հնարավորին չափ համառոտ պատմել, քանի որ գրությանս նպատակը այլ է։*

Թանկագին Նադիան ոչ միայն ինձ, այլև հազարավոր-ներին էր օգնել՝ այրելով սենյակիս ամբողջ պարունակու-թյունը: Մի քանի հազար ռուսական թղթադրամները, որ պահված էին թղթերիս արանքներում, նույնպես կրակի ճարակ էին դարձել: Իմ անունով դատական գործի միջից, ինչ-որ մեկի օգնությամբ գողացել-հանել էր իմ գործին վերաբերող բոլոր մեղադրական եզրակացությունները, թողնելով միայն ինձ Սիբիր ուղարկելու որոշումը: Սարատովի ճամբարում հավաքված էին բոլոր Սիբիր ուղարկվածները և սպասում էին իրենց հերթին, էտապով այնտեղ հասնելու համար: Երկրի բանտերը լեփ լեցուն էին և կառավարությունը ստեղծել էր հատուկ հանձնա-խումբ, քննելու և քիչ վտանգավորներին ազատելու համար: Երբ հերթը հասավ մեր ճամբարի կալանավոր-ներին ստուգելուն, ինձ նույնպես կանչեցին և հարցրին ինձ ձերբակալելու պատճառը: «Զգիտեմը» և տասնյակ անգամներ «ցանկությունս ուսումս ավարտելն ու հայրենի Պարսկաստան գնալս է նպատակս» կրկնելը միակ բացատ-րությունս էր: Ես արդեն համոզված էի, որ իմ գործերում բացի դատական որոշումից, ուրիշ փաստաթուղթ գոյություն չունի: Եվ դա շնորհիվ իմ ՓՐԿԱՐԱՐԻ:

Հարցաքննող հանձնախմբի նախագահը Լեբեդեվ ազ-գանունով, միջին տարիքի, զարգացած և գաղափարական բոլշևիկ էր: Այնքան կարճատես էր, որ իրար վրա երկու ակնոց էր օգտագործում: Հետագայում ես նրան հանդիպեցի մի այլ տեղ և ուրիշ առիթով: Որոշեցին ինձ Սիբիր չուղարկել և ազատ արձակել, բայց պայմանով, որ ես մնամ և ապրեմ Սարատովում: Հանձնախմբի անդամներից մեկը ճամբարի կառավարիչն էր, նա դրեց այդ պայմանը: Նրան դուր էր եկել ճամբարում իմ դրած թատերական բեմադրությունները, որին մեծ հաճույքով այցելում էին քաղաքի գլխավոր բոլշևիկների սիրուհիները: Ճամբարի

*կառավարիչը հանձնարարեց, որ ես շարունակեմ բեմադրությունները։*

*Դեռ Թիֆլիսում, աշակերտական տարիներից, սիրողական թատերական խումբ ունեինք և բեմադրում էինք հայկական ներկայացումներ։ Ասում էին, որ ես վատ չեմ խաղում։ Մամուլյանների ընտանիքին և Ռուբենին դեռ այնտեղից գիտեի։*

*Ճամբարում ես բեմադրեցի ռուսական հանճար՝ Լերմոնտովի «Դիմակահանդես» խոշոր դրաման։ Այնտեղ հասա, որ սկսեցի նաև բեմադրել Շեքսպիրի գործերը։ Թիֆլիսում Վահրամ Փափազի հետ մոտ բարեկամներ էինք։ Այդ բարեկամությունը շարունակվեց նաև Մոսկվայում։ Առանց քաշվելու լիովին օգտագործում էի նրա ձևերը և ապրումները, երբեմն նույնիսկ ձայնը։*

*Քաղաքի թատրոնի դերասանները և պատասխանատուները լսելով մեր ներկայացումների մասին, եկել էին ճամբար և տեսել էին իմ խաղացած «Սավան»։ Լեոնիդ Անդրեևիչը և կինը՝ ցանկացել էին, որ ես իրենց թատրոնում էլ խաղամ։*

*Կարո՞ղ էի մերժել երկնքից իջած այս մանանան։ Դարձա պրոֆեսիոնալ դերասան և շատ լավ օգտագործեցի իրադրությունը։ Երկու ամսվա արձակուրդ ստացա հանգստի համար և բռնեցի Մոսկվայի ճանապարհը։ Ճիշտն ասած փախա, Սարատովից բացակայելու իրավունք չունեի։*

*Մոսկվայում սկսեցի ավարտական քննությունները տալ։ Սարատովում ամբողջ ժամանակ նաև սովորում էի կուրսային դասերս։ Համալսարանում «շունը տիրոջը չէր ճանաչում»։ Եթե ցանկանայի, կարող էի ստանալ բժշկի կամ փաստաբանի դիպլոմ։ Պրոֆեսորները անում էին ամեն ինչ, որ դուր գան ուսանողներին և բավարարեն նրանց քմահաճույքները, քանի որ չգիտեին, թե որ ուսանողը «վերևներում» ինչ կապերի մեջ է։ Ստացա դիպլոմս և*

*ոսկի մեդալով ավարտականս։ Գտա անվնաս մնացած բավականին մեծ գումարս և գոհարեղեններս, որոնք ստացել էի հայրիկիցս։ Այդ բոլորը ես պահ էի տվել Մոսկվայում գտնվող իտալացի Ամոդիա անունով մի երգչուհու մոտ։*

*Դրամից և ադամանդներից զատ, ստացա նաև իմ պարսկական անձնագիրը իմ իսկական անունով, որը ինձ շատ ուրախացրեց։*

*Աշխատում էի քաղաքում շատ չերևալ։ Գնացի Հայաստանի կառավարության ներկայացուցիչ Տեր Գաբրիելյանի գրասենյակը, որի քարտուղարն էր Բեկնազարով անունով նախկին ռուսական բանակի սպա։*

*Ներկայացա իմ անունով ու հայտնեցի ցանկությունս։ Ասի, որ ավարտել եմ համալսարանը և ուզում եմ հայրենիք վերադառնալ։ Շատ ուրախացան, քանի որ անցյալս չէի հայտնել։ Երևանում արդեն իշխանության վրա էին բոլշևիկները։ Նրանց ուրախության պատճառն էլ իմացա։ Պարզվում է, որ նրանք փնտրում են մի հավատարիմ մարդ, որ տեղ հասցնի հատուկ կոդ և որ իրենք այլևս չօգտվեն ռուսական կոդից և ունենան իրենց հատուկ կոդը, որը կառավարության սեփականությունն էր։*

*Թե ի՞նչն էր պատճառը, որ նրանք առաջին օրվանից ինձ գրկաբաց ընդունեցին, չգիտեմ։ Տեր Գաբրիելյանը հարցրեց. «Կարո՞ղ ես օգուտ տալ ազգին»։ Պարզ է, որ պատասխանեցի «Այո, իհարկե»։*

*Պետք է նրանք պատրաստեին մի հայկական կոդ և ես դա հասցնեի Երևան՝ Լուկաշինին, որը այդ պահին Հայաստանի գլխավորն էր։*

*Այնքան ինձ հավատացին, որ ես սկսեցի նրանց օգնել այդ կոդը պատրաստելու գործում։ Ես բոլշևիկ չէի և ատում էի այդ գաղափարը, բայց ես ՀԱՅ էի և նրանք էլ ՀԱՅ էին։ Ինձ վստահելու էին մի կարևոր գաղտնիք, որը*

գաղտնի էր պահվում նույնիսկ ռուսական բոլշևիկյան կառավարությունից: Կողը վերջացրինք և տեղավորեցինք Բեկնազարովի համարյա նոր զինվորական կոշիկի կրունկների մեջ: Մեր ոտքի չափսերը նույն էին, իսկ իմ հին կոշիկները կիսամաշ էին:

Ռուսաստանում այդ ժամանակ զանազան սպիտակ բանակներ էին գործում և ուղղակի կապ Կովկասի հետ չկար: Պետք է Մոսկվայից գնայի Սիզրան, որը գտնվում էր Վոլգա գետի վրա և այնտեղից մեկնեի մինչև Աստրախան և այնուհետև Բաքու: Որից հետո գնացքով գնայի Թիֆլիս: Տոմսակը նրանք առան և եկան կայարան ճանապարհելու ու հեռվից նայում էին, թե ինչպես պարսկական անձնագիրը գրպանում, մի ուսանող արևածաղիկի սերմ չրթելով ու թքոտելով աջ ու ձախ, շալակին մի ճանապարհորդական պարկ, անվնաս անցավ բոլոր քննիչ կետերով և մտավ երրորդ կարգի վագոն: Մոտենալով պատուհանին նայեցի նրանց կողմը: Դեմքները ուրախությունից շողում էին: Գլխավոր վտանգը մնացել էր ետևում, որովհետև այդ ժամանակներում ճանապարհորդներին շատ խիստ էին քննում: Երբ գնացքը շարժվեց, ես էլ ժպտացի:

Սիզրան հասնելով իմացա, որ Աստրախան մեկնող նավը կլինի 15 օրից: Որոշեցի գնալ և ներկայանալ պարսկական հյուպատոսություն, մինչև Բաքու տոմսակ ապահովելու համար: Ես նրանց ասացի, որ Պարսկաստան եմ գնալու, խոստացան աջակցություն ցուցաբերել: Ես տվի անձնագիրս և մոտս եղած գումարը և ադամանդները, որ պահեն իրենց պահարաններում, քանի որ հյուրանոց եմ ուզում գնալ: Հյուպատոս Աբդու Ռահմանը և նրա օգնականը՝ Էլիբեկով, ազգությամբ հայ փաստաբան, որը ընտանիքով փախել էր Բաքվից, ինձ խորհուրդ տվին հյուրանոց չգնալ: Հյուպատոսարանում ազատ սենյակ կար անկողինով և նրանք առաջարկեցին ինձ այդտեղ մնալ: Առաջարկն

ընդունեցի, որովհետև չէի ուզում քաղաքում աչքի ընկնել հասկանալի պատճառներով:

Պարզվեց, որ Աբդու Ռահմանը, ոչ միայն կոմունիստ է, այլև ՁԵԿԱ-ի գաղտնի գործակալ է: Մի քանի օր էր մնում, որ ես Նավ նստեի, Ջեկան ինձ ձերբակալեց փողոցում և տարավ հյուպատոսարան, որ ապրած սենյակս խուզարկեն: Եվ հյուպատոսը և օգնականը ապշած դիմավորեցին մեզ և ձերբակալողների պահանջով տարան և ցույց տվին իմ սենյակը: Խուզարկեցին իմ մի քանի չապիկները, կիսահին վերարկուս և բարձի տակ գտան Նագան՝ ռուսական զինվորական ատրճանակ և փամփուշտներ:

Առանց խոսք ասելու ուղղիղ տարան ՁԵԿԱ-ի բանտը: Հյուպատոսը ասաց որ «անհանգիստ չլինեմ», որովհետև ես օտարահպատակ եմ և ինքը ամեն կերպ կօգտագործի իր պաշտոնը հարցը փակելու համար:

Նավի մեկնելուց երկու օր առաջ հյուպատոսը եկավ Ջեկայի բանտ, ինձ տեսության և հայտնեց, որ հարցը լրջանում է, քանի որ բարձիս տակի զենքը գողացված է եղել ՁԵԿԱՅ-ից: Ասաց, որ ամեն միջոց ձեռք է առել և տեսնվել է մեծամեծների հետ և իրեն հաջողվել է կաշառք տալով ինձ դուրս բերելու թույլատվություն ստանալ, Բաքու մեկնելու համար:

Հետաքրքրվեցի, թե որտեղի՞ց գիտեին Ջեկայում ինձ մոտ դրամ լինելու մասին: Չէ՞ որ ամեն ինչ ես հանձնել էի հյուպատոսությունն՝ ի պահ:

Պատասխանը ավելի քան ցինիկ էր. «Ես ասացի, երբ հարցրին, դրամ ունի՞: Միթե, որպես ՄԵՐ երկրի հյուպատոս ես կարող էի ստել նրանց և չասել դրամի մասին» ասաց նա ինձ: Ասաց նաև, որ իրեն հաջողվեց իմ ամբողջ ունեցվածքը նրանց կաշառք տալուց հետո, նրանցից խնդրել տոմսի փող և ճանապարհի ուտելիքի համար մի քանի ռուբլի: Իսկական սպիտակ թելերով կատարած

*սրիկայություն էր նրա արածը։*

*Ճար չունեի։ Ուրախ էի, որ կոշիկններս ոտքերիս են։ Հետևյալ օրը, ինձ ուղղակի տարան նավը և հյուպատոսը ձեռքս տվեց անձնագիրս, մի քանի թղթեր, նավի տոմսակը և մի քանի ռուբլի։ Սպասեց այնքան, մինչև նավը մեկնեց, որ իր պարտականությունը կատարած լինի իր երկրի և քաղաքացու հանդեպ։*

*Նավը հեռանում էր ափից և ես նրան և **ՉԵԿԱ**-ի աշխատակիցներին օդային համբույրներ էի հղում։ Պահ տված հարստությունս **ՉԵԿԱՅԻ**-ի մեծերը և հյուպատոսը եղբոր պես իրար մեջ էին արել։ Իսկ զենքը հյուպատոսը **ՉԵԿԱ**-ից էր բերել և դրել բարձիս տակ։ Լավ էին ծրագրե՞լ... ո՛չ։*

*Այս դեպքը պատահեց 1920-21 թվին և 18 տարի անց, պարսկական կառավարությունը Սիզրանի հյուպատոսին մեղադրում էր հայրենիքի նկատմամբ կատարած դավաճանությունների համար, և նա դատվում էր, որպես բոլշևիկյան լրտես։*

*Նույն թվին նրան կախաղան բարձրացրին Թեհրանի Թոփխանա հրապարակում։ Օրը ցերեկով կատարվեց դա և ես կանգնած էի մահապատիժը իրագործող դահիճներից 15 քայլ հեռու և հյուպատոսի երեսը ծածկած չէր։ Ես կանգնած էի զինվորական նախարարի հետ և անում էի ամեն ինչ, որ մահապարտը տեսնի ինձ և նայի աչքերիս մեջ։ Եվ նայեց ու... կախեց գլուխը։*

*Համոզված եմ, որ ճանաչեց Սիզրանի իր զոհին...։*

*Իսկ ես Բաքու մեկնող նավի վրա Վոլգայով գնում էի Աստրախան։ Ռուսաստանում տիֆը տարածված էր և ես Սիզրանի բանտում վարակվեցի այդ հիվանդությամբ։ Տաքության մեջ էի։ Դեռ Աստրախան չհասած, իմացա, որ Աստրախանի և Բաքուի միջև գործող երկաթուղին բաց է և դա ինձ հնարավորություն կտար Թիֆլիս հասնել*

*ավելի շուտ և քիչ չարչարանքով: Վերարկուիս մեջ կարած ունեի 50 ռուբլի և դա ինձ փրկեց, որ երկուս և կես օրից համնեմ Թիֆլիս: Իմ հիվանդությունը թաքցնում էի, այլապես չէին թողնի գնացք նստեմ:*

*Թիֆլիսի մեր տանը ուրիշ մարդիկ էին բնակվում: Մի կերպ իմացա մայրիկիս և Սաթենիկ քրոջս տեղը և գնացի գտա նրանց քաղաքի ծայրամասի մի կիսաքանդ սենյակում ծվարած: Նախքան ընտանիքիս մասին մանրամասնությունների անցնելը, կպատմեմ, թե ինչպես կատարեցի Մոսկվայում Հայաստանի ներկայացուցիչներին տված խոստումս: Հիվանդությունս արդեն իր գագաթնակետին էր հասել և ես մտած մի կեղտոտ և պատռված անկողին, զառանցում էի՝ Լուկաշին, Լուկաշին ասելով: Քույրս գտավ մի հայ կոմունիստ ու բերեց ինձ մոտ, որ սա մի բան հասկանա այդ անունը տվողից:*

*Իմ զառանցանքը փոխվել էր «Լուկաշինին եմ ուզում, Լուկաշինին եմ ուզում»: Լուկաշինը հայկական կառավարության գլխավորն էր այդ ժամանակ: Երբ տեսան, որ ոչ մեկի հետ միտք չեմ փոխանակում և չեմ էլ ուզում խոսել, հեռախոսով հայտնել էին նրան, որ մի ուսանող Մոսկվայից եկել է, հիվանդ պառկած, քո անունն է տալիս անընդհատ:*

*Հետևյալ օրը նա եկավ և ասաց իր անունը: Երբեք չէի տեսել նրան, շրջապատիս կանգնածներին հարցրի «այդ իր իսկակա՞ն անունն է»: Երբ դրական պատասխան ստացա, պահանջեցի, որ բոլորը դուրս գնան և ինքը մնա ինձ մոտ: Հետը մի քանի մարդ էլ կային, թիկնապահներն էին, նրանց էլ դուրս հանեց: Մնացինք մենակ: Հազիվ կարողացա մեկնել ձեռքս և բարձիս տակից հանել պահած կոշիկներս:*

*–Տեր Գաբրիելյանից եմ բերել սրանք, մեջը հայկական կոդ կա»: Այս լսելով, նա հաշվի չառավ, որ տիֆով հիվանդ եմ և կարող է վարակվել նաև ինքը, համբուրեց ճակատս*

«Ապրես տղաս» ասելով: «Այս ի՞նչ է քո վիճակը սիրելիս» ասելով ներս կանչեց իր հետ եկողներին ու հրամայեց «Հոգ տարեք մեր այս լավ հային: Լավանաս Երևան արի, անունդ ի՞նչ է»: Ասացի անունս:

Հետո եկածները տեսնելով նրան կեղտոտ կոշիկները կրծքին սեղմած, ասացին «Ընկեր Լուկաշին, այդ կեղտոտ կոշիկները դեն նետեք, ինչու եք բռնել»: «Այս կեղտոտ կոշիկները մեզ փրկելու են, տղան Մոսկվայից մեզ կոդ է բերել» ասաց նրանց և դարձավ ինձ. «Լավացիր, ընկեր Յանիկյան, արի Երևան, քեզպեսների կարիքն ունենք»:

Ես ազատ շունչ քաշեցի և խնդրեցի հայտնել Տեր Գաբրիելյանին, որ ես թեև թալանված, բայց ողջ հասել եմ Թիֆլիս և տեսել եմ Լուկաշինին:

Երկու ժամ հետո, գնացողներից մեկը վերադարձավ և իր հետ բերելով մի պայուսակ հանձնեց ինձ ասելով. «Լուկաշինը այս դրամը ուղարկեց ձեզ և ասաց, որ բժիշկ կանչեք և մնացածն էլ ծախսեք տան կարիքների համար»: Պայուսակի մեջ բավականին գումար կար, փրկություն՝ աղքատության մեջ գտնվող մայրիկիս և Սաթենիկ քույրիկիս համար:

Երեք բժիշկներ եկան, որոնք դրամ չառան: Միմյանց մեջ որոշեցին, թե ով ի՞նչ է անելու, որ այս տիֆով մարդուն ազատեն իր հիվանդությունից և կատարեն «ընկեր Լուկաշինի կարգադրությունը»:

Լուկաշինը բացի Հայաստանի կառավարության ղեկավարը լինելուց, նաև Վրաստանում շատ մեծ ու կարևոր անձնավորություն էր: Մեզ համար մի փոքր բնակարան վարձեցին և մեզ տեղափոխեցին այնտեղ:

Թիֆլիսում բոլշևիկների գալու ժամանակ, մերոնց, չգիտեմ ովքեր և ինչպես տեղեկցրել էին, որ ինձ Մոսկվայում գնդակահարել են: Ըստ պատշածի եկեղեցում ինձ համար հոգեհանգիստ են տվել, լաց են եղել և իրար են մխիթարել: Նշանածս՝ Վերգինեն, որը միշտ ինձ սպասելիս

*է եղել, ինձ «թաղելուց» հետո ամուսնացել է մի ուրիշ հայի հետ։*

*Բոլշևիկները մեր ընտանիքը անցկացրել էին «սև ցուցակի մեջ»։ Նման ճակատագրի էին արժանացել հարյուրավոր ունևոր ընտանիքներ, անկախ ազգային պատկանելությունից։ Մեր բնակարանից մերոնց դուրս էին շպրտել փողոց և հայրիկս մեռել էր հենց փողոցում՝ կաթվածից։ Ինձանից մեկ և կես տարի մեծ եղբորս՝ Լևոնին բանտ էին դրել։ Մեծ եղբայր Սուրենը փախել էր։ 10 տարի հետո ես գտա նրա գերեզմանը Կրասնոդարում, որտեղ գնդակահարել էին նրան որպես դաշնակցական։ Նրանից փոքր եղբայրս՝ Դժակը, մահացել էր մինչև բոլշևիկների գալը։ Մայրս խելագարվել էր և ընկել էր փողոցները, որտեղ մուրացկանություն էր անում, իսկ Սաթենիկ քույրս մի լողզգանկա էր գտել և գուլպաներ գործելով մի կերպ ապրել էր։*

*Պարզ է, որ գործարանները և թե հայրիկիս գրասենյակը և բանկերում եղած մեր հաշիվները նույնպես գրավել են։ Մեծ քրոջս Վարսենիկի մեծ տղան իմ հասակակից էր, որը բանտարկվել էր որպես հեղափոխական, մյուսը բոլշևիկ էր դարձել և երրորդը՝ Արշամը, արկածից դարձել էր ցմահ անդամալույծ և գամվել անկողնուն։ Վարսենիկն էլ տարված էր իր ընտանիքի հոգսերով։*

*Մեր բարեկամները և ծանոթները, որոնց դրությունը նույն էր ինչ մերոնցը, նույնիսկ ավելի վատթար, ժամանակ չեն ունեցել մերոնց մասին մտածելու։*

*Դեռ մերոնց բախտը մի անգամ բերել է։ Մայրս ինչ-որ փողոցի անկյունում ողորմություն խնդրելիս, նրան է մոտենում մի մարդ և «Եպրաքսիմա խանում այդ դո՞ւք եք» ասելով, մորս սարսափի է մատնում և խեղճ կինը սկսում է փախչել իր անունը լսելով։ Հարցնողը նրանից հետ չի մնում և այսպես գալիս հասնում է մերոնց ապրած սենյակը։ Մայրիկս պատմում է քրոջս անծանոթի հետապն-*

*դելու մասին և քուլրիկս դուրս է գալիս նրան հանդիմա-նելու։*

*«Լսեք,–ասում է այդ մարդը,– ես ձեզ լավ եմ ճանաչում։ Ես իր ժամանակին Մկրտիչ աղայի պաշտոնյան եմ եղել։ Մկրտիչ աղան իմ քավորն է եղել և հարսանիքս ծախսերը բոլորը ինքն է հոգացել։ Նա մինչև վերջ ինձ օգնում էր և ես հասարակ բանվորից բարձրացա մինչև կառավարիչի օգնականի պաշտոնը»։ Այդ ասելիս նրա աչքերից արցունք-ներ են հոսել։*

*«Ինչպե՞ս ես կարող եմ թույլ տալ, որ Մկրտիչ աղայի կինը ողորմություն խնդրի։ Ես կոմունիստ եմ և պատաս-խանատու պաշտոն ունեմ։ Եպրաքսիմա խանում, ես պարտքս եմ համարում փոխհատուցել քո ամուսնու արած-ների դիմաց։ Դուք մեր «սև ցանկի» մեջ եք, շատ բան չեմ կարող անել, բայց ամեն շաբաթ օր ձեզ երկուսիդ համար ուտելիք կբերեմ, որ անոթի չմնաք։ Մինչև գալս սա վերցրեք»։*

*Եվ նա գրպանից հանելով սեղանին է դնում իր մոտ եղած ամբողջ գումարը։ Գնալիս, շրջվում է և հարցնում. «Ես իրավունք չունեմ ձերոնց մասին հարցնելու, բայց ի՞նչ եղավ Գուրգենը, որտե՞ղ է նա, ամենից շատ բանվոր-ները նրան էին սիրում։ Ամեն գալիս հետը միրգ էր բերում և նստում էր բանվորների հետ ուտելու»։*

*Երբ իմանում է, որ ինձ Մոսկվայում գնդակահարել են, ախ է քաշում և թափվող արցունքների միջից մրմն-ջում է. «ափսոս, լավ տղա էր, նա մեզ հետ պիտի լիներ և ոչ թե մեր թշնամիների»։*

*Ի՜նչ բարոյական ներքնաշխարհ էր ունեցել այդ մարդը, որ չէր կորցրել այն և նույնիսկ լավ էր արտահայտվել իր գաղափարական հակառակորդի հասցեին։ Շատ չեն այսպիսի մարդիկ, բայց նրանց նմանները թեթևացնում են մեր կյանքը և այդպիսիներով կարելի է փրկել մեզ ներկա դարաշրջանում։*

*Հետագայում ես գտա նրան և նա ինձնից ստացավ իր արած բոլոր լավությունների դիմաց, չնայած իմ ատելությունը բացի Թուրքից, տարածվել էր կոմունիստական հասարակություն կազմած բոլոր ազգերի վրա և տարածվել էր անգամ ամբողջ մարդկության վրա։*

*Լուկաշինի տված դրամները և Սաթենիկ քրոջս աշխատանքը մեզ պահում էին։ Երկու երեք շաբաթ անց ես ոտքի վրա էի և շատ թույլ էի զգում։ Ներսս ամբողջովին հուսահատություն էր լցված և նաև ատելություն ամբողջ մարդկության հանդեպ։ Որպես մարդ պարտավոր էի մտահոգվել հարազատներիս ապրուստով և աշխատել դուրս գալ նման դրությունից։*

*Առաջին անգամ էի դուրս գալու պառկածս սենյակից։ Ջէի սափրվել, որ մարդիկ չճանաչեն ինձ։*

*Անցա Գալավինսկի պրոսպեկտը, փոխարքայի պալատը, որտեղ մի ժամանակ պառկած բուժվում էի, որպես հերոս։ Հետո մտա մի փոքրիկ այգի, որը կոչվում էր «Պուշկինի պարտեզ», որտեղ պոետի արձանն էր։ Ջեռնափայտ էի օգտագործում, և նստեցի մի նստարանին, ձեռքերս հենեցի ձեռնափայտին և դեմքս հենեցի ձեռքերիս։ Նայում էի արձանին, բայց մտքերս թափառում էին այլ տեղերում։ «Ի՞նչ եմ անելու, ինչպե՞ս եմ եմ շարունակելու կյանքս, իմաստ ունի՞ այլևս ապրելը»։ Հետագայում ամերիկյան բանտում շատ անգամ եմ նույն դիրքում մտածումների մեջ հայտնվել։*

*Որքան ժամանակ էր անցել, չգիտեմ։ Միտքս անընդհատ նույն խնդիրն էր փորձում լուծել՝ «պայքարել, թե մտնել գերեզման»։*

*Զգացի, որ մեկը երկու ձեռքերը հենել է ուսերիս և հարցնում է. «Գուրգեն, դու ե՞ս»։ Հարցնելն ու գրկախառնվելը մեկ եղավ։ Հովհաննեսն էր, այն ֆեդային, որը կցված էր մեր ուսանողական գնդին, որի հետ միասին մենք օդ*

էինք հանել տաճկական պահեստը: Այդ պահեստի կորստից հետո թուրքերը ստիպված եղան հետ քաշել իրենց ուժերը ամբողջ ռազմաճակատով՝ զինամթերքի բացակայության պատճառով: Այդ գործողությունը ինձ հերոսի խաչի էր արժանացրել:

Ես շարունակում էի նրա երեսին համբույրներ տեղալ և ուրախության բառեր արտասանել: Տեսնելով, որ նա լալիս է, հարցրի. «Հովհաննես, ինչո՞ւ ես լալիս»:

«Գուլամ, որովհետև քեզ թաղել ենք Մոսկվայում և հոգեհանգիստ տվել Խոջեվանքում: Չորս հատ մոմ եմ վառել և չորս անգամ խաչն եմ համբուրել հանուն քո սիրո»:

Տեսնելով իմ տեսքը և հագուստները, ասաց «Ծո, աս ի՞նչ դրության մեջ ես»:

«Երկար պատմություն է, Հովհաննես ջան»– պատասխանեցի նրան:

Առաջարկեց գնանք մոտակա ճաշարանը. «Կճաշենք և կխոսինք և մի քիչ էլ կտոնենք մեր հանդիպումը» ասաց: Տեսնելով, որ ես տատանվում եմ և հասկանալով պատճառը «Գուրգեն, ոչ մի բանի մասին մի մտածիր, ես փող շատ ունեմ, քեզ էլ կհերիքի» ասաց:

Կառքով գնացինք մեր տուն, հայտնելու, որ իմ մասին չանհանգստանան: Տեսնելով մեր ալրած տեղը, սրամտությամբ հայտնի Հովհաննեսը «Ծո, աս որտե՞ղ կապրիք, դռանդ վրա կախե ստացածդ խաչը, թող իմանան ով լինելդ»:

Ճանապարհին կառքը կանգնեցրեց ծաղկավաճառի խանութի մոտ, նպատակը հասկացա, մտքումս ծիծաղեցի, բան չասացի: Երկու փունջ կարմիր վարդերով մենք ներս մտանք մեր սենյակը: Նա ըստ լավ սովորության համբուրեց մայրիկիս ձեռքը և նրան տալով ծաղիկները ասաց. « Մայրիկ, Խոջեվանքում դուժինմ մոմ տվեցի, որ բոլոր սրբերի առաջ վառես, որ քու տղուդ դրախտի ճամփան

լուսավորեն։ Այնինչ ողջ է եղել։ Առ այս ծաղիկները, որ քեզ մոռացնել տան քաշածներդ»։

Մայրս համբուրեց նրա ճակատը, ասելով, որ ուրախ է մեր հանդիպման համար։

Մեր ճաշելը ժամեր տևեց։ Ես նրան պատմում էի իմ գլխին եկած բոլոր մանրամասները, առանց նրանից որևէ բան թաքցնելու, որովհետև ես վստահում էի նրան։

Պատմությունս լսեց, հետո փաթաթվեց ու հարցրեց. «Գուրգեն, երբ բանակում էիր մահից չէիր վախենում, հիմա ինչպե՞ս է, վախենո՞ւմ ես»։

Պատասխանեցի, որ չեմ փոխվել, բայց որ մտածում եմ մերոնց մասին, անելիքս չեմ գտնում։

«Ինձ հետ հանդիպելուց հետո, ոչ մի բանի մասին չմտածես, նամանավանդ փողի»– ասաց նա և նոր շամպայն պահանջեց։

Գնացինք նրա տունը, որտեղ կնոջ, նրա եղբոր, ու իր հոր ու փոքր քրոջ հետ էր ապրում։ Մեր բնակարանից հետո՝ պալատ էր։

Նա էլ սկսեց իր պատմությունը, որն իմ բարոյականու– թյունից բխող հանգամանքներից՝ իրավունք չունեմ գրելու։ Միայն կասեմ, որ ինձանից ոչ պակաս փոթոր– կալից իրադարձությունների մեջ էր ընկել։ Պահեցին իրենց տանը գիշերելու, տեղեկացնելով մերոնց, որ չանհանգստանան։

Ամբողջ ընտանիքով բամբակի գործ էին անում։ Հետևյալ օրը գնացինք գործի տեղը, օֆիսի հետևում, ամբար կար, մամլակ և այլ գործիքներ։ Իմ սիրելի Հովհաննեսը իր ողջ ընտանիքով զբաղված էր կոնտրոբանտով՝ մաքսանենգությամբ կամ արգելված առևտրով։

Թիֆլիսում օղու գործարան կար և տեղական գները 10 անգամ էժան էին, քան Ռոստովում, Խարկովում կամ

Օդեսայում: Թեև կառավարությունը այս հարցում շատ խիստ էր և բռնածին տեղում գնդակահարում էր առանց դատ ու դատաստանի, բայց միևնույնն է, այս վտանգավոր բիզնեսով շատերն էին զբաղված:

Երկու գալոն տարողության հատուկ թիթեղյա աման էին պատրաստում, որը մինչև վերջ լցնում էին, որ ցնցելիս ձայն չհանի: Այդ օղիով լցված ամանը դնում էին փայտից սարքած արկղի մեջ և այդպիսի երկու արկղը տեղավորում էին մամլած բամբակի տոպրակի մեջ և երկաթուղով ուղարկում ռուսական զանազան քաղաքներ և հանձնում նախապես խոսացած գնորդներին: Նույնիսկ բոլոր ծախսերը հաշվի առնելով մեկ ռուբլին դառնում էր ութ ռուբլի, իսկ բամբակն էլ առանձին արժեքով էին վաճառում:

Հովհաննեսի գործը շատ շահավետ էր, բայց որ բռնեին, ամբողջ ընտանիքով կգնդակահարեին:

Այս հանդիպումից հետո, համարյա ամեն օր գնում էի նրա տուն, երբեմն մնում էի գիշերելու: Ինձ դրամ տվեց, որը ես տվի քրոջս:

Խոսակցությունների ժամանակ ես աշխատում էի նրանց համոզել, որ վերջ տան այս վտանգավոր գործին, իսկ նրանք ինձ էին համոզում, որ մտնեմ այդ գործի մեջ, եթե ուզում եմ ինչ-որ կերպ իմ ու մերոնց դրությունը բարելավել: Եկանք ընդհանուր հասկացողության, որ ես իրենց հետ կմիանամ միմիայն մեկ անգամ, որից հետո բոլորս վերջացնում ենք այս խաղը մահվան հետ:

Դրամը իրենք էին դնելու, իսկ գործի ամենավտանգավոր մասը, ուղարկելը և ստանալը ես վերցրի իմ վրա:

Արվող գործի մեջ մտցրի որոշ փոփոխություններ: Գործը սկսեցինք չտեսնված թափով և ես գնացի ռուսական երեք գնորդ քաղաքների հետ կապ հաստատելու և տեղում կազմակերպելու առաքումը: Մյուս «փարթներներս» իրենց

գործն էին անում, և Հովհաննեսը ինձ հետ եկավ իրեն հայտնի քաղաքներում գնորդներին ինձ հետ ծանոթացնելու, որ վերջիններս վստահեն ինձ և չվախենան ինձնից։

«Գուրգեն, ծո աս ի՞նչ կենես, կը երևակայես։ Մենք չատ չատ քսան բել կը ղրկեինք, որ 40 գալոն էր։ Դու կուզես երկու վագոն ղրկես, որը 240 բել և 480 գալոն է, 12 անգամ ավելի քան մենք կանեինք։»- զարմանում էր Հովհաննեսը։

Ես ժպտալով պատասխանում էի. «Հովհաննես ջան, ես ոչ միայն իմ մասին եմ մտածում, այլև ձեր ընտանիքի։ Սա լինելու է ձեր վերջին գործը, որովհետև չեմ ուզում բոլորիդ գնդակահարված տեսնել»։

Նրա ընտանիքն էլ չատ անհանգիստ էր և երբեմն ասում էին. «Աման Գուրգեն, լավ մտածե, որ չբռնվինք»։

Ես լավ մտածել էի և լավ էլ կազմակերպել էի։ Երբ Հովհաննեսի հետ հանդիպեցինք գնողներին, ես հայտարարություն տվի թերթերում, թե գտել եմ մի բամբակի դուբլիկատ, երկաթուղու Թիֆլիս կայարանից՝ ներկայացնողի անունով, հասցեագրված այս քաղաքը և հետն էլ որոշ գումար։ Ես վաճառական չեմ և ուզում եմ կորցնողը հայտնվի և փաստի իր ինքնությունը և տեր կանգնի իր կորցրած դուբլիկատին, իսկ ինձ, որպես վարձատրություն, թողնի այն գումարը, որը նույնպես գտել եմ, որպեսզի ես հանգիստ խղճով ծախսեմ այդ դրամը»։

Այդ քաղաքներում մի քանի կառավարական հիմնարկներում աշխատանքի անցնելու դիմումնագրեր գրեցի։ Որտեղ ես խնդրում էի ինձ աշխատանքով ապահովել, քանի որ Մոսկվայի դիպլոմ ունեի և համապատասխան պաշտոն էի փնտրում։ Նրանցից ստացա պաշտոնական գրություն, որ խնդրագիրս իրենց մոտ հաշվառման է վերցված։

Մի քանի նամակներ պատրաստեցի ուղղված «Կարպ

*Իվանիչին», որտեղ գրված էր բամբակի և ալկոհոլի մասին՝ ստորագրված մի չինծու անունով և հասցեով։ Ստորագրողի անունը դրել էի վերջերս մահացած մի ռուսի անուն։ Մի քանի հյուրանոցների հաշվեցուցակ «Կարպ Իվանիչի» անունով և մի քանի հեռագրերի ստացականներ և ստացման անդորրագրեր լինելու էին իմ «գտած» պայուսակի մեջ։ Մնացած ձեռնարկած միջոցները հիմա չեմ կարող հիշել։*

*Վտանգավոր գործարքի այս նախապատրաստությունները տևեց մոտ երեք ամիս։ Ամեն ինչ, բոլոր տարբերակներով նախատեսել էի և ձեռնարկել էի տարաբնույթ հակամիջոցներ։ Իհարկե, իմ բոլոր զգուշությունները և հաշվարկները չէին ապահովում 100 տոկոսանոց անվտանգություն, հասկանալի է դա, բայց հնարավորին չափ դեպքերի ընթացքի վրա իմ հսկողությունը ես ապահովել էի։*

*Հովհաննեսի հայրը ամեն պատեհ առիթով կրկնում էր. «Պարոն Գուրգեն, հանճար ես եղել և ուսումդ պարապ չի անցել»։ Հովհաննեսն էլ իմ տեղը պատասխանում էր. «Հայրիկ, դու բան չես տեսել։ Կովի դաշտում տեսնեիր Գուրգենին, որ ճանաչեիր։ Հիմա կը հասկնաս, թե ինչո՞ւ աղջիկները ճտեն վար չէին գար»։*

*Իմիջայլոց, այդ ճանապարհորդությունների ժամանակ ծանոթացա բժշկուհի Սուսաննա Քոմուրջյանի հետ, որը հետագայում դարձավ իմ կինը։ Նրա հետ ծանոթության դեպքը թեև շատ հետաքրքիր է, բայց չեմ գրում, որովհետև պատմությունը շատ կերկարի։*

*Վերջապես ապրանքը ուղարկեցինք, որն առանց թյուրիմացության և միջադեպի տեղ հասավ։ Հանձնեցի գնորդներին ու արժեքը ստացա ռուսական ոսկե տասնոցներով։ Այդ ժամանակ առևտուրը կատարվում էր միայն ոսկով։*

*480 գալոն օղու արժեքը, որը մեզ վրա ներփակելով և բոլոր ծախսերով նստել էր հազար ոսկի ռուբլի, ծախվեց 4800 ոսկի ռուբլով, մի գումար, որ այդ ժամանակներում մի հսկա արժեք ուներ։*

*Հովհաննեսին հեռագրեցի, որ «Մերոնց փող տա»։ Դա մեր նշանաբանն էր, որը նշանակում էր՝ ամեն ինչ ավարտվել է հաջողությամբ։ Հեռագիրը Օդեսայից էի ուղարկել։ Ես Հովհաննեսից գաղտնի մի ծրագիր էլ էի պատրաստել, որը պետք է կիրառեի, եթե մեր ձեռնարկածը ավարտվեր հաջողությամբ։ Այս նոր ծրագիրը կոնտրաբանտի հետ կապված չէր և այդ գաղափարի հիմքը եղել էր Սաթենիկ քույրիկիս ունեցած գուլպայի մեքենան։*

*Կովկասում նման մեքենաների պահանջարկը մեծ էր, իսկ Օդեսան նման մեքենաների ծախելու կենտրոնն էր։ Գնեցի 25 հատ զանազան գործելու նոր մեքենաներ և մի հրեայի օգնությամբ շուկայից գնեցի մեծ քանակությամբ հին մեքենաներ, որոնց այս կամ այն մասերը կոտրված էին։ Մոտ երկու հարյուր մեքենա էլ այդպես գնեցի։ Բոլոր մեքենաները՝ հին ու նոր ուղարկեցի Թիֆլիս։ Օդեսայից վերադառնալիս մի երկու օր մնացի Ռոստովում՝ լավ ժամանակ անցկացնելու և հայտնեցի բժշկուհի Սուսաննային, թե որ հիմնարկներում եմ խնդրագրեր գրել աշխատանքի ընդունվելու համար։ Սուսաննայի մի եղբայրը Ռոստովին կպած Նախիջևանում հայտնի բժիշկ էր։ Մեծ եղբայրը եղել էր բանկի տնօրեն և բոլշևիկներից փախել էր Գերմանիա, իսկ կրտսեր եղբայրը, նախկին ռուսական սպա լինելով՝ ծառայության մեջ էր։*

*Թիֆլիս վերադառնալով, ուղղակի գնացի Հովհաննեսենց տուն։ Ամբողջ ընտանիքով ինձ փաթաթվել ու համբուրում էին։ «Տո աս ի՞նչ գործ ըրիր պարոն Գուրգեն» կրկնում էր հայրը։ Նրա ոգևորությանը ես պատասխանեցի «Տեսա՞ր քեռի, ինչպես պարոն դարձա» և բոլորս ծիծաղե-*

*ցինք։*

*Պայուսակով տասնոց ոսկիները Հովհաննեսին տալով կարգադրեցի կայարան գնա և ստանա ուղարկածս 25 արկղերը, որոնց մեջ էին հին ու նոր մեքենաները։*

*Վեցնելով բեռնագրերը զարմացած հարցրեց «աս ի՞նչ են Գուրգեն»։ «Հարիսայի յուղն է» պատասխանեցի նրան, ձեր ապագա գործունեության ապրանքներն են։ Բոլորը մի անգամից հետաքրքրվեցին ու սկսեցին հարց ու փորձ անել իմանալու, թե ի՞նչ եմ մտածել, բայց ես խուսափելով պատասխանից, առաջարկեցի, որ մի քեֆ սարքեն, որ ես էլ մերոնց հետ մասնակցեմ այդ քեֆին։*

*«Գործի մասին վաղը կխոսենք, այսօր եկեք քեֆ անենք» առաջարկեցի ես։ Մինչև առավոտ կերուխումի մեջ էինք, զուռնայի ձայնն էլ աշխարհ էր բռնել։*

*Հետևյալ օրը ես զբաղված էի մեր ընտանիքով։*

*Փաստաբան վարձեցի և լավ կաշառք խոստացա Լևոնին բանտից ազատելու համար։ Նոր բնակարան վարձեցի և մի տարվա վարձը միանվագ վճարեցի։ Մայրիկս և Սաթենիկը իրենց համար հագուստներ առան և տան համար պետքական ապրանքներ գնեցին։ Բժշկի հետ էլ եկա համաձայնության, որ ուշադիր լինի մայրիկիս առողջության հանդեպ և մեկ տարի էլ չէր անցել մայրիկս առողջացավ։ Նրա հիվանդությունը պարզապես ծանր ապրումներից էր առաջացել։*

*Քեֆից առաջացած գլխացավն էլ անցավ։ Հովհաննեսենց տուն գնացի և շուրջս հավաքելով բոլորին լուրջ հարցրի «պիտի ընդունե՞ք առաջարկս»։*

*Բոլորը միաբերան հավանություն տվին և նույնիսկ վրաս զարմացան «Գուրգեն,ատ ալ հարցնելու բան չէ, դու փաստեցիր թե ինչ պտուղն ես»։ Բոլորին հերթով համբուրեցի և ասացի «շնորհիվ մեր միջև առկա եղբայրական զգացումներին Հովհաննեսի հետ, որը*

*մկրտվել էր արյունով, դուք եղաք պատճառը, որ ես նորից ծնվեմ ու զգամ, որ ունեմ որոշ պարտականություններ ու պարտքեր, որոնք պետք է վճարվեն: Առաջին պարտքս է ձեզ դուրս հանել այս վտանգավոր հոսանքից, որը ձեզ ուշ թե շուտ տանելու է դեպի ՉԵԿԱ-ի ձեռքը: Այսօրվանից ձեր բամբակի առևտուրը պետք է վերջացնեք և ինչ որ մնացել է ծախեք կամ վառեք: Եթե դուք չանեք դա, ապա ես կանեմ»:*

*Բոլորը ապշած ու զարմացած նայում էին ինձ:*

*«Ձեր առևտուրը այժմ լինելու է ազատ և չզարմանաք՝ մեքենաների հետ: Առուծախի ապրանքները անդուկների մեջ են և բոլորն էլ ձերն է: Ես կսովորեցնեմ, թե ինչպես եք դա անելու» վերջացրի ես:*

*Լենինի մահացած օրը՝ 1924թ. հունվարի 21-ին, ես ամուսնացա: Նույն թվի հունվարին, ես որպես մասնագետ պաշտոն ստացա Ռոստովում և կասկած չունեմ, որ Քոմուրջյան ընտանիքի անդամների մասնակցության և աջակցության հիման վրա ես կարողացա այդ պաշտոնը ստանալ: Ստացած պաշտոնս շատ խոշոր էր և պատասխանատու:*

*Մինչև 1930 թվականը, վեց տարի ես վարեցի այդ պաշտոնը և աշխատավարձս էլ բավականին բարձր էր՝ երեք անգամ ավելի, քան ստանում էին կոմունիստ բարձրաստիճան ղեկավարները: Հավատարմությամբ և նվիրումով աշխատելու շնորհիվ ես վայելում էի իմ վերադասի վստահությունն ու համակրանքը: Առանց իմ ստորագրության ոչ մի նավ չէր կարող Կովկասից արտասահման մեկնել:*

*Ռոստովը միակ ճանապարհն էր որով Ռուսաստանը կապված էր Կովկասի հետ: Ռոստովի կամուրջի վրայից անցնում էր երկաթուղին, իսկ տակից լողում էին նավերը: Կամուրջը բացովի էր և ամեն անգամ տրանսպորտի մի*

տեսակը պետք է ճանապարհը գիջեր մյուսին։ Կուսակցության ղեկավարները, որ գործից չհասկացող մարդիկ էին, շարունակաբար մեծ գլխացավանքների մեջ էին այս հարցով։

Առաջարկեցի ինձ տալ իրավունք այդ հարցը կարգավորելու համար։ Մեծ ուրախությամբ համաձայնվեցին։ Մեկ ամսվա ընթացքում կազմեցի բոլոր տեսակի երթևեկության միջոցների ճշգրիտ գրաֆիկը, որի հետևանքով առաջին հերթին աշխատանքից դուրս թռան մի քանի կոմունիստ անկարողներ։ Ես ստացա շնորհակալություն և պաշտոնի բարձրացում։ Ինձ նշանակեցին բոլոր տեսակի հաղորդակցությունների միշտական գործող հանձնախմբի անդամ։ Հանձնախումբը բաղկացած էր երեք հոգուց, որոնցից երկուսը հայտնի կոմունիստներ էին։

Մի քանի անգամ Գե Պե Ու-ն (Պետական Քաղաքական Վարչություն-ԼՈՒՅՍ) իր գաղտնի գործակալներով փորձեցին ինձ մեծ գումարի կաշառք տալ, որ ես վագոններ տրամադրեի սպեկուլյանտներին։ Ձերբակալեցի առաջարկողներին և հանձնեցի իրենց, որից հետո իմ հարգն ավելի բարձրացավ, քանի որ ստուգեցին, որ ես կաշառք չեմ վերցնում։ Հասկացան, որ ես կաշառք ուտող չեմ, իմ բնությին անհարիր է և դրա կարիքն էլ չունեի՝ այնքան բարձր էր աշխատավարձս և նաև մի առաջարկություն էի ծախել կառավարության վրա, որից շատ դրամ էի ստանում։

Վագոնների հացահատիկով բեռնելը և բեռնաթափելը շատ աշխատատար էր և օգտագործվում էր մեծ քանակությամբ պարկեր։ Ես առաջարկեցի գործածել շարժական մի մեքենա, որը դեպի վագոն էր տեղափոխում կամ բեռնաթափում հացահատիկը։ Այդ գյուտի առաջին օրինակի համար ստացա մի քանի տասնյակ հազար ռուբլի և իմ և գործարանի միջև կնքած պայմանի համաձայն ամեն մի «ԱՔՍԱՅ» մեքենա թողարկելիս ինձ հասանելիք տոկոսն

*ունեի և բոլոր մեքենաների վրա գործարանը պարտավոր էր գրել «Էլեվատոր Սիստեմ. Ինժեներ Գ. Ցանիկյանի»:*

*Այս մեքենայի մեծ պահանջարկ կար երկրում և հազարավոր կայարաններ հերթի էին սպասում դրանից ունենալու համար:*

*Եկավ Ռուսաստանի հայտնի սովի տարին: Վոլգայի շրջանում սովն այնքան սաստկացավ, որ սկսեցին մարդու միս ուտել նույնիսկ: Դիակներից երշիկ էին պատրաստում ու ծախում: Գրածս լուրջ է:*

*Ղեկավար անխելքների պատճառով սովը մոտենում էր Հյուսիսային Կովկասին:*

*Աշնանը, հունձից հետո հացահատիկը չէին տեղափոխել ալրաղացները և թողել էին Դոն գետի վերին մասերում գտնվող գյուղերի շտեմարաններում, որոնք 50–100 կիլոմետր հեռու էին երկաթգծից: Մեկ միլիոն տոն հացահատիկ ձմռան պատճառով դարձել էր անհասանելի և պետք է սպասեին մինչև գարուն, ձյուների հալչելուն և ճանապարհները բացվելուն: Բայց այդ հացահատիկը որպես սերմնացու օգտագործում էին նաև ամբողջ Հյուսիսային Կովկասում և ճանապարհների բացվելուն սպասելով ձեռքից բաց կթողնվեր ցանքսի ժամանակը և աղետը վրա էր հասնելու հենց այդ տարի, քանի որ հացահատիկ արտադրող այդ կարևորագույն շրջանը նաև ինքն էր մնալու առանց հացի: Տարածքաշրջանը ընդգրկում էր 40 միլիոն բնակչությամբ լավորակ հողեր:*

*Կոմունիստ ղեկավարները գլուխները կորցրել էին: Մոսկվայից Ստալինը հրամայել էր, «եթե գյուղացիները սերմնացու չստանան իր ժամանակին, բոլոր մեծամեծներին պատժելու է»: Իսկ Ստալինի «պատիժը» գնդակահարելն էր:*

*Այս գործը, որի մասին պատմում եմ, իմ պաշտոնի հետ կապ չուներ: Ես արդեն չորս տարի այդ պաշտոնում էի և*

մեծ անուն և դիրք ուներ: Շատերը սիրում էին և նույնքան մարդիկ էլ կային, որ ատում էին ինձ: Ցանկություն ունեի գնալ Պարսկաստան, քանի որ տեղյակ էի այնտեղ բացված աշխատանքների մասին: Գլխավորը կազատվեի ծառայու-թյունից և սեփական բիզնեսս կվարեի և կիրականացնեի կյանքիս գլխավոր նպատակը: Ես պարսկական անձնագիր ունեի: Մի քանի անգամ դիմել էի կնոջս պարսկահպատակ դարձնելու համար, բայց ամեն անգամ բոլշևիկյան կառավարությունը մերժել էր:

Առանց կնոջս Պարսկաստան չէի ուզում գնալ, քանի որ ամուսնության ժամանակ պատմել էի իմ ունեցած ծրագրի մասին, որը նրան շատ էր դուր եկել, չնայած ռուսախոս էր, բայց ինձնից պակաս հայ չէր:

Մեր հիմնարկության գլխավորը հայտնի կոմունիստ Կլավդեյ Իվանովն էր: Մի ազնիվ ու գաղափարական կոմունիստ: Ավարտել էր համալսարանի իրավաբանական ֆակուլտետը:

Մի օր ինձ կանչելով իր գրասենյակ, սկսեց խոսել ստեղծված ծանր դրության մասին: Ես, ըստ սովորությանս, ասացի «պուլչներ են գործի գլուխը կանգնածները, որ հացահատիկը չեն տեղափոխել իր ժամանակին և ստեղծվել է նման կացություն»:

–Հնարավո՞ր է հիմա տեղափոխել, հարցը ուղղեց նա ինձ և ես էլ միամտաբար պատասխանեցի:

-Â ìèðå íåâîçìîæíî òîëüêî îæèâèò ìåðòâîãî (Աշխարհում հնարավոր չէ միայն մեռածին վերակեն-դանացնել, ԼՈԻՑՄ):

Հաջորդ օրն ինձ տարավ «Հացահատիկի հանձնաժո-ղով»-ի նիստին: Այդպիսի հանձնաժողովներ կազմա-կերպված էին տարբեր տեղերում և գլխավորը գտնվում էր Մոսկվայում: Արտակարգ ստեղծված կենտրոնական կառավարական հանձնաժողովի մեջ էր նաև Ստալինը:

*Ես զարմացա նրա այդ քայլից, բայց չէի կարող ոչինչ ասել, քանի որ Իվանովը իմ մեծավորն էր և նա էր ինձ աշխատանքի վերցրել։*

*Տեղական «Հացահատիկ»-ի հանձնախմբի անդամներն էին Գե-Պե-Ու-ի պետը, Ռոստովի մարզի կուսակցական քարտուղարը և մեր Իվանովը, որը ներկայացնում էր տրանսպորտային ծառայությունը։ Հանձնախմբի մեջ էին նաև երկու այլ կազմակերպությունների ղեկավարներ։*

*Իմ հայտնվելու վրա հանձնախմբի մնացած անդամները ոչ մի զարմանք չցուցաբերեցին, քանի որ նախապես Իվանովը նրանց տեղյակ էր պահել իմ մասին։ Իմ հետ սկսված նախնական խոսակցությանը բոլորը հետաքրքրություն ցուցաբերեցին, որից ես մի քիչ անհարմար զգացի։ Նախագահը նույնիսկ ինձ «տավարիշչ Ցանիկյան» անվանեց, որը պետք էր բացառիկ պատիվ համարել, որովհետև Իվանովը աշխատանքի վայրում, երբեմն հանաքով, ինձ «պերսիդսկայա մորդա» (պարսկական մռութ-ԼՈԻՑՄ) էր անվանում, երբ հատկապես իմ կատարած գործից շատ գոհ էր մնում։*

*Կուսակցության քարտուղարը, որ նախագահում էր նիստին, խոսքը տվեց Իվանովին՝ «նաչինայ տովարիշչ Կլավդեյ» ասելով։ Իվանովը ժպտաց ու նայելով ինձ հայտարարեց... կրկնելով իմ ասածը «Որ միայն մեռածին չի կարելի կենդանացնել»։ Նա որպես իմ ղեկավար, խոսքը տվեց ինձ, որպեսզի ես ներկաներին բացատրեմ թե ինչպես եմ ես կատարելու մեկ միլիոն տոննա ցորենի տեղափոխումը Դոնի վերին ամբարներից դեպի երկաթուղու սիլոսները։*

*Ես նույնպես ժպտալով հարցրի.*

*– Ի՞նչ է, ինձ արդեն նոր պաշտոն է տրվա՞ծ։*

*– Պաշտոն և հրաման, –ասաց Իվանովը,– դու պիտի կազմակերպես և գլուխ հանես այս գործից։ Ասա ի՞նչ է քեզ հարկավոր։ Այսօրվանից դու ժամանակավորապես*

ազատված ես քո նախկին պաշտոնից և լինելու ես այս կոմիտեի աշխատակազմում։

Մի քանի րոպե ժամանակ խնդրեցի մտածելու և քննելու պատին ամրացված այդ շրջանի հսկայական քարտեզը։ Թեյ բերեցին, նրանք թեյ էին խմում, իսկ ես զննում էի քարտեզը և մտքումս ինձ պարսավում, որ նման խոսք ասելու հիմարություն եմ ունեցել Իվանովին։ Բայց ճար չունեի։

Վերջացնելով քարտեզի զննումը, ես շնորհակալություն հայտնեցի «պերսիդսկայա մորդայի» նկատմամբ ցուցաբերած գնահատանքի և վստահության համար։ Այդ խոսքի վրա Իվանովը ժպտաց և բոլորը հասկացան, որ դա նրա խոսքերն են։

Այնուհետև ես շարադրեցի իմ պահանջները և իրավունքները։

Մինչև հացահատիկի տեղափոխումը սկսելը ես կուզենային ընթերցողներին հիշեցնել մի քանի մանրամասնություններ, որոնք նույնպես կարևոր են։

Հովհաննեսի հետ մեր «բամբակի գործը» ավարտելուց հետո, նրա առևտրական գրասենյակը վերածեցինք մի փոքր արհեստանոցի, որտեղ ցուցադրվում էին զանազան տեսակի կարի, գործող և այլ մեքենաներ։ Առաջին օրն էլ երկու մեքենա ծախվեց 10 ռուսական ոսկով և դա մեծ ոգևորություն պատճառեց բոլորին և սրտով գործի կպան։

Սաթենիկ քրոջս համար մի քանի նոր մեքենաներ առանձնացրի և շուտ շարքից դուրս եկող պահեստամասեր էլ տվի։ Մի քանի շաբաթ նրան սովորեցնում էի նոր մեքենաների հետ վարվելու ձևը, ինչպես նաև «Օդեսայի մարդու» հետ նամակագրությունը պահպանելու կարգը՝ նորանոր ապրանքներ ստանալու համար։

Հովհաննեսը և իր ընտանիքը կատարել էին աշխատանքի բաժանում։ Հայրը իր վրա էր վերցրել վաճառելու

*գործը՝ նախօրոք իմ համաձայնությունը վերցնելով։*

*Թեև նրանց ներքին գործերին ես չէի խառնվում, բայց նրանք միշտ ինձ հետ խորհրդակցում էին և իմ կարծիքի հետ հաշվի էին նստում, չնայած ես Հովհաննեսից վեց տարով երիտասարդ էի։*

*Հովհաննեսի հետ եղբոր պես բաժանեցինք մեր շահը։ Ես հրաժարվեցի մեքենաների շահից, որպես շնորհակալություն, որ նրանք հավատալով ինձ, ոչ միայն իրենց ամբողջ ունեցվածքն էին գործի մեջ դրել, այլ պարտք էին վերցրել և դա ինձանից գաղտնի էին պահել։*

*Բժշկուհուց նամակ ստացա, որ գնամ Ռոստով, որովհետև իր բնակարանը ձեռքից կարող է գնալ, եթե ավելի մարդ չբնակվի։ Եվ ես այսպես, ապահովելով մերոնց ապրուստը, մեկնեցի Ռոստով։ Ինչպես ասացի ամուսնացա Լենինի մահվան օրը և Հովհաննեսն էլ եղավ իմ քավորը։*

*Բժշկուհու ընտանիքը խնդրեց, որ ամուսնությունը լինի նաև եկեղեցում և ես հոժարությամբ ընդունեցի։*

*Կնոջս հետ մենք ապրեցինք 50 բախտավոր տարիներ։ Իմ ունեցած բացասական և թերի կողմերը գաղտնիք չէին կնոջս համար և նա միշտ ներողամիտ էր իմ նկատմամբ, ասելով. «Նույնիսկ ամենամաքուր ադամանդն անգամ մեջը որոշ թերություններ կունենա և դրա համար ադամանդը չեն նետում»։*

*Շնորհակալ եմ Սուսաննա։ Դու եղար ոչ միայն իմ կինը, այլ նաև իմ նպատակների ընկերը։ Միասին վայելեցինք լավ օրերը և միասին տանջվեցինք վատ օրերին, որ դժբախտաբար այս ազատ կոչված Ամերիկայում տեղի ունեցան։ Ներիր, որ դիակիզմանդ բացակայում էի…*

*…Ես բացատրեցի ներկաներին, որ պետք է ինձ տրվի անսահման իրավունք և իմ որոշումները չենթարկվեն քննադատության և կամ բեկանումի։ Իմ աշխատանքի*

*նկատմամբ ցանկացած նկատողություն ես կընդունեմ գործը ավարտելուց հետո միայն: Ինձ պետք է տրվի մեկ միլիոն ռուբլի դրամ և դա պետք է ծախսեմ ես, իմ ստորագրությամբ միայն: Ինձ պետքական մարդիկ ես եմ ընտրելու:*

*– Իհարկե, իհարկե,–լսվեցին ամեն կողմից:*

*Մի անգամ ևս շնորհակալություն հայտնելով նրանց ես հայտնեցի նաև, որ վարձատրությանս հետ մեկտեղ մի պահանջ էլ կներկայացնեմ, որի մասին կիմանաք գործը ավարտելուց հետո:*

*–Իհարկե, իհարկե,– հաստատեցին նրանք:*

*Կնոջս բացատրեցի, որ շատ դժվար պատասխանատվու- թյուն եմ վերցրել, բայց ուրիշ ելք չունեի:*

*Գե–Պե–Ուն իր գծով հեռագիր էր հաղորդել, որ իմ բոլոր կարգադրությունները կատարվի:*

*Մեր և հարևան հիմնարկներից 35 պաշտոնյաների թիմ հավաքագրեցի: Բոլորին ճանաչում էի, նրանց 80 տոկոսը կոմունիստներ էին: Իրենց նախկին ռոճիկներից երեք անգամ ավելի աշխատավարձ նշանակեցի: Նրանցից մեկին գանձապահ կարգեցի, որը ստացավ բանկից մեկ միլիոն կանխիկ դրամ: Կոպերատիվի պահեստից բոլորին տրվեց ձմեռային տաք հագուստներ: Մեկ ամսվա աշխա- տավարձը բաժանվեց բոլորին, որ թողնեն իրենց ընտա- նիքներին և մեկնեն Ջերտկով քաղաք և սպասեն ինձ:*

*Որոշ կարգադրություն անելուց հետո, ես իմ օգնականի հետ նույնպես մեկնեցի:*

*Ջերտկով հասանք գիշերով և մեզ դիմավորողներ չկային, չնայած հրահանգել էի: Տեղի ՋԵԿԱ–ի մեծը կայարանում ինձ էր սպասում: Հայտնեց, որ բոլորին ձերբակալել է: Գնացինք իր գրասենյակը և կարգադրեց բանտարկյալներին բերել: Բոլորն արյունլվիկ, ջանգռոտ- ված եկան և պատի տակ շարվեցին:*

Պարզվեց, որ իմ տված դրամները իրենց համար գայթակղություն է եղել և Ջերտկով ժամանելուն պես նշել են իրենց հաջողությունը և այնքան են խմել, որ կորցրել են իրենց և սկսել են տեղի բարձրաստիճան զինվորականների կանանց ավել պակաս ռեպլիկներ նետել, հետևներից գնալ և կռիվ սարքել:

Ջեկայի մեծը ստիպված է եղել ձերբակալել և այդ մասին տեղյակ պահել Ռոստովի Ջեկայի մեծավորին: Վերջինս կարգադրել է, ոչ մի նախաձեռնություն չցուցաբերել և սպասել մինչև ժամանի Ցանիկյանը և ինքը որոշում կայացնի:

Մի լավ հայհոյելով իմ պաշտոնյաներին և ամաչեցնելով, որ կոմունիստին անվայել վարք են ցուցաբերել, երբ մեր ձեռնարկած գործը պետական կարևորություն ունի: Ասացի նաև, որ իրենց արարմունքը ենթակա է պատժի և խնդրեցի Ջեկայի մեծից, որ նրանց տա իմ երաշխավորության տակ և պատիժը որոշի գործը ավարտելուց հետո:

Երբ մնացինք մենակ, Ջեկայի մեծը գովեց ինձ և ասաց, որ ես լավ դիպլոմատ եմ: Որովհետև ես իրավունք ունեի առանց մի այլևայլության ազատել նրանց և նույնիսկ գայրանալ Ջեկայի վրա, իմ աշխատողներին նման վերաբերմունքի արժանացնելու համար: «Հիմա քո պաշտոնյաները ամեն ինչ անելու են, որ քո պատիժը մեղմ լինի»- ասաց Ջեկայի պատասխանատուն: Եվ նա ճիշտ դուրս եկավ, նրանք ծառայեցին իրենց ուժերից առավելագույնը ծախսելով իմ հրահանգները կատարելու ժամանակ:

Ձեզ պատմելու թե ինչպես վերջացրինք ցորենի գործը: Ես մոբիլիզացիա էի հայտարարել բոլոր գյուղերում և գյուղացիների սահնակները տրամադրել ցորենի տեղափոխմանը: Իմ գործադրած եղանակը իրավունք ուներ անելու միայն կառավարությունը և այն էլ պատերազմի

*ժամանակ։ Ես իմ լիազորությունները օգտագործելով, կարծես թե հայտարարել էի «Արտակարգ դրություն»։ Փաստորեն կառավարության փոխարեն ես էի մեջտեղ եկել։*

*Հետաքրքիր դեպքեր շատ եղան, պատմելու եմ միայն երկուսը։*

*Իմ կիրառած աշխատանքային մեթոդներից դժգոհ, շրջանի գյուղական ներկայացուցիչներից կազմված պատվիրակությունը մեկնում է Մոսկվա, երկրի նախագահ Կալինինի մոտ, բողոքելու ինձ վրա։ Կալինինը հայտնի էր, որպես գյուղացության շահերի պաշտպան։ Երբ պատվիրակությունը պատմել էր իմ արած «անօրինականություններից» մասին, Կալինինը կատաղել էր և հանձնարարել էր Չեկային մարդ ուղարկել և ինձ ձերբակալել։ Իրոք, իմ արածները ոչ մի օրենքի չէին ենթարկվում, ես ինքս էի ստեղծում այն որոշումները, որոնք տվյալ պահին անհրաժեշտ էին և դա՛ փրկեց գործը։ Կալինինը հրամայել էր ինձ տանել Մոսկվա։*

*Իսկ Չեկան հեռագրով տեղեկացրել էր իր բոլոր ներկայացուցիչներին, որ ամեն միջոցով տեղերում պաշտպանեն իմ գործողությունները։*

*Տեղական և Մոսկվայից եկած չեկիստները եկել էին ընդհանուր համաձայնության և... «ինձ երբեք չէին գտնում»։ Գյուղացիները իմ եղած տեղի մասին հայտնում էին Չեկային և նրանք ժամանում էին ինձ «ձերբակալելու» միշտ երկու ժամ «ուշացած»։ Նոր տեղիս մասին նորից հայտնում էին նրանց և գալիս էին այստեղ էլի «ուշացած»։*

*Ես այս մասին չգիտեի, դա ինձ պատմեցին գործը ավարտելուց հետո և ծիծաղից թուլանում էին։*

*Ես իրավունք ունեի չվերթով գնացող գնացքները կանգնեցնել իմ ուզած կիլոմետրի վրա և սպասեցնել ինչքան ինձ անհրաժեշտ էր։ Երբեմն 2–3 գնացք էի կանգնեցնում բաց տարածությունների վրա։ Ունեի 16 կենտրոններ,*

*որտեղ լինում էի ամեն օր կարգադրություններ կատարելու և վճարումներ հատկացնելու: Իմ տրամադրության տակ էին քառածի սահնակներ, որոնք ինձ սպասում էին դաշտի այս կամ այն կետում:*

*Ես սահնակից տեղափոխվում էի գնացք կամ հակառակը: Եվ ահա մի օր սահնակի մեջ սպասում եմ հերթական գնացքի ժամանմանը, որը կանգնելու էր դաշտի մեջ, ինձ վերցնելու համար:*

*Գնացքները տարբեր չվերթների էին, բայց բոլորը ենթակա էին իմ հրամանին:*

*Երևացող գնացքը 5 վագոնից էր բաղկացած և բոլոր վագոններն էլ բացառիկ էին: Գնացքը եկավ և կանգնեց իմ սահնակի մոտ:*

*Ուղեկցող ծառայողը մոտեցավ դռանը, ինձ ներս ընդունելու համար և ներսից մի մարդ մոտեցավ նրան և սկսեց գոռալ, թե ո՞վ է իրավունք տվել, որ իր գնացքը կանգնեցնեն:*

*Ուղեկցողը ցույց տալով ինձ, որ այդ պահին մոտենում էի վագոնին ասաց. «Սա՛»:*

*– Դու ո՞վ ես, որ տափաստանի մեջ կանգնեցնում ես իմ գնացքը, – զայրացկոտ դիմեց նա ինձ:*

*– Գիտես, ես ո՞վ եմ, – ծիծաղելով պատասխանեցի ես հայերեն,– անունդ ասելու կարիք չունես, քիթդ աչքիս առաջ է, ընկեր Միկոյան:*

*Անսպասելի էր իմ հայերեն խոսելը նրա համար, բայց ժպտալով, ռուսերեն ասաց.*

*– Դու այն ցորենի հարցով զբաղվող Ցանիկյանն ե՞ս: Ներս արի ընկեր Ցանիկյան:*

*Ինձ լավ ընդունեցին և պատիվ տվեցին: Կես ժամ հետո ես պետք է իջնեի: Երբ գնացքը նորից կանգնեց, որ դուրս գամ ու նստեմ ինձ սպասող մեկ այլ քառածի սահնակ, Միկոյանը գրպանս երկու չիչ սքանչելի արտասահմանյան*

կոնյակ դրեց։ Բաժանվեցինք ընկերների նման։

Տանր, շատ ծանր գործ եղավ այս ցորենի տեղափոխու-թյունը։ Ամեն կերպ հետևում էի, որ դժբախտ պատահարներ չլինեն։ Սարսափելի ձմեռ էր, 30–35 աստիճան ցուրտ։ Երկու գյուղացի անտեսելով իմ կարգադրությունները սառեցին։ Ես էլ պիտի սառեի, բայց այն ավարտվեց ընդերիս սառելով, որի պատճառով կորցրի առաջին երեք ատամներս։ Մի քանի գյուղացի կանայք մեռած երեխաներ ծննդաբերեցին։ Ձիերի սառելը և սատկելը նորմալ երևույթ էր։ Միակ մխիթարությունն այն էր, որ դրամը հոսում էր ջրի նման ու մարդկանց շատ լավ վճարում էի և իրենց կրած վնասները ինչ-որ ձևով փոխհատուցվում էին։

Գործը վերջացրի։ Վերջին տոննա ցորենը հասցրինք Ջերտկովի ալրաղացը ու ես թոքերի բորբոքումով վերադարձա Ռոստով։ Միայն Իվանովն ու կինս գիտեին, որ ես պառկած եմ տանը։ Կնոջս եղբայրը, երկու բժիշկների հետ հոգ էին տանում ինձ։ Շատերը, նաև պաշտոնյաները կարծում էին ես կորել եմ և ցանկանում էին շներով ինձ փնտրել տալ։

Առողջացա և առաջին այցելությունս Իվանովին եղավ։ Երեսուն փաունտ նվիրել էի։ Երբ ինձ տեսան այդ դրու-թյան մեջ «Հացի Կոմիտեի» անդամները սկսեցին գովել իմ աշխատանքը և հայտնեցին, որ անձամբ Ստալինն է շնորհավորել։

Առաջարկեցին կոմունիստական կուսակցության շարքերն անցնեմ և որպես մեծ պաշտոնյա Մոսկվա տեղա-փոխվեմ։ Հարցը շեղեցի դեպի ինձ խոստացված վարձատ-րությունը։ Որոշեցին ինձ հատկացնել մեկ տարվա ռոճիկ և երեք ամիս անվճար սանատորիա ուղարկել։ Ինձ ու կնոջս առաջարկվեց Յալթայի ամենաշքեղ սանատորիան, որից օգտվում էին մեծավոր կոմունիստները։

Շնորհակալություն հայտնելով հիշեցրի, որ գործի ավարտից հետո իմ խնդրանքը չմոռանան։

-Այո հիշում ենք,- հայտնեց Իվանովը:

Խնդրեցի, որ կնոջս հպատակությունը դարձնեն պարսկահպատակ:

Սկսեցին համոզել, որ դա լինելու բան չի, որ դա նույնիսկ Մոսկվայում չեն կարող անել և այլն: Խնդրեցի, որ իմ խնդրանքը գրավոր ուղարկեն Մոսկվա, իրենց խոստումի համապատասխան: Ընդունեցին ասածս և ուղարկեցին Մոսկվա: Գործը Չեկայով և Գեպեուով հասել էր Ստալինի մոտ, նրա վերջնական որոշումին: Ստալինը հրամայել էր բավարարել իմ խնդրանքը և նամակ էր գրել Ռոստովի «Հացի Կոմիտեին», որտեղ ասել էր «Նա ձեզ բանտից ազատեց, իսկ դուք մտածում եք մի կնոջ ռուսական հպատակությունը պաշտպանե՞լ»:

Արդեն Ռոստովի պարսկական հյուպատոսությունում իմ հարցը կարգավորել էի և Սուսաննան էլ ստացավ պարսկական հպատակություն՝ իբրև թե ծնվել է Թավրիզում:

Սանատորիայից օգտվեցինք, մեկ տարվա ռոճիկս էլ ստացա: Պարսկաստան գնալու պատրաստություններ էինք տեսնում:

Որոշեցի գնալ Մոսկվա: Համաձայն կառավարության հետ ունեցած պայմանագրի ինձ հասանելիք բավական մեծ գումար կար իմ հնարած մեքենայի համար:

Երբ ներկայացա, խնդրեցին հետևյալ օրը գամ: Հաջորդ օրը մեծավոր պաշտոնյայի կողքին նստած էր մի չեկիստ զինվորական:

Խնդրեցին, որ պահանջս կրկնեմ: Զինվորականը նայեց ինձ և հարցրեց «կուզե՞ս բանտ գնալ»: Իհարկե պատասխանեցի՝ «ոչ»: «Այդ դեպքում մոռացիր քո պայմանն ու դրամը և գնա տուն»- ասաց չեկայի զինվորականը:

Այսպես ավարտվեց իմ ծախած պատենտի պատմությունը:

*Իվանովի կարգադրությամբ մեզ հատկացվեց մի վագոն, որ մենք մեզ հետ տանենք մեր իրերը, նույնիսկ ռոյալը։*

*Երբ բեռնում էինք մեր իրերը, տեսա թե ինչպես կայարանում երկու աշխատողներ իմ հնարած մեքենայի վրայից պոկում են իմ անունը։*

*Մի քանի օր Թիֆլիսում մնացինք մերոնց մոտ և 1930 թվականի մայիսին, ես ու կինս անցանք ռուս–պարսկական սահմանը և հաստատվեցինք Թավրիզում և սկսեցինք մի նոր կյանք։ Ես 35 տարեկան էի, գլուխս լի գաղափարներով և ծրագրերով, մի քանի դոլար գրպաններումս և բավականին կարատներով ադամանդներ, որը պահել էինք մեր իրերի մեջ։*

*Պարսկաստանում հետաքրքիր դեպքեր կատարվեցին, որը եթե պատմեմ հարյուրավոր էջեր կգրվեն։*

*Հիշարժան են Թավրիզում իմ առաջին գործերը, որ պայմանագրով կատարեցի նահանգապետի հետ։ Ըստ այդ պայմանի պետք է պատրաստեի պարսկական հայտնի շահերի կիսանդրիները, որոնք կանգնեցնելու էի հրապարակում։ Այդ կիսանդրիները պետք է կիսաբոլոր դասավորվեին Ռզա Շահ Պահլավիի արձանի շուրջը, որը պատվիրված էր Իտալիայում։*

*Ինձ տվեցին 10 հատ հին թուրքական բրոնզյա թնդանոթներ, որոնցից պետք է ձուլեի կիսանդրիները։*

*Մինչ այդ Պարսկաստանում ձուլարաններ չկային և ես առաջին անգամ էի այդտեղ դրանք կառուցում։*

*Կփորձեմ Պարսկաստանում սկսած կյանքս նկարագրել մի փոքր մանրամասնորեն։ Փաստորեն, շնորհիվ հորս հակաօրինական ստացած իմ պարսկահպատակության, երբ ես երկու տարեկան էի, ես կարողացա Պարսկաստան գալ։ Կնոջս պարսկահպատակությունն էլ ստացա որպես պարգև՝ կատարածս «հացի գործի» համար։*

Հաստատվեցինք Թավրիզում։ Երկու շաբաթ անց կինս իր մասնագիտության շնորհիվ սկսեց լավ վաստակել։ Ես դեռ անգործ էի և ուրիշի մոտ էլ ծառայության անցնել չէի ցանկանում։ Ուզում էի իմ սեփական գործը սկսել։

Բոլոր հարմարություններով գրասենյակ էի բացել և հայտարարություն էի տվել տեղական պարսկական թերթերին՝ թե ընդունում եմ կապալով կատարվող ամեն տեսակի գործեր։

Հրավեր ստացա Աղայե Մանսուրից, որն այն ժամանակ Ատրպատականի կառավարիչն էր և Ռզա Շահ Պահլեվիի հարգանքն էր վայելում։

Որոշված ժամին գնացի պալատ։ Մի զարգացած պարսիկ մտավորական էր և ամենագլխավորը՝ խոսում էր ֆրանսերեն։ Դա շատ կարևոր էր ինձ համար, որովհետև ես պարսկերեն «սալամ ալեյքում»-ից զատ ուրիշ խոսք չգիտեի։ Հետս մի պարսիկ թարգմանիչ էի տարել, որին ազատ արձակեցի, երբ իմացա Աղայե Մանսուրի ֆրանսերեն տիրապետելը։

Հյուրասիրեց թեյով, դեսից դենից խոսեցինք և վերջում հայտնեց ինձ հրավիրելու նպատակը։

Ռզա Շահի բրոնզաձույլ արձանը, որը պատվիրված էր Իտալիայում, շուտով տեղ էր հասնելու։ Նախատեսված էր արձանը կանգնեցնել Թավրիզի «Բաղ ով Միլի» կոչված քաղաքային կենտրոնական այգում։ Առաջարկում էր պատվանդանը ես պատրաստեմ և արձանի տեղադրումը նույնպես ես ստանձնեմ։ Ինչ խոսք, մեծ ուրախությամբ ընդունեցի նրա առաջարկը։ Ասացի, որ տեղադրման արժեքը պետք է հաշվարկեմ։ Հայտնեց, որ վարձատրությունը այնպիսին կլինի, որ ես գոհ կմնամ։

«Միայն այդ չէ, պետք է նաև այդ հրապարակի վրա տեղադրեք մեր մեծ շահերի կիսարձանները՝ կիսանդրիները։ Կիսանդրիները պետք է տեղադրվեն ներկա շահի

*արձանի չուրջը»– ասաց նա։*

*Նրան հայտնեցի, որ դրանք դժվարություն չեն ներկայացնում, կտեղավորեմ չահի արձանի չուրջը։ Բայց պարզվեց, որ այդ կիսարձանները չկան և դրանք էլ ես եմ պատրաստելու։*

*Բացատրեցի, որ ես արձանագործ չեմ և չունեմ բրոնզ ձուլելու վառարան, և բացի դրանցից ուրիչ չատ դժվարություններ էլ կան, և ես այդ գործը կատարելու համար անհարմար մարդ եմ։ Ուրիչ պատճառներ էլ բերի, օգուտ չեղավ։ Նա ժպտալով, գլխով համաձայնության նչաններ անելով, իբրև համամիտ է իմ պատճառաբանություններին, երբ վերջացրի ասելիքս, պատասխանեց. «Աղայե Ցանիկյան, բոլոր ասածներդ ճիչտ են։ Մի բան ես մոռացել, որ դու Ռուսաստանից քո հայրենիքն ես վերադարձել, օգտակար լինելու ոչ միայն քեզ, այլ նաև հայրենիքիդ, որի անունով դու դրախտ ես եկել։ Աչխատանքիդ համար ինչքան պետք է դրամ կստանաս և գոհ կմնաս։ Նոր մասնագետ ես երկրում, անունի և ինձպեսների հովանավորության կարիքն ունես։ Բրոնզի մասին մի մտածիր, ես կգարգադրեմ, որ քեզ տան ինչքան անհրաժեչտ է։ Թուրքական հին բրոնզյա թնդանոթներ մենք չատ ունենք։ Ամեն տեսակի աջակցություն իմ կողմից կստանաս։ Այլևս ասելիք չունեմ, անցիր գործի»։*

*Ծիծաղելով հարցրի.*

*– Հրամա՞ն է, թե կամավոր պայման։*

*Նա էլ մեկնելով ձեռքն ասաց.*

*– Ցտեսություն, ինչպես կուզես համարիր։*

*Ներքուստ ուրախ էի, որ Աղայե Մանսուրի նման մարդուց գործ եմ ստացել։*

*Բրոնզ ձուլելու մասին ես չէի մտածում, նախապես վառարան պետք էր պատրաստել։ Պատվանդանների նախագծելը և սարքելը դժվարություն չէին։ Ձուլելու համար*

պետք էր ունենալ գիպսից պատրաստված առարկան: Իսկ գիպսը ստանալու համար քանդակագործ էր պետք, որը կարողանար ճշգրտորեն դուրս բերել շահերի արձանները իրենց նկարներից:

Քանդակագործ պետք էր գտնել և ես Թեհրան նամակ գրեցի ու մի քանի հեռագիր տվեցի: Բախտ ունեի, Թավրիզում Ռուսաստանից փախած մի երիտասարդ գտան ինձ համար, անունը Բորիս էր, ազգանունը Մատվեև: **(Ցանիկյանը իր գրության մեջ գրել էր «ազգանունը մոռացել եմ», և տողի վրա հետագայում ավելացրել էր «հիշեցի, «Մատվեև»,-ԼՈՒՑՄ)**:

Բորիսը Ռուսաստանում նկարչություն և քանդակ էր սովորել ինչ-որ դպրոցում և Թավրիզում անգործ էր մնացել: Վերցրի ծառայության՝ որպես օգնական: Գրասենյակիս վերին բնակարանն էլ վարձեցի, որպես աշխատանոց: Նրան պատմեցի մեր անելիքները: Դժվարություն չկար, բայց պետք էր ձեռք բերել շահերի նկարները: Պետք է պատրաստեինք չորս շահերի կիսանդրիները: Դրանք էին, Նադիր Շահը, Շահ Աբասը, Արտաշիր Բաբական և Դարի Վիշ: Դիմեցի Աղայե Մանսուրին: Աղայե Մանսուրեն ինձ տվեց միայն երեք շահերի նկարները: Արտաշիր Բաբականի նկարը չկար:

– Առանց նկարի ինչպե՞ս կարող են կիսանդրի քանդակել, -տարակուսեցի ես.

– Մի բան արա, Աղայե Ցանիկյան, նրա նկարը ընդհանրապես գոյություն չունի:

Իմ օգնական Բորիսը իր համար էր օգնականներ վերցրել և գիշեր ցերեկ աշխատում էին: Ես էլ պատվանդանների համար մարմարի հանքեր էի բացել Թավրիզից 15 կիլոմետր հեռու: Գնել էի «Շեվրոլետ» մի մեքենա և օրվա կեսը հանքերում էի, մյուս կեսը՝ վառարան պատրաստելով էի զբաղված:

*Զուլարանի տեղը ընտրել էի իմ ապրած տան բակում և այդ նպատակով վարձել էի։ Բրոնզյա թնդանոթները գտնվում էին քաղաքից դուրս պահեստներում և դրանք բերելու համար տասնյակ էշերից կազմված մի քարավան էր պետք։ Թնդանոթների քարշ տալը դեպի իմ բակը մի արտառոց տեսարան ստացվեց։*

*Ցերեկով, փոշի բարձրացնելով, ծանրորեն ու դանդաղաքայլ լծված էշերի քարավանով, և շուրջը վազվզող երեխաներով թափորը շարժվում էր դեպի մեր տուն։ Ուղեկցող, թնդանոթների կողքով քայլող երկու ոստիկանները հետևում էին, որ երեխաները չհեծնեն շարժվող թնդանոթները։ Ահա այս թափորը մեծ հանդիսավորությամբ եկավ իմ տան բակը, մեծ զարմանք և ակնածանք առաջացնելով իմ հարևանների մոտ։*

*Գործը հաջող առաջ էր ընթանում, բայց չորրորդ շահի նկարը ինձ գտնել չէր հաջողվում։ Ոչ գրադարաններում, ոչ պատմության մասնագետների մոտ այդ նկարը չգտնվեց։ Գնացի Թեհրան և մտա ուղիղ Լուսավորության մինիստրություն և մի թեթև էլ խորամանկություն հանդես բերի։ Ֆրանսերեն նամակ գրեցի մինիստրությանը իմ ստանձնած գործի մասին և խնդրեցի ինձ տալ այդ շահերի ճշգրիտ անունները և նկարները՝ հաստատված մինիստրության կողմից։ Մինիստրությունը ինձ տվեց նրանց անունները և նկարները, նույնիսկ տարբեր դիրքերում, բայց Արտաշիր Բաբականի համար տեղականք տվեց, որ նրա նկարը գոյություն չունի։*

*Ես ազատ էի իմ ցանկությամբ նկարագրելու դարավոր Պարսկաստանի ամենահայտնի շահերից մեկի դիմագծերը։ Եվ դրա համար նախատեսված էր վճարում և հարգանք։*

*Բացատրեցի Բորիսին, թե ինչպիսին է լինելու Արտաշիր Բաբական շահը. փառավոր մորուք, լայն ճակատ, երկար մազեր և այլն։*

Ջորս կիսանդրիների պատվանդանները պատրաստված էին տարբեր գույնի մարմարներից։ Բրոնզե կիսանդրիներն էլ էին ձուլված և պատրաստած։ Մինչև պատվանդանի վրա դնելը ցանկացա ցուցադրել դրանք և տեղադրեցի մեր հյուրասենյակի չորս անկյուններում, տարբեր բարձրությունների վրա։ Բոլորը ծածկեցի սավաններով և հրավիրեցի պաշտոնական անձանց, որոնց թվում էին Աղայե Մանսուրեն, քաղաքագլուխը, ոստիկանության մեծը, զինվորականության մեծը և այլ պաշտոնյաներ։ Թեթև հյուրասիրություն էի պատրաստել՝ թեյ, կոֆե, քաղցրավենիք։

Քաղաքագլուխը վաղ առավոտյան տասնյակ բանվորներ էր ուղարկել մեր փողոցը ջրելու, որ հյուրերի գալու ժամանակ փոշի չլինի։ Հարևանները դուրս էին թափվել հասկանալու թե ի՞նչ է կատարվում և այս միջոցառումը ինչի՞ համար է։ Ոստիկանները չէին թողնում հարևաններիս մոտենալ և հատուկ հեռավորության վրա էին պահում նրանց իմ տնից։

Հյուրերը եկան և հյուրասիրությունը սկսվեց։

Որպես բացառություն, տիկինս էլ ներկա էր, քանի որ նրանց կանանց բժշկուհին էր և իրեն գիտեին։ Գլխով նշան արի, որ օգնականս իջեցնի կիսարձանների վրայի անկողնային սավանները։ Մինչ այդ նրան բացատրել էի, որ դա անի մեծ հանդիսավորությամբ և դերասանական շարժումներով։

Սավանները իջնելու հետ, հյուրասենյակը լցվեց «բարի քալա, բարի քալա» բացականչություններով։ Ես, որպեսզի ավելի ուժեղացնեմ տպավորությունը, մոտեցա և ձեռքիս փոքրիկ մուրճով հարվածեցի Նադիր Շահին։ Տաճկական թնդանոթներից վերաձուլված բրոնզը հրաշալի գեղեցիկ հնչյուններով լցրեց սենյակը։ Հյուրերը մոտեցան և սկսեցին նույնը անել, ուզում էին համոզվել որ բոլորն էլ

բրոնզից են պատրաստված։

Գովասանքի խոսքերի շռայլումներ էին լսվում ամենուրեք։

Քաղաքագլուխը հարվածելով Արտաշիր Բաբականի ճակատին զարմացավ նրա ճակատի լայնությունով և քունքերի բարձրությամբ։ Ես բացատրություն տվի, որ տաղանդավոր և խելացի մարդիկ այդպիսի ճակատ են ունենում և Արտաշիրը այդպիսի մարդկանցից մեկն է եղել։ «Բալի, բալի», այսինքն «այո, այո» ասելով քաղաքագլուխը սկսեց չփել իր ճակատը, համոզվելու, թե ինքը արդյո՞ք պատկանում է այդ տեսակին։

Ընդհանուր տպավորությունը ցնցող էր, առաջին անգամ էր Պարսկաստանում նման գործ կատարվում։

Կիսանդրիները դրվեցին իրենց հատկացված տեղերը՝ քաղաքային այգում։

Սպասում էինք Ռզա Շահի 3 մետրանոց արձանին, որը բերվել էր Թեհրան և այնտեղից ուղարկվելու էր Թավրիզ։

Մի քանի օր անց, կես գիշերին, ոստիկանապետը եկավ մեր տուն և տագնապալից հայտնեց, որ Աղայե Մանսուրեն շտապ ուզում է ինձ տեսնել։ Նույնիսկ իր ավտոմեքենան էր ուղարկել իմ հետևից։

Երբ հասանք իր տուն, նա մեզ սպասում էր դռան առջև և դողդոջուն ձայնով, որ վարորդը չհասկանա, ինձ դիմեց ֆրանսերենով. «Սարսափելի բան է պատահել Աղայե Ցանիկյան, չգիտեմ ի՞նչ ենք անելու»։

«Կուզեմ տեղականալ» խոսքիս, պատասխանեց՝ «կտեսնես»։

Մեքենան մեզ տարավ քաղաքից դուրս գտնվող զինվորական զորամասերից մեկը։ Չորս-հինգ պաշտոնյա զինվորականներ սպասում էին մեզ։ Մեզ առաջնորդեցին մի պահեստանոց, որի մուտքի մոտ կանգնած էին զինված

պահապանները։ Մեզ տեսնելով զինվորական բարև տվեցին։ Զայրացած Աղայե Մանսուրը ձեռքով արեց, որ հեռանան։ Գեներալներից մեկը դուռը բացեց, որ ներս մտնենք։

Մեծ ու դատարկ պահեստ էր։ Մեջտեղում, հատակին դրված էր մոտ երեք մետր երկարությամբ, մեկ մետր լայնությամբ մի արկղ։ Անսովոր մեծությամբ դագաղի էր նման։

– Ահա՛, գնա տես, –ասաց Աղայե Մանսուրը ինձ։

Ոչինչ չգիտեի, թե ի՞նչ է այնտեղ։ Ինձ հետևողներին Մանսուրեն արգելեց առաջանալ։ Արկղի կողքի տախտակներից մեկը հանած էր և մի կողմ էր դրված։ Արկղի մեջ Հռոմից ուղարկված Ռզա Շահի բրոնզե արձանն էր, բայց մի տարբերությամբ, որ դեմքը լրիվ աղավաղված էր և ոչինչ չէր հասկացվում։ Զարմացած նայեցի դռան մոտ կանգնածներին, որոնք իմ հայացքից գլուխները կախեցին։

– Այս ի՞նչ է, –գոռացի ես, –միաժամանակ աշխատելով մի տախտակ էլ քանդել, որ ավելի լավ տեսնեմ։

Խեղճ Աղայե Մանսուրեն կարծես մեղավոր լիներ։

– Ջանս, քեզ դրա համար հանեցի անկողնուց, որ գաս տեսնես և  դու ասես թե ի՞նչ է։ Դու ինձ ես հարցնո՞ւմ։ Այսօր ստացանք Թեհրանից և երբ բացել ու տեսել են, ինձ են տեղեկացրել։ Ես ի՞նչ էի անելու, չէ՞ որ արձանը դու էիր տեղադրելու։

Արկղի ամբողջ երեսը բացինք։ Ձեռներով շոշափեցի, զգացի որ մետաղի փոշի է, որ ծածկել է ամբողջ առջևի մասը։ Ինձ արձանի դեմքն էր հետաքրքրում։ Դանակի ծայրով փորձեցի դեմքը և տեսա, որ առանձին անցքեր կան։ Ջուր խնդրեցի և արձանի դեմքը լվացի, որ լավ տեսնեմ։ Ընդհանրապես լավ հոտառություն ունեմ։ Նստեցի արկղի վրա և փորձեցի հիշողությունս պրպտել։ Ձեռքս այդ ընթացքում տարա դեպի ճակատս և ճակտս այրվեց ձեռքիս հպումից։

– Թթու է, –գոչեցի ես, – շուտ ջուր լցրեք ձեռներիս։ Օճառ տվեք։

Օճառ որտեղի՞ց այդ պահին։ Ինչքան հնարավոր էր ջրով լվացի կեղտոտված ձեռքերս և երեսս։ Նրանց զարմացած դեմքերին նայելով, հասկացա, որ ոչինչ չեն հասկանում։

– Քեազաբ է, քեազաբ է, – պարսկերեն ասացի նրանց, որը նշանակում էր թթու։

Արձանի ամբողջ առջև մասը և նամանավանդ դեմքը քայքայված էր թթվով, որ լցրել էին նրա վրա չարակամները։ Բոլորը նմանվել էին ջուրն ընկած մկների։ Իրավունք էլ ունեին, եթե Ռզա Շահը իմանար կատարվածի մասին, ապա պատիժը մեղմ չէր լինելու, շատերն էին տուժելու, արձանը չպահպանելու համար։

Դիմելով խեղճացած Աղայե Մանսուրին ասացի.

– Վաղը, ցերեկով պետք եղած գործիքներով կքննեմ արձանը և կտեղեկացնեմ թե ինչքա՞ն է վնասվել և կարելի՞ է մի բան անել…

Խոսքս կտրեց.

– «Կարելի» խոսք չկա, Աղայե Յանիկյան։ Պետք է փրկել շատերի կյանքը։ Դու պիտի ազատես բոլորիս մի մեծ պատասխանատվությունից։

Մյուս ներկաներն էլ միացան այդ խոսքերին։

– Կարելիս կանեմ, Աղայե Մանսուր, հավատացեք։ Բայց դուք էլ օգնելու եք ինձ։

Ներկաները չգիտեին, որ արդեն մտքումս որոշել էի ինչ անելս, որը միայն ժամանակ էր պահանջում և ձեռքի նրբագույն աշխատանք։

Հետևյալ օրը հայտնեցի, որ ամեն ինչ լավ կլինի և ես արդեն սկսել եմ օգնականիս հետ աշխատել։ Չգիտեմ ինչպես, բայց ենթադրում եմ, որ այդ գործը արված էր դիտավորյալ։ Երկաթյա խոզանակով արձանի երեսը

մաքրեցլուց հետո 48 մեծ ու փոքր անցքեր մեջտեղ եկան։ Մի աչքը համարյա լրիվ ծակված էր։ Իմ հնարած ձևով սկսեցինք արձանի վեանորոգման աշխատանքները։ Այս մեթոդը հետագայում ամեն մարդ կարող էր կիրառել նման վերանորոգումներ կատարելու համար։

Շահի արձանի դեմքը ծակծկված էր տարբեր մեծու-թյան անցքերով։ բրոնզ շատ ունեինք և ես մեծ ու փոքր տարբեր տրամաչափի և տարբեր մեծության գլխիկներով բրոնզյա մեխեր պատրաստեցի։ Պետք էր շահի արձանը տեղափոխել իմ արհեստանոց և այդ մասին հայտնեցի Աղայե Մանսուրին։ Ամենաբարձրաստիճան զինվորական-ները կատարեցին այդ աշխատանքը, որպեսզի ոչ ոք չկարողանա տեսնել արձանի հետ կատարվածը։ Բացի դրանից արհեստանոցիս մոտ զինվորական պահակակետ հաստատեցին և արհեստանոցը կողմնակի մարդուց պաշտ-պանելու համար ամեն օր զինվորական հերթափոխություն էին սահմանել։

Բրոնզյա մեխերի ոտքերը թեքելով ու ծռելով, որ այն գլխիկի մակերևույթի հետ 90 աստիճան չկազմի, տեղավորեցինք անցքերի մեջ։ Քանի որ ամեն մեխ հարմարեցված էր իր անցքի համար, մեխերը ճշգրտորեն նստեցին արձանի դեմքի վնասված մասերում, առաջաց-նելով լրացուցիչ բարձրություններ այնտեղ, որտեղ փոսեր էին և անցքեր։ Արձանը շրջեցինք քիթը դեպի վեր, ոտքերի կողմից բարձրացնել տվի այնքան, որ լցված հեղուկը հոսեր և լցվեր գլխի մեջ։ Քթի վրա մի փոքրիկ անցք բացեցինք օդը հեռացնելու համար։ Երբ այս դիրքը պատրաստ էր, մենք արճիճը հալեցինք և լցրինք արձանի ներսը։ Արճիճը հոսեց և լցվելով գլուխը դուրս եկավ քթի ծայրին բացված անցքից։ Ուրեմն արդեն շահի գլուխը լիքը արճիճ էր լցված։

Սառչելուց հետո բրոնզյա մեխերը այնպես էին ամրացել,

*որ կարծես ձուլվել էին արձանի գլխի հետ։ Մնում էր հեռացնել ավելորդ ուռուցիկությունները և փայլեցնել բրոնզյա կարկատանները։ Իմ քանդակագործ Բորիսը դա արեց ամենաբարձր մակարդակով, մազաչափ իսկ չշեղվելով Իտալիայում պատրաստված բնօրինակից։*

*Ճիշտ է դեմքի ամբողջ մակերևույթը Թթվի ազդեցությունից մեկ-երկու միլիմետր մաշվել էր, բայց դա կատարվել էր ամբողջ մակերեսով համհավասար և դրանից շահի դիմագծերը չէին փոխվել և դա նույնիսկ ոչ ոք չնկատեց։*

*Գործը ավարտեցինք մի քանի օրում։ Երբ զեկուցեցի արձանի վերանորգման ավարտի մասին, նորից եկան հավաքվեցին բոլոր բարձրաստիճան մարդիկ և նորից լսեցի հիացական «բալի՛, բալի՛»-ները։*

*Իմ պատրաստած կիսանդրիները վաղուց տեղադրված էին քաղաքային այգում մնացել էր շահի արձանի տեղադրումը, որի պատվանդանը նույնպես պատրաստ էր։ Բոլոր պատվանդանների վրա գրված էր իմ անունը, որպես աշխատանքները իրագործող։ Կարևոր էր այն հանգամանքը, որ ես ստեղծեցի Արտաշիր շահի կերպարը և այդպես էլ նա մտավ պարսկական դասական շահերի ցուցակի մեջ։*

*Ռզա Պահլավին գալու էր այդ արձանների համույթը դիտելու և նախատեսված ժամկետին շատ քիչ ժամանակ էր մնացել, իսկ նրա արձանի տեղադրման հարցը դեռ որոշված չէր։*

*Ես պատվանդանի վրա մի ցից էի նախատեսել և մնում էր արձանը բարձրացնել և ներքևի սնամեջ մասով, ոտքերի կողմից անցկացնել այդ ցցին և ամրացնել։ Բայց բարձրացնելու համար պետք էր ամբարձիչ կիրառել մոտ 10 մետր բարձրացնել արձանը և դանդաղ իջեցնել իր տեղը։ Մ իակ ձևը պարանը շահի վիզն անցկացնելն ու բարձրացնելն*

էր: Երբ այդ մասին հայտնեցի Աղայե Մանսուրին նա վախից սպիտակեց. «Պարանը չահի վզի՞ն, Աղայե Ցանիկյան, դու պատկերացնում ես ի՞նչ ես առաջարկում» սարսափեց նա:

-Մեզ բոլորիս դրա համար չահը կախաղան կբարձրացնի:

– Այդ դեպքում դուք առաջարկեք մի այլ ձև, -հանգիստ պատասխանեցի նրան:

– Մի օր ժամանակ տվեք, մի բան կմտածենք,– հանգստացավ Աղայե Մանսուրեն:

Ես եկա տուն և սպասեցի: Իսկ երբ ժամանակը վերջացավ, նորից եկան ու խեղճացած չարվեցին՝ ինքը, քաղաքապետը և ոստիկանապետը:

– Աղայե Ցանիկյան մեր փրկությունը դու ես, մի ճար արա մի բան մտածիր, ուրիշ ելք չկա, բայց այդ կախելու եղանակից վազ արի:

Առաջարկեցի մի այլ եղանակ, որը կարող էր շաբաթներ տևել: Պետք էր արձանի պատվանդանի բարձրությամբ հողաթումբ պատրաստել, ինչպես արել են ժամանակին եգիպտացիները բուրգերի շինարարության ժամանակ և այդ թմբի վրայով սահեցնելով տեղադրել արձանը: Հողաթմբի համար մեծ քանակությամբ հող պետք է բերվեր և տարվեր: Բացի դրանից 10-15 օր կպահանջվեր դրա համար:

Նորից խեղճացան և գլուխները կախեցին:

Առաջարկեցի վերադառնալ իմ նախկին մեթոդին՝ պարանով վզից բարձրացնելուն:

– Այդ դեպքում,– ասաց Աղայե Մանսուրեն,– ես ու դու կլինենք միայն այդ գործողության վկան, կողմնակի ոչ մի մարդ իրավունք չի ունենա տեսնելու դա:

– Շատ բարի, -նրա ասածին հավանություն տվեցի ես, – բայց մենք երկուսով ինչպե՞ս ենք բարձրացնելու և

*տեղադրելու արձանը։ Ամենաքիչը իմ վեց բանվորները պետք է ներկա լինեն տեղադրմանը։*

*Այդ գիշեր ինձ կանչեցին նահանգապետի տուն, որտեղ հավաքվել էին նահանգի մեծերը և ժողով էին գումարել և որոշել էին վերջնականապես թողնել իմ հայեցողությանը, ինչպես ես կուզեմ՝ տեղադրեմ։*

*Միայն ավելացրին, որ ինձ տրվում է երկու օր ժամանակ և աշխատանքները պետք է կատարվեն գիշերով, որ ոչ ոք չտեսնի շահի խայտառակությունը։*

*Հետևյալ գիշեր քաղաքային այգին շրջապատված էր զինվորների խիտ օղակով, պատահական անցորդ այտեղ չհայտնվելու համար։*

*Այգի էին բերել ամենավստահելի և գաղտնապահ զինվորներին։ Բայց նրանց վրա էլ վստահություն չունեին և ամեն մի քանի զինվորի վրա նշանակել էին ավելի վստահելի հսկիչներ, որ հանկարծ զինվորները հետ չպտտվեն և նայեն արձանի տեղադրման աշխատանքներին։ Զինվորները պարտավոր էին մեջքով շրջված կանգնել դեպի այգու կենտրոնը։*

*10 բարձրաստիճան զինվորականներ մասնակից եղան և փոխարինեցին իմ բանվորներին և նրանցից ամենացածր կոչում ունեցողը կապիտանի աստիճանով էր։*

*Սկզբում տեղադրեցինք ամբարձիչ հարմարանքը, որը եռակողմ բուրգի տեսք ունեցավ, գագաթում տեղավորված բարձրացնող հարմարանքով, որի պարանի պտտվող ծայրը ներքևում իմ ձեռքին էր։*

*Արձանը բերվեց և պառկեցվեց ամբարձիչի տակ։ Պարանը անցկացրինք շահի վիզը և սկսեցի բարձրացնել արձանը։*

*Այդ պահից սկսած մինչև ավարտը, բացի ինձ օգնող զինվորական սպայակազմից, մնացած քաղաքացիականները՝ նահանգապետ Աղայե Մանսուրեյից մինչև քաղաքա-*

*գլուխ և ոստիկանապետ, երեսնիվայր պառկել էին գետնին և ծնկաչոք «ալլա՛հ, ալլա՛հ» էին կանչում և դեմքով հպվում հողին։*

*Իրոք որ սարսափելի տեսարան էր։ Շահը կախ էր տված պարանից և անօգնական ճոճվում էր և պտտվում իր առանցքի շուրջը, նման բան ոչ ոք չէր կարող ենթադրել։ Վերջիվերջո շահը երկրի անսահմանափակ իշխանության տերն էր և ինքն էր մարդկանց պատժում նման եղանակով, իսկ հիմա, մենք նույն շահին պատվի արժանացնելով և արձան կառուցելով կախ էինք տվել նրան օդում։*

*Գիշերային այդ տեսարանը շատ արագ ավարտվեց։ Ընդամենը մի քանի րոպեում արձանի ոտքերից բռնած բերեցի և այն անցկացրի պատվանդանի ցցին և ամրացրի իր տեղը։ Հրաման տվի հավաքել պարանները և ամբարձիչը։ Երբ «ալլահ» կանչողները բարձրացրին գլուխները և տեսան պատվանդանի վրա կանգնած սաղ-սալամաթ շահին, «բալիհի՛» կանչեցին միաբերան։*

*Սկսեցին ինձ շնորհավորել և շնորհակալ լինել այսքան արագ գործն ավարտելու համար։*

*Ահա թե ինչ օյին բերեց նրանց գլխին այդ գիժ մահադիզը, պարսկերեն՝ ինժեները։*

*Մի քանի օր հետո եկավ թագավորը, դիտելու իր նախնյաց և իր պատվին կառուցված հուշահամալիրը։*

*Եկավ ավելի բարձրաստիճան մարդկանցով շրջապատված։ Աղայե Մանսուրեն և «մերոնք» լայնաժպիտ ցուցադրում էին իրենց արած գործը։*

*Շահը իմացավ, իհարկե, թե ով է հուշահամալիրի պատրաստողը և կարգադրեց շքանշան և 2000 թուման պարգևատրում տալ ինձ։*

*Շքանշանը և փողը պետք է ստանայի զինվորական մեծավորից, որը գեներալ էր և ներկա էր եղել արձանի*

*տեղադրմանը: 2000 թումանը բավականին մեծ գումար էր: Համեմատելու համար, ասեմ, որ իմ նոր «շևրոլետ» ավտոմեքենան ես գնել էի 900 թումանով:*

*Ժամադրության օրը գնացի պարգևատրումս ստանալու:*

*Ներկայացա և շատ պաշտոնական ընդունեցին և տվեցին ստորագրելու 2000 թումանի ստացականը: Ինչպես կարգն է բոլոր տեղերում, փողը ստանալուց առաջ ստորագրում ես ստացականը և վերցնում քո ներկայությամբ հաշված փողը:*

*Գեներալը իմ ստորագրած ստացականը ձեռքը վերցնելով հայտարարեց, թե փողը կմնա իրեն, քանի որ ինքն էլ պակաս չի չարչարվել շահի արձանը տեղադրելիս:*

*– Աղայե Ցանիկյան, քեզ չքանչանը՝ մեզ դրամը, հետո դու արդեն արձանների համար վարձատրվել ես, այնպես որ մենք շատ գոհ ենք քո կատարած աշխատանքից:*

*Խելքս հացի հետ չէի կերել, որ բողոքեի գեներալի նման արարմունքի համար: Չնայած շահն էր հրամայել ինձ 2000 թումանով պարգևատրել, բայց Պարսկաստանին հատուկ կաշառակերությունը, որ աշխարհը չի տեսել, չրջանցեց նույնիսկ շահի հրամանը և այդ երկիրը, որ կաշառքի ռեկորդակիրն է, վերջ առաջ ընկնելու է իր իսկ սարքած կաշառակերության հորը:*

*Հետագայում շատ անգամ եմ առնչվել պարսկական կաշառակերության հետ և համոզվել եմ, որ վաստակածդ գումարի 10 տոկոսը պետք է առանց այլևայլության հանձնես, որպես կաշառք: Այդ երկիրը այդ ձևով էր իր գոյությունը պահպանում: Ի՞նչ կարող ես անել, տուր կաշառքը և արա գործդ:*

*Մի քանի ամիս հետո Աղայե Մանսուրին շահը տեղափոխեց Թեհրան: Հրավերքի արժանացա նաև ես և տեղափոխվեցի Թեհրան: Ձեռքս բավականին գումար կար և*

հիմնադրեցի «Ռահսազ» ընկերությունը: Շահի հետ հետագայում անձնական մտերմություններ ունեցա, մանավանդ զինվորական գործարանի պատվերը կատարելուց հետո: Այդ մտերմության հետևանքով ներկա եղա իր և իր 10 ամյա տղայի, հետագա շահի, միջև ծագած անախորժ տեսարանին, որի մասին նույնիսկ կնոջս չասացի և նույնիսկ մոռացել էի այդ դեպքը:

Թագաժառանգը մեծացել էր, ավարտել էր արտասահմանում ստացած ուսումը և վերադարձել էր Թեհրան: Ամուսնանալու ժամանակն էր և հայր շահը իր տղայի համար կին ընտրեց Եգիպտոսի Փարուկ թագավորի Ֆովչէ գեղեցկուհի, արիստոկրատ քրոջը:

Հարսանիքի շքեղ պատրաստություն տեսնվեց: Ամեն մի համայնք ցույց էր տալիս իր շնորհքը: Հայերս էլ մի սքանչելի «կամար» շինեցինք գլխավոր Նադիրի փողոցում: Կամարը պատկերված էր եգիպտական արձաններով ու թագավորներով: Բոլորը հիացել էին հայերի գեղարվեստական ճաշակով: Հայ համայնքին ծանրություն չպատճառեցինք այդ ծախսի համար, քանի որ կառավարական պայմանագրեր էի կատարում և դրամ շինում էի որքան անհրաժեշտ էր:

Եգիպտական խնամիները մեծ թվով և շուքով եկան Թեհրան: Ինձ որպես ֆրանսերեն իմացողի Ռզա Շահը կարգադրեց հարսի 12 տարեկան քրոջը էսկորտ լինել և պտտեցնել Թեհրանում: 15 օր գործս թողած, առավոտյան ժամը 10-ից մինչև երեկո լինելու էի պրինցեսսայի տրամադրության տակ, որպես հետաքրքիր վայրեր ուղեկցող:

Այս փոքրիկ չարաճճի աղջնակը ուզում էր ամեն ինչ տեսնել և հրամայում էր իրեն տանել Թեհրանի գիշերային անուն հանած տները:

Հարսանիքի ավարտից հետո Շահը հրամայեց 24 ժամվա ընթացքում քանդել բոլոր կամարները, որոնք

*ընդհանուր 8 հատ էին։ Լևոն Մելիքեն և ես, մեր 200 բանվորները տրամադրելով՝ կատարեցինք հրամանը։ Մյուս կամարների տերերը դանդաղ էին գործում և կես օրից հետո զինվորական սակրավորների օգնությամբ ավարտեցին աշխատանքը։ Հետագայում իմացանք, որ նման հրամանի պատճառը եղել էր խնամիների միջև ծագած մի խոսակցություն։*

*Ռզա Շահը ցանկացել էր, որ հարսը որպես օժիտ իր հետ բերի Սուեզի ջրանցքի բաժնեթղթերից որոշ քանակություն։ Հարսի մայրը մերժել էր և զայրացած հրամայել էր հարսանիքի եկած իր ներձավորներին մեկնել տուն։ Շահն էլ հրամայել էր քանդել բոլոր պատվո կամարները։ Զարմանալու ոչինչ չկար այստեղ, մեր կյանքում ամեն ինչ կապված է մեկ աստծու՝ փողին։*

*Մի քանի տարի հետո մեր հարսը աղջիկ զավակ ունեցավ։ Երկու տարի հետո մեր հարսը ապահարզան տվեց մեր թագաժառանգին ու վերադարձավ Եգիպտոս։ Նույնիսկ իր երեխային իր հետ չվերցրեց։*

*Պալատը լուր տարածեց, որ թագաժառանգն է ապահարզան տվել իր կնոջը, որովհետև նա չի ունեցել արու զավակ, որ շարունակվի շահի սերունդը։*

*Թեև անտրամաբանական և ծիծաղել էր այս պատճառը, բայց երկրի համար ի՞նչ նշանակություն և հարցը շուտով մոռացվեց։*

*Երբ ես 1944 թվականին Եգիպտոսում էի. Ամերիկա գալու կապակցությամբ, այցելեցի շարաճճի պրինցեսին, որն արդեն մի հայտնի փաշայի կին էր։ Կնոջս հետ եղանք նրանց ճաշկերույթին։ Օգտվելով առիթից, ասացի նրան, որ նա իմ էսկորտության համար մի պարտք ունի վճարելիք։*

*Թևս ընկնելով տարավ կողքի սենյակը ու հարցրեց ի՞նչ է իր պարտքը։*

*– Կցանականկի իմանալ, թե ինչո՞ւ քո քույրը ապա-հարզան տվեց մեր շահին։*

*Ծիծաղելով ասաց.*

*– Այդ հարցին քեզ կարող է պատասխանել ամեն մի եգիպտացի։ Շատ շնչին ես գնահատել քո ծառայությունը ինձ, պարոն Գուրգեն։*

*«Քույրս սովորություն ուներ ձիով պտտվել լեռներում։ Մի օր ժամանակից շուտ վերադարձել է պալատ և իր ամուսնու անհատական ննջարանում շահին բռնեցրել իր տղամարդ ընկերոջ հետ... Քո կարծիքով ի՞նչ էր անելու թագուհին»։*

*Անհարմար զգացի, որ նա շարունակի իր պատմու-թյունը և խոսքը ընդհատելով շնորհակալություն հայտնե-ցի։ Վերադարձանք հյուրերի մոտ։*

*Այս գաղտնիքը տասնյակ տարիներ պահել էի։ Բայց երբ շահ կոչվածը եղավ իմ կյանքի նպատակների փլզումի պատճառը, ես որոշեցի գոնե այս իմացածս հանձնել պատմությանը, որպես փոխվրեժ։ Թող պատմությունը իր արժանի տեղը հատկացնի նրան, երբ կգրվի Իրանի շահերի մասին։*

*Երբ իր երկրից վռնդված շահը Մորոկկոյի թագավորի հյուրը եղավ, ես չէի կարող ինձ զսպել և բանտից մի նամակ գրեցի այդ փախստականին, նրան շնորհավորելով, որ Իրանի ժողովուրդը ճիշտ ժամանակին ազատվել է իրենից։ Հիշեցրի իմ ով լինելը, գրեցի նախագահ Նիքսոնին ուղղված իմ խնդրանքի և իր հրամանը ուղղված իր նախա-րարներին՝ չկատարելու Իրանի բարձրագույն ատյանի վճիռը։ Հիշեցի նրա կատարած կեղծիքները, որ նույնիսկ կեղծել էր իմ ստորագրությունները։ Գրեցի, որ եթե մոռացել է և չի հիշում, ապա թող հիշի այն օրը, երբ իր հայրը իրեն լողավազանը նետեց և ճակատին խարանեց՝ «գյոթվերան» պիտակը, և դա կատարվեց այս նամակը*

*գրողի ներկայությամբ և վկայությամբ, որը շնորհիվ իր պեսի, ցմահ բանտարկված է ամերիկյան բանտում։*

*Բանտից պատվիրված նամակ չէի կարող ուղարկել, բայց կասկած չունեմ, որ նամակս տեղ էր հասել, քանի որ հասցեագրել էի պալատի անունով, անձամբ իրեն հանձնելու։ Նրան խորհուրդ տվեցի նաև բողոքել Ամերիկայի նախագահին. «Թե, մի ամերիկացի բանտարկյալ վիրավորում է իր Գյոթվերանական Մեծությանը»։*

*Ես համոզված եմ, որ իրավունքիս մեջ եմ և կարող եմ հանգիստ հեռանալ այս աշխարհից իմ անունով, և նա էլ թող գնա իր անունով և գիտեմ, որ նա գնալու է ոչ իր կամքով, այլ մի արժանավոր մարդու գնդակով։*

*Պարսկաստանում ապրած տարիներս լի էին բազմաթիվ դեպքերով, բայց դրանք չեմ գրում։ Պարսկաստան գալուց երկու տարի անց մեծ անուն ունեինք։ Հինգ տարի հետո հարուստների շարքին էինք դասվում։ 8 տարի անց մեր հիմնադրած «Ռահսազ» ընկերությունը միլիոնատեր էր և այդ ընկերությունը պատկանում էր երկուսիս՝ կնոջս և ինձ, ըստ որում իմ անվան դիմաց գրել էինք ընկերության 90 տոկոսը, իսկ կնոջս սեփականությունն էր 10 տոկոսը։ Ընկերությունը կատարում էր հիմնականում կառավարության պատվերները։*

*Մեր ամբողջ ունեցած փողերը գտնվում էին Շվեյցարիայի, Լոնդոնի և Նյու Յորքի բանկերում։*

*Վրա հասավ երկրորդ համաշխարհային պատերազմը։ Ըստ կառավարության հետ կնքած պայմանագրի երկաթուղի էի կառուցում Թեհրանից մինչև Թավրիզ ընկած ճանապարհահատվածի համար 8 տեղամասում՝ 30 կիլոմետր երկարությամբ, Ջանջան մեծ կայարանով և լրացուցիչ 45 շինություններով։ Գործը սկսել էի 18 ամիս առաջ և ըստ պայմանագրի այն ավարտելու էի 17 ամիս հետո։*

*Իրանում արժեքային շուկա գոյություն չունի և մար-*

*դիկ իրենց հարստությունները վերածում են անշարժ գույքի կամ ոսկի և ադամանդ են գնում։ Անշարժ գույքի մեջ մտնում են հողերը և տները։*

*Մի հսկա տուն էի գնել քաղաքում, որտեղ նաև կնոջս հիվանդների ընդունարանն էր՝ նա կանացի բժշկուհի էր։ Իմ «Ռահսազ»-ի գրասենյակը քաղաքում էր։ Սեփական 2 հեկտար ամառանոց և տուն ունեի Շիմրանում՝ Իրանի Շահի պալատի կողքին։ Մի մեծ հողամաս էլ մոտ 15 հեկտար, իր միջից դուրս եկող հոսող ջրով, Թեհրանից ոչ հեռու տեղում էր։ Այդպիսի հողամասը Իրանում ոսկուց էլ հարգի էր։ Ընթերցողին երևի պատմությունից է հայտնի, որ Ռզա Շահը, այսօրվա Իրանից փախուստ տված շահի հայրը, հիտլերական Գերմանիայի բարեկամն էր նրա հետ կնքած գաղտնի դաշինքով։ Պատերազմի ընթացքում երկիրը խառնվեց և դաշնակիցները գրավեցին Իրանը։ Հարավային մասը գրավեցին անգլիացիները և ամերիկացիները, իսկ հյուսիսային մասը, որտեղ ես էի աշխատում, գրավեցին բոլշևիկները։*

*Շահը երկրից փախավ և վախճանվեց Աֆրիկայում։ Գահին նստեց նրա որդին և արդյունքը մեզ հայտնի է, նրան էլ երկրից փախցրին, այսինքն վտարեցին 1978թվին։*

*Դաշնակիցների կողմից Պարսկաստան մտնելուց մի քանի օր անց, ինձ կանչեցին Թեհրանում գտնվող անգլո-ամերիկյան զինվորական շտաբ։ Շտաբում մի քանի գեներալներ կային, որոնց մեջ էր նաև իմ բարեկամ Թիմոնին, որին Ամերիկայի նախագահ Տրումենը հատուկ ուղարկել էր Թեհրան։ Թիմոնին ինչ-որ պաշտոն էր զբաղեցնում։ Նրա հետ ծանոթացել էի բարում և մտերմացել էինք։*

*Նա օղի էր խմում, իսկ ինձ առաջարկում էր վիսկի խմել սովորել։ Սիրում էր տնական կերակուրներ, մանավանդ հայկական։ Մի խոսքով ընկերներ էինք դարձել։*

*Գեներալներից մեկը, շտաբում առջևս մի 250 հազար*

*դոլարի չեք և պայմանագիր դրեց ստորագրելու, որով 4 տարով նրանք վարձակալում էին քաղաքից դուրս գտնվող իմ հողատարածքը, զինվորների համար բարաքներ և շինություններ պատրաստելու համար: Ժպտացի և նայեցի իմ ընկերոջը ու խնդրեցի գեներալից նոր պայմանագիր գրել և վճարումի տեղը գրել «անվճար»: Ներկաները զարմացած սկսեցին բողոքել և բացատրել, որ դա նորմալ առևտուր է, իսկ ես պնդեցի իմ պահանջը: Իրար նայելով, շատ զարմացած, կատարեցին պահանջս և մի նոր պայման էլ դրին, որ ես անպայման բացատրեմ, թե ինչո՞ւ չեմ վերցնում ինձ հասանելիք օրինական 250 հազար դոլարի վարձը:*

*Այդ ժամանակ, դժբախտաբար, ես դեռ Ամերիկյան կառավարությանը չէի ճանաչում:*

*Ասացի.*

*– Դուք ուզում եք իմ հողը օգտագործել ձեր զինվորների կարիքների համար և դրա համար փող եք ուզում վճարել ինձ, իսկ ես փողի կարիքը չունեմ: Ես ազատություն սիրող մարդ եմ: Ձեր զինվորները հազարավոր մղոններ կտրելով, թողնելով իրենց հարազատներին, եկել հասել են այստեղ, մեր երկիրը, պաշտպանելու ազատությունը և արդարությունը: Նրանցից քանի՞սն են զոհվելու իրենց կյանքը և քանի՞սն են հետ գնալու. հայտնի չէ: Ես ձրիաբար հատկացնում եմ իմ կալվածքը օգտագործելու այդ երիտասարդ զինվորների համար, ես ձեր փողի կարիքը չունեմ:*

*Ստորագրեցի և ձեռքիս չեկը վերադարձրի գեներալին:*

*Ամերիկացի բարեկամս փաթաթվեց ու համբուրելով ասաց.*

*–Վոթ քայնդ մեն ար դիս արմենիան: (Ի՞նչ տեսակի մարդ է այս հայը):*

*Գեներալներն էլ սեղմում էին ձեռքս ասելով.*

*– Վերի ինթերեսթինգ մեն ար յու (Շատ հետաքրքիր մարդ եք)։*

*Երևի ընթերողը հիշում է 1973 թվականի հունվարի 27-ը, երբ այդ օրը ինձ ձերբակալեցին ձեզ հայտնի պատճառով։ Դատավարությունը սկսվեց երկու ամիս անց։ Իմ անձնական թղթերը, որ պահ էի տվել իմ ամերիկացի բարեկամի գարաժում, էֆ-Բի- Այ-ը, անօրինական կերպով, հակառակ բարեկամիս բողոքին, գողացել էր և ուղարկել էր Վաշինգտոն։ Դատավորի կողմից ուղարկած երկու հեռագրերից երկու ամիս հետո, այդ թղթերը վերադարձրել էին Սանտա Բարբարա։ Ինձ բանտից տարան դիստրիկ աթորնիի գրասենյակ, որ իմ փաստաբանների ներկայությամբ քննեմ, թե արդյո՞ք բոլոր թղթերս են վերադարձրել։ Ուղարկած թղթերը մոտ երկու հազար հատ, կարելի էր մանրամասը նայել, բայց ես հետաքրքրվեցի մի քանիսով, որոնք իմ հաշվով կարող էին դատավարության ժամանակ օգտակար լինել ինձ։*

*Ես տեսա, որ թղթերիս մեջից անհետացել են այն բոլոր փաստաթղթերը, որոնք կապված էին Թեհրանի Ամերիկյան դեսպանատան և Իրանում գործող ամերիկյան զինվորական հրամանատարության հետ։*

*Ավելի զարմացան ամերիկյան կառավարության ներկայացուցիչները, երբ ես, դատավարության ժամանակ դատավորին ներկայացրի նույն այդ գողացված թղթերն ու պայմանագիրը, որով Պարսկաստանի իմ կալվածքը ձրիաբար տրամադրվում էր ամերիկյան զինվորական հրամանատարության կարիքներին։ Գիտեմ նաև, որ այս տողերը կարդացող ընթերցողը նույնպես զարմացած է դրանից։*

*Ես իմ ամենակարևոր թղթերը միշտ պահում էի բանկի պահոցներում, իսկ պատճենները դնում էի տան գործերիս մեջ։ Տվյալ փաստաթղթի առաջին օրինակը մինչև այսօր*

*էլ գտնվում է դատական գործերիս մեջ։ Դեռ չատ ես զարմանալու, հարգելի ընթերցող, ծանոթանալով մեր ամերիկյան կառավարության անօրինական գործերին՝ ուղղված ցմահ բանտարկյալ Յանիկյանի հարցերում։ Կրկնում եմ, ինչ որ գրում եմ, պաշտոնապես հայտնել եմ վերոհիշյալ հասցեներով և ասել եմ դատարաններում և դրանք բոլորը գրված են դատական արձանագրություն- ներում։*

*...Իմ հողակտորը ամերիկյան զինվորական ծառայու- թյուններին տրամադրելուց հետո, մի քանի օր անց ինձ կանչեցին Իրանի ճանապարհային մինիստրություն, որտեղ տեսա իմ բարեկամ Թիմոնին։ Նրա հետ էին դաշնակից զորքերից երկու գեներալ, մեկն ամերիկացի, մյուսը՝ անգլիացի։*

*Զրույցի ընթացքում հետաքրքրվեցին, թե ե՞րբ կվեր- ջանա իմ կողմից կառուցվող Թեհրան-Թավրիզ երկա- թուղագծի հյուսիսային հատվածը և Զանջան կայարանը։ Ես, իմ և կառավարության միջև կնքած պայմանագրի համաձայն, հաղորդեցի, որ այն կվերջացնեմ պայմանագրի մեջ նշված ժամկետներում, այսինքն 17 ամսից հետո։*

*Հայտնեցին, որ պատերազմի հաջող ավարտը կախված է այդ երկաթուղագծի շուտափույթ ավարտելուց և այն պետք է ավարտվի 10 ամսվա ընթացքում։ Ես նրանց ասացի, որ աշխատանքները կատարվում են մարդկանց և կենդանիների մկանային ուժով և չունենք իրենց պատկե- րացրած շինարարական մեքենաները։ Ամերիկացի բարե- կամս չթողեց, որ ես ավարտեմ իմ խոսքը և ընդհատելով խոսքս ասաց.*

*– Ջորջ, – նա այդպես էր ինձ անվանում,– գեներալները տեղյակ են այն խոսքերին, երբ քո կալվածքը տրամադ- րելիս ասացիր բոլորին...*

*Այս անգամ ես նրա խոսքը ընդհատեցի, որովհետև*

տեսա, թե որքան լուրջ է հարցը դրված և դառնալով դեպի ճանապարհային մինիստրը, հարցրի.

– Մեր միջև կնքված պայմանագիրը չեղյալ է հայտարարվո՞ւմ։

– Ո՛չ, – պատասխանեց նա, – պայմանագիրը մնում է ուժի մեջ։

Ներկաները ցանկանում էին խոսել և էլի ինչ-որ բաներ ասել, բայց ես ձեռքս բարձրացրի վերև և նշան արի, ասելով.

– Հինգ րոպե ժամանակ տվեք։

Դուրս եկա սենյակից հեռախոսելու իմ Թեհրանի գրասենյակ, հայտնելու այնտեղ, որ ես քաղաքում եմ և ոչ թե գծում և այդ մասին տեղյակ պահեն կնոջս։ Մտքումս արդեն որոշումս տվել էի և վերադառնալով խորհրդակցության սենյակը ժպտալով դիմեցի ներկաներին.

– Կանեմ լավագույնս, որ ձեր ցանկացած ժամանակին գործը վերջացնեմ, բայց առանց նոր պայմանագիր կնքելու։ Իմ խոստումը թող լինի այդ պայմանագիրը։

Բոլորը գոհ էին իմ վճռից։ Թե ի՛նչ դժվարություններով երկաթուղին ավարտեցի, չեմ գրում, մանրամասը գրված է կենսագրությանս մեջ։ Հինգ հազար բանվորներով և 100 օգնականներով երկաթուղին ավարտեցի 3 և կես ամիս ավելի շուտ, քան պայմանավորված 10 ամիսն էր։ Առաջին գնացքը 50 վագոններով եկավ Ջանջան և Ամերիկյան օգնությունը Ռուսաստանին սկսվեց։ Նույն գնացքի մեջ էր նաև իմ բարեկամ Թիմոնին։ Նա ինձ համար բերել էր մի արկղ վիսկի՝ հատկապես ինձ ուղարկված անգլո-ամերիկյան զինվորական հրամանատարության կողմից։

Փաթաթվելով և համբուրելով, ասաց.

– Դու չգիտես, թե ինչ ես արել մեզ համար։ Մեր երկիրը երբեք քեզ չի մոռանա։

Վերջացնելով գործս ու երկու անգամ հրաշքով ազատ-

վելով մահից, քանի որ պատերազմ էր և հակառակորդ կողմը չէր ցանկանում, որ ես ավարտեմ երկաթուղագիծը, ես թողեցի Զանջանը և վերադարձա Թեհրան։

Բոլոր գործերս սկսեցի վերջացնել, քանի որ հայոց ցեղասպանության վերաբերյալ ֆիլմ նկարելու գումարը մենք արդեն ունեինք և ես ու կինս անցել էինք երեք միլիոն դոլարի սահմանը և այն մեր սեփականությունն էր։

Մտածում էինք, թե որտեղ էինք սկսելու ֆիլմի նկարահանումները։

Բարեկամս՝ Թիմոնին, հաճախ էր գալիս մեր տուն ճաշելու։ Մի անգամ դիմեց այսպես.

– Ջորջ, կուզե՞ս Ամերիկա գնալ և դառնալ ամերիկահպատակ։

Ծիծաղելով պատասխանեցի.

–Շատ դժվար է, քանի որ, երկրից դուրս գալիս, ինձ ու տիկնոջս անցագիր են տալիս և վրան գրվում է անգլերեն մեծատառերով «ՆՈԹ ԳՈՒԴ ՖՈՐ ԻՄԻԳՐԵՅՇԵՆ»։

Այդ արված էր երկրի տիրոջ՝ Շահ Ռզայի կարգադրությամբ։

– Դա նշանակություն չունի, կուզեի իմանալ ձեր անձնական կարծիքը, –ասաց նա։

Ամերիկան այդ ժամանակ մի մագնիս էր, որ բոլոր կողմերից դեպի իրեն էր ձգում նույնիսկ հրեշտակներին։

– Իհարկե կուզենք, բայց մեր ցանկությունը դեռ քիչ է, –պատասխանեցի ես։

Երկու օր հետո նա բերեց մի քանի տպագիր թղթեր և հարցեր տալով լրացրեց դրանք ու մենք ստորագրեցինք։

Մենք ցանկանում էինք հեռանալ մի երկրից, որտեղ ամեն ինչ առևտուրի էր վերածված և օրենքը մղված էր հետին շարք։ Մեր որոշումը վերջնական էր և մենք պատրաստություններ էինք տեսնում հեռանալ երկրից։

*Մի քանի շաբաթ անց բարեկամս ասաց, որ գնալու ենք ամերիկյան դեսպանատուն։ Հետաքրքրվեցի իմանալ պատճառը։*

*– Կիմանաս, –ասաց Թիմոնին։*

*Դեսպանը լայն ժպիտով դիմավորեց ինձ և վիսկի առաջարկեց։ Քաղաքավարի մերժեցի վիսկին։*

*Դեսպանը հայտնեց, որ ամերիկյան կառավարությունը ընդառաջ գնալով իմ ցանկությանը, տվել է իր համաձայնությունը և ես կարող եմ մտնել Ամերիկա և դառնալ ամերիկյան քաղաքացի։*

*Դեսպանը հայտնեց, որ որոշ դժվարություններ կան այդ ճանապարհին և դրանք իրենք են հարթելու։*

*– Նախ ոչ ոք չպետք է իմանա, որ դուք Ամերիկա եք գնալու։ Նույնիսկ մոտիկ բարեկամներին չասեք այդ մասին։ Դուք կստանաք պարսկական անցագիր և կմեկնեք Իրաք՝ Բաղդադ։ Մի ամիս հետո ձեր կինը կմեկնի Երուսաղեմ և այնտեղ դուք կմիանաք և կգնաք Եգիպտոսի մեր դեսպանատուն, որտեղ ձեր բոլոր թղթերը պատրաստ են Ամերիկա մեկնելու համար։ Ձեր բարեկամ Թիմոնին կհոգա ձեր ճանապարհային բոլոր խնդիրները։*

*Ընթերցող, եթե երկնքից մանանա թափվեր այդպես չէի ուրախանա, ինչպես այդ լուրից։*

*Թիմոնին հետաքրքրվեց, թե մենք ե՞րբ պատրաստ կլինենք այս ճանապարհորդության համար։ Ասացի՝ 15 օրից։*

*Ես այդքան ժամանակ տրամադրեցի, որ վերջացնեմ գործերս ու ստանամ պարսկական կառավարությունից Բարձրագույն ատյանի վճռի որոշմամբ ինձ հատկացված մեկ միլիոն դոլարից ավելի գումարը։ Թիմոնիի հետ գնացինք ամերիկյան դեսպանատուն և ես հարց բարձրացրի այդ գումարի մասին։ Ստացա բանավոր և գրավոր պատասխան, որ ամերիկյան կառավարությունը կօգնի ինձ*

այդ դրամը գանձելուն։

Երկու շաբաթ հետո, վաղ առավոտյան, Թիմոնին եկավ մեր տուն և ես մի փոքրիկ պայուսակ ձեռքիս իր ավտոմեքենայով մեկնեցի օդակայան։ Նա ինձ տվեց օդանավի մեկ տոմս իմ անունով և ես ֆրանսիական մի օդանավով մեկնեցի Թեհրանից։ Թիմոնին սպասեց օդակայանում և օդանավի թռիչքի պահին ձեռքի թափահարումով հաջողություն ցանկացավ։

Մի ամիս հետո կինս եկավ Երուսաղեմ և մենք միասին մեկնեցինք Կահիրե և ներկայացանք ամերիկյան դեսպանությանը։

Այնտեղ մեզ երկու ծրար տվեցին, որոնց մեջ էին Ամերիկա մուտքի թույլատվության բոլոր թղթերը։

Բացի այդ թղթերից երկու վկայական էլ տվին, որտեղ գրված էր . «Թու հում քոնսերն... Ինժեներ Գուրգեն Ցանիկյանս փրեզանս ին դը Յունայթեդ Սթեյթս իզ նաթիոնալ ինթերեսթ»։ Ստորագրություններ և ամերիկյան արծիվ կնիքը։

Նույն բանը գրված էր կնոջս համար. «Բժշկուհի Շուշանիկ Ցանիկյանը, որը կինն է Գուրգեն Ցանիկյանի, որի ներկայությունը Ամերիկայում պահանջում է երկրի շահերը, ուղեկցում է նրան»։

Մի քանի օր Կահիրեում լավ ժամանակ անցկացրինք և հյուրասիրվեցինք դեսպանատան կողմից։ Թռանք Փարիզ և ներկայացանք ամերիկյան դեսպանատուն։ Մի քանի օր զբաղվեցի իմ առաջին գիրքը՝ «Հուդա իսկարիոտացու հաղթանակը» ֆրանսերեն հրատարակելով։ Հետագայում լույս տեսավ և աղմուկ հանեց։ Շվեցարիայում ինձ շնորհեցին «Միջազգային Ինստիտուտի Ցմահ Պատվո անդամ» կոչումը։

Մեր որոշած օրը դեսպանատան քարտուղարը մեզ նստեցրեց կիսազինվորական «Լիբերտի» նավը և մի քանի

*օր հետո, 1945թ. հասանք Նյու Յորք։*

*Նյու Յորքի բանկում մեր բանկային հաշիվները կարգի բերելով և չեքի գրքույկ ստանալով, մեկնեցինք Քալիֆորնիա, որտեղ դերասան Ալանի տունը գնեցինք, որը գտնվում էր* 612 N. Cresen Dr.

*Ես 50 տարեկան էի, լի ցանկությամբ իրագործելու մեր կյանքի ընտրած նպատակը։ Սկսեցի իմ ամերիկյան կյանքը։*

*Դատավարության ժամանակ, թե այդ վկայականները, և թե մեր անձնագրերը, որոնց վրա մեծ տառերով, կարմիր թանաքով գրված էր, որ չի կարելի օգտագործել իմիգրեյշնի համար, նույնպես ներկայացրի դատարանին, որոնք նույնպես բանկի սեյֆում էին։ Ամերիկյան կառավարությունը իգուր չէր, որ խափելով պարսկական կառավարությանը, հակառակ միջազգային օրենքներին մեզ Ամերիկա բերեց։*

*Ընթերցողներին հասկանալի լինելու համար, նման հեքիաթային վերաբերմունքի պատճառը, տամ մի քանի բացատրություններ։*

*Ամերիկան երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ դաշնակից էր կոմունիստական Ռուսաստանին և նրան օգնություն էր ուղարկում անգլիական Լամանշ նեղուցով։ Գերմանական սուզանավերը սպասում էին թաքստոցներում և մեծ վնասներ էին հասցնում նավերին՝ խորտակելով դրանք։ Վնասները կազմում էին միլիարդավոր դոլարներ, բացի այդ, ռազմաճակատում և նավերի վրա զոհվում էին զինվորներ և նավաստիներ։*

*Ռուզվելտի, Ջերչիլի և Ստալինի հանդիպումը Թեհրանում, հիմնականում նվիրված էր այս հարցին և քննարկում էին Ռուսաստանին օգնություն հասցնելու հնարավորությունները։ Հյուսիսային ծովով հասնող ռազմական օգնությունը հասկանալի պատճառներով*

*արդյունավետ չէր և դաշնակիցները որոշեցին ստեղծել մի նոր ուղի։*

*Միակ ելքը Պարսկաստանի ճանապարհով օգնությունը Ռուսաստան հասցնելն էր։ Նավով մինչև Պարսկական ծոց բերված բեռները պետք էր շտապ ռուսական սահման հասցնել երկաթուղով։ Եվ իմ կառուցած երկաթուղին ծառայեց այդ գործին։ Դաշնակիցների հրամանատարությունը խնդրում էր երկաթուղին ավարտել որքան հնարավոր է շուտ և ես պատվով կատարեցի ինձ վրա դրված հույսն ու վստահությունը։*

*Պատերազմից հետո, բոլոր լուրջ աշխատանքներում, հեղինակները չեշտում էին այս մեծ օգնությունը։*

*Ես հպարտ եմ իմ կատարած գործի համար և դատավարության ժամանակ հայտնեցի, որ «շատ ամերիկացի զինվորներ կենդանի վերադառնալով տուն, կասկած չունեն, որ դա եղել է ինժեներ Ցանիկյանի շնորհիվ»։*

*Որ Ամերիկան երկնային դրախտ չէ, ես շատ շուտ հասկացա, բայց արդեն ուշ էր։ Ցանկություն չունեմ այս գրությանս մեջ նշել այդ մասին, քանի որ գրել եմ մանրամասը մասնավոր գրությանս մեջ։ Ամերիկյան օրենքները, հավասարության ու ազատության իմաստը գրված է կանաչ դոլարի վրա։ Որքան շատ ունես, այնքան լավ ես վարձատրված այդ գաղափարներով։ Ընթերցողը տեղյա՞կ է, որ սևերի նման, իր եղբայրներին և քույրերին արգելվում էր Ֆրեզնո քաղաքում ապրել որոշ մասերում և այդ պաշտոնական, համաձայն գոյություն ունեցող «Ռեստրկշըն»-ի (սահմանափակման-ԼՈՒՅՍ), որը արձանագրված էր կառավարական հիմնարկության կողմից։*

*Ես այդ գործի մեջ որպես մի մանուկ, երբ այդ քաղաքը եկա, հանդիպելով մի տասնյակ միլիոնատերերի, որոնց մեջ ամենաաղքատը ես էի, առաջարկեցի հազարական դոլար դնելով մի փաստաբան վարձել և դատարանով վերջ*

*տալ այս վիրավորանքին։ Պատասխանը եղավ. «Պարոն Յանիկյան, արժե՞ այդպիսի բոշ բաներով զբաղուիլ, աշխատե դրամ շինել»։*

*Եվ այս օրենքը մինչև այսօր գոյություն ունի։*

*Այս հայ անունը կրողները, կարծես հայտնի երգի մի տողը. «Բայց երանի, որ իր ազգի ազատությանը կը զոհի», վերածել էին. «Բայց երանի, ով իր գրպանը դոլարներով կլցնի» խոսքերի։ Թող հպարտանա սփյուռքը՝ նույնն է և այսօր։*

*Գիտե՞ք որ, 1945 թվականին հայը չէր կարող «Մասոնական Եղբայրության» պատկանել։ Ճիշտ է, այսօր Ամերիկայի մասոնությունը կորցրել է այդ եղբայրության միտքն ու իմաստը, որը սկիզբ է առել դեռ Սողոմոն Թագավորից, որպես հեղափոխական առաջադիմական մի կազմակերպություն, որ բոլոր մեծ ցնցումները աշխարհում հիմնված են եղել այդ գաղափարների վրա և ղեկավարվել են մասոնների կողմից։ Նույնիսկ ֆրանսիական հեղափոխությունը նրանք ստեղծեցին։ Ամերիկայի Ջեֆերսոնի և իր ընկերների գաղափարներից այսօր ոչինչ չի մնացել։ Մասոնիզմը դարձել է հարուստների ակումբ՝ դպրոցներ և հիվանդանոցներ հիմնելու ընկերություն։*

*Ոչ մի ցանկություն չունեի պատկանել հարուստների այդ ակումբին, եթե ինձ չհեռացնեին մի մասոնական հավաքույթից։*

*«Կվերադառնամ» ասելով հեռացա։ Հայ բարեկամներս վաղուց էին ինձ ասել, որ հայը չի կարող մասոն լինել Ամերիկայում, այնպես որ իզուր տեղը ժամանակ չվատնեմ։ Մասոնությունը ինձ հարկավոր չէր, բայց վիրավորված հայությունս հրամայում էր, որ փաստեմ ոչ միայն մասոններին, այլ նաև իմ ցեղակիցներին, որ ԱԶԳԱՅԻՆ ԻՆՔՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ վատ գաղափար չէ։*

*Գործս փաստել ցանկացողները թող գնան Սան*

Ֆրանցիսկո և տեսնեն մասոնական «արդարադատության» լոջի տոմարներում, որտեղ կտեսնի առաջին հայի անունը և նկարը: Զարմացած մնացին Ֆրեզնոյի մասոնները, երբ իրենց նման գառան մորթուց պատրաստած փոքրիկ գոգնոցը կապած, ես գնացի մասոնական գաղտնի ժողովին և մյուսների նման մասնակցեցի գաղտնի խոսակցություն-ների, որոնց մասին չեմ գրում, որովհետև երդվել եմ այդ կազմակերպության գաղտնիքները չհայտնել: Կարծեմ իմ արարքով ճանապարհը մի քիչ լայնացավ ուրիշների համար:

Հետագայում մերժեցի մասնակցել ժողովներին, քանի որ սովորության համաձայն օգտագործում էին Ավետա-րանը, Կարկինը և Եռանկյունին: Ես ընդունում եմ միայն վերջին երկուսը, իսկ առաջինը կապ չուներ մասոնական գաղափարի հետ, որովհետև Սողոմոնի ժամանակ դեռ Ավետարանը գոյություն չուներ:

Հիշե՞լ սպիտակների վերաբերմունքը դեպի այս երկրի տերերը՝ հնդիկները, որոնց սեփական հողերը ակրը մի սենտով կառավարությունը «գնում» էր: Հիշե՞լ սպիտակ-ների վերաբերմունքը դեպի սևերը: Բավական է իմանալ, որ քաղաքակրթված Ամերիկան ստրկությունը օրենքով վերացնող վերջին երկիրը եղավ:

Շատ հեռացա իմ գրության նպատակից, բայց չէի կարող չգրել իմ ցեղակիցների համար, որ իմանան «Ադա-մանդը փոշով է պատած» և կարիք ունի մաքրելու:

...Որպեսի մեր նպատակը գաղտնի մնա, ես վարձեցի Լոս Անջելեսում հայտնի դերասանուհի Մեյ Վեսմտի թատրոնը, որը գտնվում էր Նյու Համշեր փողոցում: Այն անվանեցի «Գուրգեն Թեաթր» և սկսեցի պրոֆեսիոնալ դերասաններով անգլերեն ներկայացումներ կազմակերպել: Ճիշտ է, ես անգլերեն դեռ չգիտեի, բայց իմ փարթները հայտնի դերասան Վիզարովն էր:

*Բացումը շատ շքեղ եղավ, նույնիսկ Ռուբեն Մամուլյանը, որ իր փառքի գագաթնակետի վրա էր, իր տիկնոջ հետ ներկա եղավ թատրոնի բացմանը։*

*Լևոն Սուրմելյանը, որը իրականացնում էր թատրոնի հանրային շփումները, Մամուլյանի հետ խոսակցություն ունեցավ։*

*Այդ օրերին Մամուլյանը իրեն հայ չէր համարում, հանդես էր գալիս որպես հրեա, իր դիրքը ամրապնդելու համար և իր գործին օգնում էր կնոջ հրեա լինելը։ Ես իմանալով այդ մասին 10 դոլարի գրազ եկա մի դերասանի հետ «Մամուլյանը հա՞յ է, թե հրեա՞» և շահեցի։*

*35 տարի հետո, երբ բանտում կարդացի, որ Ռուբեն Մամուլյանը անգլերեն ոտանավորներ է գրում իր ազգը փառաբանելու համար, մի ոմն թարգմանում է ու հրատարակում հայ թերթերում՝ ուրախացա, որ նա իր առազաստները պարզել է օրվա բարենպաստ քամու ուղղությամբ։*

*Ոչ միայն նա, այլ շատերը, նույնիսկ Լևոն Սուրմելյանի նման մի գնահատելի մարդ, այն ժամանակներում հեռու էին պահում իրենց հայկական շրջաններից, որ ինչպես Լևոնն էր ասում, «որ չփչացնեմ անգլերենս»։ Իսկ ինձ հետ բարեկամություն էր անում, քանի որ ես դեռ անգ-լերեն չէի խոսում և չէ կարող ազդել «իր անգլերենի» վրա։*

*Այն ժամանակ հետաքրքիր դրության մեջ էր հայությունը։ Բաժանված էր մի քանի մասերի, այս կամ այն կուսակցության, այս կամ այն եկեղեցուն պատկանող և իրար նկատմամբ լցված էին բուռն ատելությամբ։*

*Որպես նորեկ, որոշեցինք գնալ մի հայկական ձեռնարկի, որը տեղի էր ունենալու մի բացօդյա այգում։ Այգու մեջտեղից անցնող ճանապարհը այգին բաժանել էր երկու մասի։*

*Ճանապարհի երկու կողմերում, մուտքից սկսյալ կանգնած էին մարդիկ, որոնք հրավիրում էին եկողներին*

իրենց կողմը: Հրավիրելը մեղմ է ասած, ճանապարհի եզերքներին կանգնածները երգում էին և ոգեշնչում: Մի կողմում կանգնածները հեղափոխական երգեր էին երգում, ինչպես.

«Կռվեցեք տղեք,

Կռվեցեք քաջ-քաջ,

Անվհեր կանգնած թշնամու առաջ»:

Չնայած երկու կողմերում կանգնածները հայեր էին և թշնամի չկար:

Իսկ մյուս կողմը հակառակվում էր հեղափոխական-ներին.

«Դու մի սիրիր բացված վարդը,

Որ քո կրծքին թառամի

Այլ դու սիրիր կոկոն վարդը,

Որ գա կրծքիդ նա բացվի»:

Մեր քայլելուն զուգընթաց առաջարկները խոսքից գործի վերածվեցին և բանն այնտեղ հասավ, որ մեկը բռնեց կնոջս ձեռքը և համարյա ուժով քաշեց դեպի իրեն: Այն ժամանակ ես մի քիչ տաքարյուն էի: Մոտեցա նրան ու գոռացի այնպես բարձր, որ շատերը լսեն. «Ավանակ, բաց թող կնոջս ձեռքը, սա ոչ թե հայկական փիքնիկ է, այլ հայկական խայտառակություն»:

Կնոջս թևն անցա և դեպի այգու ելքը դիմեցի:

Սա եղավ Ամերիկայում առաջին և վերջին մեր մասնակցությունը «հայկական փիքնիկին»: Այս անցանկալի իրադրության պատճառը չեմ կասկածում, որ բոլոր ընթերցողներին է հայտնի, բայց լռում են: Սովորություն է դարձել:

Շնորհիվ մեր գաղափարների ու տեսակետների ընդհանուր լինելուն, մենք շատ շուտ մերվեցինք և բարեկամներ դարձանք Ֆերոյան փաստաբանի ընտանիքին: Համարյա ամեն օր հանդիպում էինք, կամ մենք էին գնում

նրանց տուն, կամ իրենք էին գալիս։

Ֆերոյանի տանը հաճախ են լուրջ հարցեր քննարկվել և կարելի է ասել ժողովատեղի էր դարձել։ Մի քանի անգամ ես էլ եմ մասնակցել այդ ժողովներին, բայց չեմ ուզում գրել դրանց մասին, բացառությամբ մեկի։

Քննվում էր ԱՆՋԱ կոչված կազմակերպության գործունեությունը։ Կազմակերպության նախագահ Մարտիկյանն էր զեկուցողը։ Ցանկանում էր, որ Ֆերոյանը դառնա Լոս Անջելեսի և շրջակա քաղաքների ԱՆՋԱ-ի լիազոր ներկայացուցիչը։

ԱՆՋԱ-ի ծրագրի և նպատակի մասին խոսք չկա, արժանի է գնահատանքի։ Մեծ գործ կատարեց։ Վիճաբանության առարկան կազմակերպության կանոնադրության մեջ գրված մի կետի շուրջն էր, որտեղ ասվում էր։ «Երբ ԱՆՋԱ-ի վարչությունը տեսնի կարիք կա դրամական հաշիվների ստուգումներ անցկացնել, ապա վարչությունը դա կանի համապատասխան հանձնախումբ կազմելով»։

Ֆերոյանը պնդում էր, որ այդ կետը պիտի լինի կազմակերպության կանոնադրության մեջ և ոչ թե լինի վարչության իրավունքը։

Մարտիկյանը չէր ցանկանում այդ վերաստուգիչ կոմիտե ունենալու կետը մտցնել և Ֆերոյանը էլ պնդում էր, որ այդ կետը պետք է կապ չունենա թե ո՞վ է լինելու ներկայացուցիչը այստեղ կամ այնտեղ։

Մինչև այսօր էլ ԱՆՋԱ-ի կանոնադրությունը չունի այդ կետը։ Թող ընթերցողները իրենք որոշեն, թե ինչո՞ւ այդ կետին հակառակ էր ԱՆՋԱ-ի նախագահը։ Որովհետև մինչև հիմա ԱՆՋԱ-ն չի համարում, որ դրամական գործունեության քննության կարիք կա և չի կատարել։

Կարծում եմ ժողովուրդն ու դրամ տվողները իրավունք ունեն իմանալու, թե ինչպե՞ս է օգտագործվում իրենց դրամը և անունը։ Միայն այս կազմակերպությունը չէ,

*որ այսպես է վարվել: Կուսակցությունները և ուրիշներն էլ նույնն են անում:*

*Իմ նպատակը այն չէ, որ մերժեմ ԱՆՋԱ-ի նախագահ Մարտիկյանի արժեքը: Իմ կարծիքով նա մեծ գործ է կատարել և գնահատանքի չի արժանացել ոմանց կողմից և նաև իմ կողմից: Ես որոշ տեսակետներ ունեմ և չեմ կարող դրանք չրջանցել: Ինձ չի հետաքրքրում ԱՆՋԱ-ի ֆինանսական գործունեությունը: Իմ պետքս չէ, թե ոմանց կարծիքով Մարտիկյանը հարստացել է: Ես չունենալով փաստեր, դրանք աչքաթող եմ անում: Բայց... ԱՆՋԱ-ի կողմից Գերմանիայում տառապող մեր եղբայրներին ու քույրերին նվերներ ուղարկած թղթե մեծ պարկերի վրա գրել «Նվեր Ամերիկայից-Մարտիկյանից», չեմ կարող ներել, նույնիսկ իմանալով, որ նա շատ վարժ է իրեն «ծախելու» գործում: Իմ ծանոթներից մեկը, բողոքի նամակի հետ, 5 հատ այդ տոպրակներից էր ուղարկել Բեռլինից, որը ես տվի Ֆերոյանին, որովհետև ես ազգային գործերով չէի զբաղվում, իսկ ինքը զբաղվում էր:*

*Չեմ կարող մոռանալ, թե ինչպես Ֆրեզնոյում ես հրաժարվեցի ելույթ ունենալ, որովհետև Մարտիկյանն էլ խոսք ուներ ասելու: Ինչո՞ւ:*

*Մարտիկյանը Սան Ֆրանցիսկոյում մի «Օմար Խայամ» անուն հանած ճաշարան ուներ: Ամեն տեսակի մարդիկ այցելում էին, նաև թուրք ցեղին պատկանողները: Մարտիկյանը բոլորին լավ ընդունում էր և դա իր պարտականությունն էր և ոչ ոք չէր կարող մեղադրել: Ինչ գնահատելի պատճառներով նա արժանացել էր թուրք կառավարության ուշադրությանը և պարգևատրվել էր նրանց շքանշանով: Զարմանալու կամ մեղադրելու հարկ չկա: Շքանշանը տրված էր Կորեայի պատերազմին մասնակցող թուրք զինվորներին տաճկական կերակուրներ պատրաստելու համար:*

*Երբ երկու բարձրաստիճան Թուրքական կառավարության պաշտոնյաներ գնացել էին իր ճաշարան, հանձնելու չքանչանը, նա հայտնել էր, որ կազմակերպելու է մեծ ընդունելություն իր բնակարանում իրեն չքանչան տրամադրելու առթիվ։*

*Մարտիկյանի հայրը, ըստ իր բազմաթիվ ելույթների ժամանակ պատմածի, գլխատվել է Թուրքիայում, այն էլ իր աչքի առջև։*

*Իր հոր նկարը սրահի դռան վերևի մասում մինչև առաստաղն էր հասնում։*

*Ընդունելության օրը նա դիմավորում է Թուրք հյուրերին և հյուպատոսին և նրանց առաջնորդում դեպի ճաշասենյակ։ Հյուրերից մեկը կանգ է առնում ու զմայլվում նկարով, հարցնելով. «Ո՞ւմ նկարն է»։*

*Առանց շփոթվելու և կարմրելու, նա մտնում է հարցնողի թևը ու տանում մյուս սենյակ «Հին պատմություն է, այս նկարի մասին չարժե հիշել» ասելով։*

*Ամերիկայում հարստացած Մարտիկյանը, որ նույնիսկ Ամերիկան փառաբանելով ու գովեստներ չխնայելով գիրք է գրել, որտեղ մոռանալով իր ծննդյան թիվը, այն ընդունում է Ամերիկա գալու օրը։ Դավաճանում է ոչ միայն իր ցեղին այլ նաև իրեն կյանք տվողին։ Մի արհամարական զգացողություն կար իմ մեջ նրա հանդեպ այդ աններելի որդիական վերաբերմունքի համար։ Անարգել իր հո՞րը... ամոթ չէ՞։*

*Այս բոլորն ինձ պատմողը հյուրերի թվում է եղել և իր լավ բարեկամը։ Նա զարմանում էր, թե ինչպես ամեն ինչ նախատեսնող, ճարպիկ իր բարեկամը չէր վերցրել այդ նկարը ու պահել այդ հրավերքի օրը։*

*Գուցե կլինեն ընթերցողներ, որոնք համամիտ չեն ինձ հետ։ Ինձ համար դա նշանակություն չունի, ես ապրում եմ իմ տեսակետներով ու բարոյական հիմքով, որը ամենու-*

րեք իր սահմանն ունի, բացառությամբ սերը ինձ կյանք տվողներին ու նրանց պատկանած ցեղին: Այդ սերը ԱՆՍԱՀՄԱՆ է:

Որպեսզի հետագայում լայն կերպով կարողանամ օգտագործել «ԴՐԱԽՏ» անունով ֆիլմը և հասույթը տամ ում որ պետքն է, ես մի ռուս փաստաբանի միջոցով ստացա ոչ եկամտաբեր կազմակերպության իրավունք, որն ազատ է բոլոր տուրքերից, «Սայնս օֆ լիվինգ» անունով՝ հաստատված Սակրամենտոյի պատշաճ կազմակերպություններից:

Այս նպատակի համար հարկավոր էր երեք մարդ: Պետք եղած երկուսը բարեացակամորեն հանձն առան Ամերիկայում անվանի Լիա Ալդեն մեքսիկական բանաստեղծուհին ու երգի դասեր տվող Ինդիրա Դևի անունով ռուս մի տիկին, որը հայտնի է շատ երկրներում:

Այս և ուրիշ գործեր կարգադրելուց հետո ու ցույց տալով տիկնոջս իր անելիքը իմ բացակայության ժամանակ, ես իրավունք ստացա ամերիկյան կառավարությունից ճանապարհորդել ամերիկյան փաստաթղթերով:

Իրավունքը տրված էր մեկ տարով, բայց հավելյալ 6 ամիս ևս ստացա: Մեկնեցի միջին Արևելք՝ Բաղդատ, Երուսաղեմ, Դամասկոս, Բեյրութ և ուրիշ վայրեր, պատրաստելու համար պետք եղածը, որ սկսենք «Դրախտ» ֆիլմ նկարելու աշխատանքները:

Դամասկոսից ոչ հեռու մի գյուղ գնեցի, որ պիտի այրվեր ֆիլմի նկարահանումների ժամանակ:

Դեր Զորում հող գնեցի, որտեղ մի հսկայական բետոնե բուրգ էի պատրաստելու և թողնելու էի, որպես հիշատակ մեր զոհերին, քանի որ բուրգը լցված էր լինելու անթաղ ոսկորներով: Ոսկորները հավաքում էին այդ նպատակով վարձված քրդերը, որոնք մարդկային ոսկորները ամբարում էին մեր պահեստներում: Հազարավոր գանգեր, ոտքի

և ձեռքի, ողնաշարի, կրծքի և այլ մարմնամասերի ոսկորներ, ծածկված երբեմն կես ոտք ավազի շերտի տակ և նույնիսկ քրդական գյուղերի փողոցներում էին հանդիպում հայոց ոսկորները։

Քրդերը մեծ ոգևորությամբ էին անում իրենց գործը, քանի որ պահեստ ներկայանալուն պես, նրանց վճարվում էր հնչյուն ոսկի։

Պահեստի պատասխանատուն մի ԹՈՒՐՔ ուսանող էր, որին ծառայության էի վերցրել ինձ մոտ։ Նա գիտեր իմ նպատակը և պետք է հիշեմ և գնահատեմ այդ ազնիվ ուսանողին, որը գիտեր մեր պատմությունը շատ հայերից էլ ավելի լավ, և նա համոզված էր, որ Թուրք կառավարությունը ջարդ էր կազմակերպել հայերի նկատմամբ ու լիովին համամիտ էր ինձ հետ՝ ցույց տալ աշխարհին այդ ամենը։ Այս երիտասարդ ուսանողը հետագայում եղավ Ամերիկայում իմ հյուրը և ամիսներով ապրեց իմ Սանտա Բարբարայի բնակարանում։

1500 զինվորների և այն ժամանակներին օգտագործվող քաղաքացիական հագուստներ կարել տվեցի, որոնք պետք էին ֆիլմի նկարահանումների ժամանակ։ Կապեր ստեղծեցի եղեռնը վերապրածների հետ։ Մի հույն կին ինձ տվեց իր մոր պատմությունը նկարներով, որին Թուրքերը իր ժամանակին մորթել էին, 15 անգամ հերթով բռնաբարելուց հետո։ Նրա հայրը իր կտակի մեջ գրել էր, որ աղջիկը չմոռանա այս ու երբ հնարավորություն ունենա պատմի աշխարհին իր մոր կյանքը։

Մի տարի ու կեսը աննկատելի կերպով անցավ և ես վերադարձա Ամերիկա իմ Թղթերի ունեցած իրավունքի վերջին օրը։ Շատ դրամ էի ծախսել։ Ունեցածս հալչում էր։ Պարսից կառավարությունը խոստացել էր ուղարկել ինձ իմ պահանջը և չէր կատարել։ Այդ գումարը մեկ ու կես միլիոն դոլարի էր հասնում։ Ոչ հեռագրերս և ոչ էլ

*Թեհրանում գտնվող իմ փաստաբանի արածները արդյունք չէին տալիս։ Դիմեցի Վաշինգտոն, նահանգային իշխանություններին։ Իմանալով իմ ով լինելը և ամերիկյան բանակին տված օգնությունս, ուրախությամբ ընդառաջեցին ինձ և իրենց դեսպանին կարգադրեցին Պարսից կառավարությանը հիշեցում տալ, որ վճարեն Ցանիկյանին ունեցած պարտքը։*

*Պարսկաստանի Շահ կոչված սրիկան, որն արդեն հիմա գահից զրկվել է և ցանկություն ունեմ, նաև, տեսնել թե ինչպես է նրա ժողովրդից գողացած և զանազան բանկերում պահ տված միլիարդները կորցնում, երբ իմացավ Ամերիկայի դեսպանի հիշեցման մասին՝ կատաղեց։ Նա զարմացել էր, թե մենք ինչպես ենք Ամերիկա գնացել և հրամայել էր մինիստրներին «Ցանիկյանը հիմա Ամերիկայում է և ամերիկացի է դարձել և այլևս պարսկական փող չի տեսնելու»։*

*Գտնվելով բարեկամական կապերի մեջ նախկին Ամերիկայի նախագահներ Ջոնսոնի և Նիքսոնի հետ, որոնց նախագահական ընտրությունների ժամանակ մեկ միլիոն կանխիկ դոլար էր տվել, շահը կարողանում է նրանց ևս լարել իմ դեմ։ Եվ նահանգային դեպարտամենտը Նիքսոնից ցուցմունք է ստանում պարսից կառավարությանը չանհանգստացնել։*

*Սա իմ նկատմամբ ամերիկյան կառավարության գործադրած առաջին «ազնիվ» քայլն էր։ Նրանք մոռացության տվին այն խոստումը, որ տվել էին ինձ Պարսկաստանից դուրս գալուց առաջ, խոստանալով զորավիգ լինել ինձ հասանելիք գումարը Պարսկաստանից ստանալուն։*

*Իմ թղթակցություններս նահանգային դեպարտամենտի և Վաշինգտոնի իմ փաստաբանի հետ, տարիներով արդյունք չէին տալիս։ Փողի կարիք ունեի և որոշեցի օտար բանկերից դրամս դոլարի վերածել։ Անգլիական*

փաունտը 25 տոկոսով պակաս տեղ հասավ, քանի որ դոլարի նկատմամբ կորցրել էր իր արժեքը։ Առաջ 4 դոլարը մեկ փաունտ էր, հիմա վճարեցին 3 դոլարի դիմաց։

Ցանկանալով մի կերպ եկամուտ ստեղծել, Սանտա Բարբարայում քաղաքի մեջ գտնվող մի բլուր գնեցի և սուբդիվայզ անելով մի քանի տասնյակ սքանչելի շինարարական հողակտորներ շուկա հանեցի ծախելու համար։ Դա կոչվում էր «Ցանիկյան սուբդիվիժն» և ամեն ինչ գետնի տակ էր կառուցված և հիանալի տեսարան ուներ մինչև հորիզոն։ Ամենալավ հողամասի վրա ինձ համար մի չքեղ տուն շինեցի ու փոխադրվեցի Սանտա Բարբարա։

Նահանգային դեպարտամենտի հետ վիճաբանությունս շարունակվում էր։ Այդ ժամանակ Կոնգրեսը մի օրենք հանեց, ըստ որի, ոչ մի օտար երկիր չէր կարող ամերիկյան օգնություն ստանալ, եթե նա պարտք ունի որևէ ամերիկացու։

Սա կարծես մի հրաշք էր և հատկապես ստեղծված էր ինձ համար։ Այժմ իմ պահանջը Պարսից կառավարությունից պարտքս ստանալու վերաբերյալ փոխել էի «պահանջում եմ, համաձայն օրենքի, դադարեցնել ամեն մի օգնություն, որ կտրվի Պարսիկ կառավարությանը»։

Դիմեցի Քալիֆորնիայի կոնգրեսմեն Դուլին։ Երբ տեսավ փաստերը և եղելությունը, զարմացավ և ասաց, որ զբաղվելու է իմ հարցով։ Նամակներ գրեց Նահանգային դեպարտամենտին։ Այնտեղից սխալ պատասխաններով արդարացնում էին իրենց վերաբերմունքը իմ հարցի վերաբերյալ։ Իմ ֆիլմի պատրաստելու մասին արդեն տեղյակ էին թե տաճկական կառավարությունը, թե Պարսկաստանը և թե մեր երկրի կառավարիչները։

Չնայած իմ ունեցածները սքանչելի հողամասեր էին, բայց չէին ծախվում, երկրում դրամի պակասի պատճառով։

Գնացի Ֆրեզնո, մի քանի միլիոնատերերի հետ խոսեցի ցանկանալով փոխառություն անել, պայմանով վերադարձնել կրկնակին: Օգուտ չունեցավ, նրանք հարստացել էին տարիներ առաջ գնելով սեկչոն հողեր, որը հետագայում սկսել էին ծախել ակրով, հետո ոտքով և չուտով ծախելու են ինչով…

Ֆրեզնո գնացել էի նաև հանդիպելու «Նոր Մարդ» անունով հարուստների, որոնք Ցանիկյաններ էին և իր ժամանակին այստեղ էին հաստատվել: Ցանիկյանների իսկական ազգանունը Հակոբյան է եղել դարեր առաջ: Նրանցից մեկը այրվել էր իր տան մեջ հրդեհի ժամանակ և թուրքերը սկսել էին կոչել յանղունենք, որը թուրքերեն նշանակում է «հրդեհի ընտանիք»: Կամաց-կամաց Հակոբյանը մոռացվել է և յանղունենքը դարձել է Ցանիկյաններ:

Այդ մեծ ընտանիքի մի մասը Հակոբյան անունով տեղափոխվել էր Հնդկաստան և մեծ հարստության տեր էին դարձել այնտեղ, ձեռք բերելով հսկայական հողատարածքներ մայրաքաղաքի մեջ: Զավակ չունենալով, նրանք այդ բոլորը կտակել էին իրենց հարազատներին: Նրանց մահից հետո անգլիական կառավարությունը հոգ էր տանում սպասելով ժառանգների հայտնվելուն:

Երբ Ֆրեզնոյում դիմեցի «Նոր-մարդեր»-ին, նրանք խորհուրդ տվին մոռանալ ֆիլմի պատրաստելը և զբաղվեմ մեր կտակը հետապնդելով: Ծիծաղեցի նրանց ասածի վրա, չնայած իմ անունով էլ «Փաուր Աթորնի» կազմեցին և տասնյակ ժառանգորրդների ստորագրությամբ, փաստաթղթերով ու լուսանկարներով ինձ տվեցին: Դրանք մինչև հիմա էլ թղթերիս մեջ են: Զէի գժվել, որ թողնեի մի կողմ իմ կյանքի հիմնական նպատակը և սկսեի հետևել տասնյակ տարիների վաղեմությամբ մի գործի, որը միշտ ապարդյուն էր վերջացել: Մանրամասնությունները հետաքրքիր չէ: Հիշեցի, երբ դեռ երիտասարդ էի, հայրս

*ասում էր իմ մեծ եղբայր Սուրենին. «Սուրեն տղաս, հերիք է դրամ ծախսես և կուսակցության հետ միասին վազես ստվերի հետևից: Հասկացեք, Ինգլիզը այդ կտակի հարստությունը ձեռքից բաց չի թողնի: Պիտի քաշքշե, մինչև ժամանակը անցնի ու օրենքով իրեն մնա»:*

*Սուրենը երկու անգամ Հնդկաստան էր գնացել և մի անգամ Լոնդոն: Այս հարցով մի քանի փաստաբաններ էր վարձել: Կուսակցությունը օգնում էր, քանի որ եղբայրս կեսը խոստացել էր նրանց:*

*Անգլիացուն, որը Ինգլիզ մականունը ունի, աշխարհը լավ գիտի: Աշխարհի ամենամեծ կեղեքիչներն են եղել: Երբ անապատում ծանոթացա անգլիացի մի գնդապետի հետ, որը ըստ իրենց սովորության թևի տակ երկու ոտք երկարությամբ ճիպոտ ուներ, մի երկու վիսկի խմելուց հետո ասաց. «Աշխարհում մի անգլիացուն ապրուստ ապահովելու համար 70 մարդ պետք է աշխատի»:*

*Պատասխան չտվի, որովհետև կհայտներ ուր որ հարկն էր և ինձ բանտ կնետեին: Բայց զզվեցի այդ կարծիքը ունեցող ազգից, որը համայն մարդկությանը ոչնչություն էր հաշվում, բացի իրենից:*

*Այդպես էր դարերի ընթացքում, մինչև որ սթափված ազգերը առիթ ունեցան իրենց վրեժը լուծելու այդ իրեն երևակայող Ինգլիզից և «առյուծի պոչը» կտրեցին: Կաշին էլ կքերթեին ու չարուխ կշինեին, եթե Ամերիկան օգնության չհասներ:*

*Ընդունում եմ, որ այս տողերը գրելիս ամերիկացիներն էլ են գնում նույն ուղիով, բայց գուցե շուտ սթափվեն և հրաժարվեն այդ ճանապարհից, որը երկիրը տանելու է քայքայման: Այդ մասին մանրամասը գրել եմ «Մի ամերիկացու ձայնը» հրատարակած գրքիս մեջ, որոնց 200 օրինակը 1960 թվականին անվճար ուղարկել եմ երկրի ղեկավարներին: Կոնգրեսի գրադարանում էլ կա, կան նաև*

*այլ գրադարաններում։*

*Չեմ կարող զսպել ինձ, որ չգրեմ մի փաստ, որը չեմ կարծում իմանան շատերը։ Դա կապված է Ինգլիզի անվան հետ և փաստում է, թե ինչպիսի կեղտոտ ու խայտառակ միջոցների էր դիմում այդ ազգը, միթե՞ միայն այդ ազգը, որ հասնի իր նպատակին՝ կեղեքել ու մթության մեջ պահել միլիոնավոր իր նմաններին, որոնք աշխարհ են եկել նույն բնական օրենքների հիման վրա։*

*Չեմ կասկածում, որ լսել եք Ագա Խան անունը, որը 40-45 միլոն հետևորդներ ունի, համարվում է Աստված և բնակվում է Հնդկաստանում։*

*Գրածս հեքիաթ չէ, այլ 100 տոկոսանոց ճշմարտություն։*

*Անցյալ դարում, երբ անգլիացիք կեղեքում էին Հնդկաստանը, որոշեցին ավելի լավ և հանգիստ կեղեքել ու մտադրվեցին ստեղծել հնդիկ ժողովրդին պատկանող մի անձ, որ օրինականացներ իրենց կատարած գործերը։ Գտնում են կյանքը սիրող լավ տեսքով մի երիտասարդ, մոտ 35 տարեկան ու առաջարկում են, որ նրան կտան ամեն պայմաններ շքեղ կյանք վարելու համար ու առանց աշխատելու ապրելու համար, եթե նա համաձանի մահանալ 70 տարեկան հասակում։*

*Հնդկաստանում կյանքի տևողությունը 55-60 տարի և առաջարկված 70 տարվա առանց կարիքների կյանքը երիտասարդին գրավում է։ Շքեղ և հարմարավետ բնակարան են տալիս, մի գեղեցկուհի կին, որը նրան մի արու զավակ տալուց հետո անհետանում է երեխայի հետ։ Երիտասարդը շարունակում է իր անհոգ կյանքը։ Նոր գեղեցկուհիներ են հայտնվում և նույնպես անհետանում են, երբ երեխա են ունենում։*

*Երիտասարդն ամեն ինչ անելու էր իրեն տրվող ցուցմունքների համաձայն։ Երբեք մենակ չէր լինում և*

*շնորհիվ անգլիական կառավարության, դարձել էր մի կրոնական ուղղության ղեկավար և ընտրյալ: Քարոզում էր իրեն սովորացրած խոսքերով:*

*Մի խոսքով, երբ բոլորում էր նրա 70 տարին, արդեն բավականին թվով հետնորդներ ուներ, որոնց նա ներշնչել էր, որ ինքն անմահ է:*

*Այդ կրոնի ղեկավար հայրերը հրավերք են ստանում այս «անմահից», որ որոշված օրը հավաքվեն որոշված վայրում լսելու նրա խոսքը:*

*Հայտնելով, որ ինքը ծերացել է և հրաման է ստացել Աստծուց հրաժեշտ տալու հին կյանքին՝ նոր կյանք ստանալու համար, որ կարողանա շարունակել ծառայությունները իր հավատացյալ հոտին: Մնաք բարեավ, առայժմս, մինչև նոր հանդիպում ասելով հեռանում է սրահի բեմից: Ներկաները նրանից այդպիսի խոսքեր չէին սպասում, քանի որ նրանք նույնպես նրան տարեկից էին և ծերացած էին: Շատերը նրա ասածներից վրդովվում են: Նրա հեռանալուց հետո սրահում լսվում է հատուկ ուժեղ երաժշտություն և բեմ է վազում երիտասարդ ու գեղեցիկ մի մարդ և դիմելով ապշած ներկաներին հայտնում է, որ «Աստված իրեն նոր կյանք տալով, ուղարկել է շարունակելու իր հավատացյալ ժողովրդին կառավարելը»:*

*Դիմելով ապշածներից մի քանիսին անուններով, նա պատմում է, թե նրանք ինչ էին արել մի քանի օր առաջ իր հետ միասին և որտեղ են եղել: Սրահում նստածները զարմանքից ապուշ են կտրում և սկսում են նրան հարցեր տալ, թե ի՞նչ էին անում մի շաբաթ առաջ և ի՞նչ պատահեց իրենց ուսորդության ժամանակ: Տալիս են այնպիսի հարցեր, որ միայն իրենց ծերացած ղեկավարը գիտեր: Պատասխանող երիտասարդը փաստում էր, որ ինքը նույն ծերունին է, որը քիչ առաջ մնաս բարով էր ասել բոլորին և հեռացել բեմից:*

*Կասկածները տեղի են տալիս և բոլորը ծնկաչոք գալիս են իրենց վերածնված Աղա Խանի առաջ երկրպագելու։ Աղա Խանը ծերունու անունն էր, նույն անունը մնում է երիտասարդի վրա։ Սա այն Աղա Խանն էր, որին աշխարհը ճանաչում էր և անունը չէր իջնում լրագրերի էջերից, որի հետ ես պատիվ ունեցա ծանոթանալու, երբ նա իր ֆրանսուհի երիտասարդ կնոջ հետ հանգստանալու էր եկել Կաննում՝ քաշով մեկ ոսկի ստանալուց հետո։*

*Բախտ ունեցա նաև ծանոթանալ այս Աղա Խանի Բագում անունով որդու հետ, որը եկել էր հանգստանալու Լիբանանի «Ալեյ» կոչված ամառանոցում, որտեղ նա ժամանել էր իր սիրեկանի՝ ռուս ազնվական ընտանիքի մի աղջկա հետ։ Այս աղջիկը բաժանվել էր իր ամուսնուց և դարձել Բագումի սիրուհին։ Բագումը իր սիրուհիներին փոխում էր ձեռնոցների պես և արդեն կշտացել էր ռուս աղջկանից և ցանականում էր ազատվել նրանից։ Ես ապրում էի «Ալեյ»-ի հյուրանոցում և հյուրն էի Շոքի Բեյ Սահատ լիբանանցուն, որն այսօրվա Արաֆատի ընտանիքից էր։ Այստեղ էր, որ ծանոթացա և մտերմացա Ջորջ Արիդայի հետ, որի հյուրը երկու շաբաթ եղա իր Տրիպոլի պալատում, որտեղ ստիպված էի ուտել նոր մորթած գառնուկի սիրտ, լյարդ և քինին, որը ըստ սովորության մատուցում էին վաղ առավոտյան՝ արթնացնելով քնից, որպես ապացույց անկեղծ և հավերժ բարեկամության։*

*Այս այն Արիդան է, որ գնել էր Հիտլերի սեփական գրոսանավը և նրանով ժամանել էր Նյու Յորք ու ցանկացողներին մեկ դոլար վճարով ցույց էր տալիս գրոսանավը։ Նավի ցուցադրումից հավաքված գումարը նա նվիրեց ամերիկյան ինչ-որ կազմակերպության։ Ինքը շատ հարուստ էր և փողի կարիք չուներ, պարզապես բարեգործություն էր անում։*

*Ռուս աղջիկը դիմեց ինձ, միջամտելու, որ Բագումը իրեն չհեռացնի: Թե ես և թե Շոքի Բեյը ու Արիդան նույնպես մասնակցեցինք այս անցանկալի խոսակցությանը: Մեր խնդրանքները անարդյունք եղան: Երկու շաբաթ հետո Բագումը ռուս աղջկա ձեռքը տալով հազար դոլար, ճանապարհեց նրան Բեյրութ, չնայած հանդիսանում էր Ագա Խանի միլիարդների ժառանգորդը:*

*Հետագայում Շոքի Բեյը ինձ տեղեկացրեց, որ ռուս աղջկա ամուսինը ներել էր իր կնոջը և տուն ընդունել:*

*Գիտեմ, որ ընթեցողը ցանկանում է իմանալ, թե ինչպե՞ս էր անմահացել Ագա Խանը: Շատ պարզ: Այս բոլորը կազմակերպված էր անգլիական ինտելիջենթ սերվիսի կողմից: Նշված օրը Ագա Խանի նորածին երեխային տարել էին Անգլիա, որտեղ մեծանալով և Օքսֆորդում ուսում առնելով, մեջտեղ բերվեց, երբ լրացավ իր հոր 70 տարին: Նրան բերին Հնդկաստան և այն հրաժեշտի երեկոյին, հորը մի սրսկումով և մարմինը հալեցնելով թթվի մեջ կորցրին հետքերը: Երիտասարդը տարիների ընթացքում տեղեկանում է հոր գործերից և լրիվ տեղյակ լինում նրա մասին՝ հետագայում հարցերին ճիշտ պատասխանելու համար:*

*Պետք է արդյո՞ք գրել, թե ինչպիսի մութ գործերով էր զբաղված Անգլիան, որ տասնյակ տարիներ կարողանար իր ձեռքում պահել և լինել մարդկության տերն ու տիրականը: Ուրախ եմ, որ վերջապես նա կորցրեց իր դիրքը: Ուրախ եմ նաև, որ Ագա Խանի որդի Բեկումը օդային արկած ունենալով անհետացավ: Երևի խեղճ խաբված սիրո անեծքներն էին պատճառը...*

*Ֆրեզնոյում լինելով հասկացա, որ ոչ մեկի վրա հույս դնել չեմ կարող և ինքս պետք է աշխատեմ մի ելք գտնել: Ես մի պիես էի գրել «Մեր Մեսիա» վերնագրով, որը հիմնված էր իմ գրած և հրատարակած գրքի վրա: Մի*

քանի անգամ ես այն ներկայացրի Ալա Վիստ կոչված վայրում, որը 12 մղոն է Սանտա Բարբարայից հեռու և գտնվում էր համալսարանի մոտ։

Պիեսը մեծ հաջողություն ունեցավ։ Որոշեցի կապվել ֆիլմ արտադրողի հետ, որը համաձայնվեց որոշ պայմաններով գնել այն ինձնից նախապես տեսնելով ներկայացումը։

Մինչ այդ ես պայմանագիր էի կնքել մի հրեա պրոդյուսորի հետ, որը ֆիլմի էր վերածելու իմ հայտնի «Հուդա Իսկարիոտի Հաղթանակը» գրվածքը։ Նրա կինը՝ Աննա Ստենը, հայտնի դերասանուհի էր և խաղալու էր Մարիամ Մակդոնացու դերը։ Հոգևորականները կառավարության միջոցով աշխատեցին, որ պրոդյուսորը հրաժարվի մեր պայմանագրից, զոհելով իր պայամանագրից հրաժարվելու դեպքում օրենքով նախատեսված դոլարները։ Սա խմիջայլոց։

«Մեր Մեսիա» ներկայացումը որչեցի տալ բացօդյա՝ քաղաքի պարտեզներից մեկում։ Դրա համար ստացա հատուկ թույլատվություն պարտեզների կառավարիչից և նաև գրավոր թույլտվություն քաղաքապետարանից։

Լծվեցի գործի և սկսեցի դրամ ծախսել։ Ներկայացումը իր ամբողջ սարք ու կարգով պատրաստ էր և տեղեկացրի ֆիլմ արտադրողին ներկայացման օրը և տեղը, որպեսզի ըստ պայամանավորվածության, հետագայում այն ֆիլմի վերածեինք։ Մի շաբաթ անց նույն անձնավորությունները, որ ինձ թույլատվություն էին տվել բացօդյա ներկայացում տալու, տեղեկացրին ինձ և ոստիկանությանը թույլատվության չեղյալ հայտարարելու մասին։ Նրանք իրենց մտքափոխությունը կապում էին այն հանգամանքի հետ, որ իբրև թե ներկայացումը հակակրոնական բնույթ ունի։

Բոլոր ջանքերս անօգուտ եղան։ Սանտա Բարբարայի միակ լրագիրը երկու անգամ խմբագրականներ գրեց,

պաշտպանելով իմ իրավունքի մեջ լինելը, ցույց տալով, որ քաղաքի կառավարիչներն իրավունք չունեն արգելելու ներկայացումը:

Դա էլ չօգնեց: Ոստիկանությունը հրամայեց քանդել պատրաստի բեմը և սարքավորումները և եթե դա ես չանեմ, ապա իրենք կանեն և ինձ էլ կճերբակալեն: Ծախսած գումարս կորավ և ներկայացումի վաճառքից ակնկալվող շահույթը ջուրն ընկավ:

Հետագայում իմացա, որ կարգադրությունը եղել է կրոնական կազմակերպությունների կողմից, և մեծ դեր է կատարել քաղաքի դատախազը, որը հետագայում, իմ դատավարության ժամանակ շրջանային դատախազն էր:

Այս Թատրոնի պատմությունը ցույց տվեց, որ ես ունեմ ուժեղ թշնամիներ և դրա պատճառն իմ ազատ գրություն-ներն ու դասախոսություններն են: Ստացա նաև նամակներ և լսեցի հեռախոսազանգեր, որոնցով սպառնում էին կյանքիս:

Մի այդպիսի հեռախոսային սպառնալիք, վկաների ներկայությամբ գրանցվեց ոստիկանապետի գրասենյա-կում: Այս փաստը տանելով դատախազություն, պահանջեցի, որ սպառնացողը ըստ օրենքի պատժվի: Արդյունքը զերո եղավ, որովհետև սպառնացողը հենց աշխատում էր այդ հիմնարկում... Գուցե՞ սպառնալիքը կատարված էր հիմ-նարկության գիտությամբ և ցանկությամբ:

Անձնական կյանքումս էլ այդ նույն ժամանակ տհաճ դեպքեր տեղի ունեցան:

Տիկնոջս հեռավոր ազգականը, որպես «ԴԻՊԻ», իմ երաշխավորությամբ Ամերիկա էր եկել և բնակվում էր իմ տանը: Ես նրան կերակրում էի և գրպանի ծախսի համար որոշ գումար էի տալիս: Անունը Նիկոլայ Սարիև էր, Ռոստովից, ինչ-որ բարեկամական կապեր ուներ Քոմուրջյան ընտանիքի հետ:

*Կցարմանաք, այդ անամոթ սրիկան հիվանդանոցում գործողության ենթարկվեց քաղցկեղից և ծախսերը ես վճարեցի, բայց իմ բացակայության ժամանակ ցանկացել էր բռնաբարել կնոջս և մենամարտի հետևանքով կինս վայր էր ընկել և կոտրել ոտքը։*

*Կնոջս ոտքի գործողությունը սխալ էր կատարվել և երկրորդ գործողության ժամանակ, երբ գտնվում էր թմրեցուցիչների ազդեցության տակ, նա պատմեց ինձ եղելությունը։ Ես այդ սրիկային կարող էի բանտ նետել, բայց բավարարվեցի տնից դուրս նետելով և նրա ստորությունների մասին տեղյակ պահելով տիկնոջս Ռոստովի ազգականներին և թե այդ սրիկայի ընտանիքին ու նրա Լոս Անջելեսի բարեկամներին։*

*Ամիսներով կինս հիվանդանոցում մնաց և այդ ժամանակ նա ինձ պատմեց, որ դա առաջին անգամը չէր, որ նա աշխատել է բռնության դիմել իր նկատմամբ և ցավում է, որ ժամանակին չէր ասել ինձ, մտածելով ես կանհանգստանամ և բարդությունների մեջ կընկնեմ, որի համար և հիմա տանջվում է։*

*Այս տհաճ դեպքերը, մեր փողերի Պարսկաստանում գտնվելը և ամերիկյան կառավարության ժխտումը, իմ ներդրությունները, չէին կարող անհետևանք մնալ կազմվածքով թույլ, բայց կամքով ուժեղ իմ տիկնոջ վրա, որն ամուսնության առաջին օրից եղավ և մնաց իմ օգնականը բոլոր գործերում։ Նրա հոգեկան վիճակը այնքան վատթարացավ, որ կորցրեց խելքը և հիվանդանոցից տուն չվերադարձավ։ Ամենօրյա իմ այցելությունները նրան օգնել չէին կարող և բժիշկների թափած ջանքերն էլ օգուտ չտվին։ Կինս այս աշխարհից չէր և ես նույնիսկ կարծես ուրախ էի, որ նա չէր հասկանում ինչ է կատարվում շրջապատում։ Վերջին անգամ ես նրան այցելեցի հունվարի 27-ի առավոտյան ժամը 9-ին, այսինքն արարքից*

*մի քանի ժամ առաջ։*

*Համբուրեցի նրան ասելով. «Անխիղճ մարդիկ քեզ այս օրը հասցրին և ինձ մարդասպան դարձրին, որ մոռանանք մեր կյանքի նպատակը։ Բայց մենք մեր նպատակին կհասնենք մեզ անցանկալի միջոցներով։ Համարյա հիսուն տարի դու եղար ինձ համար, ոչ միայն կին, այլև գաղափարակից և միասին աշխատեցինք այդ ուղղությամբ, բայց չհասանք մեր նպատակին։ Սուսաննա, Ջանիկս, հանգիստ եղիր, ես կավարտեմ մեր սկսածը, ստիպված մի այլ ձևով»։*

*Համբուրեցի նրան և նա էլ մեքենայաբար նույնը արեց,։ Առանց հասկանալու իմ ասածները։ Նրա մեջ այլևս չէր ապրում բժշկուհի Սուսաննա Քոմուրջյան-Ցանիկյանը, որ ժամանակին հիացրել էր բոլորին իր մասնագիտությամբ, կատարելով քաղցկեղի 120 գործողություն և բոլորը հաջող ելք էին ունեցել։ Համաշխարհային ճանաչում ունեցող ռուս պրոֆեսոր Սոլովյովը, որի հետ Ռոստովում աշխատում էր Սուսաննան, մեր ամուսնության առիթով բաժակ բարձրացրեց և ասաց. «Պարոն Ցանիկյան, դու պետք է իմանաս, որ քո կինը հասարակ կին չէ, նա ոսկի ձեռքեր ունի, որոնք մարդկությանը դեռ շատ են օգտակար լինելու։ Աշխատիր, որ այդ ձեռքերը չթառամեն»։*

*Հունվարի 27-ից հետո մեր օտար բարեկամներն էին այցելում նրան հիվանդանոց և տանում իր սիրած շոկոլադն ու բանանը։ Նրանք էլ հոդ տարան, որ մահանալուց հետո մարմինը այրվի։ Նա հեռացավ այս աշխարհքից թողնելով անմահ հիշատակ իմ սրտում։*

*Կնոջս աճյունամոխիրը իմ ցանկությամբ շաղ տվին օվկիանոսի վրա։ Իմ խնդրանքով Լևոնը՝ միակ հայը, տիկնոջս սիրած կարմիր վարդերի փնջով ներկա եղավ այդ տխուր արարողությանը։ Խորին շնորհակալությունս այն ազնիվ օտարներին, որոնք չէին մոռացել թե իմ*

տիկնոջը և թե ինձ, երբ ես դարձել էի արդեն ցմահ բանտարկյալ։

Եվ Բեվերլի Հիլզում, և Ֆրեզնոյում, և Սանտա Բարբարայում ապրած ժամանակ, մեր տան դուռը միշտ բաց է եղել շատերի համար, որոնք նույնիսկ մնում էին գիշերելու։ Շատ հայեր են եղել մեր հյուրերը ու խնջույքներ վայելել իմ տանը։ Չեմ մոռացել և մոռանալու էլ չեմ, որ տիկնոջս վերջին հրաժեշտին, իմ խնդրանքով, ներկա է եղել միայն մի հայ՝ Լևոն Երկաթեանը։ Սա չէ կյանքի օրենքը, սա մեր կյանքի պակասությունն է, որը հատկապես հատուկ է սփյուռքի հայերին։ Խիղճ կոչվածը շատերի համար ծիծաղելի մի բան է, և ես դա նկատել եմ սփյուռքում իմ անձնական փորձով։

Ճիշտ է կյանքը պայքար է և ոչ թե դրախտի չքնաղ պարտեզ, նամանավանդ հայերիս համար, որ որպես գնչուներ քոչում են մի երկրից մյուսը, հանուն իրենց զավակների ապագայի։ Անվիճելի է, որ իմ ցեղակիցները գուցե միակն են աշխարհում, որ ամեն մի հաստատված երկրում Գրիգոր Լուսավորչի խաչն են բարձրացնում, կողքին էլ դպրոց, որպեսզի իրենց զավակները չկորցնեն լեզուն և հավատքը։

Ամերիկայի հսկա ձուլարանը իր օրենքներով ու հնարավորություններով ստիպում է բոլորին կամացկամաց մոռանալ իրենց ով լինելը, խառնվել մնացած ազգերին և գնալ ընդհանուր հոսանքի հետ դրամի հետևից, որովհետև այստեղ անգիտակցաբար չգրված օրենք է ընդունվել, որ կանաչ դոլարի վրա է գրված քո անունը, պատիվը, հարգանքը և ընտանիքիդ բարեկեցությունը։

Տարիների ընթացքում կամաց-կամաց անհետանում են ազգային սովորույթները և երկու երեք սերունդ հետո կտեսնեք ծնունդով հայ ամերիկացուն, ծնունդով հայ ֆրանսիացուն և այդպես բոլոր երկրներում, որտեղ կոտո-

*րածից ազատված հայը իր բույնն է հաստատել։*

*Պետք չէ զբաղվել ինքնախաբեությամբ։ Ոչ եկեղեցին, ոչ դպրոցները և ոչ էլ ինքնակոչ մեր կուսակցությունները իրենց մամուլով ու անվերջ խոստումներով և երդումով, որպես միակ իրավասությունն ունեցող պահանջատերեր մեր ազգային պահանջի, կարող են դիմանալ ձուլումին։*

*Ճիշտ է մի երկու սերունդ դեռ կլսեն հայկական ռազմիկ երգերը և հայրենիքի կարոտից «ախ» քաշողները, բայց ձուլարանի սուր դանակները պիտի չարունակեն իրենց կտրելու, մանրացնելու և իրար խառնելու գործը՝ պատրաստելով ամերիկացին, ինչպես տարբեր մսի կտորտանքից աղալով պատրաստում են համբրգերի մսացուն։*

*Բոլոր ազգերին էլ նույն բախտն է վիճակված և բացառություն չկա։ Միակ փրկության միջոցը սփյուռքում ապրող հայերին հայ պահելն ու Հայրենիք տանելն է։*

*Մեր ազգի կեսից ավելին ապրում է օտար երկրներում։ Մեզ ոչ միայն ջարդել են այլ և գողացել մեր պապական հողերը, թողնելով մեզ միայն 30 հազար քառակուսի կիլոմետր, որը փոքր է ամերիկյան շատ նահանգներից։*

*Մեր զանազան կուսակցությունները, որոնք իրենց վրա էին վերցրել հայ ազգի ապագան, կես դարից ավելի է, ոչինչ չեն արել ճիշտ ուղղությամբ, այլ զբաղված են եղել իրար քաշքշելով և իրենց համար անդամներ ապահովելով։*

*Իմ սիրելի Համո Օհանջանյանը, երբ զայրանում էր, երկու խոսք էր ասում. «Կորիր անպիտան, աչքիս չերևաս»։ Համո, սիրելիս, քո կարիքն ունի այսօր թափառական ազգը։ Կարո՞ղ ես մի հրաշքով Եգիպտոսից Ամերիկա գալ, որ բոլոր կուսակցությունների մեծերին ասես քո սիրած խոսքը։*

*Սփյուռքը ոչ մի կուսակցության կարիք չունի,*

*ինչպես խորոզը՝ պայտի։ Սփյուռքը կարիք ունի միության ու մի նպատակ ունի. հետ ստանալ մեր պապենական հողերը։ Սփյուռքի հայությունը գիտի, որ մեր այսօրվա հայրենիքը զրկված է պահանջելու հնարավորությունից, որի փոխարեն ունի որպես պաշտպան պողպատյա բռունցք։*

*Սփյուռքի պարտականությունն է ամեն միջոցներով հետ ստանալ մեր պապենական հողերը տաճիկ կառավարությունից ու միացնել մեր այսօրվա անգին հայրենիքին, որ հնչեցնելով արարատյան կոչը, տուն է կանչում իր թափառական զավակներին։*

*Կուսակցականները թող չկարծեն, որ միայն իրենց անդամների սրտում կա սեր դեպի հայրենիքը և միայն իրենք կարող են պահանջել մեր հողերը։ Թող բացեն կուրացած աչքերը և պարզեն պղտորված մտքերը, որ մեր հայրենիքի բնակիչները 100 տոկոսով լցված են ազգային ոգով ու ցանկությամբ ավելի քան սփյուռքը։ Նրանք փաստեցին գործով և ոչ թե խոսքով, ինչպես սփյուռքյան շատ պոռոտախոս առաջնորդներ։*

*Երբ սփյուռքը զբաղված էր Լիբանանի մեր հարազատներին օգնելու հարցով, իմ կարծիքով, «հայկական լեռը» մի քոստ մուկ ծնեց, եթե աչքի առաջ ունենանք հայության ունեցած տասնյակ միլիարդների կարողությունը։ Մեր հայրենիքն առանց ճառերի և պոռոտախոսության 250 տոննա օգնություն ուղարկեց Լիբանանի իր եղբայրներին։ Վիրավորներին տարավ հայրենիք բուժելու և ի հպարտություն բանտարկյալիս, որդեգրեց երեխաներին ու տարավ Երևան որպես ազգի որդեգրած զավակներ։*

*Մեր հարյուրավոր միլիոնատեր սփյուռքը ոչ միայն չորդեգրեց, այլ ազգի խորթ զավակը հայտարարեց։ Ապրեք հայրենիքի տղաք, մեծ գործ կատարեցիք, լավ դաս տվիք շատ շատերին։ Այսօր հրապարակ եկած Գաղտնի բանակը ցույց տվեց սփյուռքին մեր հողերը ազատագրելու միակ*

*միջոցը։ Նրանք մեր Թանկագին զավակներն են, որ զոհվում են, որ զոհվում են իրենց կյանքի նպատակի համար և պետք է ամեն կերպ օգնել նրանց գործով՝ այսինքն դրամով։*

*Նրանք բռունցքով ստիպելու են Թուրքին վերադարձնելու հողերը։ Գոռալով, երգելով, խաչ համբուրելով և աղաչանք-պաղատանք անելով մեր հողերը ոսկե ափսեի վրա դրած մեզ չեն մատուցելու։*

*Թող կուսակցությունները զարթնեն իրենց քնից և ընդունեն, որ ժամանակն է հասկանալու և զիջելու իրենց տեղը երիտասարդությանը, որը քայլում է նոր գաղափարով և ճիշտ ուղիով։*

*Տասնյակ տարիներ սփյուռքը օգնել է կուսակցություններին, որոնց տված արդյունքը հողային պահանջների հարցում անարդյունք է եղել և պետք է հասկացնել սփյուռքի «աբխողոմ աղաներին», որ զորավիգ կանգնեն այս երիտասարդներին։*

*Եթե ցանկանում ենք, որ մեզնից գողացածը մեզ վերադարձնեն ապա մենք, եթե պետք է լինի աշխարհը քանդենք ու գոռանք գիշեր ու ցերեկ, որ մեզ լսեն և մարդկությունը տեսնի, որ մենք խոսքով չէ, այլ բռունցքով ենք մեջտեղ եկել, որ շատ շատերի համար հասկանալի լեզու է։*

*Գաղտնի բանակ, դու արդեն փշրել ես ժանգոտած շղթան ու լսելի դարձրել երգը ազատության։ Համբույրս ձեզ, ազգի բալիկներ։*

***1973** Թվականի հունվարի **27**-ը կմնա պատմության մեջ և կապված կլինի իմ անվան հետ։ Ես արդեն **10** օրինակ **113** էջանոց գրություն, որի **100** էջերը նվիրված էին Ամերիկայի կյանքին և օրենքներին, ուղարկեցի նախագահ Նիքսոնին, «Թայմս» շաբաթաթերթին, «Նյու Յորք Թայմս» լրագրին, Արդարադատության դեպար-տամենտին, «Լոս Անջելես Թայմզ»-ին, «Սանտա Բարբարա Նյուզ» Թերթին,*

կոնգրեսին, Սենատին և մի օրինակ էլ պահեցի ինձ համար: Վերջին 13 էջով, որ նկարագրում էի հայ ազգիս, ուղարկեցի զանազան հայկական թերթերին: Առաջին երեսը անգլերեն էր, որտեղ գրված էր. «Եթե դուք սիրում եք Ամերիկան և ժողովուրդը, թարգմանել տվեք այս հայերեն գրված գրությունը ու սկսեք ուղղել մեր կյանքի բացասական կողմերը»:

Ինձ պահած անձնական օրինակը դատավարության ժամանակ տվի փաստաբան Մինասյանին, որ տա անգլերեն թարգմանելու: Բերեց թարգմանությունը դատավարության ժամանակ, հայերենի հետ միասին: Մնաց նրա մոտ և մինչև օրս էլ նրա մոտ է և չնայած իմ նամակներին, որ պատճենը գոնե ինձ տա և ես կվճարեմ, այդպես էլ չտվեց:

Չեմ կասկածում, որ կգա մի օր և ես կստանամ այդ իմ գրածը:

500 օրինակ էլ իմ կոչից, որ հետագայում եղավ անհատական պատերազմի գաղափարի հիմնաքարը, ուղարկեցի զանազան քաղաքներում պատահական հասցեներում ապրող հայերի, որոնց անունները վերցրել էի հեռախոսի գրքից: Այդ կոչերը ես փոստով ուղարկեցի, այն հաշվով, որ տեղ հասնեն հունվարի 27-ի երեկոյան, այսինքն, երբ ամեն ինչ վերջացած կլինի: Համոզված եմ, որ շատ ընթերցողներ այդ գրությունը չեն տեսել և դրա համար ներկայացնում եմ:

## ՀԱՐԳԵԼԻ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐ

Այս նամակը կարևոր նամակ է, որովհետև կապված է «ՀԱՅ ԴԱՏԻ» հետ, որը ավելի քան 50 տարի տանջում է ամեն մի իսկական հայի միտքն ու հոգին:

Կասկած չունեմ, որ քո հարազատներից ոմանք զոհ են գնացել բարբարոս գազաններին, որոնց մարդկությունը թուրք ցեղ է անվանում:

*Նրանք նախօրոք կազմած ծրագրով երկու միլիոն մեր ցեղակիցներին ոչնչացրին և գրավեցին մեր հողերը ու վեց միլիարդ դոլարի արժողությամբ ունեցվածք: Նրանց հաջողվեց այս ոճրագործությունը, որովհետև կային ազգեր, որոնք օգնում էին:*

*Կային և ազգեր, որոնք ծածկելով իրենց եսասեր դեմքերը, մարդկության անունից հայությանը համբերություն էին քարոզում և մինչև այսօր էլ նույնն են անում:*

*Ազնվություն, արդարության ու պատիվ բառերը, շատ ազգերի համար արդեն անիմաստ են դարձել:*

*Բոսֆորի ափի ոճրագործ գազանների կառավարությունը շատ երկրների լրագրերի մեջ և նախագահների ճառերում գնահատվում են, որպես արժանի կառավարություն, որ իբր թե քայլում է մարդկային եղբայրության շարքերում և արժանի է օգնության:*

*Փառաբանում են ոչ միայն նրանց ներկան, այլև նրանց անցյալը և աշխատում են մոռացության քողով ծածկել արյունով ներկած նրանց ուղին:*

*Երբ մեր ներկա կյանքը ցույց է տալիս, որ միայն ուժն արժեք ունի աշխարհում, ապա ի՞նչ իրավունք ունենք հայ անհատներս դոնքիշոտների նման սավառնել արդարություն և իրավունք աղերսելով:*

*Հայկական հարց գոյություն չունի: Դա ցնորք է և ինքնախաբեություն:*

*Գոյություն ունի հայ անհատի հարցը, որովհետև քո և իմ նախնիներին են թալանելով սպանել, մեր մայրերն բռնաբարվել և վաճառվել:*

*Հայ անհատն է, որ վերջապես զարթնելով երկար քնից պետք է անհատապես ներկայացնի իր պահանջները տաճիկ գազաններին մի այնպիսի լեզվով, որ նրանց հասկանալի լինի:*

*Ոչ ազգ, ոչ երկիր, ոչ եկեղեցի, ոչ միություններ, ինչ*

անվան տակ էլ նրանք գոյություն ունենան, կապ չունեն այս նոր ձևի պատերազմի հետ։

Հայ անհատն է հայտարարել պատերազմ տաճիկ գազաններին և շարունակելու է մինչև վերջնական հաղթանակը։

Նեմսիս դարձած ՀԱՅ ԱՆՀԱՏՆԵՐԻՆ հարկավոր չեն պատերազմի դաշտեր, ատոմային ռումբեր։ Նրանց բավական է իրենց կամքը և ցանկությունը, որ տեր կանգնեն իրենց իրավունքներին, պահանջեն և ստանան։

Հայ անհատը ստեղծելու է այնպիսի դրություն, որ վայրի տաճիկ ազգը չունենա ոչ մի հնարավորություն հարաբերվելու մյուս ազգերի հետ ամբողջ երկրագնդի վրա։ Տաճիկ կոչվող կառավարության ներկայացուցիչներին ներում չկա իրենց կատարած հանցագործությունների համար

Աշխարհում ապրող Թուրք ցեղի հասարակ մարդկանց հետ մենք գործ չունենք։ Մեր գործը տաճիկ կոչվող կառավարության հետ է լինելու, քանի որ այդ կառավարությունը կազմակերպեց մեր ժողովրդի սպանդը։

Երբ այս նամակը կկարդաք, ես որպես հեղինակ այս նոր տեսակի պատերազմի, արդեն անցած կլինեմ գործի, իրագործելու տարիների ընթացքում իմ փայփայած ծրագիրը։

Ես լինելու եմ առաջինը և շատերին օրինակ եմ ծառայելու։ Կասկած չունեմ, որ իմ նման մտածողների ցանկը մեծանալու է։ Կասկած չունեմ, որ ամեն հայ անհատ պիտի աշխատի տարածել այս նոր ձևի պատերազմի գաղափարը և անհրաժեշտության դեպքում հայ անհատը օգնելու է հայ անհատին։

Կասկած չունեմ, որ նամակիս ծրարի մեջ գտնվող լրացուցիչ օրինակները կտարածեք այլ վայրերում։

ԳՈՒՐԳԵՆ ՅԱՆԻԿՅԱՆ, Նեմսիս դարձած մի հայ անհատ։

Ստորագրությունս՝ Գուրգեն Յանիկյան, 1-27-1973.

Իմ կատարած գործողությունից հետո, ինչպես ասել

էի, բոլոր կուսակցությունները փախել-թաքնվել էին: Մի քանի շաբաթ հետո նրանք սկսեցին հրապարակ գալ և իմ արարքի մասին գրել, խոսել, վիճաբանել, պաշտպան հանձնախումբ կազմել և ինձ «տեր կանգնել», ազգային հերոս դարձնել: Պատվանդանի վրա բարձրացրին և փառաբանեցին, որովհետև իրենց մեծերը այդպես էին հրամայել: Կարճ տևեց այս «մեղրամիսը» իմ և ինձ պաշտպանելու համար կոչված «Ամերիկյան Բարեկամներ» անկապ անունով կոչված կազմակերպության միջև:

Հայտարարություններ, թռուցիկներ, դրամական օգնության կոչեր, մի խոսքով աղմուկ բարձրացնելու բոլոր միջոցները գործի էր դրված և իմ խնդիրքով նույնիսկ երկրի ամենալավ փաստաբանի հետ պայման էին կապել և կանխավճար տվել: Մեծ ազգայինները հետ չմնալու համար, հեռագրով հայտնել էին իրենց դրամական մասնակցության մասին, որի համար շնորհակալ եմ, բայց ցավում եմ, որ նրանց ցանկությունները մեռան նույն օրը, երբ շունչը փչեց դաշն-գուռնայով ծնված պաշտպան հանձնախումբը:

Դատավարության մասին, որն իրականում մի իսկական կոմեդիա էր, չեմ գրելու:

Սպիտակ թելերով էր կարված ամեն ինչ: Ճիշտ է, արարքիս մասին ես ինքս էի հայտնել և գաղտնիք չէր, բայց չեմ կարող չհիշել մի ավանակի, որը հայի անուն էր կրում:

Ուղարկված հարյուրավոր անհատական նամակներից մեկը, որի բովանդակությունը հայտնի է բոլորին և դու ընթերցող նույնպես կարդացիր վերևում, նույնպես հասնում է տեղ հեռախոսացանկից վերցված հասցեով և նա ստանալով նամակը, հայերեն կարդալ չիմանալու պատճառով տվել էր մեկ ուրիշ հայի՝ կարդալու: Տեղեկանալով գրվածքի բովանդակությանը, առանց երկար-բարակ մտածելու նույն ժամին գնացել էր կառավարական

*հիմնարկություն ու տվել ստացած նամակը և թարգմանությունը։*

*Ինչպե՞ս կընութագրի ընթերցողը նրա այս արարքը, չգիտեմ։ Ճիշտ է, գրածս գաղտնիք չէր, բայց սա եղավ այն նամակ ստացողներից, որ դատավարության ժամանակ դարձավ դատախազի առաջին վկան, որով դատախազը հիմնավորեց, որ «Հայ ժողովուրդը Յանիկյանի արածի հետ կապ չունի և համամիտ չէ»։*

*Այդ մարդու անունը չգիտեմ, մոռացել եմ, բայց նա նույն նպատակին ծառայեց, ինչ-որ արեց իմ պաշտպան հանձնախումբը, հայտարարություն տալով Սանտա Բարբարայի միակ անգլիական թերթում, դատավարությունից մեկ օր առաջ. թե «Յանիկյանը չի վայելում հայ ժողովրդի համակրանքը»։*

*Մի ցանկություն ունեմ, որ օրերից մի օր, մի լավ, իր անվանը արժանի հայ մարդ կթքի այդ անձնավորության երեսին և կբացատրի նրան այդ արարքի պատճառը։*

*Ընթերցողը չգիտի նաև, թե ինչպես ինձ շղթայեցին և դրա հետ ինչ հետաքրքրական պատմություն է կապված։*

*Սկզբնական մի քանի օրերին, երբ ինձ տանում էին հարցաքննության, ամեն անգամ ձեռքերիս շղթա գցելիս «թանքս» էի ասում։ Զինվորական պաշտոնյան զարմացած ինձ էր նայում, բայց ոչինչ չէր ասում։ Մի օր հարցրեց. « - Ասա ինձ, ինչո՞ւ դու շնորհակալություն ես, հայտնում քեզ շղթայելիս»։*

*«Եթե մի քանի րոպե ժամանակ ունես, կբացատրեմ»- ասի նրան։ «Ինձ համար տարբերություն չկա կառավարական պաշտոնների մեջ, լինի դա նախագահի վարորդը, կառավարական գրասենյակի պաշտոնյան կամ դու։ Ամեն մեկդ մի պարտականություն ունեք կատարելու, որը ձեզ է հանձնարարված։ Դուք դա կատարում եք օրենքի սահմաններում։ Ինձ շղթայում եք համաձայն օրենքի առաջ*

քաշած պայմանների և կատարելով այդ աշխատանքը, որպես մարդ հնարավոր է դուք վատ զգաք ինձ շղթայելու համար, բայց ստիպված եք դա կատարել համաձայն ձեր պաշտոնի։ Գուցե նույնիսկ մտածում եք, թե ի՞նչ կզգայիք, եթե մեկ ուրիշը ձեզ շղթայեր։ Այս մտածումի մեջ ձեր խիղճ կոչվածն էլ է մասնակցում, բայց ամեն անգամ ձեր պաշտոնը արդարացնում է ձեր արածը։

Երբ ես հայտնում եմ իմ շնորհակալությունը ինձ շղթայելու համար, ես դրանով ձեր խիղճին ազատում եմ մտատանջությունից, նրան տալիս եմ հանգստություն և ապացուցում ձեզ, որ ես հասկանում եմ, թե դուք ձեր պաշտոնից բխող պարտականության մեջ եք այդպիսին և չեմ մեղադրում ձեզ»։

Գլուխը թափ տալով նա շարունակեց իր պաշտոնը առանց մի խոսք ասելու։

Մի քանի օր այդպես շարունակվեց։ Մի օր էլ անսպասելիորեն, ինձ դատարան տարան առանց շղթայելու։ Երբ ես երկարեցի ձեռքս՝ շղթայելու՝ պատասխանը եղավ. «որոշել ենք քեզ տանել առանց շղթայելու»։ Հետագայում պարզվեց, որ իմ ասածը տարածվել է ոչ միայն Սանտա Բարբարայի բանտում, այլև այն բոլոր բանտերում, որ ինձ հետո տեղափոխել էին։ Դատը վերջանալուց հետո ինձ տեղափոխեցին Սան Ֆրանցիսկոյի մոտի մի բանտ Տեղափոխող մեքենայում ես և վարորդն էինք։ Մի քանի անգամ կանգ առանք հանգստանալու և քոկա քոլա խմելու։ Նա էր վճարում, ես դրամ չունեի։ Նա և վարորդն էր և իմ պահապանը և ես նստած նրա կողքին հետաքրքիր պատմություններ էի պատմում։ Այդ բանտից շատերի հետ միասին ինձ տանելու էին Սան Լուիզ Օբիսպոյի բանտը։ Երբ ելանք բակ, որ ավտոբուս նստենք տեղափոխվելու համար, բոլոր բանտարկյալները շղթայված էին և հագել էին սպիտակ միանման շորեր։ Ես իմ սովորական շորերով

էի և շղթայված չէի։ Երբ նստելու էինք ավտոբուսը տեղափոխման մեծավորը առաջինը ինձ հրավիրեց ավտոբուս, ասելով «Մ իստր Ցանիկյան անցեք ներս և ընտրեք ձեզ հարմար տեղ»։

Նույնը կատարվեց, երբ ինձ տեղափոխեցին Չինոյի բանտ։ Բոլորը հատուկ սպիտակ հագուստներով էին, ձեռքերը և ոտքերը շղթայված։ Ես իմ անձնական հագուստներով էի առանց շղթաների։ Զարմանալու բան չկար, բանտի ծառայողները պարտավոր էին հսկել բանտարկյալներին և համապատասխան զգուշություն ցուցաբերել փախուստի դեմ։

Ես փախչելու ոչ մի ցանկություն չունեի և նաև մերժել էի երկու անգամ ինձ արված առաջարկը։ Ինձ պահպանողները գիտեին այդ մասին և պարզ է, որ դռներն էլ բաց թողնեին, միևնույնն է ես փախչողը չէի, էլ ինչ իմաստ ուներ ինձ շղթայելը։

Բանտի մասին կցանկանայի մի քանի խոսք ասել և ընթերցողին տեղյակ պահել ներսի և դրսի մասին։

Բանտը պահվում է քաղաքացիների վճարած տուրքերով և ամեն մի բանտարկյալ, հարկատուի վրա նստում է 13500 դոլար տարեկան ծախս։ Ամեն ամիս բանտարկյալի վրա ծախսվում է 1100 դոլար։

Խնդրում եմ չծիծաղեք, իմանալով այս թիվը և իմ ասածը, քանի որ իմ մի ելույթի ժամանակ բանտում հայտարարեցի, որ եթե ներկաներին ամեն ամիս տրվի իրենց վրա բանտում ծախսված գումարը որպես ռոճիկ, ապա շատերը բանտ չեն ընկնի և կապրեն այդ գումարով։

Ներկաները ծափահարեցին և «ճիշտ է, ճիշտ է» բացականչություններով ողջունեցին ինձ։ Կասկած չունեմ, որ նման օրենք հրատարակելու դեպքում բանտի բնակիչների թիվը խիստ կնվազի։

Բերելու եմ մի փաստ, որը ընթերցողին շատ բան է

ասելու։

Բանտում մի բանտարկյալի հետ երբեմն շախմատ էի խաղում և իմ գնած մթերքներից նրան մաս էի հանում։ Մի օր սա մոտեցավ ինձ և սկսեց լալ։ Պատճառը մեկ շաբաթ հետո նրան բանտից հանելն էր։ Զարմացա, թե ինչպե՞ս կարող է ազատություն ստացած մարդը լաց լինել։ Կրկնակի զարմացա, երբ իմացա պատճառը ու նրա հայտարարությունը, որ «գիտի թե ինչպես պետք է բանտ վերադառնալ»։

Գրածս ճշմարտություն է և նա միակը չէր։ Շատերն այդպես են մտածում ու ցանկանում, որովհետև բանտում ազատ են ամեն մի հոգսից։ Օրը երեք անգամ կերակուր են ստանում, որոնք երբեմն չեն տարբերվում ազատ աշխարհի ռեստորաններում պատրաստվածներից։ Շաբաթը երկու անգամ փոխում են անկողնու պարագաները, տալիս են երկու շապիկ և երկու վարտիք։ Օճառ ինչքան ուզես կվերցնես, բաց արկղով դրված է, ծխամորճի ծխախոտ և լուցկի, որքան ուզես։ Ուրբաթ երեկո ունեցածդ չորերը գցում ես զամբյուղը և ստանում ես մաքուրը։

Շաբաթը մեկ անգամ կինոնկարի ցուցադրում և ամենալավ ժապավենները։ Հեռուստատեսությունը առավոտից մինչև երեկո փափուկ բազկաթոռներով, առանձին սենյակներում քեզ է տրամադրված։ Ամեն մի միջանցքում կա լողարան տաք և սառը ջրով։ Տրամադրվում է անձնական ռադիոընդունիչ։ Մարմնամարզական գործիքներ և հարմարանքներ՝ գոյություն ունեցող բոլոր մարզաձևերի համար։ Հիվանդանոց և ամեն տեսակի դեղեր և մասնագիտական օգնությունները բանտարկյալի տրամադրության տակ են։

Լուրջ եմ գրում։ Շատ բանտարկյալներ գիտեմ, որոնք բանտում պլաստիկ գործողության ենթարկվեցին դեմքի թերությունները գեղեցկացնելու համար։ Եթե ատամների

կարիք ունես, ապա ամբողջ ատամնաշարեր կպատրաստեն և այլն և այլն։

Մի խոսքով ամեն ինչ գոյություն ունի բանտում մարդավարի ապրելու համար և այս բոլորը անվաճար՝ առանց մեկ սենթ վճարելու։ Այս բոլոր հաճույքներին վճարում ես քո ազատության սահմանափակմամբ, ահա թե ինչ արժե ազատությունը Ամերիկայում։ Ազատ աշխարհում այս բոլոր ծառայություններից օգտվելու համար պետք է չարաչար աշխատես։

Բանտում կարող ես նաև աշխատել և ռոճիկ ստանալ, որն իհարկե դրսի աշխատավարձից պակաս է, բայց զուրկ է տուրքից։

Սկզբնական շրջանում ես զարմանում էի, թե ինչո՞ւ են տրտմում բանտարկյալներից ոմանք, երբ լսում էին ազատման լուրը, բայց հետագայում սովորեցի բարի գալուստ մաղթելու բոլոր նրանց, ովքեր գիտեին բանտ վերադառնալու ամենակարճ ուղին։ Մի քանի բանտարկյալներ 4 անգամ ազատվեցին և վերադարձան։ Հետաքրքիր է, որ նրանք գիտեին, թե ինչ են անելու, որ ստանան ճիշտ այն պատժաչափը, որն իրենք էին ընտրում։ Ոմանք փաստաբաններից ավելի լավ գիտեին երկրի օրենքները։ Զիմացողների համար կան երկրի օրենքների ժողովածու-ները, ինչպես մեծագույն գրադարաններում։

Բանտում դպրոցներ էլ կան, որտեղ սովորում են ամեն տեսակի արհեստ և նույնիսկ կարող են համալսարանական ծրագրերով քննություններ տալ որպես ուսանող և մեկ սենթ էլ չվճարել դրա համար։

Իմ ժամանակ մի քանի բանտարկյալներ դիպլոմներ ստացան և սպասում էին իրենց ազատվելուն, որ դրսում գրասենյակ բացեն և բիզնեսով զբաղվեն։

Գլֆրենդ կամ կին ունեցողներին տալիս են հարմարու-թյուն, որ երկու-երեք ամիսը մեկ անգամ միասին անկողին

*մտնեն՝ չմոռանալու իրենց պաշտոնը: Նրանց հանդիպման համար կան հատուկ տնակներ, բանտից ոչ հեռու, ծառերի մեջ և ամեն հարմարություններով: Այդ տեղը կոչվում է «ֆամիլի վիզիթ»:*

*Իմ դատավարությունը վերջանալուց հետո փաստաբանս՝ Լինդզին, եկավ բանտ և հայտնեց որոշումը «Ափիլ» տալու վեց կետերը:*

*Սան Լուիզ բանտից խոսեցի երկու անգամ փաստաբանիս հետ, որը հայտնեց բողոքը ձևակերպված լինելու մասին:*

*Դատավարությունը վերջանալուց հետո, ես մյուս փաստաբանիս՝ Մինասյանին այլևս չտեսա: Մի երկու նամակ գրեցի և պատասխան էլ չստացա: 1978 հունիսին նրան տեսա ֆեդերալ դատարանում: Նրան էլ էին կանչել: Այդ դատարանում էր, որ նա ասաց մագիստրատ Կեննենբերգին. «Ցանիկյան դոնթ էքսպեքթ դաթ հի բի ֆայնդ նոթ գիլթի» (մի ակնկալեք, որ Ցանիկյանը անմեղ կհամարվի):*

*Լինդզին խաբել էր ինձ, որ բողոքը կազմված է լինելու 6 կետից: Նա ներկայացրել էր ընդամենը մեկ կետ և ամենաթույլը: Ապիլատը դատական որոշումը հաստատել էր, որովհետև իր ժամանակին չէր կազմվել բողոքը և գործը փակված էր համարվել:*

*Ինչպես դատավարության ժամանակ, այնպես էլ հետագայում նա կատարել էր իր պաշտոնը՝ լինել օգտակար երկրի ազգային շահերին: Երբ լույս տեսավ ապիլատի որոշումը, որը ես ձեռք բերեցի բանտի գրադարանում, մնացած դատական գործերի հետ, այնտեղ կարդացի և համոզվեցի, որ դատավարության ժամանակ և թե ապիլատում ինձ ծախել էին: Պաշտոնապես հեռացրի փաստաբաններիս և մտածում էի միջոցներ գտնել և նոր փաստաբաններ վարձել:*

Դատավարության մասին գրել եմ և չեմ գրելու: Կազմած հանձնախմբի և նրա արարքների մասին չեմ կրկնելու: Թող ընթերցողը իմանա, որ եթե կուսակցականները չխառնվեին իմ հարցում, ես համոզված եմ, որ պատիժս ավելի մեղմ էր լինելու և շնորհիվ բարեկամներիս ես բանտից արդեն ազատված կլինեի:

Մի քանի խոսք տեղին է ասել այդ մասին:

Ենթադրում եմ, որ ընթերցողը գիտի, որ Ամերիկայում ինձ էլ գրող են հաշվում: Իմ գրությունները ազգային չեն, համամարդկային են, և այդ է պատճառը, որ հայ մամուլը չի հետաքրքրվել որպես գրող:

Մեղադրել չեմ կարող, որովհետև հայ մամուլը հայկական հարցերով և հայկական եկեղեցիներով է զբաղվելու: Ռուբեն Դարբինյանը, որ իմ մոտիկ ընկերն էր տարիներ շարունակ, երբ եկավ Ֆրեզնո, մեր տանը ճաշելիս ասաց, որ իրեն տամ գրություններս «Հայրենիք» ամսաթերթի համար: Խոստացա և մի քանի գրություններ ուղարկեցի: Հրատարակել էին ամսագրում և գրել էին նաև համառոտ կենսագրականս: Գրածներս համամարդկային գաղափարներ էին, որոնք գրքի ձևով հրատարակվեցին առաջինը Փարիզում, ֆրանսերեն լեզվով: Այդ գրքի համար «Միջազգային արվեստ և գրականություն» կազմակերպությունը «Հուդա իսկարիոտացու հաղթանակը» գրքի համար ինձ ցմահ անդամության պատվին արժանացրեց. գտնվում է Ցյուրիխում:

Ըստ ընդունված օրենքի նրանք կարող էին 1800 անդամ ունենալ, նորը ընտրվում է, երբ մահանում է անդամներից մեկը: Այդ անդամներ կարող են լինել նաև ուրիշ մասնագիտության մարդիկ և պարտադիր չէ գրող լինել միայն: Թե ո՞վ էր մահացել և տեղը գիջել ինձ, չգիտեմ և նաև չգիտեմ թե ո՞վ մահացավ և իր տեղը գիջեց Վիլյամ Սարոյանին, որն ինձնից ավելի ուշ մտավ 1800-ի շարքերը:

*Քանի՞ հայ գրող է արժանացել Մարկ Տվենի անունը կրող միջազգային կազմակերպության «Հոնորարի լայֆ Մեմբրշիփ» կոչմանը։*

*Երբ ռուսական և ամերիկյան թերթերը զբաղված էին մեր երկրում վիճաբանություններով, կապված իմ հրատարակած գրությունների շուրջ, որտե՞ղ էին մեր հայ թերթերը, որ խուսափում էին մասնակցել այդ բանավեճերին, վախենալով հոգևորականների անեծքներից։ Կասկած չունեմ, որ իմ գրածները վնասակար էին մեր քննադատների և լրագրերի մարսողությանը։*

*Երբ ռուսական եկեղեցին մասնավոր հրամանով, մի կիրակի, «Անեֆեմա» էր կարդում Ցանիկյանին և որպես սատանի ծնունդ, կոչ էր անում քրիստոնյա աշխարհին ինձ «հերետիկոս» հայտարարել, որտե՞ղ էին հայ լրագրողները և քննադատները։*

*Հռոմում իմ բարեկամ Կարդինալ Աղաջանյանը լսելով այս, նամակ էր գրել ինձ պաշտպանելու համար, որ չլինի թե հանկարծ հարցը խարույկով վերջանա։*

*Լոս Անջելեսից ոչ հեռու Իգլ Ռագ անունով փոքրիկ քաղաք կա։ Քրիստոնեական մի եկեղեցի իրեն անվանել էր «Հուդայականներ» և ինձ հրավիրել էր։ Գնացի։ Ինձ ընդունեցին, որպես իրենց մարգարե։ Եկեղեցում ավետարանի կողքին դրված էր նաև իմ գիրքը, որպես իրենց երկրորդ ավետարան։ Նրանք ընդունել էին իմ գաղափարները, գրված Հուդայի մասին, ճշմարտություն, որ առանց Հուդայի քրիստոնեությունը չէր կարող հաջողության հասնել և հրապարակ գալ։ Տրամաբանությամբ դուրս է գալիս, որ եթե Քրիստոսը Աստծու որդին է, ապա Հուդան լինելով Նրա օգնականը նույնպես ՆՐԱ որդին է։*

*Ես դեռ երիտասարդ հասակից եկել էի այն եզրակացության, որ մարդկության ամենաոխերիմ թշնամին կրոններն են, որոնք հաճախ եղել են իրար ոչնչացնելու պատճառը։*

*Դեռ աշակերտական սեղանից ես գրում էի ոտանավորներ և պատմություններ։*

*Թիֆլիսում առևտրական դպրոցում մեզ հայերենի դաս էր տալիս մեր սիրելի Աղաբալյանը։ Նա մի անգամ գրավոր քննությունից հետո ասաց. «Գուրգեն չգիտեմ ինչ ճանապարհով ես գնալու և ինչ մասնագիտություն ես ընտրելու քո կյանքում։ Եթե գրող լինես, ենթադրում եմ, որ մեծ կլինես, որովհետև դեռ այս հասակից, երբ ուղեղդ զբաղվում է այսպիսի հարցերով, որոնք շոշափել ես քո գրավոր աշխատանքում, մի բան հրապարակ ես հանելու»։*

*Իմ դասարանական այդ աշխատանքում ես գրել էի, որ աշխարհում երեք վնասակար գրքեր են հրատարակվել՝ Ղուրանը, Ավետարանը և Թալմուտը, Եթե այդ երեքի փոխարեն մեկը լույս տեսներ, որտեղ երկնային, հրաշքային, աստվածային ու անհավատալի հակաբնական պատմություններ չլինեին, մարդկություն կոչվածը ավելի օգուտ էր ստանալու, քան թե հիմա ստանում է այդ գրքերից։ Այդ գրությունը գրելիս ես 17 տարեկան էի և իմ կարծիքն այսօր ոչ միայն չի փոխվել, այլ ընդհակառակը, ավելի եմ համոզվել, որ այդ ճիշտ է։*

*Իմ ութը լույս տեսած գրություններիս մեջ ութ խոսք չկա իմ հայրենիքի կամ ազգիս ջարդերի մասին։ Առանց ինձ էլ հայ գրողները զբաղված էին այդ հարցերով և գուցե ես իմ պատիժը ստացա հենց դրա համար։*

*Դատավոր Վեստուիկը կարդալով իմ «Մի ամերիկացու ձայնը» գիրքը, ասել էր փաստաբան Լինդզին. «Եթե Ցանիկյանը երկու երես գրած լիներ այս գրքում ջարդերի մասին, նրան երբեք մեղավոր չէին գտնի»։*

*Այդ գրքում ես գրել էի ամերիկյան կյանքի բացասական կողմերի մասին և թե ինչպես հարուստները թալանում են երկիրը և ոտնատակ են տալիս այն գաղափարները, որոնք հիմնադիրները գրել էին Ամերիկան*

*հիմնադրելիս: Ես համոզված էի, որ եթե մարդկությունը աստված չստեղծեր, ապա նա կլիներ ավելի բախտավոր և երջանիկ:*

*Երբ կնոջս հետ ծրագրում էինք ստեղծել ցեղասպանությունը նկարագրող կինոֆիլմ և այն ներկայացնել մարդկությանը, միաժամանակ ծրագրում էինք թե ինչպիսի գրություններ ենք գրելու և հրատարակելու, որ հնարավորության չափ չեզոքացներ մարդկության դժբախտությունների գլխավոր պատճառները: Իմ բոլոր գրքերը ժամանակին ուղարկել եմ Երևան: Այնտեղ էլ չեն թարգմանել, որովհետև վնասակար կլիներ: Ինչպե՞ս թարգմանել մի գիրք, որ կրոնքը ամենավնասակար բանն է հաշվում, երբ կա Էջմիածինը և գիտեք թե ի՞նչ է հայ ժողովրդի համար թե հայրենիքում և թե սփյուռքում: Կոմունիզմը ես նույնպես համարում եմ կրոնք, որը առայժմ պայքարի մեջ է մնացած կրոնների դեմ, բայց ապագան ցույց կտա, թե ո՞վ է հաղթելու և ո՞վ է պարտվելու*

*Ինչպե՞ս թարգմանել մի գիրք, որը ոչ միայն անիշխանություն է քարոզում, այլ ներկա կառավարման ձևերը ենթարկում է քննադատության ու ծիծաղի առարկա դարձնում դրանք և փաստում, որ «Կոմունիստական Մանիֆեստի» հեղինակը Կարլ Մարքսը չէ, որ նա այդ գողացել է պր. Վեյշափի գրածից, որը հետագայում, 1876 թվին հիմնեց «Իլյումինատի» կոչվող ընկերությունը, որն էլ հանդիսացավ բոլոր հեղափոխական կուսակցությունների մայրը, նաև միջանկյալ ձևով նաև կոմունիզմինը:*

*Բոլոր իմ հրատարակած գրությունները և թատերական բեմադրությունները, որոնք ինքս էի բեմադրում, ինչպես «Մեր Մեսայան», «Դղյակը» և այլն, երեք նպատակ ունեին: Առաջինը. ցույց տալ կրոնի վնասակարությունը և եթե մարդկությունը չի ուզում ժամանակից շուտ*

գերեզման մտնել, ապա բոլոր միջոցներով պետք է պայքարի դրա դեմ։ Երկրորդ. միակ ընդունելի և պաշտպանելի կառավարման ձևը անիշխանությունն է, եթե մարդկությունը ցանկանում է ինչ-որ տեղ հասնել և երրորդ. Ամերիկայի խայտառակությունները հրապարակ հանելով և տեղեկացնելով ժողովրդին, աշխատել, որ երկրի տերը սթափվի իր թմրությունից, եթե չի ցանկանում մոռացության անդունդը գնալ, ինչպես շատ ուրիշ ազգեր, որոնք հասնելով իրենց փառքի գագաթին, անհետացան, որովհետև չկարողացան ժամանակին սթափվել և փոխել իրենց ընթացքը։

Իմ ազգի նկատմամբ կատարված անարդարություն-ները ընդունելուց հետո, սրանք էին լինելու «Դրախտ» ֆիլմի գլխավոր նպատակները, որոնց մարդկությունը ընդունելու էր։ Իմ գրություններում գրված երեք գաղափարներն էլ լայն կերպով օգտագործել էի։ Մեր նպատակն էր ֆիլմը ներկայացնել աշխարհին երկու լեզուներով և կինոսրահ եկած հանդիսատեսին էլ տրվեր մի փոքրիկ գրքույկ, որտեղ նկարագրված կլիներ մեր տառապած ազգի պատմությունը իր բոլոր մանրամասնու-թյուններով։

Սիրելի ընթերցող, տեսնում եմ, որ ես հեռանում եմ նպատակիցս և եթե այսպես շարունակեմ, գրությունս շատ ու շատ երկար է լինելու, դրա համար կարճ եմ կապում։

Նպատակիս լիովին հասա, բայց ցմահ բանտարկյալ դարձա մի երկրում, որն ինձ խաբեց ու նույնիսկ իր բարոյական պարտականությունը ու երկրի օրենքները ոտնատակ տալով մոռացավ նրան, որի իր տասնյակ հազար զավակների կյանքն էր փրկել։ Այդ ամենը արվեց մի թուրք կոչվող ցեղի շահերը պաշտպանելու համար, առանց հաս-կանալու, որ այդ ժողովուրդը դեռ իրեն էլ էր խաբելու։

Ինձ համար նոր փաստաբաններ գտնելու հարցը

*անսպասելիորեն հեշտացավ։*

*Տարիներ առաջ, երբ կնոջս հետ գնացել էինք Փալմ Սփրինգում հանգստանալու, հանդիպեցինք մի երիտասարդ գերմանուհու՝ Մարիամ անունով։ Նա աշխատում էր մի ինչ-որ հիմնարկությունում։ Մի տոնի առիթով հրավիրեցինք նրան գալու Սանտա Բարբարա։ Մենք սիրեցինք այդ գերմանուհուն, որը չնայած մեծ ուսում չուներ, բայց լավ բնավորություն ուներ և ազնիվ էր։*

*Անսպասելի եղավ ինձ համար, երբ մի կիրակի օր այցելության վայրը գնալով տեսա այդ գերմանուհուն, որը Լոս Անջելեսից եկել էր Սան Լուիզ Օբսիբոյ բանտը՝ ինձ տեսակցելու։*

*Անգնահատելի էր նրա արածը, իսկապես զարմանք պատճառեց։ Հայկական ո՞ր կազմակերպություններից, որոնք հաճախ ինձնից դրամ էին մուրացել և ստացել, եկան ինձ տեսության։ Տասնյակ ընտանիքներ, որոնք աղ ու հաց էին կերել մեր բնակարանում ու երբեմն մնացել գիշերելու մեզ մոտ, չեմ հիշում նույնիսկ նրանցից մեկին, որ այս 6 տարվա բանտարկությանս ընթացքում եկած լիներ ինձ տեսության։*

*Գերմանուհու այցելությունները անհետևանք չեղան։ Գերմանուհին երիտասարդ և գեղեցիկ աղջիկ էր։ Մի ինչ-որ փաստաբան, իրենից տարիքով շատ մեծ, առաջարկել էր ամուսնանալ իր հետ։ Աղջիկը չէր ուզում ամուսնանալ և ուզում էր միշտ ազատ մնալ։ Իմանալով, որ իմ փաստաբաններին որպես անբարեխիղճներ ես հեռացրել եմ և ցանկություն ունեմ նորը գտնել, նա առանց ինձ ասելու, մի կիրակի օր իր հետ բերեց փաստաբանին, որ ծանոթացնի ինձ հետ։ Նա խոստացել էր ամուսնանալ նրա հետ, եթե նա և իր գործընկերը, որը նույնպես հայտնի փաստաբան էր և միասին էին աշխատում, վերցնեին իրենց վրա իմ պաշտպանությունը դատարաններում։*

*Մի քանի այցելություններից հետո, երբ փեսացուն ծանոթացավ իմ գործին, և տեղեկանալով, որ նաև իրեն կհանձնեմ դատարանով շահած պարսկական կառավարության գործը, որը միլիոնների հարց էր, համաձայնություն գրվեց և ստորագրեցինք և ես ունեցա նոր փաստաբաններ, որոնց գրասենյակը գտնվում էր Լոս Անջելեսում և համարվում էր քրեական գործերի մեջ լավագույն գրասենյակը։ Հետաքրքիր է, որ երբ Տեքսասի փաստաբան Ֆորմանի հետ բանակցում էին, սրանց հետ բանակցության մեջ մտավ նաև կոմիտեի կողմից ընտրված փաստաբան Մինասյանը։*

*Հարի Ուման և Բըրտոն Մարկս էին իմ նոր փաստաբանների անունները։ Սրանց մասին դեռ կլսեք։*

*Գերմանուհին զոհելով իր ազատությունը մի այնպիսի քայլ արեց, որը անուն չունի։ Նա ամուսնացավ և մինչև այսօր էլ միասին ենք։ Նա չարունակեց գալ տեսակցության թե Սան Լուիզ Օբիսպոյում և թե հետագայում Չինո բանտը և մինչև այսօր էլ չարունակում է։ Հուսով եմ, որ եթե հնարավորություն ունենամ, այս հրեշտակ օտարին արժանի կերպով պիտի փոխհատուցեմ։ Մարիամը եղավ երկրորդ օտարը, որը անգնահատելի Հելենի հետ, առաջին օրվանից նեցուկ կանգնեցին մի հայի, որը իր կյանքն էր զոհել հայ ազգին։*

*Քանի որ օտարների մասին եմ գրում, կարծում եմ տեղին է մի օտարի մասին էլ հիշատակել, որին ես չէի ճանաչում։ Թեև գրել եմ, բայց կրկնելու եմ մի եղելություն, որն ավելի է բարձրացնելու մի անծանոթ օտարի արժեքը։*

*Ինձ պաշտպանելու նպատակով ստեղծված «Ամերիկյան բարեկամները» դավաճանական կոմիտեն նախագահ դոկ. Թոլիկյանի միջոցով Սանտա Բարբարայում, դատավարության սկզբում 3000 դոլար տվեց իմ փաստաբան*

*կոչված ին։*

*Հետագայում, իմ անունով կազմված հանձնախմբի նախագահ Լևոնը 1300 դոլար ինձ ուղարկեց նոր փաստաբաններիս համար։ Այս է եղել ամբողջ օգնությունը, որ ես ստացել եմ ՍՓՅՈՒՌՔԻ ՀԱՅՈՒԹՅՈՒՆԻՑ։ Եղած ծախսերը կազմել են 50 հազար։*

*Ինձ կանչեցին Ջինոյի բանտի տեսակցության վայրը։ Մի անծանոթ բարձրահասակ անձնավորություն ներկայացրեց իրեն ու երկարեց ձեռքը։ Ծանոթացանք, անունս ասելու կարիք չուներ, նա արդեն գիտեր։ Սեղանին դրված էր երկու բաժակ կոֆե։ Հարցրեց ցանկություն ունեմ մի բան ունենալ՝ մերժեցի, սենյակումս լավ նախաճաշել էի։ Ասաց. «Թեև անձնապես անծանոթ է ինձ, բայց շատ լավ է ինձ ճանաչում, շնորհիվ իմ գրած գրքերի և լրագրային քննադատությունների և գնահատում է ինձ»։*

*Շնորհակալություն հայտնեցի և ցանկանում էի գուշակել տեսակցության նպատակը։*

*Ահա մեր խոսակցությունը.*

*–Պարոն Յանիկյան, ներեցեք կուզեմ իմանալ, որը շատ կարևոր է ինձ համար, լսել եմ դուք ձեր փաստաբաններին 13000 դոլար պարտք ունեք, ճի՞շտ է։*

*Ես ժպտալով.*

*– Այո ճիշտ է։ Կուզեմ իմանալ որտե՞ղից եք դուք իմացել և ինչո՞ւ է ձեզ այդ հետաքրքրում։*

*– Ես ձեզ ճանաչել եմ նախքան բանտ ընկնելը։ Ես կարդացել եմ ձեր բոլոր գրքերը և ազդված եմ ձեր գաղափարներով և այն բանով, որ դուք մարդկության առջև պահում եք հայելին, որպեսզի նա տեսնի իր իսկական դեմքը, որն այնքան էլ հաճելի չէ իր համար։ Զարմանում եմ, որ Ամերիկայում հարյուրավոր միլիոնատերեր կան, որոնք առավոտ–երեկո իրենց ազգանունններն են գովում, մի քանիսն էլ միլիարդ ունեն, միթե նրանք ձեր մասին*

*չեն մտածում, որ դուք պարտք եք նույնիսկ ձեր փաստաբանին։ Միթե ամոթ չէ, որ իրենց հայրենակիցը, որը հեղինակն է այսպիսի գրքերի և արժանացել է միջազգային գնահատանքի բանտում է գտնվում մինչև օրս։ Ներողություն պարոն Ցանիկյան, նրանք ձեր հայրենակիցներն են, որոնց համար դուք զոհել եք ձեզ։ Ես հայ չլինելով ամաչում եմ նրանց փոխարեն։*

*Ես ժպտալով.*

*– Միստր, ես էլ եմ ցավում և ամաչում, որ այդպիսի ցեղակիցներ ունեմ։ Երևի նրանց համար դրամը ավելի կարևոր է, երևի դա Ամերիկայի կյանքի արդյունքն է։*

*– Պարոն Ցանիկյան (առաջս դնելով իմ անունով 13 հազար դոլարի չեք), հավատացեք, սա իմ անկեղծ վերաբերմունքի ու ձեզ գնահատելու արդյունքն է և հավատացեք, որ վատ կզգամ, եթե մերժեք։*

*Երևի նկատեց, որ աչքերս լցվում են արցունքներով։ Առջևումս դրված չեքը վերցրեց և դրեց գրպանս, ասելով.*

*–Շնորհակալության կարիք չկա։ Ահա իմ այցետոմսը, նեղության մեջ կլինեք՝ դիմեք ինձ։ Հավատացած եղեք, որ հնարավորությանս սահմաններում կպատասխանեմ։ Ցտեսություն, դուք ավելիին եք արժանի։ Առանց խոսք ասելու, զսպելով արցունքներս, մեկնեցի ձեռքս։*

*Այդ ազնիվ մարդը իր արարքով բարոյական ապտակ տվեց հայ սփյուռքին, և որը չի մոռացվի պատմության համար։ Մեկ անգամ ևս հիշեցրի այս պատմությունը, որոհետև ես գնահատեցի ոչ այնքան իր տված դրամը, որքան ապտակը։ Շնորհակալ եմ։*

*Իմ փաստաբաններս անցել էին գործի և հիմնվելով դատավարության ժամանակ կատարված սխալների վրա պահանջում էին «Հապիս Կորպուս», որի հիման վրա՝ նոր դատավարություն։*

*Չնայած իմ կազմվածքին ես շատ զգայուն ստամոքս*

*ունեմ և ենթաստամոքսային գեղձի գործողության եմ ենթարկվել։ Շնորհիվ իմ բժշկուհի կնոջ, որը խիստ հետևում էր իմ առողջությանը, ես ինձ շատ լավ էի զգում։ Բանտի ճաշերը ունեցան իրենց հետևանքը և ես լուրջ կերպով հիվանդացա և բանտի հիվանդանոցում հայտնվեցի։*

*Մի ամբողջ ամիս բարձր ջերմության մեջ էի։ Ոչ մի միջոցով պատճառը չկարողացան գտնել։ Նույնիսկ տարան քաղաքի հիվանդանոց, որտեղ կային ավելի արդիական միջոցներ՝ հայտնաբերելու հիվանդությունս։ Պետք է խոստովանեմ, որ բանտի վարչությունները ոչինչ չէին խնայում իմ առողջության համար և դրա հետևանքով է, որ ես մինչև հիմա ապրում եմ։*

*Դատավարությունից հետո, երբ արդեն փաստեր կային, որ ստեյթ Դեպարթմենթը ստացել էր այն ժամանակվա նախագահ Նիքսոնից, որ նախ ես մեղավոր ճանաչվեմ և իր բարեկամ Շահի խնդրանքը կատարվի ու ընդառաջվի Թուրք կառավարության պահանջը՝ որքան կարելի է ծածկել արարքիս նպատակը։ Իմացա նաև, որ հունվարի 27-ին, 1973 թ., նախագահ Նիքսոնը իմանալով արարքիս մասին* S.B. armenian *է ասել և այդ խոսքերը գրանցել են ձայնագրիչում։ Այդ ձայնագրությունը ես գնեցի և իր դատի ժամանակ դա լսվել էր և դարձել էր լրագրերի նյութը։ Ես այդ մասին կարդացի 1973 թվին։ Նման և այլ փաստեր ներկայացրի նախագահ Ֆորդին։ Նամակը չեմ բերում, ուրիշ գրությանս մեջ կա։*

*Նախագահի պատասխան նամակը եկավ այն ժամանակվա արդարադատության նախարարությունից։ Թարգմանաբար ներկայացնում եմ այդ նամակը, հասցեագրված ինձ Սան Լուիզ Օբիսպո բանտում։*

*Թանկագին պարոն Յանիկյան։ Ձեր նամակը հասցեգրված նախագահ Ֆորդին, երկու Թուրք դիվանա-*

*գետների սպանության կապակցությամբ, ուղարկված է Արդարադատության Դեփարթմենթ: Հավատացած եղեք, որ նամակում բերված տեղեկությունները պետք է արժանանան լուրջ ուշադրության: Շնորհակալության գրածներդ նախագահին տեղյակ պահելու համար:*

*Ստորագրություն՝ Հենրի Փետերսոն: դեկ. 13 1974- Վաշինգտոն:*

*Տեսնելով, որ լուրջ հիվանդ եմ և կարող եմ մահանալ և ցանկություն ունենալով ավելի փաստեր և մանրամասնություններ հաղորդել, հունվարի 12-ին նորից գրեցի: Պատասխան չստանալով հունվարի 14-ին նորից գրեցի ավելացնելով, որ չատերը իմ դատավարության ժամանակ ոտնահարեցին երկրի օրենքները: Արդարադատությունը սպասում է իմ մահվանը, որ Ցանիկյանի գործը մի անգամից փակվի: Խնդրում եմ շտապեք, որ ուշ չլինի:*

*Այս նամակից հետո, մեր կառավարության արդարադատության անունը կրող հիմնարկը եկավ փաստելու, որ մեր երկրում արդարություն ասած բանը չկա, այլ կա «ՄԱՍԽԱՐՈՒԹՅՈՒՆ» կոչվածը:*

*Բանտի հիվանդանոցում ջերմության մեջ զառանցում էի: Հիվանդապահուհին եկավ և հայտնեց, որ մի պարոն ուզում է ինձ տեսնել: Օգնեց անկողնուց վեր կենալ և գնալ իրենց բաժինը, որտեղ մի առանձնասենյակում մի բարձրահասակ գեղեցիկ երիտասարդ էր ինձ սպասում: Նստեցի գրասեղանի առջև: Երբ մնացինք մենակ, նա գրպանից մի գեղեցիկ աստղ հանեց, որի վրա երեք տառ կար՝ Ֆ.Բ.Ա., ասաց, որ Վաշինգտոնից է եկել:*

*Երբ նա իր պայուսակը բացեց, տեսա իմ գրած նամակների քսերոքսային պատճենները:*

*Ասացի, որ ժամանակ չկորցնի և սկսի գրել ասելիքս: Պատմեցի Սթեյթ Դեփարթամենթի արածը իմ դատավարության ժամանակ: Ասելով, որ մի կարևոր գործ է մոռացել,*

մեր խոսակցությունը կշարունակվի վաղը, նա մեկնեց, խոստանալով գալ հաջորդ օրը:

Հետևյալ օրը չեկավ: Երբ հարցրի հիվանդապահին, արդյո՞ք ինձ տեսնողը չի եկել: Նա հարցրեց՝ կարո՞ղ եմ ես գաղտնիք պահել: Խոստացա: Ասաց. «երբեք չհիշեք իմ անունը, քանի որ ձեզ գաղտնիք եմ հայտնում»:

Պարզվեց, որ Վաշինգտոնից եկած երիտասարդը եկել էր բանտ, իմանալու բժշկից, թե ե՞րբ է մեռնելու այդ ծերունին՝ այսինքն ես: Բժիշկը պատասխանել էր այդ հարցին ոչ ոք չի կարող պատասխանել, որ ես ուժեղ կազմվածք ունեմ և արդեն դեղերը ունենում են իրենց ազդեցությունը: Երևակայիր ընթերցող, արդարադատության հիմնարկությունը, որը գրավոր կերպով խոստացել է հետաքրքրվել իմ հարցով, փոխանակ այդ անելու, մարդ է ուղարկում հիվանդ Յանիկյանի մոտ իմանալու, երբ է նա մեռնելու:

Հետագայում, տարիների ընթացքում շատ անհատներ և կառավարության հիմնարկություններ և դատավորներ նույն սպասողական դրության մեջ էին և չեմ կարող ասել, օրինակ վերցնելով իրենց մեծից՝ գնում էին աղոթելու դրա համար, թե ոչ...

Զգարմանաք, իմ վերջին փաստաբաններն էլ նույն նպատակով, ենթադրում եմ, որ հրամայված էր իրենց, քաշքշում էին իմ հարցը, սպասելով նույն ցանկությամբ հարցը փակվի: Իմ հացադուլս հենց դրա համար էր, որ ես մի վերջնական պատասխան ստանամ.... և ստացա՝ ինձ օրինական ձևով են դատապարտել և ոչ մի սխալմունք չի եղել: Երանի Ամերիկայի ժողովրդին, որ այսպիսի արդար անաչառ, անկաշառելի դատավորներ ունի:

Շնորհիվ բժիշկների թափած ջանքերի առողջությունս բարելավվում էր: Լրագրերի բերած տեղեկությունները փաստում էին, որ իմ հրապարակ հանած գաղափարը

մեր ազգի պահանջների վերաբերյալ արձագանք է գտել և ունի հետևորդներ Փարիզում, Վիեննայում: Իհարկե դա ինձ ուրախացնում էր, ուրեմն կյանքս իզուր չէի զոհել:

Այս զգացումը ինձ ուժ էր տալիս հաղթահարելու հիվանդությունս:

Հրաժարվում էի տեսակցություն ունենալ մի ինչ-որ տաճկական թերթի թղթակիցներին, որոնք մի քանի անգամ դիմել էին ինձ բանտապետի միջոցով: Ազատ աշխարհից ինձ խորհուրդ էին տալիս ընդառաջ գնալ տաճիկ լրագրի ցանկությանը, պայման դնելով որ ներկա լինեն նաև հայկական և ամերիկյան լրագրողները: Որոշված օրը բանտապետը տրամադրեց իր գրասենյակը:

Սան Լուիզ Օբիսպոի անգլիական թերթը ուղարկեց իր ներկայացուցիչը ու նկարիչը: Հայ թերթը ներկայացնում էր նախկին դաշնակցական Լևոն Երկաթյանը և մեկ ուրիշը, որի անունը մոռացել եմ:

Եկավ տաճկական թերթի ներկայացուցիչը, մի համակրելի երիտասարդ, որի հետ Լևոնը ըստ իր սովորության, սկսեց մի ինչ-որ թուրքերեն վիճաբանություն: Առաջարկեցի վերջ տալ: Հանդիպման արդյունքը լույս տեսավ հիշատակածս անգլիական թերթում և հայկական թերթերում: Կարող եմ հպարտանալ, որ բանտարկյալիս հարցերն ու պատասխանները պարզ էին ու կտրուկ, որոնք պաշտպանում էին մեր ազգի իրավունքները. այդ մասին չեչտել էր անգլիական թերթը և նման չէր մի քանի տարի անց տաճկական թերթի ներկայացուցչին «հայտնի», ազգային հարցերով զբաղվող «ազդեցիկ» հայերի տված անհիմն ու հնարած, հիվանդոտ ուղեղների պատասխաններին:

Տաճկական թերթի ներկայացուցիչը վերագրել էր ինձ խոսքեր և մտքեր, որոնք իմը չէին և դա կարող է փաստել խոսակցությունը ձայնագրող ժապավենը, և ես

իրավունքիս մեջ եմ նրան «ՍՏԱԽՈՍ» անվանելու։ Նա տեսակցությունից հետո ինձ փառաբանող և գնահատելի խոսքեր ասաց բաժանվելիս, որոնք գրված են «Նոր Սերունդ» լրագրում։

Տաճկական թերթը ներկայացրել էր ինձ չճանաչող և չտեսած երկու պրոֆեսոր հայերի, մեկը կին, մյուսը «Հայկական Անսամբլի» ղեկավարներից, որոնք «իմ ուղեղի չափն էին որոշել», որից հետո տիկին պրոֆեսորի բողոքը. թե ինչո՞ւ իր գրած գիրքը արգելում են Թուրքիա ուղարկել։ Այսինքն, համալսարանավարտ հայ անունը կրող այս տիկնոջ համար հայկական հողերի գրավումը և ցեղակիցների կոտորելը իր գրքից ավելի կարևոր չէր։ Այս պրոֆեսորների ցուցաբերած վարքի վերաբերյալ կասեմ. «Ձեր հագած կոշիկները շատ մեծ են ձեզ համար»։

Ինչ վերաբերվում է «Հայկական Ասամբլեայի» նախագահին, որը նույնպես արտահայտվել էր իմ ուղեղի կարողությունների մասին, մի բան կասեմ. «Բարեկամ, ոտքերդ յորղանիդ չափով երկարեցրու, որ չպաղես»։

Ես քեզ ճանաչում եմ քո գործերով։ Լոս Անջելես թերթում կարդացի, որ այս պրոֆեսորը մի քանի այլ անդամների հետ տեսակցություն է ունեցել Սթեյթ Դեպարտամենտի մի բարձրաստիճան պաշտոնեայի հետ, մի ինչ-որ հայկական հարցով և պաշտոնյան կոպիտ պատասխանել էր նրանց, ասելով լավ կլինի որ իրենք աշխատեն, որ հայերը չսպանեն տաճիկ դեսպաններին, ինչպես մի հայ արեց Սանտա Բարբարայում և այլն։ Նրանք առանց բողոք հայտնելու մարսել էին պաշտոնեայի ասածները։

Կարդալով այս հանդիպման մասին լրագրում, մի նամակ գրեցի այն ժամանակվա Սթեյթ Դեպարտամենտի մեծին՝ հրեա Կիսենջերին, իսկ պատճեն «Հայ Ասամբլեային», հայտնելով, որ ես այն հայն եմ, որի մասին ակնարկվել է «Հայկական Ասամբլեայի» անդամների հետ

*տեսակցության ժամանակ և զարմացած եմ, որ անունս չի հիշատակված, քանի որ նախագահ Նիքսոնի կարգադրու-թյունը Կիսենջերին եղել է անվանական և հրամանով՝ բռնելու մի դիրք, որ պաշտպանվի «Մեր բարեկամ տաճկական կառավարությունը և թե պարսկական Շահը։ Եվ եթե Ստեյթ Դեպարտամենտը հասկացողություն ունենար բարոյականության մասին, պետք է որ հայտներ, որ այդ նույն հայն էր դատարանում պահանջում դատավոր Վեստվիկից, որ իր կողքին, որպես մեղադրյալ նստեցնեն նաև Սթեյթ Դեպարտամենտին։ Պահանջս մերժվեց և իմ երկու խամաճիկ փաստաբանների լռությամբ ընդունեցին այն։*

*Եթե պրոֆեսորը մոռացել է, թող մի անգամ էլ կարդա։*

*Իհարկե, ոչ Սթեյթ Դեպարտամենտից և ոչ էլ Ասեմբ-լեայից պատասխան չստացա, երևի ժամանակ չունեին զբաղվել մի մարդով, որը կապ ուներ Հայ Դատի հետ։*

*Տեղին է հիշել, որ չորս տարի հետո հուսով էի երկրորդ դատավարությունը ստանալ և նամակ գրեցի Ասեմբլեային, իմանալու իրենց դիրքորոշումը իմ հարցի վերաբերյալ և կարելի՞ է ակնկալել իրենց օգնությունը։ Պատասխանեցին. «Իրենք չեն կարող խառնվել նման գործերում, որովհետև իրենց նպատակը ուրիշ է»։*

*Երևի առանձնահատուկ երևալու համար Հայ Դատի պատասխանող պրոֆեսորը խնդրել էր իրեն մանրամասը գրել իմ գործի վերաբերյալ, քանի որ ինքը տարաբնույթ տեղեկություններ ունի իմ դատավարության մասին։*

*Ոչ միայն գրեցի մանրամասը, այլ նաև ուղարկեցի մի քանի հայկական թերթեր, որոնք փաստում էին գրածներս։ Այդ արեցի, որ հանկարծ չկարծի թե իմ գրածը երևա-կայության արդյունք է։*

*Ենթադրելով, որ ճաշի կամ թեյի  ժամանակ մեծ մարդկանց կողքին նստած լինելով, նա կարող է որոշ*

*օգուտ տալ ապացայում իմ բանտի դրությունը թեթևացնելու գործում, ես ուղարկեցի նրան նաև նախագահ Ֆորդին գրած իմ նամակը, գրված 1975 թվին և Արդարադատության դեպարտամենտից ստացած պատասխանը, ինչպես նաև 1977թվին նախագահ Կարտերին ուղարկած 30 էջանոց նամակս, կցված հավելվածներով:*

*Համալսարանավարտ պրոֆեսորը նույնիսկ քաղաքավարություն չունեցավ մի երկտողով ինձ տեղեկացնել դրանք ստանալու մասին: Այս բոլորից հետո ի՞նչ կարող էի սպասել Հայ Դատով զբաղվող Աբխողոմ աղաներից: Շուտով հասկացա, որ Աբխողոմ աղաների Ասեմբլեան ժամանակ չունի խառնվելու գործերի, որտեղ բացակայում են ճաչասեղանները:*

*Թող ՍՓՅՈՒՌՔԸ հանգիստ լինի՝ Հայ ազգի հարցը լավ ու հմուտ ձեռքերի մեջ է և դա փաստվում է լրագրերի մեջ տպագրված տասնյակ ժպտացող խմբակային լուսանկարներով և «դու իմ մեջքը քորե, ես քո մեջքը քորեմ» նշանաբանով:*

*Իմ արարքի դրական արդյունքը ես լսեցի և կարդացի «Նոր Սերունդ»-ում, մնացած թերթերը չտպեցին և ես դա հրատարակում եմ, քանի որ եթե թերթում տպված է, գաղտնիք լինել չի կարող:*

*«15 Հոկտեմբեր 1975: Մեծարգո Տիար Գուրգեն Յանիկյան, Սան Լուիս Օբիսպոյ:*

*Հարգելի պարոն Յանիկյան, Հայաստանի Ազատագրության Հայ Գաղտնի Բանակը, որը Ձեր անունը նվիրականացրեց իր հաստատումի առաջին իսկ օրը, գրում է Ձեզ այսօր, թեև պետք է գրած լինեինք շատ առաջ: Բայց նվիրական գործն ու Ձեր մղած առանձին պայքարը պահանջում է, որ մենք հեռվից հետևեինք Ձեր գործունեությանը և մինչ այդ կատարեինք Հայ Դատի հետապնդման մեր աշխատանքը:*

*Այս առիթով ողջունում ենք Ձեզ, գնահատելով Ձեր խիզախ քայլը, որը անպայմանորեն անկյունադարձ է հանդիսանալու մեր վերջին շրջանի պատմության մեջ: Հայության պետք էր արթնացնել իր հիսունամյա թմբիրից և ցնցել նրան: Դուք կատարեցիք այդ գործը, որի համար կարող ենք շնորհակալություն հայտնել Ձեզ և մաղթել երկար և քաջառողջ կյանք:*

*Մինչ արդ մենք կշարունակենք Ձեր սկսած պայքարը՝ Հայ Դատի հետապնդումը վերածելով գործնական ազատագրական և հեղափոխական աշխատանքի, որը ձգտում է Հայաստանի ազատագրությանը:*

*Հ.Ա.Հ.Գ. Բանակը գերագույն բծախնդրությամբ կազմակերպված լինելով, արդեն լծված է գործի, և հույս ունի ժամանակի ընթացքում հասնելու դրական արդյունքների: Այս առիթով Ձեզ գալիս ենք վստահեցնելու, որ երբեք մենակ չեք նվիրական այս պայքարում և ունեք մեզ Ձեր կողքին:*

*Հայությունը չի մոռացել Ձեզ, չի կարող մոռանալ, ինչպես նաև նրա ծոցից դուրս եկած Հ.Ա.Հ.Գ. Բանակը, ամեն գնով պաշտպան է կանգնելու Ձեզ: Միշտ ձեր կողքին ենք և Ձեզ հետ, և պատրաստ ենք ապահովելու Ձեր Ազատությունը առաջին առիթով, որպեսզի արժանավորապես շարունակեք Ձեր սկսած գործը և այդ կերպով հայության դեմ գործած անարդարությունը բերեք համայն մարդկության ուշադրությանը:*

*Առողջություն և հարատևություն՝ լավագույն մաղթանքներով:*

*Ձերդ Հայաստանի Ազատագրության Հայ Գաղտնի Բանակ: Երկու ստորագրություն:*

*Ընթերցողը կհասկանա թե ինչպիսի բավականությամբ տասնյակ անգամներ կարդացի այս նամակը:*

*Որպեսզի ստիպված չլինեն իրենց ուժերը և աշխա-*

տանքները օգտագործել այս նամակի վերջին մասում շեշտված նպատակին, անձնապես լուր ուղարկեցի ստորագրողներին, երբ նրանց անդամներից մեկը եկել էր բանտ ինձ տեսության, որ չլինի թե զբաղվեն ինձնով և հետո գրավոր տեղեկացրի նույնը, որ ինձ մոռանան և զբաղվեն նպատակով։

Մինչև նամակ ստանալը արդեն տեղյակ էի լինում, որ նրանք արդեն առանց զոհ տալու իրենց խիզախ գործը կատարել են։ Նույնիսկ տաճկական թերթերը զարմանք էին հայտնում «կարծես գետնի տակից բուսնում և նպատակը իրագործելով անհետանում են, ինչ վարժ ու կազմակերպված են»։

Հետաքրքիր էր որոշ հայկական թերթերի կարծիքը, որոնք ոչ միայն չէին գնահատում այդ գործողությունները, այլ հակառակը, կասկածի տակ էին դնում նրա գոյությունը և մասնավորապես նրանց ազգասիրությունը։

Կտրված լինելով աշխարհից ես դա բացատրում էի նրանց ունեցած վախով և նախանձով, որ հանկարծ չլինի թե իրենց երիտասարդությունը նույնպես վարակվի և հրապարակ դուրս գալով ազգային իրավունք պահանջի։ Մեղադրել չի կարելի, երբ կուսակցական ժողովներում տեղի ունեցող վեճերը և պոռկտումները չէին մնում գաղտնիք միայն կուսակցականների համար։

Հայկական այդ կուսակցությունների ղեկավարության հեռատեսությունը, որն իրենց քթից այն կողմ չէր անցնում։

Արգելելով իրենց բոլոր կուսակցական թերթերում հիշել իմ անունը և չընդունել նաև իմ կողմից վճարված հայտարարությունները, նրանց կարծիքով դա բավարար միջոց էր շարժման առաջն առնելու, որը ոտնատակ էր տալիս իրենց կես դար երգած անարդյունք երգը և իրենց հիմնադիրների նպատակների ժխտումը։

*Որոշ անկուսակցական թերթերում լույս էին տեսնում ի օգուտ նոր շարժմանը, և գնահատելի էր, որ նրանց հեղինակները նախկին կուսակցականներ էին և նույնիսկ ղեկավարներ, որոնք հասկացել էին անցյալի սխալները ու ցանկանում էին լինել ազնիվ, ազգասեր և կուսակցության կանոնադրության հետևող:*

*Բերելու եմ միայն երկու անուններ, որ փաստեմ գրածս: Հայության հայտնի Հրանդ Սիմոնյանը և Գեղամ Գեղամը: Կարդացեք նրանց գրածները, որ հասկանաք թե ինչպիսի անցանկալի ու անթույլատրելի դավաճանական գործի էին լծված կուսակցությունները, որ չկորցնեն իրենց բազկաթոռները և վիսկի խմելու հնարավորությունը:*

*Կասկած չկա, որ պատմությունը չի մոռանալու իրար մեջք քորող Աբխաղոմ աղաներին և լարախաղացությամբ զբաղվողներին, առանց բացառության, ինչ դրոշակի տակ էլ նրանք հանդես գան:*

*Երբ այս գրում էի, ստացա «Նոր Կեանք» թերթը և տեսա դոկտ. Հայկ Գոփուզեանի «Գիտութիւն եվ կրօնք» հոդվածը: Ուրախացա, որ վերջապես մեկը քաջություն է ունեցել գրել այս հարցի վերաբերյալ և լրագիրն էլ քաջություն է ունեցել այն հրատարակելու: Նման հարցի քննարկումը շատ է ուշացել սփյուռքի կյանքում:*

*Կարդացի, զարմացա և հիասթափվեցի: Կասկած չունեմ, որ այդ գրությունը լույս տեսներ Գյումրիում, ապա ընթերցողը պիտի բացականչեր «Ծո, ու՞մ կուռեցնես»: Իսկ եթե Երևանում լույս տեսներ, ընթերցողը կասեր «Տո, ի՞նչ է, ձեռ ես առել»:*

*Մտածեցի պատասխանել, բայց միտքս փոխեցի կարծելով, որ դրսում պատասխանողներ շատ կլինեն և նաև իմ գրության մեջ գտնվող մեկի համար շահեկան չէ նման հարցերի մեջ առաջ նետվելը: Ամբողջ գրության մեջ 5 տող կար ճշմարտությանը արժանի, մնացածը*

*սոփիստականություն էր և ընթերցողի ուղեղն ու տրամաբանությունը հարցականի տակ դնող գրություն։*

*Մի խորհուրդ ունեմ տալու հեղինակին, որը գրել էր թե «Գիտությունը կը ջանա ընդօրինակել ու կփորձէ կատարելագործել Աստծո ստեղծագործությունը»։*

*Մի՞թե։*

*Դոկտորին վայել չէ նսեմացնել Աստծո գործը և թող ընդունի, որ բնության օրենքները միակն են և կատարյալ, ու մարդ կոչվածը չի կարող իր գլխից վեր կատարելագործել Աստծո ստեղծագործությունը, այլ մարդը կարող է հասկանալով գիտությունը, օգտագործել Աստծո ստեղծագործությունը։*

*Դոկտորի կարծիքով, եթե մարդը «կատարելագործում է» Աստծո գործը, ուրեմն նա մի քիչ ավելի շատ գիտի նրանից։ Չեմ ընդունում, որովհետև դա ծիծաղելի կլիներ բոլոր կրոնների համար, ներառյալ բոլոր գրքերն ու հատկապես Ավետարանը, Ղորանը, Թալմուտը նույնիսկ Կոնֆուցեի փիլիսոփայությունը հակառակ կլինեին դրան։*

*Այդ դոկտորի կարծիքը շատ կուրախացներ Կարլ Մարքսին հետևորդներին։ Մարտի 8-ին լույս տեսած այս գրության հետ ես համաձայն եմ, թերթի խմբագրակազմը համամիտ չէ։ Բավարար եմ համարում մի խորհուրդ տալ գրության հեղինակին. «Թերթի ընթերցողներին ձեռ մի առեք և մի աշխատեք խառնել գիտությունն ու հավատքը, դրանք տարբեր բաներ են, մեկը առարկայական է, մյուսը՝ հոգևոր»։*

*Վերադառնամ բանտ։*

*Սան Ֆրանցիսկոյում գտնվող բանտը մաքսիմում ապահովություն ունի։ Այնտեղից ինձ տեղափոխեցին միջին ապահովության բանտ՝ Սան Լուիս Օբիսպո, որտեղից մինիմում ապահովության՝ Չինոյի բանտ, որն ուներ բոլոր հարմարությունները, նաև թենիսի խաղա-*

*դաշտ, որտեղ գալիս էին դրսի աշխարհից մրցելու ներսի բանտարկյալ թենիս խաղացողների հետ։*

*Գալիս էին նաև դերասանական խմբեր, բանտարկյալների ժամանցը բովանդակալից դարձնելու համար։ Այս գործում աչքի էին ընկնում մեքսիկացիները իրենց խմբերով։*

*Գալով Զինոյի բանտ ես տեսա մի հայ բանտարկյալի, որին գիտեի Սան Ֆրանցիսկոյի բանտից։ Այնտեղ նա ինձ «հայրիկ» էր կոչում։ Իր պատմելով Կորեայի պատերազմի ժամանակ նա 10 թուրք զինվոր էր սպանել, որպես վրեժ իր հարազատներին սպանելու համար։ Իմ բանտարկության պատճառը նա գիտեր Նրան տեսության էր գալիս իր օտար կինը։ Իր ասելով արդեն նստած էր 15 տարի և շուտով պետք է ազատվեր ի շնորհիվ կնոջ թափած ջանքերի, որը ըստ իր խոսքերի, հայտնի փաստաբան էր։*

*Նա ինձ խոստացավ, որ դուրս գալուն պես ինքն ու կինը թողնելու են ամեն գործ և զբաղվելու են իմ գործով, ինձ վերջնականապես բանտից ազատ արձակելուն, և դրա համար իրենք բավարար միջոցներ ունեն՝ միլիոնատեր են։*

*Միթե սա մի բախտավորություն չէր մի բանտարկյալի համար, որին բոլորը լքել էին և մոռացության մատնել։*

*Այդ ժամանակ ես մտածում էի իմ անունով մի պաշտպան հանձնախումբ ստեղծել և այդ նպատակով էր Փոստաճյանը՝ Ֆերոյան դպրոցի տեսուչը ինձ այցելության եկել։ Նրան ասացի, որ Սան Ֆրանցիսկոյի շրջանում ունենալու ենք շատ լավ ներկայացուցիչ, նկատի ունենալով ինձ հայրիկ անվանողին, որին արդեն տեղյակ էի պահել այդ մասին։*

*Նրանց նամակներով հայտնել էի կազմակերպության դրամ հավաքելու առաջքելության մասին։ Սպասում էին իմ Փաուր Աթորնին ստանան և սկսեն գործել և իրենց*

*շրջանում դրամահավաք անցկացնելով եկամուտ ստեղծեն, ինձ բանտից ազատելու համար։*

*Շուտով նրան ազատեցին բանտից և ինձ էլ տեղափոխեցին Սան Լուիս Օբիսպո։*

*Իմ անփոխարինելի Հելենը նամակ գրեց և ինձ հայտնեց, որ իմ բարեկամներից մեկը, որն աշխատում է ինձ համար, իրենից հեռախոսով 400 դոլար է խնդրել իր կարիքների համար։ Այդ գումարը Սան Ֆրանցիսկո ուղարկել էր նա վեստերն Յունիոնի միջոցով։ Հետագա նամակագրությամբ պարզվեց, որ դա «10 Թուրք սպանած» բանտարկյալն է։*

*Պարզվեց, որ այդ սրիկան հայ լինելով, օգտագործել էր իմ անունը և խաբել խեղճ տիկնոջը, որն իր վերջին դոլարը կտար, եթե հարցը ինձ էր վերաբերվում։ Բանտարկյալներն էլ ինձ տվին պետք եղած տեղեկություններ, որ նա հայտնի աֆերիստ է և կինն էլ հաշվապահ է ինչ-որ մեկի բիզնեսում։ Կազմել էին ծրագիր լավ դրամ շինելու համար և սպասում էին իմ պաշտոնական նամակին։ Բոլոր բանտերում ճանաչում էին այդ սրիկային՝ հայտնի որպես կեղծ ստորագրություններով չեկեր գրող։*

*Ազատվելուց հետո նա նորից իր հանցավոր գործերն էր արել և բռնվելով, աշխատել էր իրեն գցել Չինոյի բանտը, կարծելով, որ ես ցմահ բանտարկյալ լինելով, երբեք չեմ կարող հայտնվել մինիմում ապահովության Չինոյի բանտում։ Բանտում նա լավ պաշտոն ուներ, հիվանդանոցի շտապ օգնության մեքենայի վարորդն էր, որը նրան հնարավորություն էր ընձեռնում հաճախ տեսակցել իր կնոջ հետ, որը նույնպես աշխատանք էր ճարել Չինո քաղաքում։*

*Երբ մենք հանդիպեցինք միմյանց առաջին անգամ Չինոյում, նա կանգնած էր իր ամբուլանսի մոտ և բանտարկյալ հիվանդի էր սպասում։ Ինձ տեսնելով շփոթվեց։ Ես էլ հիվանդանոցից էի դուրս գալիս։ Ես էլ*

զարմացա, բայց չշփոթվեցի: Մոտեցա նրան ու աչքերի մեջ նայելով «սրիկա» գոռացի ու թքեցի երեսին: «Ես քեզ քո արարքի համար պատժելու եմ, դու խայտառակել ես հայի անունը, սրիկաների թագավորն ես»:

Ներկաները միջամտեցին, որովհետև ես ձեռնափայտս արդեն բարձրացրել էի խփելու:

Պարզվեց, որ այդ սրիկային բոլորն էլ ճանաչում են նաև Ջինոյի բանտում: Երբ պատմեցի, թե ինչպես նա իմ անունը օգտագործելով խեղճ կնոջից գումար է շորթել, սկսեցին ինձ համոզել որ գործը պաշտոնական հողի վրա դնեմ և նրան դատարան քարշ տամ, որ ստանա իր արժանի պատիժը:

Սիրելի Հելենան, երբ իմացել էր այդ միջադեպի մասին, խնդրել էր մոռանալ այդ դեպքը...

Այդ հայ աֆերիստը նույն օրը շնորհիվ իր կնոջ կապերի, տեղափոխվեց Սան Ֆրանցիսկոյի բանտ: Ես նրան այլևս չտեսա: Եթե հանկարծ հանդիպենք ինչ-որ ժամանակ, վարմունքս այլ կերպ է լինելու...

Ջինոյի բանտում սկսեցի կարգավորել բանտային կյանքս: Մասնակցում էի մի քանի կազմակերպությունների, ինչպես «Դիկնիտի Կլուբ, Ռինգ ֆոր Քի», որտեղ ինձ ընտրեցին վարչության անդամ:

Դասախոսություններ էի կարդում: Առաջարկեցի ծառայողներին ռուսերեն և հայերեն դասեր տալու, բայց ցանկացողներ չեղան:

Ակումբները տարին մի երկու անգամ կազմակերպում էին հանդիպումներ ազատ աշխարհից հրավիրվածների հետ:

Մի երկուսում գլխավոր բանախոսողը ես էի:

Երևակայեք, որ ես ստիպված էի շատ զգույշ լինել, որ սխալ քայլ չանեի, մանավանդ որ, թեզիսներս շատ լուրջ հարցեր էին՝ ինչպես, «Իշխանությունը և օրենքը»,

«Հարուստը և աղքատը», «Արդարությունը» և այլն։

Սիրում էի բրիջ խաղալ ազատ աշխարհում։ Բանտում էլ բրիջի կլուբ կար և ամեն շաբաթ երեկոները խաղ էր տեղի ունենում։

Անդամ էի։ Մի քանի անգամ առաջինը եղա։ Շուտով հրաժարվեցի, որովհետև նկատեցի որ մաքուր չեն խաղում։ Միայն բանտարկյալները չէին, որ նշաններ էին տալիս իրար, իրենց խաղընկերներին, այլև հյուրերը, որոնց մեջ կային կարևոր պաշտոնյաներ։ Երբ ձախ ձեռքով քիթը քորելը նշան է, որ մի «ԷՅՍ» ունի, իսկ աջ ձեռքովը նշանակում է, որ երկու թագավոր ունի, այդ դեպքում ի՞նչ հետաքրքրություն է մնում խաղի մեջ։

Քանի որ զույգերը համարյա նույնն էին լինում, հասկանալի է, որ ամեն մեկը իր նշաններն էր օգտագործում։ Իհարկե հրաժարվելուս պատճառը չհայտնեցի դրանով կարող էի վիրավորել խաղացողներին։ Պատճառը բարդեցի հասակիս վրա, որը բոլորի համար էլ ընդունելի եղավ։

Թշնամիներ չդարձանք, մնացինք բարեկամներ։

Ջինո բանտի տարածությունը շատ մեծ է և պատ կամ ցանկապատ չկա, մի կողմը ուղղակի արագընթաց ճանապարհն է։ Շինությունները ցրված են և մեծ մասամբ շրջապատված մեծ ծառերով, այնպես որ, տաք օրերին նրանց տակ շատ սովերոտ տեղեր կային։ Շատերը, ինչպես ծովափերին, արևի վաննաներ էին ընդունում և սևանում, իսկ սևերը դառնում էին ածուխի պես։

Շորթ հագուստը թույլատրելի էր, այնպես որ, եթե մեկը մոռանար թե որտեղ է գտնվում, չորս կողմը նայելով կարծելու էր, որ գտնվում է Ռէվե ծովափին։ Ջինոյում շատ դեպքեր պատահեցին, որոնց մասին չեմ ուզում անդրադառնալ, քանի որ վարչությունը շատ լավ վերաբերմունք էր ցույց տվել ինձ, իսկ եթե գրեմ որոշ բաներ, ապա գուցէ անախորժելի դրության մեջ գցեմ իրենց,

*չնայած իրենք ոչ մի կապ չունեին ինձ առնչվող դեպքերի հետ, հրամանը գալիս էր դրսից։*

*Ինձ ուղարկում էին մի քանի հայկական թերթեր և եթե ավելացնենք, որ ես էլ ստանում էի «Լոս Անջելես» և «Թայմ» շաբաթաթերթը, պարզ է կարդալու շատ բան ունեի և տեղյակ էի աշխարհի լավ ու վատ գործերից։*

*Երբ տեղեկատու թերթի խմբագիրը եկավ բանտ ինձ տեսության, ասաց որ ուղարկելու է ինձ հայերեն և անգլերեն տարբերակները։ Շնորհակալություն հայտնեցի։*

*Կատարեց իր խոստումը և նամակ գրեց, որ դա իր կողմից նվեր է ինձ։ Մի որոշ ժամանակ ստանում էի տեղեկատուն երկու լեզուներով։ Շուտով մի հաշվեցուցակ ստացա խմբագրությունից, որով առաջարկում էին անգլերենի համար վճարում կատարել, եթե ցանկանում եմ շարունակվի առաքումը։*

*Չնայած ես նույն խմբագրությունից նամակ ունեի նվիրատվության մասին, ոչինչ չպատասխանեցի, մտածելով երևի գործերը լավ չեն կամ նոր է վերադարձել Հայաստանից և դրամի կարիք ունի։ Իրոք անգլերենը դադարեց գալ, իսկ հայերեն մինչև հիմա ստանում եմ։*

*Այս այն խմբագիրն է, որի մասին ընթերցողը տեղյակ է, որը այցելել էր ինձ բանտ և ոչ միայն մեր խոսակցությունը ձայնագրել էր, այլև խնդրել էր մի քանի խոսք ուղղեմ հայությանը։ Մասնավորապես երիտասարդությանը։ Չմերժեցի։*

*Հայաստանում եղած ժամանակ նա լայն կերպով օգտագործել էր այդ ձայնագրությունները և ես տեղեկություն ունեի, որ նրան ճաշի կամ ընթրիքի էին հրավիրում այդ ձայնագրությունները լսելու համար։*

*Պահանջ չունեմ, ուրախ եմ, որ շատերն են լսել ու ցանկություն ունեցել լսելու ինձ բանտից։ Միաժամանակ սրա հիման վրա ենթադրում եմ, որ պարտք էլ չունեմ։*

*Մյուս լրագրերը շարունակում են իրենց թերթերի առաքումը ինձ առանց հաշիվ ներկայացնելու: Շնորհակալ եմ:*

*Նամակներ էի ստանում աշխարհի ամեն կողմից: Հազվագյուտ էի պատասխանում, որ գրողին դժվար դրության մեջ չգցեի, քանի որ գիտեի իմ բոլոր ներս ու դուրս անող նամակները ենթարկվում էին քննության և տեղեկացվում ուր որ պետք է:*

*Այս գաղտնիք էր, որը ես գիտեի գաղտնիքը պահողից:*

*Զգուշացնելու կարիք չկար, քանի որ ես արդեն զգույշ էի իմ թղթակցություններում և ունեի հնարավորություն թղթակցել ազատ աշխարհի միջոցով:*

*Հետաքրքրության համար մի նամակի մասին եմ գրելու: Նամակը Հայաստանից էր, ծրարի վրա գրված էր հասցեն: «Գուրգեն Յանիկյան, բանտարկյալ, Ամերիկա, Կալիֆորնիա»: Երևակայեք, որ այս հասցեով նամակն ինձ հասավ, որոշ ճանապարհորդություն կատարելուց հետո: Մեջը մի տետրակի թղթի վրա գրած մի նամակ էր ոտանավորի ձևով: Գրողը 13 տարեկան մի աշակերտ էր Հայաստանի մի քաղաքից:*

*Նամակը կարդալիս, աչքերս թրջվեցին և ցանկություն առաջացավ սեղմել իմ կրծքին այն աշակերտին, որը իր սերն ու ինձ տեսնելու ցանկությունն էր արտահայտել: Նամակն արդեն ազատ աշխարհումն է և իմ թղթերի հետ Երևան կգնա իր ժա-մանակին: Ամբողջ ոտանավորը չեմ հիշում, մի երկու տող եմ միայն հիշում. «Որ դու մեծ ես փոքրիկ, ձեռք ձեռքի տված, փշրենք շղթաները, որ քայլենք ազատ մեր անմահ լեռները»: Շատ սիրեցի ոտանավորն իմ ձագուկիս: Եթե երբևէ հնարավորություն ունենամ, պիտի գտնեմ նրան և սեղմելով կրծքիս կարոտս պիտի առնեմ իմ հարազատից:*

*(ԼՈՒՅՍ-ը փնտրում է այդ նամակի հեղինակին, որը*

*պետք է այժմ լինի 30-40 տարեկան: Հայտնվիր ով զավակ, որ կարողացել ես Գուրգեն Ցանիկյանի հոգուն այդքան բերկրանք պատճառել: Սպասում ենք քո արձագանքին, ԼՈՒՑՍ*)

*Ազատ աշխարհում ապրող հայերը երևի մոռացել էին, թե որտեղ եմ ես գտնվում և ինչո՞ւ: Ստանում էի եկեղեցական կազմակերպություններից, բարեգործական միություններից և տասնյակ զանազան նմանատիպ այլ կազմակերպություններից և անձերից, հետո սունկի պես հրապարակ եկած միություններից կոչեր, և ինչպիսի՜ կոչեր: Օգնություն աղաղակող գրություններ. «Հասե՛ք, կատարե՛ք ձեր ազգային և մարդկային պարտականությունը և համոզված եղեք, որ Աստված ձեզ չի մոռանալու և ձեր կատարած բոլոր մեղքերին թողություն է տալու»:*

*Մի քանիսը գցեցի զամբյուղ, մի քանիսին քաղաքավարի պատասխանեցի, որ անհարմար է հատկապես ինձ այդպիսի դիմումներ ուղարկել: Դա ոչ մի ազդեցություն չէր ունենում նրանց վրա և նրանք շարունակում էին իրենց աղիողորմ նամակները: Հետաքրքիր է, որ այդ դիմումների վրա տասնյակ անուններ էին գրված, որոնք որպես ղեկավարներ, ազդելու էին նամակ ստացողի վրա, որ ազդվի և կոկիկ գումար մուծվի ազգային հանգանակությանը:*

*Չգիտեմ ինչպես է ընթերցողը, բայց ես չեմ հիշում մի հանգանակություն, որ ազգային նպատակի համար չլինի, առանց որի՝ «ազգը կործնելու է»...*

*Ամեն ինչ չափ ունի և իմ համբերության վերջն էլ եկավ, երբ ստացա հերթական հանգանակության կոչը, որը գալիս էր Լոս Անջելեսի «ԱՐԱՐԱՏ ՏԱՆ» անունից՝ վրան տպված 40 անուններ, որպես դիմողներ: Երևի ընթերցողին ծանոթ է այդ կոչի բովանդակությունը, այդ պատճառով չեմ ներկայացնում այն: Ներկայացնում եմ*

*միայն իմ պատասխանը ուղղված այդ կոչի հեղինակներին։*

*«Պարոններ, գրությունս կապ չունի* ***ԱՐԱՐԱՏ ՏԱՆ*** *գովելի ու գնահատելի գործունեության հետ, այնպես որ սխալ չհասկանաք ու սխալ չգործածեք այս նամակը։*

*Ով լինելս գիտեք, հասցես էլ ունեք, որովհետև երկու օրվա մեջ ստացա երկու միանման ձեր կոչը՝ բարեսեր հասարակության գրությունը։*

*Եթե առաջներում նմանատիպ կոչեր ես ստացած չլինեի տարբեր եկեղեցական և բարեգործական վարչություն-ներից, որոնց ես կամ չեմ պատասխանել կամ էլ հարկ եղած գրություններն եմ ուղարկել, այս նամակը չէի գրի։ Ամեն ինչ իր չափն ունի։ Նույնիսկ իմ հինգ տարվա երկարատև համբերությունը նույնպես։ Գրությունս հաս-ցեագրված է ձեզ, բայց բովանդակությունը բոլոր նրանց, որոնք հինգ տարվա ընթացքում տասնյակ անգամներ դիմել են բանտարկյալիս իրենց կոչերով, որպես «****ԻՍԿԱ-ԿԱՆ ՀԱՅ****» զորավիգ կանգնել դրամով իրենց նպատակ-ներին և լինեմ «****ՀԱՎԱՏԱՑԱԾ****» որ «Բարիքը չպիտի մնա Աստծո և մարդկանց մոտ անվարձահատույց»։*

*Նորություն եղավ ինձ, լսել, որ Աստված իր անելիքը տեղեկացրել է ոմանց, որ օգտագործեն իրենց նպատակների հաջողության համար, գուցե... չգիտեմ...*

*Դիմումներ հղողները, երևի «քաղաքավարություն» բառի իմաստը չգիտեն և կարիք ունեն բառարանների օգնության՝ իրենց հետագա գործունեության համար։*

*Օգտագործելով «Սիրելի հայրենակից» դիմումը, որը մեր այսօրվա կյանքում կորցրել է իր իսկական իմաստը ու նմանվում է «թթված պուրի», դրամ է խնդրվում մի մարդուց, որը չի զգացել, որ ինքը «սիրելի հայրենակից է»։*

*Զարմանալի է, այդ ո՞ր օրվանից ես դարձա «սիրելի հայրենակից»։*

*Հարգելով գոյություն ունեցող փոքրաթիվ բացառու-թյունները, շարունակելու եմ։*

*Որտեղ էին այն «սիրելի հայրենակիցները» երբ ինձ դատում էին «իսկական հայ լինելուս համար»։*

*Որտե՞ղ էին այն հարյուրավոր անհատները, որոնց անունները զարդարում էին ինձնից օգնություն խնդրող իրենց դիմումները։ Ձեր քառասունից ավելի անհատների անունները հիշեցված են և ուղված են «բարեսերներին»։*

*Երբ դատավարության ժամանակ այս ստորագրող հայը մեն մենակ պայքարում էր մարդկության թշնամի թուրք կառավարության ձեռնարկած միջոցների դեմ ու աշխա-տում էր պաշտպանել ՀԱՅ ԱԶԳԻ արդար իրավունքն ու պատիվը, որտե՞ղ էին «մեր սիրելի հայրենակիցները»։*

*Երբ հրապարակ եկավ իրենց անունով կազմված «Միջազգային ու Համահայկական Կոմիտե»-ի դավաճանա-կան արարքները, որտե՞ղ էին «Մեր սիրելի հայրենակից-ները»։*

*Նրանք ցանկություն չունեցան, կամ ավելի ճիշտ վախեցան պատռել անդամների դիմակները, որ աշխարհը տեսնի, թե ո՞ւմ մանկլավիկներն են նրանք և ո՞ւմ հրա-մանով, ո՞ւմ շահերն էին պաշտպանում։ Լռել էին այն ժա-մանակ և շարունակում են լռել, ահա ավելի քան հինգ տարի, «Այդ սիրելի կոչված հայրենակիցները»։*

*Ես ձեր «Սիրելի Հայրենակիցը» դառնալու ցանկություն չունեմ, մինչև չի մաքրված իմ դատավարությունով նրանց երեսին քսված ամոթը, որի մաքրելուց հետո միայն կարող եք արժանանալ իմ «Սիրելի Հայրենակիցը» դառնալու։*

*Ինձ հանգիստ թողեք և շարունակեք ձեր «մարդասի-րական» աշխատանքները։*

*Այս նամակը գնաց ԱՐԱՐԱՏ ՏԱՆ վարչությանը և բոլոր հայատառ թերթերին Ամերիկայում, որոնցից միայն երկուսը քաջություն ունեցան այդ նամակը հրատարա-*

*կելու, «Քաջ Նազարը» և «Նոր Սերունդը»: Մյուս, ազգային գործերով զբաղվող թերթերը լուռ մնացին, որովհետև իրենց ղեկավարությամբ էր կատարվում բոլոր դավաճանական արարքները, թե իմ դատավարությունից առաջ, թե դատավարության ժամանակ և թե հետո, որը շարունակվում է մինչև այսօր, որ լրիվ ծառայած լինեն իրենց հրաման տվող կառավարությանը, որ չզրկվեն գնահատական շնորհակալությունից, անտեսելով ՀԱՅ ԱԶԳԻ շահերը, որի կաթով նրանք սնվել են:*

*Նամակիս արդյունքը եղավ այն, որ այլևս բանտարկյալիցս դրամ չէին պահանջում:*

*Բանտում պարապ չէի: Աշխատում էի «ԴՐԱԽՏ» ֆիլմի սցենարին ավելացնել ինձ հետ կատարված դատավարությունը, հետևանքը և կուսակցականների բռնած դիրքը և սթեյթ դեպարտամենտի ստացած հրամանը, նաև ագահ Նիքսոնից և «քովեր ափ» ամերիկյան հիմնարկությունների կողմից:*

*Դատարաններն էլ հետ չէին մնում, իրենց նահանգային և ֆեդերալ դատավորներով: Սուտ էին խոսում և դրա տակ էին ստորագրում:*

*Քանի որ իրենց հրամայված էր պաշտպանել ոչ թե ճշմարտությունը այլ երկրի շահերը:*

*Փաստաբաններս էլ ետ չէին մնում… նույնիսկ նորերը:*

*Ի՞նչ կարող էի ես անել բանտում: Բողոքներս անարդյունք էին մնում, չգիտես լաս թե ծիծաղես, երբ ինքդ էլ զոհ ես այս դրությանը:*

*Իմ դատավարության և իմ փաստաբանների «ազնիվ ու արժանի» գնահատանքի մասին գրելու եմ: Չէ՞ որ ճշմարտության համար եմ գրում այս բոլորը:*

*Մտածելով, որ վատ չի լինի հետաքրքրվեմ իմ ուղղագրած սցենարը ֆիլմի վերածելու հնարավորություններ փնտրելով և չսպասելով ինձ համար երազային*

*թվացող բանտից ազատվելու ցանկության իրականացմանը և պարսից կառավարությունից իմ միլիոնների պահանջի ստացմանը։ Այս հարցը սրիկա չահի տապալումից հետո ավելի հավանական էր դարձել։*

*Դիմել Ամերիկայում այդ գործով զբաղվող անհատներին և կազմակերպություններին՝ աննպատակ կլիներ, որովհետև բոլորը այս կամ այն կերպ կապված էին այս կամ այն մի բաժակ ջրում փոթորիկ բարձրացնող կուսակցության հետ։ Իսկ այդ կուսակցությունների վերաբերմունքը հանդեպ ինձ՝ արդեն հայտնի էր։*

*Մի ինչ-որ լրագրում մի հասցե կարդացի, ըստ որի, Գերմանիայում, Մյունխենում հայկական հարցերով զբաղվող մի կազմակերպություն է մեջտեղ եկել։ Ենթադրելով, որ սա կարող է ազատ երկրում հայկական հարցերով զբաղվող մի լուրջ կազմակերպություն լինել, որոշեցի իմ գաղափարի և սցենարի մասին նրանց գրել։*

*Գրեցի և նկարագրեցի մանրամասը իմ ով լինելը, տարիների ունեցած իմ նպատակները, և իմ դրամով այդ սցենարը ֆիլմի վերածելու ցանկությունը։ Նկարագրեցի թե ինչ դժվարություններ եղան այդ իրականացնելու ճանապարհին և ինչպես ստիպված էի զենքով հասնել նպատակիս, թե ինչպես մեր հայ կուսակցությունները, մոռանալով իրենց տասնյակ տարիների խոստումը, ոչ միայն չընդառաջեցին ինձ այդ աշխատանքում, այլ աշխատեցին իրենց անձնական շահերի համար վնասել ինձ։ Հայտնեցի, որ իրենց գոյությունը ինձ ոգևորում է, և ես դիմելով իրենց ցանկանում եմ իմանալ, կարող են օգտակար լինել իմ գաղափարին։*

*Այս էր իմ երկու երես գրած նամակիս բովանդակությունը, որը ես մանրամասը չեմ ներկայացնում, մանավանդ, նրանց պատասխանը չատ խայտառակ դրություն ստեղծեց ինձ համար։ Ես նրանց պատասխանեցի յոթ*

*երեսանոց մի նամակով, որը ներկայացնում եմ ընթերցողի դատին հանգամանորեն։*

*Հարգելի Է. Հովհաննիսյան.* ***(Ցանիկյանի նամակը ուղղված է 1973 թվականի աշնանը, բավականին առեղծվածային պայմաններում Հայաստանից Գերմանիա անցած Էդվարդ (Էդիկ) Հովհաննիսյանին, որը հետագայում դարձավ ՀՅԴ լիդերներից մեկը և կարողացավ ՀՅԴ խցկել նաև ՀՅԴ-ի հետ բացարձակապես կապ չունեցող, Սովետական Միության բարձրագույն զինվորական կրթություն ստացած որդուն՝ Վահանին, որն այսօր՝ 2000 թ. հանդիսանում է ՀՀ Ազգային Ժողովի պետության անվտանգության, զինուժի, և ներքին գործերի հանձնաժողովի նախագահը։ Հհար և նման ՀՀՇ-ի տղաներին Մոսկվայում բանտարկելուն, նույն կարգով Վահանն էլ նստեց Հայաստանի բանտում և մկրտվեց որպես «հեղափոխական», որտեղից դուրս գալով, առանց մեղադրական եզրակացության հերքման և հակադարձ դատավարություն սկսելու Լևոնի դեմ, դարձավ քոչարյանական Ազգային Ժողովի անդամ և ՀՅԴ Գերագույն Մարմնի ղեկավար։ 1998-ի կեսերին, Քոչարյանի նախագահ դառնալուց անմիջապես հետո, ժամանեց Լոս Անջելես և հանդիպում ունեցավ տեղի լրագրողների հետ։ Վահանը քննադատեց նախկին նախագահին և գովեց նորին։ Ելույթում նշեց, որ բանտերից ազատված են անմեղ նստած բոլոր կալանավորները։ ԼՈՒՅՍ-ի թղթակիցը նրան հարց տվեց. «Իսկ ինչու չեն ազատվում բանտերից նախկին վարչակարգի ժամանակ անօրինական ազատազրկած տնտեսական գործերով մեղադրվածները, օրինակ «ԱՐՄԵՆԻԱ» բանկի տնօրեն Ալբերտ Սիմոնյանը, որը Վանոյի և Վազգենի հնա-***

**րած մեքենայությունների զոհն է, որոնց ամիջական հրամանով նստեցվել է 12 տարի ժամկետով։**

**Վահան Հովհաննեսյանը, իբրև թե չատ զարմացավ այդ լուրից, փորձեց անտեղյակ ձևանալ և ԼՈՒՑՍ-ի թղթակցի պնդմամբ, ստիպված իր մոտ գրեց այս գործի վարույթով հետաքրքրվելու ժամկետը։ Անցան երեք տարիներ և չնայած իր տրամադրության տակ է Ազգային ժողովի ամենաօրենսդրական հանձնաժողովը, Վահանը մինչև օրս քննեցրել է Ա.Սիմոնյանի անօրինական կալանավորման գործը, դրանով ապացուցելով, որ ինքն էլ անտես թելերով կապված է բոլոր ժամա-նակների իրադարձություններին և կառավարու-թյուններին։ ԼՈՒՑՍ)։**

*Զզարմանաք, որ այս նամակիս պատճեն հասցեագրում եմ Հրանտ Սիմոնյանին, նպատակով, որ գրածս միայն Ձեր և ձեր ինստիտուտի սեփականությունը չլինի։*

*Նախքան պատասխանելը կրկնելու եմ իմ ձեզ գրած նամակիս միտքը ու նպատակը, որ այս նամակի պատճեն ստացողը կարճ գիտենա մեր թղթակցության պատճառը։*

*Ձեր ո՞վ լինելն էլ չգիտեմ և ձեր գոյության մասին էլ տեղյակ չէի մինչ Ձեր նամակը, որը տեղեկացրեց, որ Դուք հասցեագրված հիմնարկության դիրեկտորն եք։*

*Ձեր հաստատությունը հպատակվո՞ւմ է մի որևէ կուսակցության թե ոչ, այդ էլ ինձ հայտնի չէ, ինչպես նաև Ձեր ով լինելը— կուսակցական եք թե ոչ, դա էլ ինձ չի հետաքրքրում։*

*Ձեր նամակը, գրության ոճը և օգտագործված բառերը ստիպում են ինձ եզրակացնել, որ դուք հասարակ մահականացու չեք և պատկանում եք մի կուսակցության, «որի հերոսները մունչացին, որ Սուլթանը դողա...» և դուք հիմա նույնն եք անում, որ Ցանիկյանը դողա...*

*Իմ նամակով ես գրել էի, որ տասնյակ տարիներ աշխատելով և իմ սեփական դրամը ծախսելով «Դրախտ» վերնագրով կինոնկար էի պատրաստում, ցույց տալու համար ոչ միայն հայության ջարդը թուրք գազանների կողմից և մեծ ազգերի բռնած դիրքը, հիմնված ստույգ փաստերի վրա։*

*Երկրորդ աշխարհամարտի ժամանակ իմ մատուցած ծառայության համար ամերիկյան կառավարությունը ինձ հրավիրեց Ամերիկա, որտեղ ես շարունակում էի իրագործել իմ կյանքի նպատակը՝ ավարտել այդ ֆիլմը, պարսկական կառավարությունից իմ ստանալիք միլիոններով, որն ինձ հատկացված էր իրենց իսկ բարձրագույն ատյանի կողմից, որի վերջնական ստացման պարտավորությունը իր վրա էր վերցրել ամերիկյան կառավարությունը։*

*Ընդառաջ գալով Իրանի Շահի և թուրք կառավարության դիմումներին, (այդ ֆիլմի պատրաստման ծրագրերը այլևս գաղտնիք չէր նրանց համար) և նախագահ Նիքսոնի հրամանով օրինական հասանելիքս մերժվեց և իմ դրամները ծախսվելուց հետո ստիպված էի մոռանալ ծրագիրս։*

*Զցանկանալով զոհել իմ կյանքի նպատակը անբարեխիղճների անօրինական քայլերին, ես դիմեցի զենքի, հայտնելով աշխարհին պատճառը։ Հայկական բոլոր կուսակցությունները և ժողովուրդը ինքնակամ կազմեցին ինձ պաշտպանելու հանձնախումբ։ Կառավարությունը ընդառաջ գնալով թուրքին և Շահին, կարգադրեց Ստեյթ Դեպարտմենտի միջոցով ամեն ինչ անել ինձ մեղավոր ճանաչելու։*

*Ինքնակամ հանձնախումբը լծվեց գործի ու անհավատալի խմբագրականներով ինձ աստվածացրին ու կուսակցական թերթերը ինձ «հերոս» հռչակեցին, որի կարիքը ես չունեի։ Համաշխարհային հայտնի փաստաբան վարձեցին և դատավարությունը ապահովված էր։ Սթեյթ Դե-*

պարտմենտը հրամայեց կուսակցություններին, որ հրաժարվեն ինձ պաշտպանելուց՝ եթե «ուզում են ունենալ իրենց առաջվա վերաբերմունքը և հոգատարությունը»։

Հանձնախումբը, որը ես դավաճանական խմբակ անվանեցի լրագրում, ոչ միայն ընդունեց այդ առաջարկը, այլ անցավ հակառակ գործի՝ օգտակար լինելու «բարերարներին»։ Նույնիսկ այն աստիճան, որ իր անունից լրագրում հայտարարություն տվեց, որ «Ինձ պաշտպանելու համար իրենց կազմած հանձնախումբը ինձ չի պաշտպանելու, որովհետև համամիտ չէ իմ արած քայլին»։

Ինձ մեղավոր գտան։ Նամակումս կուսակցականներին անվանել էի «դավաճաններ»։

Գրել էի, որ պատրաստել եմ բանտում մի ուրիշ ֆիլմի սցենար, որը արտացոլելու է տաճիկների ոճրագործությունները, և թե ինչպես ամերիկյան կառավարությունը և կուսակցությունները միացան իմ դեմ և ես կորցրեցի դատս։ Բոլորի դիմակները մերկացնելու էի։ Բերել էի նաև մի փոքր կտոր այդ գրված սցենարից։

Այս բոլոր տեղեկությունները համառոտ կերպով տալուց հետո հարց էի տվել. «Կցանկանա՞ք զորավիգ լինել իմ գրած սցենարը ֆիլմի վերածելու գործում», որով մեծ գործ կատարած կլինեք մեր ներկա հայրենիքի համար։

Այս համառոտ նամակն էի գրել ես 1978 թվականի դեկտեմբերի 19-ին։

Ձեր երկու երես գրած նամակը կարելի էր գրել երկու տողով. «Շնորհակալություն ձեր առաջարկի համար, բայց որոշ պատճառներով չենք կարող օգտակար լինել»։ Տակը դնեիք Ձեր ստորագրությունը և հարցը փակված համարեիք։ Այսքանը բավարար կլիներ և հետո ես ձեզանից դասախոսություն կամ խելք չէի խնդրել։

Քանի որ շոշափել եք հարցեր, որոնք կապ չունեն իմ գրած նամակի հետ, ես պարտականություն ունեմ պատաս-

*խանելու դրանց, ապագայի համար և ճշմարտության համար։*

***Դուք գրել եք «Էլ ինչպե՞ս կարող եք դուք պահանջել, որ որևէ կուսակցություն ձեզ իր հովանավորության տակ վերցնի»։***

***Պարոն դիրեկտոր, որտեղի՞ց եք հնարել նման պահանջ։ Այդպիսի բան ես չեմ գրել։ Եթե դիտավորյալ եք գրել, որ ձեր արխիվում լինի՝ հետագայում օգտագործելու համար, դե այն ժամանակ թող այս էլ լինի...***

***«Հայ դատին դավաճանող կուսակցությունների անդամները, որոնց ես կյանքում չէի տեսել, ինձ պաշտպանող հանձնախումբը կազմելուց հետո եկան բանտ, 5-6 հոգով, հայտնելով, որ միացել են ու կազմակերպվել։ Նույնիսկ մի քանիսը ձեռքս համբուրեցին։ Իմ պատասխանը եղավ, որ ուրախ եմ, որ միացել են և այսուհետև իրար քաշքշելու չեն։ Նույն երեկո իմ այս ուրախությունը գրավոր հայտնեցի հանձնախմբին։***

***Երբ կդիմեմ ձեզ կամ որևէ մեկին, գնահատելու իմ արարքը, այն ժամանակ կարող եք «ներել» կամ «չներել»։ Միայն թե այդ կարծիքը պահեք ձեր համար կամ թե հայտնեք լրագրով, որ արժանի պատասխան ստանաք։***

***Գրում եք. «...ուզում եմ, որ դուք հասկանաք, թե ինչո՞ւ որևէ կուսակցություն բացահայտորեն չվերցրեց ձեր գործը իր պաշտպանության տակ։ Լիբանանի դեպքերը ցույց տվեցին, որ մենք, հայերս ունենք շատ քաջ, նվիրված և զենքի հետ վարժ երիտասարդներ, որոնք հարկ եղած դեպքում կարող էին կատարել Ձեր արածը, շատ ավելի մեծ հաջողությամբ։ Եվ եթե կուսակցությունները չէին դիմում այդ քայլին, ապա դա արվում էր ոչ թե վախից կամ ազգային զգացմունքների պակասից, այլ քաղաքական հաշվարկից։ Էլ ինչպե՞ս կարող եք դուք պահանջել, որ որևէ կուսակցություն Ձեզ հովանավորության տակ առնի»։***

*Լսե՛ք, պարոն դիրեկտոր, անհարմար է վերագրել մի բան, որ տեղի չի ունեցել։*

*Ես ոչ մեկից ոչինչ չեմ խնդրել կամ պահանջել և հավատացած եղեք ոչ մեկ տեսակի կուսակցության կարիք չեմ ունեցել և հիմա էլ չունեմ, նրանց հովանավորությունն էլ չեմ ցանկանում։*

*Ձեր տարիքը չգիտեմ, բայց ենթադրում եմ, որ երիտասարդ եք, որ շատ բաներից անտեղյակ եք և դրանք փաստվում են Ձեր նամակով։ Ցավալի է, որ հայ ժողովրդի հարցերով զբաղվող կազմակերպության դիրեկտորը միայն Լիբանանի դեպքերից հետո, 1975-ին տեսավ ու հասկացավ մեր ունեցած հարստությունը։*

*Մի խորհուրդ ունեմ։ Կարդացեք մեր ազգի և թե կուսակցությունների պատմությունը, որ չնսեմացնեք մեր զոհվածների արժեքը, որոնք մեր անմոռանալի սրբերն են, անխտիր, անկախ նրանից թե ո՞ւմ անունով են գործել։*

*Կասկած չունեմ, որ քաջ լիբանանցին էլ 1973-ին կատարեր իմ կատարածը, և կարող էր, բայց «շատ ավելի մեծ հաջողությամբ» արտահայտությունը կարիք ունի ձեր բացատրության։* ***(Յանիկյանը Էդվարդ Հովհաննեսյանի հետ վարած իր գրություններում «Ձեր» քաղաքավարական գրելաձևը փոխարինում է «ձեր»-ի, մենք պահպանում ենք այդ փոփոխու-թյունը, որը բխում է Յանիկյանի վերաբերմունքից հանդեպ Է. Հովհաննեսյանը։-ԼՈՒՅՍ)***

*Ձեր նամակը փաստում է, որ տեղյակ չեք Ամերիկայում հրատարակվող հայ թերթերի գրություններին 1973-ից մինչև այսօր, որտեղ ավելի մանրամասը շարադրվում են կուսակցությունների կողմից կատարված արարքների մասին իմ հարցում։ Միայն մեկի իմանալը կարող է ձեզ հետագայում շատ օգտակար լինել։*

*ՀՅԴ գլխավորներից Մայք Մինասյանը* ***(հետագայում***

**նա կուսակցության շարքերից դուրս եկավ, ոչ իհարկե Ցանիկյանի առնչությամբ- ԼՈՒՑՍ)** անունով մեկը, երբ խմբով այցելեց ինձ բանտ՝ Սանտա Բարբարայում, և ուրախացնելու լուրով հայտնեց, որ բոլոր կուսակցությունները միացել են իմ գործով, ինձ պաշտպանելու և հետաքրքրվեց, թե ո՞ր կուսակցության անունով եմ հրապարակ գալու: Առաջարկեց ինձ ամսական ռոճիկ և կնոջս հիվանդանոցային ծախսերի վճարում, եթե...

Ես հարկ եղած պատասխանը նրան տվի և դրանք բոլորը գրված են Լոս Անջելեսի հայկական լրագրերում:

Կասկած չկա, որ այս արված էր ձեր գրած «այլ քաղաքական հաշվարկից»:

Ինչը՞ ստիպեց փոխել որոշումը, չեմ կրկնում, արդեն գրել եմ:

Գրում եք... «Մի՞թե դուք կցանկանայիք, առանց այն էլ նվազ ազգային միջոցներից կուսակցությունները միլիոններ ծախսեին ձեզ բանտից ազատելու համար»:

Նախ նման խնդրանք կամ առաջարկություն իմ կողմից չի եղել: Այդ հարցով զբաղված էին իմ օտար հավատարիմ բարեկամները: Կուսակցությունները անուղղակի կերպով նույնիսկ աշխատում էին խանգարել ինձ ազատել ցանկացողների գործերը, որ ես շարունակ մնամ բանտում և այս էլ «այլ քաղաքական հաշվարկից»:

Գրում եք...« Իսկական անիշխանականի համար երկրագնդի վրա դատավոր չկա»:

Այս տողը փաստում է, որ դուք ծանոթ եք այդ գաղափարին և շատ ուրախ եմ, որ կրկնում եք ռուս հայտնի անիշխանական Կրոպոտկինի խոսքերը և համամիտ եմ ձեզ հետ. ՈՒՐԵՄՆ, ի՞նչ իրավունքով եք այդքանից հետո ձեր վրա վերցրել դատավորի դերը...

Կասկած չունեմ, որ եթե մի քիչ ավելի ճանաչեիք ձեզ նամակ գրողին, ձեր մերժումի պատասխանը երկու տողից

*ավելին չէր լինի։*

*Ձեր նամակում նույնիսկ խեղճ Հիսուսին եք հիշել «խաչի վրա մեռնելիս ժպտալիս», որը հակառակ է պատմական փաստերին։ Նա մեռել է 90 տարեկան հասակում, Հնդկաստանի Քաշմիր նահանգի Սիգար քաղաքում և եթե ցանկություն ունեք կարող եք տեսնել գերեզմանը Ռոզա Բալ Կանեառ փողոցում։*

*Կամ կարդացեք «Հարություն առած Հիսուս» վերնագրով գիրքը, որը լույս է տեսել զանազան լեզուներով 1958 թվին, այս նամակը ստորագրողի անունով։*

*Դուք գրում եք... «Միտքս պարզելու համար դիմեմ մի ուրիշ օրինակի»..*

*Պարոն դիրեկտոր, ինձ համար տարբերություն չկա, թե ձեր պղտորված միտքը պարզելու համար ինչ օրինակներ մեջտեղ կբերեք։ Ձեր նամակում, օրինակի համար, բերել եք ոմն Ուրֆալյանի պատմությունը։ Այդ երիտասարդը ինքնակամ եկավ բանտ ինձ տեսնելու և իմ հետ ծանոթանալու։ Արարքի մասին ոչ մի խոսք, քանի որ թերթերից ամեն ինչ գիտեր։ Այդ ազնիվ երիտասարդը ցանկանալով մի կերպ օգտակար լինել բանտարկյալիս, մեծ զգուշությամբ ու գաղտնի, որ ուրիշ ներկա եղողները չլսեն, տեղեկացրեց. «Գիտեք պր. Յանիկյան, դաշնակցությունը լուր է տարածում աշխարհում, որ Ձեր արածը կապ ունի տաճկական կառավարության Ամերիկա հաշիչ ներմուծելու հետ»։*

*Ծիծաղելով կամացուկ ասացի. «այդ քո ասածը հինգ տարեկան նորություն է, դատավարության ժամանակ մի այդպիսի բան հրապարակ չեկավ։ Սիրելիս, եթե դա քեզ անհանգստություն է պատճառում ապա մոռացիր, սուտ է»։*

*Այս տղայի մասին գրած տողերում իմ ուշադրությունը գրավեց ... «Թուրքական դատարանը սկզբում նրան*

*դատապարտում է գնդակահարության և ապա տարօրինակ կերպով ազատ է արձակում»։*

*Պարոն Հովհաննեսյան, խոսքերը և մտքերը մի ծամծմեք, պարզ ասեք, ի՞նչ է, կասկածում եք, որ նրան «իրենց մարդը» կնքեցին։*

*Չի վայելում ձեր դիրքն ու պաշտոնը ունեցող մարդուն, առանց փաստեր ունենալու, մի երիտասարդի մասին այդպես արտահայտվել, որ իմ նման, առանց Ձեզանից կարծիք ու իրավունք հարցնելու, իր կամքով մի քայլ է արել, որ դուր չի եկել Ձեզ և այդ բոլորը տեղեկացնեք ինձ, մի մարդու, որն իր ամբողջ կյանքում լարախաղաց չի եղել։ Եթե նույնիսկ չեք կարող կամ ցանկություն չունեք, ապա մի աշխատեք մի այդպիսի ազգասեր երիտասարդի ամբողջ կյանքը մթնեցնելու...*

*Եթե իսկապես, մի այդպիսի բան գոյություն ունի և դուք փաստերով կարողացել եք իմանալ այդ «տարօրինակությունը», ապա պետք է հայտնեք հրապարակավ և ոչ թե ինձ անձնական նամակ գրեք։ Եթե փաստեր ունեք ու չեք հայտնում– մեղավոր եք ազգի առաջ։*

*Նամակս երկար է լինում, բայց հաշվի առնելով, որ սա իմ բանտարկության ընթացքում առաջին նամակն է, որ գրում եմ ձեր կուսակցության ղեկավարներից մեկին և գուցե ուրիշ առիթ չունենամ, կրկնում եմ ձեր խոսքերը ... «Զհուզվեք... չէի կարող չլինել անկեղծ, գոնե իրար չխաբենք»։*

*Իմ շատ սիրելի գրագետ Պր. Հրանտ Սիմոնյանը, կասկած չունեմ, որ անունը լսել եք, վերջերս մի գրության մեջ գրել է. «Նույնիսկ կապիկները վայրենի Աֆրիկայում ազատագրվեցին...»*

*Ինչ սքանչելի արտահայտություն, ցույց տալու հայկական սփյուռքի կյանքը և ողորմելի դրությունը։*

*Մի քանի կուսակցություններ, որոնցից մեկի*

դիրեկտորը դուք եք, որը միայն 1975 թվին տեսավ «երիտասարդություն ունենք պատրաստ զոհվելու ազգի համար»։

Անձրևից հետո սունկերի պես աճած զանազան կազմակերպություններ, միություններ, բաժանված և իրար ատող աղոթատեղեր և այլն և այլն, լծվել են գործի, հայ ազգի իրավունքները պահանջելու մարդկությունից ու թուրքերից։

Ռուսական հայտնի առակագիր Կռիլովը մի գրության մեջ պատմում է, թե ինչպես ձուկը, կարապը և խեցգետինը լծվել են սայլին, որը տեղից չի շարժվում։ Ծիծաղելի է, եթե ցավալի չլիներ։ Անվերջ քաշքշոցներ, մեղադրանքներ, վիճաբանություններ, որոնք հասել են այնտեղ, թե «ազգի հերոս Անդրանիկի ձիու պոչը կարճ էր, թե՞ երկար»։ Սփյուռքի կյանքը դարձել է մի ճահիճ, որի մեջ արդեն մոծակներն են բույն դրել։

Կուսակցություններին, կազմակերպություններին, եկեղեցիներին չի արգելվում իրենց ուզած պատմությունը գրելով հպարտանալ, ինչպես Հռոմի սագերը, բայց իրենց զուռնան չփչողներին անվանել «դավաճաններ» կամ «ախմախներ»՝ աններելի է։

Սփյուռքի հայությունը կարիք չունի ոչ մի կուսակցության։ Կարիք ունի միության և մի կանոնադրության, որը լինելու է կարճ և հասկանալի բոլորի համար.

«ՀԱՅՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԹՆԱՑԵԼ Է ՔՆԻՑ ԵՎ ՊԱՀԱՆՋՈՒՄ Է ՄԱՐԴԿՈՒԹՅՈՒՆԻՑ ԻՐԵՆԻՑ ԳՈՂԱՑՎԱԾ ՈՒ ԹՈՒՐՔԻՆ ՆՎԻՐԱԾ ՀՈՂԵՐԸ, ՈՐ ՄԻԱՑՆԻ ԱՅՍՕՐՎԱ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ։ ԱՅՍ ՆՊԱՏԱԿԻՆ ՀԱՍՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԱՄԵՆՈՒՐԵՔ ՈՉ ՄԻ ԲԱՆԻ ԱՌՋԵՎ ՉԻ ԿԱՆԳՆԵԼՈՒ ԵՎ ԳԻՇԵՐ ՈՒ ՑԵՐԵԿ ԲԱՐՁՐԱՁԱՅՆ ՋԱՆԳԱՀԱՐԵԼՈՒ Է՝ ՄԵՐ ՀՈՂԵՐԸ… ՄԵՐ ՀՈՂԵՐԸ… ՄԵՐ ԲՆՕՐՐԱՆԸ…»։

*Դուք գրում եք, թե իր ժամանակին Դուք էլ ինձ պես էիք մտածում, և արած քայլիս նման, և կամ ավելի լավ ծրագրեր էիք կազմում ու ձեր ընկերների հետ խորհրդակցում, բայց… «Փառք Աստծուն, որ շուտ հասկացրեց մեզ, որ այդ սխալ քայլը չանենք»։*

*Հայրենիքից ես սովորություն եմ ունեցել դիմել միշտ իմ բանականությանը՝ ուղեղին և դա նախ մարդ էակի իրավունքն է, իսկ ձեր անվանածի մասին, որին փառքով եք հիշում, տեղեկություն չունեմ և պարզ է հասցեն էլ չեմ կարող ունենալ։*

*Գուցե Ձեզ նման շատերն էին դիմում նրան և դրա համար էլ մեր ազգը այս դժբախտ օրերին է հասել ու ողորմություն է խնդրում մարդկությունից և հպարտությամբ քայլում, երբ մեծերի հետ ճաշասեղան է նստում և չի բողոքում, որ դոլման առանց սխտորմածունի համ չունի՝ հայկական չէ։*

*Ձեր բացատրությունները, դասախոսությունները «անիշխանական», «անարխիստ» գաղափարի վերաբերյալ ինձ օգտակար չեղան, որովհետև այդ գաղափարի մասին ես ինքս եմ դասախոսություններ տվել մեր երկրի համալսարանականներին։*

*Դուք հարց եք առաջադրում իմ բանտում գտնվելու բախտավորության մասին։*

*Սիրելի ցեղակից, մենք չենք զբաղված այդ հարցով, որը կապ ունի միմիայն ինձ հետ և նշանակություն ունի միմիայն ինձ համար, այլ զբաղված ենք մի քիչ ավելի լուրջ խնդրով, որը կապ ունի մեր* ***ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ*** *և հրապարակ ենք հանում փաստեր, որ այդ ժողովրդի կաթով սնված «****ԵՐԵԽԱՆ****», երբ ժամանակը հասավ գործ անելու,* ***ԴԱՎԱՃԱՆԵՑ ՆՐԱՆ*** *ու կանգնեց մեր հայ դատի թշնամիների կողքին։ Պատմությունը չի մոռանա այս մեծագույն խայտառակությունը քսաներորդ դարում,*

ինչպես չի մոռացել այդ «ԵՐԵԽԱՅԻ» փառահեղ գործերն անցյալում։

Իմ առաջարկի հանդեպ ձեր մերժումը չի փոխում իմ ծրագիրը, որը շարունակելու եմ հետապնդել։ Պարսկական շահը զրկվեց իր գահից և ավելի հավանական է դարձնում, որ կստանամ իմ պահանջը և մեկ չէ, մի քանի ֆիլմեր կարող ենք հրապարակ հանել։

Վերջացնելով նամակս, հայտնում եմ, որ ես կուսակցականներին հակառակ չեմ, այլ հակառակ եմ նրանց հետամնաց տեսակետներին և ձևերին։ Ձեր կենտրոնական բյուրոն երևի ունի փաստեր, թե անցյալում ո՞ւմ հետ է եղել իմ բարեկամությունը։

Վերջացնելով նամակս, հայտնում եմ, որ անձամբ ձեր դեմ ես ոչինչ չունեմ, դուք պարտական եք փչել այն ԶՈՒՌՆԱՆ, որ տվել են ձեզ, հակառակ դեպքում կզրկվեք Ձեր դիրքից և թե անդամատոմսից, որը շատերի համար մեծ նշանակություն ունի։

Հավատացեք, որ ուրախ եղա ստանալով Ձեզանից իմ նամակի պատասխանը, որը եկավ մեկ անգամ էլ փաստելու՝ թե կուսակցությունները զբաղված են «ԶՈՒՐ ԾԵԾԵԼՈՎ»։

Ձեր անձնականի համար լավագույն ցանկություններս։

ԳՈՒՐԳԵՆ ՅԱՆԻԿՅԱՆ

Հ.Գ. Թե դուք և թե պատճենը ստացողները ազատ եք օգտագործելու նամակս, բայց խնդրում եմ առանց փոփոխությունների։ Սխալներիս համար ներողամիտ եղեք, ես ռուսական դաստիարակություն եմ ստացել։

ՆՈՒՅՆԸ։

Ես հասկացա վերջնականապես, որ ոչ մեկի վրա հույս չեմ կարող դնել գրածս հրապարակ հանել որպես ֆիլմի սցենար։ Գուցե մահիցս հետո հետաքրքրվեն, այդ էլ չեմ կարող երաշխավորել կամ իմանալ։

Լիբանանի դեպքերը գրավել են նույնիսկ քնածների

*ուշադրությունը։ Ամեն կողմից աշխատում են օգնել և շատ լավ են անում։ Պետք է ամեն կերպ քաջալերել այս։*

*Կազմվել են մի քանի օգնող կազմակերպություններ։ Զարմանալու բան չկա, մենք հայերս, միություն հասկացողությունը ըստ կուսակցականների կամ կազմակերպությունների բացատրությամբ ենք ընդունել, որը նշանակում է– Միության հիմքը «ԵՍ ԵՎ ԻՄ ԱՍԱԾՆ Է ԼԻՆԵԼՈՒ»։*

*Ցավալի է, որ դրամ հավաքելու ու բաժանելու հարցով հրապարակ են իջել երկու կուսակցությունների լավագույն ասպետները և կռվում են թե ո՞վ է բաժանելու դրամը։*

*«Լիբանանում իրավունքն իմս է, նույնիսկ Էջմիածինը այդ է ցանկանում» կը բոռան դաշնակցականները։ «Ոչ, չենք տա, դու կգողնաս դրամը, անցյալը փաստեց այդ» կբոռան ռամկավարները։ Եղան խելացիներ, որոնք հայտնեցին «դրամը շուտ տեղ հասցրեք կարոտյալներին, իսկ ձեր հաշիվները հետո կմաքրեք»։*

*ՃԱՀՃԻ մոծակները իրար են անցել, ո՞վ է հաղթելու, նշանակություն չունի, բայց բոլոր կուսակցությունների պահանջած միությունը, դա մի քայլ հետ նշանակող անվիճելի փաստ է։*

*Ընթերցողին հայտնի է, որ նոր փաստաբաններ ունեցա։*

*Նրանց հետ պայման էի կապել, ըստ որի նրանք զբաղվելու էին չորս հարցով։ Այդ պայմանագիրը մենք ստորագրել էինք 1975 թվականի հոկտեմբերի 16–ին։*

*1. Դատարանով կամ «Հաբիս Կորպուսով» ինձ ազատել բանտից։*

*2. Զբաղվել մեջտեղ բերելու կառավարության կողմից Սթեյթ դեպարտամենտի միջոցով «Քովեր ափ» հարցը, ներկայացնել այն հանրությանը, որով խախտված են իմ մարդկային իրավունքները և երկրի գործող օրենքները։*

*3. Պարսկական կառավարությունից գանձել իմ*

*իրավունքները և եթե կարիք կա դա անել մեր երկրի օրենքների համաձայն:*

*4. Նախկին պաշտպան հանձնախմբի ինձ օգնելու համար հավաքած դրամները վերադարձնել իրենց տերերին, պաշտպանելով իմ օրինական իրավունքները:*

*Այս չորս կետերով կազմված մեր պայմանն իրագործելու համար փաստաբաններս բացի տված կանխավճարից, ստանալու էին նաև պարսկական կառավարությունից ստացած գումարի 10%-ը: Առաջին կետի հետապնդման համար նրանք ստացան կանխավճար և նաև հավելյալ վճարում:*

*Իմ փաստաբաններս մինչև այսօր, 1979 թիվը, զբաղված էին միմիայն 1 և 3 հարցերով: Մյուս հարցերը չէին նույնիսկ սկսել, որովհետև դրանք կապված էին ամերիկյան կառավարության կողմից գործած հակաօրինական արարքների հետ:*

*Մեր 2-րդ պայմանը կապված էր Սթեյթ Դեպարտամենտի կողմից ուղարկած Ս.Մ.Է.-ի ներկայացուցիչները Կալիֆորնիա ուղարկելու հարցին և իմ թղթերից անհետացած փաստաթղթերին: Չորրորդ հարցն էլ կապված էր «Ամերիկյան բարեկամների» անօրինական քայլերին, որոնք իմ անունով և ինձ համար հավաքված դրամը հետ ուղարկելով տերերին, նաև իմ դատավարության օրը թերթում հայտարարություն էին տվել, որ ինձ չեն պաշտպանելու: Այս երկու կետերով կատարվել էր օրենքի խախտում և փաստաբաններս պետք է հետապնդեին դա: Չհետապնդեցին, որովհետև տեղեկացել էին, որ այս երկու քայլերն արված են Սթեյթ Դեպարտամենտից եկած ցուցումների համաձայն, որը տեղ էր հասել կուսակցությունների միջոցով կամ տրվել էր կոմիտեի անդամներին ուղղակիորեն:*

*Պարզ է, որ փաստաբաններիս առջև էլ է դրված եղել.*

«ինչն է իրենց համար կարևոր, Ցանիկյա՞նը, թե երկրի շահերը»: Փաստերը ցույց տվին նրանց կատարած ընտրությունը: Հաշվի առնելով իմ տարիքը, հավանական էր համարվել, որ ես կմահանամ բանտում և բոլոր հարցերը կփակվեն, բացառությամբ Իրանի հետ դրամական պահան-ջի հարցը, որը շարունակվելու էր մինչև ստանալը, որի մասին ես կարգադրություն էի արել նախօրոք կազմած իմ պաշտոնական կտակում:

Այդ կտակը գտնվում էր դրսում, իմ օտար անկեղծ բարեկամիս մոտ: Նրան էի հանձնել և կտակիս իրագոր-ծումը: Իրանից դրամական հարցով փաստաբաններս լավ էին աշխատում: Չնայած պարսկական կառավարությունը շահի հրամանով կեղծել էր իմ ստորագրությունը Թեհրանում, բայց գործի ընթացքը լավ վերջաբան էր խոստանում: Բոլոր կատարված կեղծիքները՝ ազատվելու ինձ վճարելիք պարտքից, անօգուտ եղան և նախկին դեսպան Զաշտեի և իր փաստաբանների թափած ջանքերը արդյունք չտվին: Հարցը այսօր Լոս Անջելեսի ամերիկյան դատարանում է և սպասում է իր վերջնական դրական արդյունքին: Այդ գումարը իր տոկոսներով այսօր կազմում է 8 (ութ) միլիոն դոլար, որի կեսը ստանալու են փաստաբանները՝ իմ մյուս հարցերում ունեցած իրենց «մարդկային ու բարոյական» կեցվածքի համար: Տեսնելով որ ես մեռնողը չեմ, կառավարությունը դիմեց մի ուրիշ ելքի. քաշքշել իմ դատավարությունը որքան կարելի է երկար և ժամանակ շահել, որ նոր դատավարության հարցը հրապարակ չգա: Այդ որոշումը տեղեկացրել էին իմ «ազնիվ» փաստաբաններին և նրանք էլ դա կիրառում էին:

Որպեսզի ընթերցողը չկարծի, թե Ցանիկյանը մերկապարանոց հայտարարություններ է անում բերեմ մեկ փաստ: Իմ բեկանման դատի հիմքում դրված էր, որ ես

դատավարության ժամանակ դիտավորյալ կամ անգիտակցաբար զրկված եմ եղել մեր սահմանադրության ընձեռնած և մարդկային իրավունքներից։ Բեկանման այս հիմքը իր հինգ կետերով իմ փաստաբաններն էին մեջտեղ բերել Սանտա Բարբարայում կատարված դատավարությունից։ Համաձայն օրենքի, կետերից ամեն մեկը, առանձին հիմք էր տալիս նոր դատավարություն սկսել, օգտվելով «Հաբիս կորպուսի» իրավունքից։ Այո, նոր դատավարություն սկսելով սկզբից։ Նոր դատավարությունը ինձ անմեղ էր համարելու և դա կասկածից դուրս էր և դրանում համոզված էինք և ես և իմ փաստաբանները։

Սա էր ամենաանմարսելին մեր կառավարության համար, քանի որ անմեղ համարվածը տարիներ շարունակ նստել է բանտում, զրկված լինելով օրենքի պաշտպանությունից։

Փաստաբաններս նամակներով հայտնել էին, որ հարցը ժամանակի խնդիր է և ես ստանալու եմ նոր դատավարություն։ Իսկ իմ փաստաբանները համաձայն վերևից եկած հրահանգի ձգձգում էին ժամանակը, մինչև սպառվեր նոր դատավարություն սկսելու օրենքով հատկացված ժամանակը և դառնար ֆեդերալ դատարանի նյութ։ «Հաբիս կորպուսի» համար կազմված բողոքը երբ մերժվեց կալիֆորնիայի դատարանում, պետք է ներկայացվեր նույնը ֆեդերալ դատարան։ Բողոքարկման դիմումի ձևը նույնն էր, միայն մի երեսը պետք է ենթարկվեր փոփոխության։

Այսպես, կալիֆորնիայի սուփրեմ դատարանից մեր-ժումը եղավ 1976 թվականի մարտի 24-ին և նույն բողոքը ներկայացվեց ֆեդերալ դատարան 1977 թվականի դեկտեմբերի 31-ին, այսինքն մեկ տարի ինը ամիս անց։

Այդքա՞ն ժամանակ էր հարկավոր իմ փաստաբաններին մի հասցե գրելու համար, ո՛չ, նրանք ժամանակ էին շահում ըստ վերևից եկած հրամանի, որ ծերունին մահանա

*բանտում։ Ես կասկած չունեմ, որ եթե հացադուլ չհայտա-րարեի, ֆեդերալ դատարանը իր վճիռը չէր տա։ Իմ հեռագիրն էր, որ նրանց ստիպեց մերժումի որոշումը տալ, այլապես նրանք էլ ձգձգում էին մինչև ծերունին գնա այս աշխարհից..., չնայած ես գրավոր փաստ ունեմ փաստաբաններիցս, որ որոշումը իբրև իմ օգտին է լինելու։*

*Դեռ ավելին, ֆեդերալ դատարանի «հիրինգից» հետո փաստաբաններից մեկը եկավ ինձ տեսության և վկայի ներկայությամբ (Ջան Սուկասեան) հայտնելու, որ մի շաբաթ չի տևի իմ բանտից ազատվելը, քանի որ արդեն դատավորի հետ եկել են համաձայնության. «եթե չբարձրացվեն դատավորների անուներ կապված ապիլատի սխալ քայլերի հետ»։ Այս փոխադարձ համաձայնության դեպքում ինձ կտրվի դրական որոշում։*

*Փաստաբաններս համաձայնվել էին, պետք եկած քայլերը արել էին դատարանում։ Գիտեմ, ընթերցողը զարմանալու է, թե ինո՞ւ, իմանալով այս ամենը, միջոցներ չձեռնարկեցի այս ձգձգումների դեմ։ Միջոցներ կիրա-ռելու համար ես պետք է պաշտոնապես մեղադրեի իմ փաստաբաններին դատարանում «մալպրակտից» մեղադ-րանքով։*

*Չնայած ես ունեի 100 տոկոսանոց տվյալներ փաստելու դա, բայց չէ՞ որ Մարիամը իմ փաստաբանի կինն էր։ Ի՞նչ պետք է զգար նա, երբ ամուսնուն ես դատարան տանեի և խայտառակեի աշխարհի առջև։ Գուցե նա դրանից հետո կորցներ իր իրավաբանի լայսընզը (վկայականը)։ Այս զգացումն էր, որ հետ պահեց և մինչև հիմա էլ հետ է պահում ինձ այդ քայլից, չնայած փաստաբանիս ուղղակի ասել եմ, «դուք ի վնաս ինձ եք գործում և այդ փաստերը հիմք են տալիս, որ օրենքի դիմեմ, բայց չեմ անում, որովհետև դրանով կվիրավորեմ կնոջդ»։ Նրա կինը ամուսնու գիտությամբ մինչև այսօր տեսակցության է գալիս ինձ։*

*Այսօր 3-23-1979 թվով նամակ ստացա, որով Մարիամը տեղեկացնում էր, որ կիրակի օրը՝ 3-25-1979-ին, այսինքն վաղը չէ մյուս օրը գալու է բանտ ինձ տեսության։*

*Փաստաբանների գործը դատարանների հետ է։ Ցանիկյանը նրանց համար ընդամենը մի գործ է։ Իմ և նրանց միջև կար մեծ գումարի հոնարար ստանալու պայմանագիր։ Մյուս կողմից հաշվի չառնել դատարանի կողմից առաջ քաշված պահանջները նրանք չեն կարող։ Նրանց ամենօրյա գործը կախված է դատարանից և ապագա գործունեությունը նույնպես։ Նրանք չեն կարող իրենց ապագան կործանել ինչ-որ Ցանիկյանի պատճառով, որի հարցը ընդամենը կապված է հայ ազգի պահանջների հետ։ Թուրքերը հրեաների մեծ բարեկամներն են արդեն մի քանի դարեր։ Այսօր սիոնիզմը ձեռք-ձեռքի տված տաճիկների հետ աշխատում է օգտակար լինել նրանց։ Թուրքերի շահերը պահանջում են, որ Ցանիկյանը պատժվի։ Իմ փաստաբանները լինելով հրեաներ, թունդ սիոնիստներ են և աշխատում են ինչպես բոլոր հրեաները օգտակար լինել իրենց սիոնիզմին։*

*Երբ ֆեդերալ դատարանի որոշումի ձգձգման պատճառով ես հացադուլ հայտարարեցի, երկու օր անց ֆեդերալ դատարանը ստորագրեց իմ «հաբիս կորպուս»-ի մերժումը։ Համաձայն օրենքի, ժամանակ էր տրվում բողոքարկելու այդ որոշումը։ Իմ փաստաբաններից պահանջեցի, որ անմիջապես ներկայացնեն բողոքը։ Այնինչ երկրի շահերը պահանջում էին իմ հարցը ուժագուրկ անել և ընդմիշտ դատարանի որոշմամբ փակել։*

*Թե ինչ միջոցներով էին կարողանում իրականացնել այս ամենը, ինձ հայտնի չէ, բայց իմ «ազնիվ փաստաբանները» իր ժամանակին չներկայացնելով բողոքս, ինքնաբերաբար ֆեդերալ դատարանի որոշումը դարձրին վերջնական և վճռորոշ։ Հետաքրքիր է, որ ֆեդերալ*

*դատարանի մագիստրատ Կրոնենբերգը, որն իմ ցմահ մնալու որոշումը առաջարկեց դատավոր Անդր Վոգին, հայտնի է որպես թունդ սիոնիստ։ Իմ երկու փաստաբաններն էլ հայտնի հրեաներ են։ Այսպիսի սպիտակ թելերով կարած որոշումը վերջնականապես փակեց իմ հույսը նոր դատավարության համար և ես եղա ցմահ դատապարտյալ…*

*Իմ բարեկամների միջոցով կապվեցի որոշ լրագրերի հետ և առաջարկեցի լավ վճարում իմ դատավարության ընթացքում անօրինական քայլերը հանրությանը ներկայացնելու համար։ Մի լրագիր հետաքրքրվեց և ուզեց ինձանից որոշ տվյալներ։ Ուղարկեցի մեր նախագահներին իմ գրած նամակների պատճենները, որը մինչև այսօր էլ իրենց մոտ է։ Ենթադրում եմ, իրենց էլ են տեղյակ պահել կառավարության տեսակետին։ Անկեղծ ասած հույս չունեմ։*

*Պարզ է որ լրագրերն էլ Ամերիկայում բիզնեսներ են, գիտեմ, որ ընթերցողը ասելու է «իսկ ո՞ր երկրում այդպես չէ», այնպես որ, նրանք մոտենալու են այդ հարցին ինչպես առևտրականներ, թե ո՞րն է ձեռնատու իրենց համար։ Ստիպված եմ ընդունել, որ ես Դոն Քիշոտի նման մաքառում էի և Ամերիկայում էլ ամեն ինչ պայմանական է և գոյություն ունեցող օրենքները բոլորի համար չեն և գործադրելն էլ կախված է շատ հանգամանքներից, առավելությունը տրվում է կամ դրամին կամ երկրի շահերին, հիմնականում հիմնված անձնական շահերի վրա։*

*Օրենքների վրա լարախաղացությունը միայն փաստաբաններին չի վերապահված։ Ինձ համար անակնկալ եղավ, երբ հայտնեցին 1–2–1979–ին ներկայանալու եմ «պարոլ բորտին»։ Անցյալում երկու անգամ ներկայացել էի, առանց արդյունքի՝ ցմահ դատավճիռը հաստատել էին։ Պարոլում ընդհանրապես երկու տեսակետ են հրապարակ հանում, մեկը դրական, ի օգուտ բանտարկյալի և մյուսը բացա–*

*սական՝ ի վնաս բանտարկյալի։ Սրանց հիման վրա երեք հոգուց բաղկացած «Բորդը» տալիս է իր որոշումը։*

*Բանտի կառավարիչների կազմած զեկուցումը իմ մասին մի խոսքով կարող եմ բնութագրել՝ ՍՔԱՆՋԵԼԻ ԷՐ։ Առաջարկվում էր ինձ տեղափոխել պարոլի կարգավիճակ՝ հանելով ցմահ բանտարկյալ դատավճիռը։ Բորդը որոշում է, թե երբ է պարոլին ուժի մեջ հաշվվում և բանտարկյալը ազատվում է բանտից։ Այս լսելուց հետո կարծում էի հակառակ առաջարկներ չեն լինի, բայց սխալվում էի։ Իմացա բաներ, որ տեղյակ չէի։ Բացասական գրությունը ասում էր. «մեր երկրի անկեղծ բարեկամի երկու մեծ պաշտոնյաները զոհ են գնացել այս ֆանատիկ, իր գաղափարներին հետևող մարդուն, որը նախամտածված ու ծրագրած կերպով աշխարհին ներկայացրեց իր արարքի պատճառը։ Նա կոչ արեց իր ցեղակիցներին հետևել իրեն։ Կոչը որոշ արդյունք տվեց և զանազան երկրներում կատարվեցին նույնը այս բանտարկյալի անունից։ Տվյալ չկա ենթադրելու, որ եթե նա ազատվի, հետագայում նույն արարքը չի կրկնելու։ Դատական որոշումը պետք է իր ուժի մեջ մնա որպես ցմահ բանտարկյալ, քանի որ տարիների ընթացքում ոչինչ չի փոխվել նրա մտայնության մեջ և շարունակում է նույնիսկ բանտից կոչ անել հետևելու իրեն»։ Այս լսելուց հետո այլևս հույս չունեի, որ ցմահ պատիժը կփոխվի։*

*Զարմանք պատեց ինձ, երբ լսեցի «Պարոլ գրանդետ» (հաստատվում է) և նույնիսկ արտասվեցի։ Հարցրեցին «ասելիք ունե՞մ»։ «Այո» – ասացի, –ինձ հետաքրքրում է, թե որտեղի՞ց են վերցրել ինձ նկարագրող բացասական տվյալները։ «Լրագրերից, միստր Յանիկյան, լրագրերից»– պատասխանեցին, – «Նյու Ջեներեյշն» թերթից։*

*Շնորհակալություն հայտնեցի բոլորից, իմ նկատմամբ ցուցաբերած վերաբերմունքի համար, «ես էլ եմ ուրախ,*

*որ այլևս ցմահ բանտարկյալ չեմ և բորտի որոշումով ազատ կարձակվեմ»–հայտնեցի ես նրանց, մտքումս փորձելով հիշել թե ի՞նչ թերթ է «Նյու Ջեներեյշըն» կոչվածը, որի մեջ գրվածը քիչ մնաց տապալեր ինձ և իսկապես մինչև կյանքիս վերջը մնայի բանտարկյալ։*

*Ցմահ բանտարկյալը, երբ անցնում է պարոլիի, նա ամենաքիչը 7 տարի պարտադիր պետք է նստած լինի բանտում կամ պարոլին հաստատելուց հետո պետք է այդքան դեռ նստի եթե 7 տարին չի լրացել։ Ամենավերին սահմանը 20 տարի է և ավելի։ Իմ արարքը որպես մաքսիմում պատիժ նախատեսված էր 17 տարի։ Իմ պարոլի անցնելու ժամկետը կախված էր բորդից և ժամկետը ընկած էր 7–17 տարիների միջև։ Տեսնենք ի՞նչն է գործադրվելու։*

*Վերադառնալով իմ բանտախուցը, մեջտեղ հանեցի բոլոր հայկական թերթերը հասկանալու, թե այդ «Նյու Ջեներեյշըն» կոչվածը որն է, որ քիչ մնաց տապալեր իմ ազատությունն դուրս գալը։*

*Երկար հարկ չեղավ փնտրելու, դա «Նոր Սերունդ» թերթն էր, որը թարգմանաբար ինձ էին ներկայացրել բորդի ներկայացուցիչները։*

*Գտա «Նոր Սերունդ»–ի 1977 թվականի ապրիլ ամսվա թիվը և զարմացած մնացի, կարդալով... գիտե՞ք ինչ, սիրելի ընթերցող։*

*Դուք արդեն գիտեք, որ 1973–ի հունվարի 27–ի իմ արարքը սկսելուց առաջ, հարյուրավոր կոչեր էի ուղարկել բոլոր լրագրերին և անհատներին, որով պատերազմ էի հայտարարում տաճիկ կառավարությանը ու ցույց տալիս ճանապարհը ինչպես ամենուրեք ոչնչացնել թուրք դեսպաններին։ Այս հանդիսացավ գաղտնի բանակի ստեղծման հիմքը։*

*Կարո՞ղ է գլխում խելք ունեցող մեկը կամ մի խմբագիր*

*այդ նույն կոչը հրատարակել 1975 իմ ստորագրությամբ։ Միթե պարզ չէ, որ նման կոչ հրատարակող Յանիկյանին այլևս բանտից ազատություն չեն թողնի։*

*Եթե ընդունենք, որ սա դիտավորյալ է արված, ուրեմն որոշ նպատակ է հետապնդում։ Հարց է ծագում, ի՞նչ նպատակ է հետապնդում 1975 թ. իմ կոչը երկրորդ անգամ հրատարակելը։ Կարելի՞ է անգամ կասկած ունենալ, որ դա պատահական հրատարակում չէ, և ուղղված է իմ դեմ, որպեսզի ցմահ բանտարկյալ վճիռը մնա ինձ վրա մինչև կյանքիս վերջը։ Այն ինչին ձգտում էին տաճիկները։*

*Եզրակացությունը թողնում եմ ընթերցողներին։*

(Այստեղ Յանիկյանը օգտագործել է լրացուցիչ գրված «մերժում իմ դիտավորյալը», գուցե հուզված լինելով, պետք է գրեր «դիտավորյալ մերժում»: (Օգտվելով ընթերցողին տրված եզրակացություն կատարելու իրավունքից, քանի որ այս գրության առաջին ընթերցողը Յանիկյանի գրությունները մեքենագրող ԼՈՒՅՍ-ն է, ուստի վերլուծելու և եզրահանգման գալու առաջնահերթ իրավունքը պատկանում է նրանն: Ինչպես նկարագրում է Յանիկյանը, իր կատարած արարքին ի հետևանք հրապարակ եկան մի շարք մարդիկ և կազմակերպություններ, որոնք «Յանիկյանի գործի» վրա իրար կոկորդից բռնեցին, մեջտեղ բերելով իրենց հին հաշիվները, նույնիսկ Յանիկյանի օգնությունը խնդրելով, հակառակորդին շարքից հանելու համար:

Հեռատես Յանիկյանը, մերժեց բոլոր նման միտումները և միայն իր նպատակը առաջ տարավ, որն էր. «Պարտված, ցաքուցրիվ եղած դիմադրության և պայքարի միակ շանսը անհատական պարտիզանական պատերազմն է, որի դեմ թշնամու կանոնավոր զորքերը մարտնչել չեն կարող, մինչև հաշվի չնստեն այդ ինքնազոհ մարտիկների հետ: Հետագայում դա հաստատվեց «Հըզբոլլա»-ի պայքարով և այլն: Յանիկյանը գտնում էր, որ պարտված զորքն ու մարմինը մի փրկություն և շանս ունի գոյատևելու, դա ոգին է, որ չի մեռնում, իսկ ոգուն պետք է սնել

արդարությամբ և ճշմարտությամբ, այլապես նա ևս կմահանա և դա կլինի վերջնական պարտություն:

Յանիկյանի ոգին միշտ բարձրության վրա մնաց, բայց նա տեսավ իր մարմնի և միջոցների տկարանալը և գնաց հոգու թելադրանքի հետևից, ապացուցելով, որ թուրքական դեսպանը կամ հյուպատոսը հանդիսանում է թուրքական պետության իրավունքի կրողը և պատասխանատու է իր պետության հանցագործությունների համար: Եվ նա այս ճշմարտությունից սնվելով նրանց գնդակահարեց: Այլապես «Ինչ մեղք են գործել հատկապես այս մարդիկ» արտահայտությունը իրավաբանական ուժ չունի, քանի որ, այո, նրանք անմեղ էին քանի դեռ չէին աշխատում հանցագործություն կատարած վարչակազմում, որը նաև հանդիսանում է հանցագործություն կատարած նախկին վարչակազմի իրավահաջորդը:

Չպետք է մոռանալ, Յանիկյանի ամենամոտ բարեկամը մի թուրք երիտասարդ էր, որն իր կյանքի նպատակն էր դրել օգնել Յանիկյանին, նկարահանելու «Դրախտ» ֆիլմը և մեջտեղ բերելու իր չարագործ հայրենակիցներին: Նման թուրքերը համամարդկային արժեք են ներկայացնում և մեզ մոտ բացի սիրուց և համակրանքից այլ զգացմունք չեն առաջացնում:

Տեղին է հիշել Սանտա Բարբարայում երկու հյուպատոսների վերջին խոսքերը: Ոչ մի կասկածի նշույլ իսկ չի կարող լինել այն մասին, որ եթե նրանք հոգով զղջային իրենց հայրերի մեղքը և ընդունեին կատարված հանցանքը, թեկուզ առերես, Յանիկյանի ատրճանակը չէր կրակի, Յանիկյանը չէր սպանի նրանց, քանի որ ինչպես ամեն մի հայի, նրան էլ տանջում էր «սրանք ինչո՞վ են մեղավոր» հայավարի-քրիստոնավարի միտքը:

Մենք վրեժ լուծելու ընդունակ ժողովուրդ չենք, մենք սպանելու ընդունակ ժո-ղովուրդ չենք և դա կարող էր կասեցնել Յանիկյանի ձեռքը: Բայց հանցագործը, բացի այդպիսին լինելուց նաև անմարդկային է, կեղդանական, և պատահական չէ նման վարքի ցուցադրումը ամենուր, դա լինի Սանտա Բարբարայում

գնդակահարվելուց առաջ և կամ թե ընդամենը մի քանի օր առաջ կատարված Ամերիկայի Կոնգրեսի վրա ճնշում գործադրելիս: Ձեռագիրը նույնն է, հանցագործը մնում է իր կարծիքին և մեր խնդիրն է տեսնել ո՞վ է կանգնած նրա կողքին, և ո՞վ է հովանավորում նրա լկտիությունն ու սրիկայությունը:

Միևնույն է, եթե նույնիսկ մեջտեղից վերանան հայ դատով զբաղվող բոլոր հայկական կազմակերպությունները և կուսակցությունները, դա նշանակություն չունի, քանի որ կատարված հանցագործությունը, խոսքը վերաբերվում է հայոց ցեղասպանությանը, քանի որ դա բնության օրենքների դեմ է, և հետևաբար մեր պաշտպանն է ինքը բնություն-արարիչը և ինքն էլ կվերականգնի իր կորուստները, պահպանելով հայ գենի նվաճումները: Ցավոք ժամանակի առաջացման հետ այդ հարցը ավելի թանկ կնստի մարդկության վրա, քանի որ վնասի կեսից հետ վերադառնալը տղամարդկություն է, և աշխարհի բոլոր ժ ողովուրդները պետք է հասկանան այս ճշմարտությունը և չի բացառվում, որ ինչ-որ հայ երիտասարդի գենում քնած հատուցման «դատավճիռը» արթնանա, ինչպես Յանիկյանինը և այս անգամ ոչ թե ձեռքը մեկնի  գնդակներ արձակող «բրաունինգին», այլ կոճակի մի սեղմումով հոդս ցնդեցնի ամբողջ Թուրքիան, իր հարևան երկրներով հանդերձ և այդ բոլորին մի պատճառաբանություն տա. «Իմ ժողովրդին սպանել են, հալածել, բռնաբարել, նույնիսկ հիմա հայրենիք չունի, հետևաբար իմ արարքը ես նետում եմ մարդկության խղճին և պատասխանատվության վրա»: Եվ դա կանի և կասի առանց իսկ զղջումի, որովհետև և արարքից առաջ և հետո նրա մեջ նստած է մի համոզմունք «Համուն ճշմարտության և արդարության», ինչպես Յանիկյանի մոտ և աշխարհի բոլոր դատավորները միասին հակառակը ապացուցել չեն կարող:

Թուրքիայի կողմից հայերի նկատմամբ կատարված ցեղասպանությունը ինչքան հնանում, այնքան վտանգավոր, և վերջնակործան է դառնում հենց Թուրքիայի համար:

Այսպիսի արարքները անկառավարելի են, չեն պայմանավորված այս կամ այն պետության քաղաքականությամբ և հզորությամբ: Իսկ բոլոր հայերին ոչնչացնել երկրի երեսից դեռ ոչ մեկին չի հաջողվել և անօգուտ նախաձեռնություն կլինի, մանավանդ, որ հայերը մեծ քանակությամբ հեռացել և հեռանում են իրենց բնօրրանից, իրենց հետ վերցնելով միայն հայության նկատմամբ կատարված հանցագործությունների վկայությունները և հայկական հարցը: Հայությունը նման բեռով այսօր և ապագայում պատրաստ է երկրագնդի ցանկացած մասում ձևակերպելու իր ժամանակավոր պետականությունը և հասնելու ադամանդակուռ միասնության, իր շարքերից վանելով նման գաղափարախոսության հակառակորդներին և դառնալու և ստեղծելու իր հայրենիքը իր իսկ պատմական հողում, մինչ այդ երկրի երեսից ջնջելով իր վզին փաթաթված վիշապ օձին՝ Թուրքիային: Իսկ միասնականացած հայությունից հզոր ուժ աշխարհը չի կարող ստեղծել, քանի որ, բոլոր պետություններում առկա են «առանց ազգերի» թույլ պետականությունը՝ առանց մշակույթի, գրականության, արվեստի, պատմության, ինքնաճանաչման և այլն: Մարդկությունը այսօր ապրում է միայն այդ ներուժով, որը բերնեբերան լցված է հայության բոլոր սափորներում, սկսած համբերության բաժակից մինչև հավիտենականություն գնալու իր կարասները:

Հայաստանում կատարվող դեպքերը, որտեղ իր արյունծի բաժինն ունի համաշխարհային հանրությունը, երբևէ նույն հանրության կոկորդին է մնալու: Հայությունը իր ուրույն և նախասկիզբ հանդիսացող արժեքներով չի կարող ոչնչանալ, ինչպես չես կարող մարդուց հեռացնել նրա պորտը, որքան էլ մի քանիսին թվա թե նա կատարել է իր «ծննդաբերության ֆունկցիան և այլևս պետք չէ: Մարդկության պորտը կտրված է Հայկական բարձրավանդակում և այդտեղ բնակվող մեկ այլ ժողովուրդ գոյություն ունենալ չի կարող: Իսկ եթե, մեր հողագնդին վտանգ է սպառնում և ազգերը ենթակա են ոչնչացման, ապա

դա ևս հասկանալի է, ուրեմն հայությունը մտնում է ինքնապահպանման իր վիճակի մեջ և մեր խնդիրն է աջակցել այդ ինքնապահպանմանը և այդ ծրագիրը կմնա որպես մեր ազգի գոյատևման գաղափարախոսություն:

Անդրադառնալով Ցանիկյանի կատարածին և «Նոր Սերունդում» տպագրված նրա (հիմա արդեն խմբագրի) կոչին, կասենք հետևյալը: Ս. Նաիրին մոտենալով Ցանիկյանին, իր գործերն էր առաջ տանում, այսինքն փորձում էր հակադաշնակցական կեցվածքը ուժեղացնել Ցանիկյանի արարքից բխող հետևանքներով: Եվ նա թմբուկները խփելով, համայն հայությանը կոչ էր անում թողնել կուսակցականներին և հետևել Ցանիկյանին: Ս. Նաիրիի տպագրած Ցանիկյանի կոչը տղայություն համարել չի կարելի, նա լավ էլ հասկանում էր իր արարքի հետևանքները, բայց հետ դառնալ չէր ուզում, Ցանիկյանը այլևս մի խաղաքարտ էր իր ձեռքին, դաշնակցության հետ մաքրելու իր հաշիվները: Պատահական չէր, որ 90-ական թվերից հետո Ս. Նաիրին իր թմբուկը միացրել էր ՀՀՇ-ի և Լևոն Տեր Պետրոսյանի իշխանակազմին և նորից առաջնորդվում էր կույր հակադաշնակցական շեփորանվագով, առանց հաշվի առնելու թե հիմա ում է ծառայում:

Ս. Նաիրիի Ցանիկյանի հետ եղած բոլոր արժեքավոր կապերը հօդս են ցնդում այն պահից սկսած, երբ «Նոր Սերունդ» թերթը «Ազգընտիր» «Պայծառափայլ» և այլ բառեր էր իր էջերում շնորհում ՀՀ անփառունակ նախագահին, միաժամանակ իր էջերում տպելով և պղծելով Ցանիկյանի հիշողությունները:

Նույն կարգավիճակում էր նաև «Քաջ Նազարի» խմբագիրը: Ցավոք, շատ ցավոք, այս երկուսը Ցանիկյանի մոտ մնացին, որպես դրական անհատականություններ: Կասկածից դուրս է, որ եթե Ցանիկյանը ողջ լիներ իր արժանի խոսքը կասեր սրանց:

Նա կասեր, հաշվի չէր առնի իր նկատմամբ կատարած ծառայու-թյունները, քանի որ նա մեկ ուղեցույց ուներ «ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐ Է ԱՄԵՆ ԻՆՉԻՑ» և այս

մտայնությամբ նա՝ Յանիկյանը, ջարդուփշուր արեց Երկաթյանի բարեկամությունը, երբ հասկացավ այն խաղը, որին տարիներ շարունակ, լինելով իր կողքին, վարել է Երկաթյանը, որպես հավատարմության երաշխիք ունենալով իր կուսակցության մեջ լինելու 45 տարիների հանգամանքը և այնտեղից հատկապես «Յանիկյանի պատճառով վտարվելը»: Չերծ չմնացին նրանք նաև, որոնք «սփյուռքյան» հոտառությամբ հասկացան, որ Յանիկյանը փող ունի: «Դրամի» որսորդները կրնկակոխ հետևում էին նրան մինչև կյանքի վերջին օրերը՝ ժառանգություն ձեռք գցելու ակնկալիքով: Մինչև այսօր անհայտ է, թե ո՞վ տիրացավ պարսկական դատից շահած միլիոններին: Այդ բոլորով հանդերձ, իր նկատմամբ ցուցադրվող զոհողությունները հաշվի չառնող և ՃԸՏԻ հետևից գնացող Յանիկյանը մի գաղափարախոսության հետևորդ էր. լինել ազգապահպանման զինվոր, ազգը դարձնել կենսունակ: Վերջացնելով այս եզրահանգումները խոսքը տրվում է Յանիկյանին –ԼՈՒՅՍ):

*...Լինելով արդեն պարոլլի ես ամբողջովին կախված եմ բորդի որոշումից և պետք է «խելոք» մնամ, որ բորդը հաշվի առնի դա ժամանկի վերաբերյալ: Եթե սկսեմ բոքոքներ հղել և այլ քայլեր կիրառել բորդը կարող է 17 տարի ինձ պահել համաձայն օրենքի:*

*Սփյուռքի հայերը Ամերիկայում կարծում են, թե իրենք ազգի ողնաշարն են, որովհետև մի քանի դոլար ունեցող հարուստներ ունեն: Այդքան էլ մեղադրելի չէ, երբ կարդալով մեր թերթերը, այնտեղ տեսնում ենք մարդկանց, որոնց փառաբանում են լրագրերը: Այդ մարդիկ դրամ են նվիրում նրանց, ովքեր իրենց մասին նյութեր են գրում և լուսանկարներ հրատարակում: Չփառաբանեցիր, ոչինչ չեն տա և սա է պատճառը, որ համարյա ամեն օր բացելով թերթերը կտեսնեք հոբելյաններ, ամյակներ, գնահատական ճաշկերույթներ, չքանչանների պարգևատրում և տիտղոսների բաշխում և այսպիսի ներկայացումներ պարտավոր*

*են ընթերցել մարդիկ, ուզեն թե չուզեն, որոնք մատուցվում են կուսակցական և թե իրենց կուսակցական չհաշվող թերթերի էջերում։*

*Մի բան անժխտելի է, որ բոլորը պատկանում են ԴՈԼԱՐԱԿԱՆՆԵՐԻՆ հարող և հետևող, նրանց դիրքին ձգտող խմբակցություններին։*

*Հարյուրավոր տեսակ-տեսակ, զանազան անունների տակ հանդես եկող և հրապարակ նետվող միությունները առայժմ միայն խոսքով ու գրով են կռվում և կասկած չկա, որ շուտով իրար նկատմամբ բռունցքներ էլ մեջտեղ կբերվեն։ Կանցնեն տարիներ և այս վիճակը չի փոխվի, քանի որ այս ամեն միությունները և կազմակերպություն-ները ստեղծված են ճահճի բնակիչ դառնալու հավակ-նությամբ և սփյուռքը երկար կմնա նրանց իշխանության տակ։*

*Այս դեռ քիչ է, մեջտեղ է եկել մի երիտասարդ վարդապետ և մի քանի երիտասարդ իր շուրջը հավա-քելով մի միություն է կազմել՝ ավետարանը սերտելու համար։ Առայժմ դասընթացներ է կազմակերպել և շուտով հանգանակություն հավաքելն էլ չի ուշանա։*

*Ի՞նչ նպատակ են հետապնդում կուսակցությունները Սփյուռքում, երբ պատմությունը փաստում է, որ տասնամյակներ շարունակ նրանք միշտ զբաղված են եղել իրար հայհոյելով և հերքելով, նաև չմոռանալով իրար երես ցեխ շպրտելը։ Ի՞նչ օգուտ են տվել նրանք իրենց ժողովրդին կամ կարողանո՞ւմ են իրագործել իրենց հիմնադիրների ծրագրերը։*

*Ինչպես գրել եմ, հիմա էլ եմ ասում, սփյուռքը կարիք չունի կուսակցությունների, որովհետև նրանք թշնա-մության սերմեր են ցանում և ատելություն քարոզում հայության մեջ, որը պատճառ է դառնում հայության պառակտմանը, բաժան-բաժան լինելուն։*

*Սփյուռքը կարիք ունի **ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ**, եթե ցանկանում են իրոք օգուտ տալ մեր **ՄԱՅՐ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ** մեզանից գողացված հողերը վերադարձնելու գործում։ Առանց մի ընդհանուր միասնության հասնելու, սփյուռքի թափած ջանքերը ավելորդ են և դա ինքնախաբեություն է, ժամանակի ավելորդ ծախսում։*

*Իսկ միասնության հասնելու ճանապարհին կանգնած են սփյուռքի հայ կուսակցությունները, որոնք ամեն գնով չեն թույլ տալու, որ հայությունը դառնա միասնական և լուծի պատմության իրեն հասած անարդարությունները։*

*Կանցնեն շատ տարիներ և հայությունը ինքը կհամոզվի իմ խոսքերի իսկության մեջ, իսկ մայր հայրենիքը միասնության չհասած սփյուռքի կարիք չունի։*

*Սփյուռքը մի պարտականություն ունի հայրենիքի հանդեպ. Ամեն միջոցներով, ամեն օր բարձրաձայն հիշեցնել մարդկությանը, որ մենք պահանջ ունենք իրենից և լռելու չենք մինչև չստանանք մեր պահանջների հատուցումը։*

*Մեր հայրենիքի այսօրվա դրությունը* (Խոսքը վերաբերվում է ՀՍՍՀ-ին-ԼՈՒՅՍ) *նրան թույլ չի տալիս գործնականորեն զբաղվելու այդ հարցով։ Սրա փոխարեն ունի իր մեծ եղբոր **ԲՌՈՒՆՑՔԸ*** (Ցանիկյանը նկատի ունի Ռուսաստանը-ԼՈՒՅՍ), *որը պաշտպան է կանգնած, որ մեր երկիրը մի անգամ ևս ոտնատակ չդառնա։*

*Այս պահանջներին հետևելը սփյուռքի **ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ** է։*

*Եթե սփյուռքի **ՅԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ** հայրենիքի նկատմամբ անկեղծ է, ապա որքան կարելի է շուտ պետք է լծվեն գործի և մաքրվեն այն անհատներից, որոնք հրապարակի վրա են և արգելակում են սփյուռքի միասնականությանը։*

*Մի կամքով և ցանկությամբ միացած սփյուռքի բոլոր կազմակերպությունները պետք է վերջնականապես մոռացության տան իրենց քաղաքական և կրոնական տար-*

*բերութիւնները և մեկ նպատակ հետապնդեն՝ սփյուռքահայության հարցը, ինչի՞ց առաջացան և ո՞ւր են գնում։*

*Ամերիկայի հարուստների դրամը մի բնագավառ կա ծախսելու, դա Թուրքի դեմ բարձրացրած հարցի վերջնական լուծումն է, և եթե նրանք անկեղծ են հայրենիքի հանդեպ տածած սիրով, ապա հայրենիքի փառաբանման հետ գործի պետք է վերածեն իրենց խոսքերը։* (Իհարկե Յանիկյանը չէր կարող կանխագուշակել, որ Հայաստանը կարող է հայտնվել ազատ և անկախ կարգավիճակում և ... կորցնել իր բնակչության 75 տոկոսը, կամ հայտնվել ծայրագույն աղքատության մեջ: Նա չէր կարող մեկնաբանել նաև վերջին 10 տարում կատարվող դեպքերը, հայ ժողովրդի բարոյա-քաղաքատնտեսական ահավոր անկումն ու քայքայումը և այդ ամենը հանգիստ դիտող և նույնիսկ դրանից չսթափվող քաղաքական կուսակցությունների բռնած ուղին, ինչպես նաև վերջին երկու «ընտրված» կաթողիկոսների անտարբերությունը հանդեպ համահայկական ցավերը: ԼՈՒՅՍ)

*Թող չզարմանան, եթե դրամական օգնությունը միայն խնդրանքով ու աղաչանքով չկատարվի։ Նրանք մոռացել են, թե ով է իրենց կյանք տվել և իրենք ինչ պարտականություն ունեն հայրենիքի հանդեպ։* (Այստեղ խոսք չկա, թե հայրենիքը ինչ պարտականություններ ունի այն հայորդիների նկատմամբ, ովքեր 40–50 տարի աշխատելով հայրենիք կերտեցին և թողնելով «հայրենասերներին» իրենք հեռացան հայրենիքից: Քանի որ նման պատկերացումները նյութից դուրս են, ուստի Յանիկյանին թողնում ենք իր մտքերի և պատգամների հետ: Կասկածից դուրս է, որ այսօրվա հայը ավելի շատ բան տեսավ և զգաց մի քանի տարում, քան նրանք, որոնց թվում էր, թե իրենք կյանքի դպրոց են անցել և լավ են հասկանում մարդկային պատմության ելևէջները: ԼՈՒՅՍ)։

*Լորդ Բայրոնը գնացել էր Հունաստան և նրանց հետ կռվում էր օսմանյան կայսրության դեմ։ Ցավալի է հիշել,*

*որ նա այնտեղ էլ վախճանվեց և այսօր այդ հերոս պոետը ունի երկու գերեզման։ Սիրտը թաղված է Հունաստանում, իսկ մարմինը Անգլիայում։*

( Սիրելի Յանիկյան, գուցե լսում ես ինձ կամ տեսնում ես երկնքից, բայց ես ահա վերատպում եմ 20 տարվա վաղեմությամբ քո նամակները, հրատարակում, բայց չգիտեմ այս պահիս որտե՞ղ ես թաղված, գոնե կես կամ մեկ քառորդ գերեզման ունե՞ս, թե ոչ: Շուտով կփորձենք նշել քո 105 ամյակը, դա կլինի այս դեկտեմբերին: Տեսնենք քանի մարդ կհավաքվի: Քո հայրենասիրությունը և ինքնազոհումը սահման չունի, բայց ցավոք միշտ և առհավետ քեզ նման հայորդիները կհրվեն պատմության մոռացության անկյունները, հրապարակը թողնելով այնպիսի մարդկանց, որոնց երկակի ինքնությունները նույնիսկ այսօր հանելուկ են: Եթե հարցնեին Բայրո՞ն թե Գուրգե՞ն, ես քեզ կտայի գերապատվությունը, քանի որ ուրիշի ազատության համար չեն մարտնչում, այլ պայքարում են ուրիշից ազատությունը խլելու: Կասեք Բայրոնը բացառություն է: Անընդունելի է, նա կռվում էր Եվրոպայի օգտին, որ շուտ հասնի համաշխարհային տիրապետության, դրա համար մի քանի տեղ գերեզման ունի: Ձեռքիս տակ է քո աճյունասափորը Երևան տեղափոխելու 1984 թվականի Հրանտի նամակը, ուղղված սփյուռքի հետ մշակութային կապերի նախագահ Համազասպյանին, որտեղ Հրանտ Սիմոնյանը առաջարկում է քո աճյունները Երևան տեղափոխել: Եվ գիտեք ի՞նչ, մինչև այսօր պատասխան չկա: Դե հիմա ինձ ԴՈՒՔ ասեք որտեղ եք թաղված, նույնիսկ Ձեզ այցելող և քո կողմից «հրաշալի մարդ» կնքվածները չգիտեն քո աճյունների տեղը, սիրելիս: Իսկ դու ինձ այժմ գրել ես տալիս բայրոնների մասին, կգրեմ, չեմ բողոքում, բայց... ԼՈՒՅՍ)։

*Իմ ցեղին պատկանողներն էին ըմբոստանում և կռվում։ Աշխարհի բոլոր երկրներից կամավորական խմբեր էին կազմում և գնում էին օգնելու իրենց տանջված քույրերին ու եղբայրներին ու իրենց արյունով ներկում այն հողը,*

*որ պատկանում է իրենց պապերին: Մեր Ամերիկան էլ հետ չէր մնացել և իր զավակներին ուղարկում էր պատերազմի դաշտ: Ջորջ Բայրոնից օրինակ վերցրած, ուրիշ ազգերի զավակներ գնում էին օգնության իմ Ջարդվող ցեղին, երբ իրենց կառավարությունը անտեսում էր հայ ազգի ոչնչացումը:*

*Ես էլ եմ կռվել, ես էլ եմ վիրավորվել, լացել և տասնյակ գրությունններով բողոքել ու դիմել մարդկանց խղճին և արդյունք չստանալով, տեսել, որ աղաչանքն ու պաղատանքը անօգուտ է, պետք է կոնկրետ գործողություն կատարել և ցնցել մարդկությանը: Սկզբում, դա իմ հարստության օգնությամբ ֆիլմ նկարելու գաղափարն էր:*

(Այստեղ մի փոքր կանգ առնենք: Յանիկյանը տեղյակ չէր, որ նման մի ֆիլմ նկարահանված է դեռ 1918 թվականին և այդ ֆիլմը կոչվում է «Հոգիների Աճուրդ»: Այդ ֆիլմը համարվել է տարվա ամենաեկամտաբեր ֆիլմը, նրա մեկ տոմսակը վաճառվել է 10 դոլարով, իսկ աշխատավարձը այդ ժամանակ շաբաթական 3–5 դոլար էր: Ֆիլմի մեջ խաղացել է այն հերոսուհին (Արշալույս, ֆիլմում՝ Ավրորա), որ հիմք է հանդիսացել գրելու նրա սցենարը: Այս ֆիլմի մասին տեղեկությունները ի հայտ է բերել բեղուն մտավորական, պրոֆեսոր Գուրգեն Սարգսյանը, որը մինչև այսօր որոնում է այդ ֆիլմից մեկ օրինակ:

Նույնիսկ աշխարհի ֆիլմադարաններում չեք գտնի այդ ֆիլմի օրինակը, քանի որ հայկական կազմակերպությունները ժ ամանակին տեր չեն կանգնել նրա խնամքի և պահպանման հարցերին և ցեղասպանության արհավիրքները մեջտեղ բերող այս միակ լիամետրաժ ֆիլմը անհետացել է: Հույս կա, որ այն կգտնվի մասնավոր հավաքածուներում, որի հետքերով էլ գնում է պրոֆեսոր Գուրգեն Սարգսյանը: Գիտնականին հաջողվեց վերջերս հայտնաբերել այդ ֆիլմի սցենարը՝ անգլերեն, ինչպես նաև նա կատարեց սցենարի թարգմանությունը՝ «Հոշոտված Հայաստան» անվանումով: ԼՈՒՅՍ-ը առաջիկայում ընթերցողին

կներկայացնի «Հոգիների անուրդ» բնագրով այդ գիրքը, որը և հիանալի սցենար է ապագայում հնչյուն ֆիլմ նկարահանելու համար: Ֆիլմը նկարագրում է ցեղասպանության տեսարաններ՝ ականատեսի աչքերով, և ցեղասպանության ականատեսը և հետագայում նաև գրի առնողը, խաղաց նաև ֆիլմի գլխավոր հերոսուհու դերը:

Թե ինչո՞ւ է տվյալ ֆիլմը արժանացել հայ քաղաքական գործիչների «միասնական» անտարբերությանը, դա գաղտնիք է մնում, քանի որ դա գալիս է ապացուցելու, որ նրանց միջև գոյություն ունեցող «կռվզտուքները» արհեստական բնույթ են կրում և նրանք շատ էլ լավ միասնական են, երբ հարցը վերաբերվում է արդեն «լուրջ» խնդիրներին, հետևաբար նրանց «միասնականության» մասին քարոզ կարդալը, շարժում է միայն նրանց քթների տակի ծիծաղը: Նման եզրահանգումներ, իհարկե, Յանիկյանը ունենալ չէր կարող և ի վիճակի չէր:

Հեռուն չգնանք, Հայաստանի և հայության համար այս օրհասական օրերին, երբ աչքներիս առջև հալվում և վերանում է մայր Հայաստանը, տեսեք թե ինչո՞վ են զբաղված հայության սփյուռքյան ուժերը: Նրանք իրար հետ, երկպառակություն «խաղալով» խորքում լուռ դիտում են Հայաստանի ոչնչացումը, և որպեսզի չկասկածվեն իրենց տարօրինակ լռության մեջ, ընդդիմադիր անվնաս ելույթներ են շաղ տալիս իրենց իսկ մամուլի էջերում, «օր են անցկացնում ու մթնեցնում», տեսնեն հետո ի՞նչ անելու հրահանգ կստանան:

Գոնե մեկ անհատի՝ Յանիկյանի չափ, միասին վերցրած հայրենասիրություն չունեն, իրենց հետևից տանելու Հայաստանից հեռացածներին, կազմակերպելու նրանց դպրոցները և ուսուցումը սփյուռքում: Դեռ ավելին, քենախնդրորեն իրենց կրթական օջախներն են հրամցնում նրանց երեխաներին «սփյուռքահայ» լեզվով և ուղղագրությամբ նրանց փորձելով արմատախիլ անել մայր հողից և հայրենի մտածողությունից, իբրև թե «մեսրոպյանական» ուղղագրության պաշտպաններ են, այնինչ,

օժանդակում են Հայաստանից դուրս մղված հայերին մայր հողից և մշակույթից օտարացնելու գործին:

Գաղտնիք չէ, որ սփյուռքում է գտնվում այն «դիրիժորը» որը նվագում է Հայաստանի նյարդերի վրա: ԼՈՒՅՍ)

*Չնայած իմ դատավարության առաջին օրից հայտնեցի իմ արարքի գլխավոր դրդապատճառները և թե դատախազը և թե անմոռանալի կուսակցությունները, աշխատում էին իմ արարքի պատճառը իրենց օգտակար լինելուն ծառայեցնել։ Դատախազի գրված նման դիրքը ինձ հասկանալի էր, բայց մյուսներինը...*

*Մի նպատակ էին հետապնդում մեր կուսակցությունները. այնպես անել, որ ամերիկյան կառավարությունը ուրախանա և գոհ մնա դատավճռից և թե սփյուռքը համոզվի, որ իմ արարքը հայ դատին վնասակար է և ոչ թե օգտակար։*

*Կուզեմ կրկնեմ այն երեք դրդապատճառները, որոնք գրված են դատական թղթերում, որ սփյուռքում և մեր սիրելի հայրենիքում ապրողները տեղյակ լինեն ճշմարտությանը։*

*Առաջինը, ես ցանկացա ցույց տալ, որ ես հայ եմ և իմ ժողովրդի պահանջն եմ առաջ քաշում՝ այսինքն 2 միլիոն զոհերի փոխհատուցումը և հողերը, ստիպված լինելով վերացնել չար կառավարության երկու ներկայացուցիչներին, ես նպատակ էի հետապնդում վառել ջահը, որ պիտի լուսավորեր և ցրեր խավարը, որպեսզի մարդկությունը տեսնի, թե մարդկությունը ինչպես է ոտնատակ տվել իմ ժողովրդի իրավունքները։*

*Ես ցանկացա իմ արածով ցնցել իմ ազգի զավակներին, որ արթնանան քնից և տեր կանգնեն իրենց իրավունքներին։*

*Իմ առաջին քայլը հաջողվեց։*

*Հետո, ես Ամերիկացի եմ։ Ես ցանկացա, որ Ջեֆերսոնի*

*երկիրը, որին ես սիրում եմ, չմտնի պատմության մեջ, որպես փոքր ազգերի իրավունքները ոտնահարող ու հանցագործ երկրներին պաշտպանող: Չցանկացա, որ պատմությունը սև տառերով գրի ամերիկյան ղեկավարների մեղքով ամերիկյան ժողովրդի վրա անցած գործերի մասին: Քանի որ հետագա սերունդները ի վերջո իմանալով եղելությունը, պիտի ամաչեն իրենց հայրերի կատարած գործերի համար:*

*Եվ երրորդ, ես աշխարհ էի եկել բնության օրենքներով և իմ հասկացողությամբ ամեն ոք ստանալով բնության կողմից իրեն տրված պարգևը, պարտք ունի բնությանը, որ առանց հետք չթողնելու չգնա այս աշխարհքից: Նա պիտի փաստի, որ իրեն տրված կյանք-պարգևը իրեն իզուր չի տրված և ՄԱՐԴ կոչումը կրի բարձր արժանապատվությամբ:*

*Բնության օրենքները արդարացի են և հավասար բոլորի համար և ես ցանկացա, որ դա իմ ազգի համար նույնպես իր օրենքների մեջ լինի:*

*Այդ նպատակի համար ես զոհեցի բնությունից ինձ տրված մարդկային ազատությունը՝ պաշտպանելու նույն բնության օրենքները:*

*Ես կասկած չունեմ, որ իմ արարքը գնահատելու են ոչ միայն իմ ազգն ու ամերիկյան ժողովուրդը, այլ համայն մարդկությունը:*

*Ցավում եմ, որ իմ ծրագրի իրագործման համար ես ստիպված զենքի դիմեցի, որի իրական մեղավորը մեր սթեյթ դեպարտմենթն է:*

*Սիրելի ընթերցող, ուզում եմ վերջացնելով գրությունս իմանաս, որ մեր ազգի թափառական զավակներին օտարու-թյան մեջ հայ պահելու հանգամանքը ժամանակավոր և շատ թանկ նստող նպատակ է:*

*Մենք պետք է ետ ստանանք մերը, որն այսօր գտնվում*

է գազանի ոտքերի տակ։

Զհավատաք կուսակցություններին, որոնք մոռացած իրենց անցյալը, շարունակում են ձեզ քնացնել քաղցր խոսքերով ու խոստումներով։

Եթե կուսակցությունները ցանկանում են օգտակար լինել հայության հուզող հարցերին, առաջինը պետք է ազատեն իրենց անդամներին նրանց տված երդումի և ուխտերի կապանքներից՝ որով կաշկանդված են կուսակցության հրամաններին և կանոնադրություններին։

Համարյա մի դար է անցել և փաստերը գալիս են հաստատելու, որ բացի պոռոտախոսությունից և մունչալուց, իբրև թե թշնամուն վախեցնեն, հայության հարցերը տեղապտույտի մեջ են և ոչ մի քայլ առաջ չեն գնացել։

Իսկ նման պայմաններում ո՞ւմ մոտ մի չնչին հավատք կարող է մնալ հայ դատի լուծման նկատմամբ։

Երբ տոններով գրված թղթերով ցանկանում են հայ ժողովրդի փորը լցնել և հավատացնել, թե Սարդարապատի հաղթանակը կուսակցությունների կազմակերպածն է։ Զգիտես լաս, թե ծիծաղես, երբ անտեսվում է աշխարհազորային ժողովրդի արած հերոսական հաղթանակը։

Մի պոչով սուտ և ահա քանի տասնյակ տարի է ինքնափառաբանող ու ինքնահավան կուսակցական ղեկավարների զենքը ու փաստերի ավետարանը։

Երբ 1972-ի սեպտեմբերին որպես պաշտոնական հյուր Երևան էի ժամանել, որպեսզի Սարյանի տուն թանգարանին նվիրեմ նրա մի նկարը, որն ինձ էր անցել դեռևս 1930 թվականին։ Այդ նկարը իմ կնոջ եղբայրն էր նվիրել ինձ։ Ինձ հետ տարել էի նաև հորս մատանին, որը վերջին պահին հայրս ինձ էր ժառանգել։ Դա մեր պապենական հազվագյուտ մատանի էր։ Այս երկու հնությունները որպես նվեր ես հայրենիք տարա։

Ես Երևանում հնարավորություն ստացա մոտիկից

*ծանոթանալու մեր նորագույն պատմությանը, որպեսի իմ դատավարության համար լավ զինված լինեմ պատմական տվյալներով, որը երեք ամիս հետո պետք է կատարեի Սանտա Բարբարայում, գնդակահարելով հայ ժողովրդի հանդեպ հանցագործություն կատարած կառավարության անդամներին։*

*Աչքերիս չէի հավատում, երբ Երևանում կարդացի ՀՅԴ բոսերի Քաջազնունու և Նազարբեկովի հրահանգը Երևանի կառավարության ղեկավար Կարճիկյանին, որտեղ ասվում էր «Թուրքին դիմադրություն ցույց տալ պետք չէ, թող նա գրավե Երևանը, ինչպես արդեն տիրացել էր մեր նորածին հայրենիքի բերդաքաղաքներին»։*

*Հայ ժողովուրդը ցնցվել էր այս հրամանից ու դեն չպրտելով այդ խայտառակ հրամանը, գնացել իր հայրենին պաշտպանելու։ Մեծ ու փոքր այր ու կին կարծես ներքին հրամանով ոտքի կանգնեցին թշնամու առաջ, իրենց արյունով ներկեցին հայրենի հողը և կերտեցին Սարդարապատի հաղթանակը։*

*Հակառակ կուսակցության տված հրամաններին ժողովուրդը ինքը կերտեց իր հաղթանակը և անհարմար է գողանալ այդ հաղթանակը ժողովրդի ձեռքից և վերագրել կուսակցություններին։ Ամոթ է։*

*Սարդարապատի աշխարհազորային բանակում կուսակցության ոչ մի անդամ չկար, այլ կային ՀԱՅ անհատներ, որոնք միացած մի կամքով դեն էին նետել իրենց կուսակցական պատկանելությունը և չհպատակվելով կուսակցական կանոնադրությանը, չէին ենթարկվել նրան։ Նրանք այդ պահին առաջնորդվել էին միայն իրենց նախնիների և նահապետների կանչով։*

*Նույն բանը այսօր անում են մեր Հ.Ա.Գ.Բ. տղաքը, դեն չպրտելով ամեն տեսակ կուսակցության հրամաններ և անդամաքարտեր, փշրելով կուսակցական ժանգոտած*

*շղթան: Նրանց հետ են և նրանց շարքերում են հայ ազգի արժանի զավակները, որպես անհատներ, քանի որ անհատն է հայտարարել պատերազմ ոխերիմ տաճիկ կառավարության:*

*Կուսակցությունները այժմ իրենց շարքերը սնում են անցյալում կատարված փառաց ջրերով և սփյուռքին կերակրում են ազգին զոհաբերվածների անմոռանալի պատմություններով:*

*Ժամանակները փոխվել են, պատմություններով կերակրելու ժամանակը անցել է և պետք է իրական աշխատանքներ տարվի և վերջ տրվի ինքնափառաբանողներին, ստախոսներին, դավաճաններին և ճահճում բուն դրած մոծակներին:*

*Ընթերցող, մեծամտություն չհամարեք իմ կողմից, բայց իմ կրակոցները արթնացրին և սնեցին երիտասարդության միտքը, լծվելու հայ դատի արդարացի գործին:*

*Գաղտնի բանակի մեր սիրելիները երկնքից չեն իջել: Նրանք փշրելով իրենց ոտքերին գցված կուսակցական շղթաները, դեն շպրտելով անդամատոմսերը, հետևելով ցեղի կանչին իրենց վրա վերցրին ազգային պատկանությունը և դուրս եկան անգործ դարձած կուսակցություններից:*

*Ողջույն շղթաներից ազատված քայլող շարքերին, ողջույն մեր սիրելի հայրենիքում գտնվող մեր եղբայրներին, որոնք կերտում են և երազում, որ սփյուռք կոչվածը կատարի իր պարտականությունը* (խոսքը վերաբերվում է Խորհրդային Հայաստանին- ԼՈՒՅՍ):

*Ցմահ դատապարտված Յանիկյանը կմոռանա կուսակցությունների դավաճանությունը ու հանգիստ կբաժանվի այս աշխարհից, երբ տեսնի, որ Ամերիկայի սփյուռքն արթնացել է ու աշխատում է հայրենիքի երազը իրագործել ու հետ ստանալով մեզանից ստացած հողերը, միացնել*

*մեր հայրենիքին, որ հնչե ետ դարձի զանգը բևեռից-բևեռ*

# ԵՍ ԵՎ ԻՄ ՆՊԱՏԱԿԸ

*Հիշողությունները տանում էին ինձ աշխարհի չորս կողմերը. ես մեծանում էի, կյանք մտնում, ամուսնանում էի, աշխատում... անուն ... էի ստեղծում որպես մասնագետ: Դրամ էի շինում ու մեծ դրամ՝ արդար քրտինքով՝ օգտագործելով միայն իմ մասնագիտությունը և բնությունից ստացած գնևելու, քննելու պարգևները: Ամուսնացել էի բժշկուհի Շուշանիկ Քյոմուրճյանի հետ: Մեր կյանքում երջանիկ էինք եղել: Անծանոթ սերնդից չէր իմ կինը: Նա շառավիղն էր Երեմիա Չելեբի Քյոմուրճյանի (1637-1695), որն ապրել էր Պոլսում և գրել էր Օսմանյան կայսրության պատմությունը:*

*Մանրամասն նկարագրել է Կոստանդինոպոլիսը և ոտանավորներ գրել: Նրա թոռները գաղթել էին Ղրիմ: Քյոմուրճյան ընտանիքը տեղափոխվել էր, երբ Ռուսիո Եկատերինա Թագուհին Ղրիմի հայերին Դոն գետի ափին հողեր էր շնորհել: Երբ հայերը սկսել էին կառուցել մի նոր քաղաք, որը և անվանել էին Նոր Նախիջևան, Քյոմուրճյան ընտանիքը մեծ մասնակցություն է բերել այդ նոր քաղաքի կառուցմանը: Հետագա տարիներում այդ ընտանիքը տվել է ազնիվ և աշխատասեր զավակներ, որոնք բարձր դիրքեր են գրավել քաղաքում: Չեմ հիշեցնելու անցյալը, այլ պիտի հիշատակեմ իմ տեսածը: Տիկնոջս մեծ եղբայրը Ռոստովի՝ Նոր Նախիջևանի դրամատան կառավարիչն էր, մյուս եղբայրը՝ Ֆեոդոր Քյոմուրճյանը, հայտնի բժիշկ էր, որի հետ թղթակցում էինք: Վերջին նամակը ստացա մի շաբաթ առաջ: Մյուս*

եղբայրը սպա էր ռուսական բանակում և զոհվեց պատերազմում։ Այս մի քանի խոսքը ասացի տիկնոջս ընտանիքի մասին, որովհետև աչքիս առջև է հայ ազգի պարծանք Մարտիրոս Սարյանի հայտնի նկարը՝ «Արևելյան Սենյակը», որը ես նվեր եմ ստացել Ռոստովի դրամատան տնօրենից՝ որպես նվեր։ Այս նկարի պատմությունը դեռ կիմանաք։ Նկարը, միշտ ճանապարհորդելով մեզ հետ, տեսնողներին հաճույք էր պատճառում, իսկ ինձ՝ հպարտություն, որ իմն է և գործն է մեր ազգի հանճարներից մեկի։

Որոշ, մեզնից անկախ պատճառներով զավակ չենք ունեցել։ Կինս հայտնի մասնագետ էր և նույնիսկ հրավիրվում էր դասախոսություններ կարդալու՝ իր մասնագիտության՝ կանանց հիվանդությունների վերաբերյալ։ Մեր ամուսնությունը երկուսիս համար էլ եղել է առաջինը և վերջինը։ Պատահեց դժբախտություն, որի մասին չեմ ուզում գրել, որպեսզի չքայքայեմ առանց այդ էլ հոգնած ջղերս՝ ցույց տալու համար, թե ինչ անարժան մասնագետներ կան բժշկական ասպարեզում։

Նայում էի պատին կախված պատկերին, մտածում նրա հետագա ճակատագրի մասին։ Նայում էի չորս կողմս՝ պատին կախված իմ վկայականներին, ստացած մրցանակներին, պատկերներին, հազվագյուտ գրքերին, որոնցից ամեն մեկը ունի իր պատմությունը։ Այդ սենյակում էի աշխատել ու պատրաստել այն բեմականացումը, որը դարձրել էի իմ կյանքի նպատակը...

Արթնացնել մարդկային խիղճը, ստիպել, որ իմ ցեղի հանդեպ կատարված ոճրագործությունը անպատիժ չմնա, ստիպել, որ գողերը վերադարձնեն տերերին նրանցից գողացվածը։

Այս գաղափարն ավելի թանկ ու գնահատելի էր ինձ համար, քան իմ հրատարակած 7 գրքերը։ «Միջազգային

Մարդկություն» կազմակերպությունը իմ «Հուդայի հաղթանակը» գործն արժանացրել էր դիպլոմի և ինձ՝ ՅՄԱՀ ՊԱՏՎՈ ԱՆԴԱՄԻ կոչման: Մյուս գրություններիս համար Շվեյցարիայի Արվեստի և Գրականության ինստիտուտը ինձ պատվեց՝ իրեն անդամ ընտրելով: Այս կազմակերպության կանոնադրության համաձայն՝ ամբողջ աշխարհից միայն 1800 անդամ կարող է ունենալ: Նորն ընտրվում է, երբ անդամներից մեկը վախճանվում է: Ամբողջ Ամերիկայից կան միայն 700 անդամներ, որոնցից 2-ը հայ են՝ Վիլյամ Սարոյան և Գուրգեն Յանիկյան:

...Որոշումս վերջնական էր: Մի անսպասելի քայլով գրավել ուշադրություն, որը տա ինձ հնարավորություն խոսելու, ասելու, պահանջելու, որը պիտի արթնացնի իմ քնած ժողովրդին: Հարց էր միայն՝ ինչպե՞ս, ի՞նչ ձևով: Ահա միայն այս հարցի շուրջն էին պտտվում իմ մտքերը:

Տասնյակ ձևեր ու միջոցներ՝ մեկը մյուսից ավելի վայրենի, անցնում էին իմ ուղեղում ու քննելուց հետո չպրտվում՝ որպես անբավարար:

...Տեսիլքը պատի վրա՝ կարծես ուղղություն տվեց իմ մտքերին: Արյուն: Արյուն : Կյանքումս միշտ էլ հակառակ եմ եղել արյան: Կարծել եմ, որ խոսքն ավելի ուժեղ է, քան արյունը: Իրականությունն ապացուցեց, որ ես չարաչար կերպով սխալված եմ եղել անցյալում: Կյանքի դասերը ինձ ասացին, որ միայն արյունով դու կարող ես աղմուկ բարձրացնել ու գրավել մարդկության ուշադրու-թյունը: Տեսիլքը ինձ նույնիսկ ասաց, թե ո՛ւմ արյունը: Ովքե՞ր են ջարդել իմ ցեղը, ովքե՞ր են ոտնատակ տվել ամեն մի սրբություն, արդարություն, ամեն մի իրավունք: Երկար պետք չէր ինձ վերլուծելու այս հարցը, որ պատաս-խանը ստանայի: Տաճիկ բարբարոս կառավարությունը: Ահա թե ո՛ւմ դեմ պետք է ես հայտարարեմ պատերազմ՝ մեր արդար իրավունքները հետ ստանալու համար:

*Ես հանդես չեմ գալու որևէ կուսակցության, հոսանքի կամ խմբակցության անունից: Հրապարակ եմ գալու և գործելու եմ, որպես մի հայ անհատ, որն արդեն հոգնել է սպասելուց, խաբված է եղել շատ խոստումներից և այլևս լռել չի կարող:*

*Ես դիմելու եմ ինձ նման հայ անհատներին՝ կոչ անելով նրանց չարունակել այն նոր ձևի պատերազմը, որը ես որոշել եմ հայտարարել տաճիկ կառավարությանը: Կասկած չունեմ, որ մեր ազգում կլինեն շատերը, որոնք պատրաստ կլինեն զոհել իրենց կյանքը, եթե պահանջվի: Պատերազմը լինում է միշտ արյունով: Ինչո՞ւ չընդունել այս իրողությունը: Բացի այս ամենից, կար և մի ուրիշ հարց, որը պակաս դեր չէր խաղացել իմ որոշման մեջ:*

*Ես համոզված եմ, որ եթե մեր ցեղասպանության հարցը գնահատական չստանա, ապա մարդկությունը խպառ չքանալու է այս երկրագնդի վրայից: Պիտի բացատրեմ՝ ինչո՞ւ: Քանի աշխարհումս մի հայ կա, նրա զավակները մոռանալու ու ներելու չեն տաճիկներին իրենց կատարածի համար ու պահանջելու են արդարություն և հատուցում:*

*Եվ այդպես՝ որոշումն ընդունված էր. գնալով ավելի մանրամասն ու հստակ էի պատկերացնում: Այն է՝ ստեղծել իրավիճակ, որի հիման վրա մարդկությունը, ընդունելով իր սխալները, ստիպի այդ տաճիկ կոչված կառավարությանը վերադարձնել տիրոջը գողացված հողերը ու տա հատուցում երկու միլիոն նահատակների համար:*

*Եվ ամեն միջոց պետք է ձեռք առնեմ, որ ձերբակալվեմ և ողջ մնամ, որ կարողանամ դատարանի առաջ գոռալ մարդկության երեսին սրտիս տենչանքը ու պահանջել արդարություն թե՛ իմ ազգի և թե՛ մեզ պես ազգերի համար:*

*Ես գտել էի ճանապարհը՝ հասնելու այն նպատակին, որի համար աշխատում էի տարիներ: Ուզում էի ֆիլմով*

*հասնել նպատակիս, սակայն հանգամանքներն ինձ ստիպեցին գնալ մի նոր ուղիով։ Անցանկալի ինձ համար, բայց միակ ելքը։ Արյունո՛տ ճանապարհով։*

*Որոշեցի նախ և առաջ գրել մի գիրք, որով բացատրելու եմ անելիքս. այն պետք է ուղարկվի մեր երկրի կառավարական որոշ պաշտոնատարների։*

*Գրել մի կոչ և տարածել իմ ցեղակից անհատներին՝ թե՛ Ամերիկայում և թե՛ ուրիշ երկրներում։*

*Այս գրական գործերը կատարելով՝ միաժամանակ աշխատում էի ծրագրել, թե որտեղ, երբ և ինչ ձևով պիտի իրագործեի իմ որոշումը։ Եկա եզրակացության, որ ամենահարմար տեղը Կալիֆոռնիան է, որովհետև զենքով ճանապարհորդել ու մի անծանոթ քաղաքում իրագործել մտահղացումս, շատ բարդ էր։*

*Կալիֆոռնիայում 2 քաղաքներ ունեն տաճկական ներկայացուցիչներ՝ Սան Ֆրանցիսկոն և Լոս Անջելեսը։*

*Գնացի Սան Ֆրանցիսկո և գտա պատճառները՝ այցելելու տեղի տաճկական հյուպատոսարան, որպեսզի տեսնեմ, թե ո՞ւմ հետ եմ գործ ունենալու և ի՞նչ է ներկայացնում շրջապատը։ Զինված չէի, հետազոտության համար էր այցելությունս...*

*Մի ողորմելի արարած, որը կրում էր հյուպատոս անունը, ինձ ընդունեց շատ սիրալիր։ Ես ինձ ներկայացրեցի որպես մի օտար վաճառական, որը շուտով ապրանք է գնելու Տաճկաստանում՝ Սան Ֆրանցիսկոյում վաճառելու համար։ Ես գիտեի, թե ինչպիսի նուրբ ու զգայուն լարերի հետ էի խաղում։ Գաղտնիք չէ, և այդ ուղղությամբ ես մի քանի անգամ գրել էի, թե ինչո՞վ են զբաղված «դիվանագետները» Ամերիկայում։*

*Կոկայինի ներմուծումը Ամերիկա. ահա՛ նրանց իսկական գործը, որը ոչ միայն հայտնի է մեր երկրի կառավարիչներին, այլև Ամերիկան օգնում է նրանց դրամով՝ զար-*

գացնելու համար այդ ներմուծումը, որի համար չի խնայվում ոչ մի միջոց։

Ենթադրելով, թե ես էլ այս գործով եմ զբաղված և իհարկե մտածելով, որ ինքն էլ ստանալու է մի լավ վճարում ըստ սովորության, ընդունելությունը շատ սիրալիր էր ու շատ «եղբայրական»։ Տվեցի խոստումներ ու հայտնելով շնորհակալություն իր հյուրասիրած սուրճի համար՝ բաժանվեցի, որ այլևս չտեսնեմ նրան։

Ճիշտ է, որ ես ուզում էի մի հյուպատոս, բայց ոչ թե ոչնչություն, ինչպիսին էր նա։ Ես ինձ վատ պիտի զգայի, եթե նա էր լինելու այն անհատը, որին ես օգտագործելու էի որպես լույս, որպեսզի մարդկությունը տեսներ, թե ո՞ւր է գնում։ Սան Ֆրանցիսկոյի վրա խաչ դրի։

Սկսեցի հետաքրքրվել Լոս Անջելեսով։ Ես երբեք չեմ ունեցել ոչ մի օգնական, ոչ տեղեկատու։ Ամեն ինչ անձամբ էի անում, որովհետև չէի ցանկանում ոչ ոքի մասնակցությունը իմ որոշած գործին և չէի ուզում որևէ մեկը տեղյակ լինի իմ նպատակի մասին։

Մի երկու անգամ գնացի Լոս Անջելես։ Հեռախոսով տեղեկացա, որ Լոս Անջելեսն ունի թե գլխավոր հյուպատոս և թե օգնական։ Այս ավելի լավ էր ինձ համար, որովհետև երկու մարդու հետ էի գործ ունենալու, և աղմուկը ավելի մեծ էր լինելու։

Լոս Անջելեսում պետք է ավելի զգույշ լինեի, որովհետև հյուպատոսարանը գտնվում էր Բևեռլի Հիլզում, Սթար պողոտայի վրա։

Բևեռլի Հիլզում ես ապրել էի և շատերը ինձ ճանաչում էին։

Նախ՝ հարկավոր էր գնալ հյուպատոսարան ու տեսնել, թե ինչպիսին են դրությունը և հարմարությունը իմ նպատակի համար։

Պետք էր լուրջ պատճառ գտնեի, որ կասկած չհարու-

ցեր: Որպես հայ, իհարկե, չէի կարող ներկայանալ:

Շատ քիչ տեղեկություններ ստանալով Լոս Անջելեսում՝ վերադարձա Սանտա Բարբարա, որ ավելի լուրջ մտածեմ անելիքիս մասին:

Մյուս գրական գործերն իրենց ընթացքում էին: Միաժամանակ սկսել էի իմ նամակագրությունները կարգավորել, ոչնչացնել հարկ եղածները և ջոկել այնպիսիք, որոնք կուզեի ունենալ իմ արխիվում, որի որտեղ պահելու կամ ինչ անելու հարցը դեռ չէի որոշել:

Անսպասելիորեն գտա հյուպատոսարան գնալու շատ լավ ու լուրջ պատճառ:

1935-ին, երբ Եգիպտոս, Սիրիա, Լիբանան էի, որպես աչքի ընկնող անձնավորություն՝ ազատ մուտք ունեի պարսկական դեսպանատուն ու բարեկամական կապեր էի հաստատել դեսպանի հետ: Թագավորի (շահի) փոքր եղբայրն էլ այնտեղ էր և նրա հետ նույնպես ընկերական կապեր էի հաստատել: Այս եղավ պատճառը, որ համարյա բոլոր պետությունների դեսպանատների հավաքույթներում լինում էի հրավիրված ու ցանկալի հյուր: Ո՞ւմ չէի պատահում այդ հավաքույթների ժամանակ: Նախկին նախարարներ՝ Արևելքի զանազան երկրներից, որոնք կամ աքսորված էին, կամ կամավոր կերպով փախել էին, որ չպատասխանեն իրենց արածների համար: Կային և մի քանի տաճիկ նախկին մեծ պաշտոնյաներ, որոնք նույնպես կամ փախել էին, կամ աքսորվել:

Ես որոշեցի այդ «մեծ» անձնավորությունների ստորագրությունները հավաքել տաճկական մի թղթադրամի վրա՝ որպես հիշատակ:

Կարճ ժամանակում ունեի մոտ 20-25 ստորագրություն, որոնց թվում կային մի քանի նախարարներ, աքսորված Ռեզա Շահի, տաճկական աքսորված հեղափոխականների և այլոց ստորագրությունները: Երբ թղթերիս

*մեջից դուրս եկավ այդ դրամը, որը դրամարկղում էի պահում, տեսա ու զարմացա։ Դա Թանգարանի արժանի դրամ էր դարձել։*

*Որոշել էի, որ ներկայանալու եմ որպես մի հարուստ մարդ, նախընտրաբար պարսիկ, որը, ծերության հասակում խելքը կորցնելով, ուզում է ունենալ շատ շքանշաններ՝ զանազան երկրներից և, ի միջի այլոց, տաճկական կառավարությունից։ Հետապնդելով իր այդ նպատակը՝ նա անում է նվիրատվություններ, որ արժանանա ուշադրու-թյան ու շքանշանների։*

*Մտածեցի, որ դա քիչ է, գուցե և չընդունեն։ Աչքս ընկավ պատին կախված մի պատկերի, որ նվեր էի ստացել մի բարեկամից։ Դա իտալական մի նկարչի ջրաներկն էր և ներկայացնում էր հարեմի լողարանը, ուր մի լավ կազմվածքով սպիտակ աղջիկ մերկ նստած էր, և մի սևամորթ չորացնում էր ոտքերը։ Նկարը 18X12 ինչ էր (30սմX45սմ)։ ։ Արժե-քավոր էր նրանով, որ Աբդուլ Համիդի ննջարանում էր եղել կախված ու հեղափոխության ժամանակ գողացվել էր պալատից։ Նվիրողը մեծ մարդ էր, և իհարկե սխալ կլիներ իմ կողմից հարցաքննել, թե ինչպե՞ս էր գողացված։ Այդ նկարը քանիցս առաջարկել էին ինձ ծախել, մերժել էի, որովհետև դա և Մարտիրոս Սարյանի նկարը, որի մասին արդեն գրեցի, որոշել էի նվիրել մեր ազգին՝ իմ մահից հետո։*

*Պալատական նկարն անշուշտ գրավելու էր հյուպատոսի ուշադրությունը։ Բայց ցանկություն չունեի նվիրել տաճիկներին, այլ միայն պետք է օգտագործեի նրանց չահագրգռելու համար։*

*Լուսանկարչական սարքով նկարեցի այդ նկարը, և արդյունքը շատ գեղեցիկ ստացվեց։ Զինվելով նկարած նկարովս ու տաճկական, պարսկական, արաբական ստորագ-րություններով դրամովս նորից գնացի Լոս*

Անջելես։

Հարուստ մարդու պես սենյակ վարձեցի «Հիլթոն» հյուրանոցում, նույնիսկ մի գիշեր էլ մնացի, որ հետևյալ առավոտ սկսեմ ծրագրածս կատակերգությունը։ Հեռախոսեցի հյուպատոսարան և ներկայանալով որպես Գուրգի Յանի Խան՝ ցանկացա անձամբ խոսել գլխավոր հյուպատոսի հետ։ Քարտուղարը հայտնեց, որ դեռ չի եկել և հարցրեց, թե կուզեի՞ խոսել օգնականի հետ։ Պատասխանեցի՝ ո՛չ, ցանկանում եմ անձամբ գլխավոր հյուպատոսի հետ խոսել շատ կարևոր հարցի վերաբերյալ և խնդրեցի, որ տեղեկացնի հյուպատոսին, երբ գա, տվեցի անունս ու «Հիլթոնի» սենյակիս համարը։ Խոստացավ տեղեկացնել։

Սենյակում նստած սպասում էի։ Մի 2 ժամ անց քարտուղարը զանգեց և տեղեկացրեց, որ գլխավոր հյուպատոսը եկել է։

Իմանալով նպատակս նվերների մասին, նա շատ ուրախացավ, բայց, որովհետև, իր բոլոր ժամերը զբաղված են, խնդրեց, որ տեսակցեմ օգնականի հետ։ Շատ սիրալիր էր, առանց իմ խնդրանքի, ինքը հայտնեց, որ հեռախոսի լսափողը տալիս է օգնականին, որը պատահմամբ իր գրասենյակումն էր։

Որոշեցինք հանդիպել հետևյալ օրը, ժամը 10-ին։

Խոսակցությունից եզրակացրեցի, որ որոշ հարգանք դեպի ինձ ստեղծվել է։ Ինչպե՞ս չստեղծվեր, երբ խոստանում էի նվիրել իրեր, որոնք, եթե ցանկանայի, գուցե մի քանի տասնյակ հազար դոլլարով կարող էի վաճառել մի ուրիշ հետաքրքրվող թանգարանի։

Ես որոշակի գործ չունեի Բեևուլի Հիլզում։ Ամբողջ օրն իմ տրամադրության տակ էր։ Տեսակցեցի մի քանի ծանոթներիս հետ։ Երեկոյան ուրախ ժամանակ անցկացրեցի։ Անհամբեր սպասում էի առավոտին, որ սկսեմ դերասանությունս։

*Երիտասարդ ժամանակս մասնակցել եմ ներկայացումների՝ թե հայերեն, թե ռուսերեն դերերում: Վահրամ Փափազյանի հետ հաճախ ենք միասին խաղացել և մոտ ընկերներ էինք: Նույնիսկ Սիրանույշի ներկայացմանն էի մասնակցել Թիֆլիսում՝ Զուբալովի անվան թատրոնում:*

*Հայկական դրամատիկ ընկերության խմբում տարիներ շարունակ որպես սիրող խաղացել եմ ոչ միայն երկրորդական, այլև գլխավոր դերեր: Աբելյան, Արմենյան, Ջարիֆյան, Հասմիկ, Գուլակյան, Իսահակյան և շատ ուրիշ մեր բեմի աստղերը համոզում էին ինձ նվիրել իմ ապագան բեմին՝ ասելով. «Դու ստեղծվել ես բեմի համար, Գուրգեն, մի սպանիր քո տաղանդը, որը բնությունը քեզ պարգևել է, որի համար ամեն մի դերասան բախտավոր կլիներ»:*

*Երբ Մոսկվայում, Վահրամի հետ Մհյերհոլդի թատրոնում որպես սիրող մասնակցում էի ռուսերեն լեզվով ներկայացումներին, ինքը՝ այդ հայտնի ռուսական բեմադրիչը, համոզում էր, որ ես սիրողներից անցնեի արհեստավարժների խումբը:*

*Որ պարզ լինի, թվարկում եմ մի քանի դերեր, որոնք կատարել եմ մեծ հաջողությամբ և լրագրերում բարձր գնահատանքի արժանացել. Լերմոնտովի «Մասկարադում»՝ Արբենինի, Դյումա-հոր «Քինի» մեջ՝ Քինի, Լեոնիդ Անդրեևի «Սավայի» մեջ՝ Սավայի և այսպես շատ ուրիշ գլխավոր դերեր:*

*Վահրամ Փափազյանը, որի հետ միասին էինք ապրում (մասնակցում էր Խանժոնկովի շարժանկարների նկարահանումներին). ինձ համոզում էր (մինչև այսօր հիշում եմ նրա խոսքերը). «Տո ջանիկս, քիթդ ու մռութդ տեղը, ձայնդ սքանչելի, բոյդ էլ իր տեղը, էլ ի՞նչ ես ուզում՝ անուն, կյանք, հերթի կանգնած երկրպագուներ, որը դուն էլ ինձանից պակաս չես սիրում, ի՞նչ ես մտածում, դրանից ավել ի՞նչ ես սպասում կյանքից»:*

*Ծիծաղելով պատասխանում էի. «Վահրամ, գիտեմ ես էլ, որ կյանքս ուրախ կլինի։ Բայց դերասանությունը որպես ապրելու միջոց չեմ ուզում գործածել։ Ես բեմը սիրում եմ։ Սիրում եմ խաղալ, բայց գիտենալով, որ ես այդ անում եմ դրամի համար, պիտի զրկվեմ այն հաճույքից, որը ես այժմ ունեմ... Իսկ «հերթի կանգնողների» համար անհոգ եմ. մենք ընկերներ չե՞նք, եթե իմը պակաս լինի, կօգտվեմ քոնինից։*

*«Այ դու մայմուն, այդ էլ ես մտածել», և երկուսով սկսում էինք ծիծաղել։ Քաղցր օրեր էին։*

*Գիտեի, որ ես կարող եմ աչքի ընկնող դերասան դառնալ՝ թե հայկական բեմում, թե՝ ռուսական։ Բայց...*

*Առավոտը եկավ։ Թեև ունեի իմ սեփական ինքնաշարժը, վերցրի տաքսի։ 6 տարի դադարել էի ծխելուց, բայց հարուստ, խելքը կորցրած մարդը կարո՞ղ է ապրել առանց թանկագին սիգարի։ Գնեցի 3 հատ ամենաթանկ «Հավանա» սիգարներ, մեկը դրի բերանս, երկուսն էլ՝ գրպանս։*

*Դեսպանատանն արդեն ինձ սպասում էին։ Օղակները բաց թողնելով բերանիցս և ուրախ ժպիտը դեմքիս՝ ես սեղմեցի ինձ դիմավորող հյուպատոսի պարզած ձեռքը, և մտանք նրա առանձնասենյակը։ Մի րոպե առողջության ու եղանակի մասին խոսելուց հետո անցանք մեր ժամադրության նպատակին։*

*Իմ առաջարկած սիգարը չմերժեց, այնպես որ հիմա երկուսով էինք լցնում սենյակը «Հավանա»-ի նուրբ բուրմունքով։*

*Խոսակցության ընթացքում մի քանի ֆրանսերեն բառեր գործածեցի, այնպես որ նա հասկացավ, որ այդ լեզվով էլ կարող եմ խոսել։ Սիրալիր էր մեր ժամանցը, և նա շատ էր զգացված, որ ցանկանում էի մի այդպիսի լուրջ նվեր տալ իր կառավարությանը։ Արդեն որպես*

*հին ծանոթներ էինք խոսում։*

*Մի քանի ծիծաղելի պատմություններս հասել էին իրենց նպատակին։ Հարուստ, խելքը կորցրած մի մարդ, որ իր կյանքի վերջին ընկել է չքանչանների հետևից։ Հյուպատոսը հայտնեց, որ իրենք կարող են միայն խնդրել, որ իմ ցանկությունը բավարարեն, բայց չեն կարող խոսք տալ։ Որոշեցինք, որ պատկերի լուսանկարը ու դրամի լուսապատճենը պիտի տամ իրենց, որ որոշ զեկուցումով ուղարկեն Անկարա։*

*Ես, իհարկե, համամիտ եղա՝ նկատելով, որ ամեն մի զոհաբերություն պիտի գնահատվի։ Հյուպատոսը զանգեց և տաճկական դրամը տալով ներս մտնող քարտուղարին՝ առաջարկեց տանել և իսկույն մի քանի օրինակ պատճենահանել երկու կողմն էլ։*

***10–15** րոպե մենք խոսում էինք զանազան բաների մասին և ծխում։ Պատճենահանված օրինակները բերեցին։ Ասաց, որ պիտի խոսի գլխավոր հյուպատոսի հետ, իր առաջարկի մասին, և գրավոր կհայտնեն իրենց անելիքի մասին։ Մենք բաժանվեցինք որպես բարեկամներ։ Ես տվեցի նրան իմ հասցեն և հեռախոսի համարը Սանտա Բարբարայում։*

*Նույն օրը ես վերադարձա Սանտա Բարբարա։ Իմ դերասանությունը տվել էր թե՛ լավ արդյունք, թե՛ վատ։*

*Լավն այն էր, որ հյուպատոսները զարգացած, ինտելեգենտ մարդիկ էին, այնպես որ իմ գործողությունը նրանց հետ կարող էր լավ աղմուկ բարձրացնել նույնիսկ իրենց երկրում։*

*Վատ արդյունքն այն էր, որ եկա այն եզրակացության, թե իրենց գրասենյակում կատարելիքս այնքան էլ հարմար տեղ չէր։ Հյուպատոսների գրասենյակները բաժանված էին և նրանց մուտքերը գտնվում էին մի դահլիճի երկու անկյուններում։ Դահլիճում ուրիշ պաշտոնյաներ էլ կային։*

*չորս օրիորդ, որոնցից երկուսը տաճկուհիներ էին, և մի տղամարդ, որը գլխավոր հյուպատոսի անձնական քարտուղարն էր։*

*Կասկած չկար, որ մի սենյակում իմ գործողությունը չփոթություն առաջ պիտի բերեր դահլիճում և իմ գնալը դեպի մյուս սենյակը կարող էր դժվարանալ։ Գուցե և իրենց քաջությունը ցույց տվողներ էլ լինեին։*

*Կարող էր պատահել, որ մեկն ու մեկը զենք ունենար և իմ ամբողջ ծրագիրը խանգարվեր։*

*Ես վերջնականապես որոշել էի, որ նրանք են լինելու այն անձնավորությունները, որոնց օգտագործելու եմ, որպեսզի վառեմ մի լույս, որ Ամերիկան և մարդկությունը տեսնեն, թե ո՞ւր են գնում։ Սրա հետ միասին, ես ամեն միջոց պիտի ձեռք առնեի, որպեսզի ողջ մնամ, որ ծրագիրս իրագործվի։*

*Մինչև հյուպատոսներից պատասխան ստանալը շարունակում էի իմ մյուս պատրաստությունները։*

*Բնակարանս թողեցի և վարձեցի մի սենյակ Մոնե Սիթիում, որտեղ շարունակում էի իմ աշխատանքները։ Որոշել էի կամաց-կամաց ազատվել իմ ունեցած գրադարանից, կահկարասիից և այն ամենից, որոնք ինձ պետք չէին լինելու։*

*Ես արդեն թղթակցության մեջ էի Երևանի հետ. հայտնել էի, որ ցանկանում եմ երկու նկար և մեր հայ թագավորի մատանին նվիրել այնտեղի թանգարանին՝ պայմանով, որ ես պաշտոնապես հրավիրված լինեմ՝ անձամբ տանելու Երևան։*

*Կյանքումս Երևանը տեսել եմ մի գիշեր, երեխա ժամանակ, երբ մեծ եղբայրս ուզում էր մեզ Էջմիածնի Գևորգյան ճեմարանում տեղավորել։ Միտումնավոր կերպով ձախողվեցի և՛ ֆրանսերենում, և՛ ռուսերենում, և՛ թվաբանության մեջ՝ չնայած բոլորին էլ տիրապետում*

էի։ Չէի ցանկանում կրոնական դառնալ։ Ճիշտ է՝ ինձ տեղավորեցին Նոր Նախիջևանի թեմական դպրոցում նույն նպատակով, բայց ես այնտեղից էլ ազատվեցի շատ հասարակ կերպով. ոչ միայն ես փախա ու վերադարձա Թիֆլիս, այլև եղբորս էլ համոզեցի, որ վերադառնա ինձ հետ։

Շատ էին պատմում Երևանի և նրա առաջադիմության մասին։ Կուզեի գոնե մի քանի օր ապրել այնտեղ ու աչքով տեսնել Մեր Երևանն ու Հայրենիքը։

Երկրորդ պատճառն այն էր, որ քույրս ապրում էր Վրաստանում։ Նրան չէի տեսել 42 տարի։ Ուզում էի վերջին անգամ տեսնել։ Նամանավանդ տեսնել և նրա աղջկան, որն ուսում էր առել ու դարձել ճարտարապետ, որի ուսման ծախսերը ես էի հոգացել Պարսկաստանից և հետագայում՝ Ամերիկայից։ Նամակով իրար սիրում էինք, բայց ես ցանկանում էի գոնե մի անգամ տեսնել ու համբուրել։

Նկարներից մեկը, ինչպես ասացի, Մարտիրոս Սարյանի նկարն էր, մեծ արժեք ուներ, որով հետև եզակի էր իր տեսակի մեջ։ Փարիզում Գալուստ Գուլպենկյանը ցանկություն հայտնեց գնել նկարը՝ իր անունով Լիսաբոնի թանգարանի համար։ Մերժեցի, և դա շատ զարմանք պատճառեց նրան...

Իմ ծրագրի մասին ոչ ոք՝ ոչ մի անհատ, կազմակերպություն կամ կուսակցություն տեղյակ չէր։ Դա իմ անձնական գաղտնիքն էր, և դրա վրա ես գիշեր-ցերեկ մտածում էի ու աշխատում։

Մի շատ հետաքրքիր երևույթ, երբ դատավարությունից հետո ինձ տարան Վակովիլ, այնտեղ մեկը հարցրեց. «Դու մտածո՞ւմ էիր, որ վերջ ի վերջո ընկնելու ես բանտ»։

Մի րոպե մտածեցի, ուզում էի հիշել, թե արդյո՞ք այդպիսի մի բան մտքիցս անցել էր, թե՝ ոչ։

*«Հետաքրքիր հարց տվեցիք, պարոն: Հավատացեք, որ երբեք այդ հարցը ինձ չէր հետաքրքրել, և հավատացեք, որ երբեք էլ չէր անցել իմ մտքով, թե իմ անձնական կյանքի հետ ինչ էր պատահելու»- պատասխանեցի ես:*

*Նա զարմացած նայում էր ինձ և ինչ–որ բան գրեց իր օրացույցի մեջ: Ի՞նչ՝ չգիտեմ:*

*Այն օրվանից, երբ իմ բնակարանում տեսա եղբորս տեսիլքը և որոշեցի անելիքս, ես ապրում էի որպես 2 մարդ: Մեկ՝ առաջվա ուրախ–զվարթ ծերունին, երկրորդը՝ ատամները կատաղությունից սեղմած մի վայրի գազան, որ պատրաստ էր ամեն մի միջոցի՝ հասնելու համար իր ծրագրածին:*

*...Բախտ չունեցա երկար ապրել իմ նոր վարձած բնակարանում: Տունը ծախեցին և ինձ 2 շաբաթ ժամանակ տվեցին, որ ազատեմ սենյակս:*

*Տեսնվեցի նամակացրիչի հետ և մի քանի խոսքերի հետ մի քանի դոլար տվեցի, որ նամակներս հասցեագրի իմ նոր հասցեով: Երևի վարձատրությունս շատ էր դուր եկել նրան, որովհետև հայտնեց, որ հասցեագրելու չէ, այլ նույն օրն անձամբ ինքը կբերի:*

*Հեռախոսեցի Լոս Անջելես՝ տաճկական հյուպատոսարան, և հյուպատոսի օգնականին հայտնեցի իմ նոր հեռախոսի համարը: Շատ ուրախացավ հեռաձայնելուս համար ու հայտնեց, որ գլխավոր հյուպատոսը համամիտ է իր հետ և արդեն կարգադրել է, որ նամակ գրվի Անկարա՝ արտաքին գործերի նախարարություն:*

*Ես խնդրեցի գրել այդ նամակը, որ գիտենամ անելիքս:*

*Հայտնելով, որ հարցը միայն ժամանակի հետ է կապված, որ Անկարայից կգա դրական պատասխան, նա շնորհավորեց ինձ չքանչանները ստանալուս համար: Պատրվակելով, մի քանի շաբաթով Եվրոպա պիտի այցելեմ, հարցրի, թե որքա՞ն ժամանակ է տևելու այդ:*

*Նա հանգստացրեց ինձ ասելով, որ հարցը կապված է մի քանի նախարարությունների հետ, դրա համար էլ պատասխանը կստացվի ոչ ավելի կանուխ, քան 5–6 շաբաթ։ Խոստացավ գրավոր կերպով հայտնել ինձ հյուպատոսա–րանի որոշման ու արած քայլերի մասին։ Երևի իրենք ինձանից ավելի էին շտապում, որովհետև 3 օր անց ես ստացա պաշտոնական նամակ, որով տեղե–կացնում էին իրենց որոշման մասին։*

*Հիմա ինձ մնում էր սպասել Անկարայի պատասխանին։*

*Իմ ստացած նամակի բնագիրը դատարանական թղթերի մեջ է։ Այդ նամակի օրինակները հետագայում իմ անձնական արխիվի և ուրիշ կարևոր թղթերի հետ նվիրեցի Հայրենիքի պետական արխիվին՝ համաձայն իրենց խնդրանքի։*

*Հայկական առածն ասում է, որ դժբախտությունը մենակ չի գալիս... Ես կարող եմ մի նոր առած գործածել՝ ասելով, որ ուրախությունն էլ մենակ չի գալիս։*

*Դեսպանատան նամակը ստանալուց երկու օր անց հեռագիր ստացա Երևանից, որով պաշտոնապես հրավի–րում էին ինձ և տեղեկացնում, որ մանրամասնությունները նամակով պիտի հաղորդեին։ Ուրախ էի։ Ամեն ինչ կարծես կատար–վում էր համաձայն իմ ցանկության ու ծրագրի։*

*Ես ժամանակ ունեի Երևան տանել նվերները, տեսնել մեր Հայաստանը, տեսնել քրոջս ու նրա աղջկան և ժա–մանակին վերադառնալ Ամերիկա՝ սպասելու Անկարայի որոշմանը։ Գիրքը, որ հետագայում ուղարկեցի 7 հասցեով, արդեն վերջացրել էի։ Վերջացրել էի նաև ուրիշ գրություն–ներ, որոնք նույնպես պետք է ուղարկվեին հայերեն լեզվով հրատարակվող թերթերին։ Նաև պատրաստ էր իմ կոչը՝ ուղղված զանազան անհատների։ Դեռ ոչինչ չէի հասցեագ–րել, որովհետև այդ գրությունները պետք է ուղարկվեին այն հաշվով, որ ստացվեին իմ անելիքի հետևեալ օրը։*

*Գնացի Լոս Անջելես, որ ճանապարհորդության տոմսերը կարգադրեմ։ Անձնագիրս արդեն ստացել էի և պետք եղած վիզաները նույնպես՝ շնորհիվ Երևանի կարգադրության։*

*Որպեսզի տեսնվեմ գործակիցներիս հետ, ստիպված էի ընտրել ամենաերկար և ձանձրացուցիչ Թուիչքը՝ Լոնդոն–Փարիզ–Անկարա– Բեյրութ– Երևան։ Այդպիսով ես ստիպված էի օդանավը 3 անգամ փոխել ճանապարհին, որը հեշտ բան չէր՝ նկատի ունենալով իմ ուղեղբեռը՝ մասնավոր արկղի մեջ ապահով կերպով դրված 2 Թանկագին նկարները։*

*Վերադարձի տոմս չվերցրի, որովհետև, լինելով Երևանի հյուրը, վերադարձի տոմսը և այնտեղի հյուրանոցի բոլոր ծախսերն ապահովված էին։ Նամակով տեղակացրի քրոջս, որ շուտով տեսնվելու ենք։*

*Որ երկրի մեղքն էր, չգիտեմ, որովհետև երբ Երևան հասա, իմ նամակը դեռ տեղ չէր հասել, և ստիպված եղա հեռագրով տեղեկացնել մերոնց, որ արդեն Երևանում եմ։ Մի օր հետո ես նրանց դիմավորեցի Երևանի երկաթուղու կայանում։*

*Անկարայի Թուրք երիտասարդ բարեկամս ստացել էր նամակս և եկել օդակայան՝ ինձ դիմավորելու։ 4 ժամ պիտի մնայինք Անկարայում, ապա նոր շարունակեինք Թուիչքը։ Սակայն հայտնի պատճառով միմյանց հետ հանդիպելու և զրուցելու համար ներկայացում պիտի խաղայինք։ Բոլորի, նույնիսկ ոստիկանների և հատուկ ծառայությունների համար, որոնցով լիքն են բոլոր մեծ օդակայանները, զարմանալու բան չեղավ, երբ ֆրանսերեն լեզվով այդ ամերիկացի ճանապարհորդը դիմեց իրեն սպասող, բայց ցույց չտվող, բարեկամին՝ հարցով, թե տեղական ո՞ր խմիչքն է, որ նույն դերն ունի, ինչ Ամերիկայում՝ վիսկին։ Մի քանի լրտեսներ հասկացան ու սկսեցին ծիծաղել։ Բարե–*

կամս չատ Նուրը ու քաղաքավարի կերպով պատասխանեց կես ֆրանսերենով, կես անգլերենով։ Անգլերենին ավելի լավ էր նա տիրապետում։ Նրա բացատրական պատասխանից հետո ես առաջարկեցի հյուրասիրել նրան, նա չմերժեց, և հրավիրելով իմ սեղանին՝ ես ապսպրեցի 2 տաճկական օղի։ Այսպես մենք ունեցանք հնարավորություն, ոչ միայն օղի խմելու, այլև ճաշելու ու խոսելու։ Պետք եղածը հայտնեցի։ Տեսա՝ ինչպես աչքերը լցվեցին արտասուքով, բայց դրությունը թույլ չէր տալիս ինձ գրկել նրան, որովհետև անկեղծ ցանկություն ունեի այդ անելու։ Կիսաձայն ասացի. „Մի հուսահատվիր, ժամանակները կփոխվեն... Մնա միշտ ինչպես կաս՝ արդարության ու ճշմարտության պաշտպանը»...

Ծանր էր մեր բաժանումը։

Հաջորդն Բեյրութն էր, որտեղ մնացի 2 օր։ Տեսա բարեկամներիս, նրանց ևս պարզ կերպով հայտնեցի, որ մեր ծրագիրը ֆիլմի վերաբերյալ իրականացնելու հույս չկա։ Ինչպես արդեն գրել եմ, ոչ ոքի նույնիսկ չակնարկեցի իմ ծրագրի մասին։

Փորձեցի տեսնվել իմ ընկեր բանաստեղծ, գրող Ծառուկյանի հետ, չհաջողվեց։

Հայկական օդանավով հասա Երևան։ Ջէի հավատում, երբ լսում էի օդաչուի խոսքերը հայերեն։ Սիրտս լցվում էր ուրախությամբ։ «Ինտուրիստ» հյուրանոցում ինձ համար մասնավոր սենյակ (համար) էր հատկացված՝ մաքուր, 2 սենյակով և բաղնիքով։ Ասացին, որ տվել են ամենալավը։

Քրոջս աղջիկը, որը, ինչպես ասացի, ճարտարապետ էր, աներևակայելի հնարքներով Երևան էր եկել կեսգիշերին և ինձ գտել։ Հետաքրքիր էր մեր հանդիպումը։

Գիշերը ժամը 2–ին ծեծում են իմ դուռը, ես, առանց հարցնելու, թե ո՞վ է, բաց եմ անում դուռը, և մի երիտա–

սարդ, գեղեցիկ օրիորդ, փաթաթվելով իմ վզին, սկսում է համբուրել՝ լալով կրկնելով՝ «սիրելի քեռի ջան»։ Ուշքի չեկած՝ մի վայրկյան շփոթված էի, թե այս ի՞նչ ընդունելություն են պատրաստել ինձ համար։ Մի՞թե Հայաստանն էլ ընդօրինակել է որոշ արևելյան երկրների սովորությունները։ «Ես Թամարան եմ, քեռի ջան» խոսքերն անհայտացրին իմ շփոթությունը, և ես իմ հերթին փաթաթվեցի նրան և գրկելով ներս տարա սենյակս՝ հայտնելով շնորհակալություն հյուրանոցի գիշերային հերթապահին, որն ուրախ ժպիտով նայում էր մեզ։ Նա գիտեր, թե որտեղից եմ եկել և ինչու։

Այլևս քնելու մասին խոսք չէր կարող լինել։ Անվերջ խոսում էինք և գրկախառնվում։

Առավոտյան միասին գնացինք դիմավորելու քրոջս, որը գալիս էր իր երկու տարեկան թոռան հետ։ Թամարան նույնպես ամուսնացած էր ճարտարապետի հետ։

Քույրս ամուսնացել էր մի վրացի իշխանի հետ, որը ստալինյան մաքրագործումներին զոհ էր գնացել։ Նրանից ունեցած դուստրը, մեծանալով և ուսում ստանալով արդեն ասածս միջոցով, ամուսնացել էր նույնպես մի նախկին վրացական իշխանի հետ։ Ես ծիծաղում էի, թե ինչ ցեղական հիվանդություն ունենք իշխանների հետ ամուսնանալու, երբ նրանց ժամանակն արդեն անցել է։

Երբ քույրս իջավ շոգեկառքից, ես տեսա... մայրիկիս, որը, ձեռքերը պարզած, մոտենում էր ինձ։ Ընդառաջ վազելով ու գրկելով՝ ասացի «մայրիկ ջան» ու սկսեցի համբուրել։

«Գուրգեն ջան» ես մայրիկ չեմ, ես Սաթոն եմ»։ Չէի կարող հավատալ, այնքան էր նմանությունը։ Հիշեցի, որ մայրիկիս աջ ձեռքի մատների մկանները կրծել էին, երբ նա ծածկել էր բերանս, որ ես ձայն չհանեմ, որ մեզ էլ չտեսնեն այն ոճրագործները, որոնք մորթեցին իմ անմո-

*ռանալի եղբորը։ Բռնեցի աջ ձեռքը ու նայելով մատներին՝ հասկացա, որ Սաթոն իմ մայրիկը չէր, այլ քույրը, որը նման էր մորս, որին ես թողել էի սպիտակած մազերով, 42 տարի առաջ։ Ժամանակն ու դժբախտ կյանքը քրոջս մազերն ու դեմքի տանջված գծագրությունն այնքան էին նմանեցրել նրան մորս, որ նույնիսկ անհավատալի էր։ Ես քրոջս էլ էի սիրում։ Հիմա այդ նմանության պատճառով ես կարոտ էի առնում՝ մորս և քրոջս։ Մայրս 30 տարի առաջ էր մահացել։*

*Երբ բաժանվեցի մորիցս 1930 թվականին, նա արդեն նմանվել էր իմ քրոջ Սաթենիկին։ Երևի այս էր պատճառը, որ իմ ուղեղում մնացել էր նրա տեսիլքը, և նույն այդ տեսիլքը ես տեսա Երևանի կայարանում՝ 1972 թվականին։*

*Նկարները հանձնեցի։ Հեռատեսիլով Երևանի ժողովուրդն իմացավ այդ ու տեսավ ինձ, և ես մի քանի խոսք էլ ասացի նկարների ու դրանք Հայրենիքին նվիրելու իմ որոշման մասին։*

*Մատանին էլ հանձնեցի։ Մատանին ավելի էր ուրախացրել ստացողներին, որովհետև դա հայ թագավորի առաջին մատանին էր, որ նրանք թանգարանում պիտի ունենային և հարկ եղած դեպքում ցուցադրելու էին։ Իրենք էլ, պատմաբանների տվյալների վրա հիմնվելով, նույնիսկ գտան, թե որ թվի մատանի-կնիքն է։ Մեծերից մեկն ասաց ինձ, որ միլիոն դոլար նվերն այնքան գնահատելի չէր լինելու Հայրենիքի համար, որքան այդ աննման մատանին։ Ես ուրախ էի։ Մատանին իմ մատի փոխարեն գրավեց իր արժանի տեղը մեր Երևանի թանգարանում։*

*Երբ ես թանգարան այցելեցի, ինձ տվեցին մի գրություն, որով հայտնում էին շնորհակալություն նվերի համար։ Ասացի, որ գրության կարիք չկա, թանգարանի կառավարիչը՝ մի շատ ազնիվ պարոն, ասաց. «Վերցրու, մենք շատ հաճախ չենք տալիս այդպիսի գնահատագրեր։*

Ձեր արածը մի անգնահատելի բան է մեզ համար»։ Դատական թղթապանակի մեջ է այդ գրությունը։

Երևանում ինձ ցույց տվեցին զանազան գործարաններ, որոնք աշխատում էին ամբողջ թափով։ Արդյունաբերական ցուցահանդես-տաղավարների (ԺՏՆՑ) տպավորություններ գրքերում առաջարկում էին ինձ մի քանի խոսք գրել, և ես ուրախությամբ էի ընդառաջ գնում նրանց խնդրանքին։

Գնացի Սևան։ Կերա խորոված արած Սևանի աննման ձուկը։ Մի զարմանաք, որ շատ քիչ եմ գրելու Երևանի մասին, որովհետև հատորներ պետք է գրվեն մեր քաղաքի վերածննդի ու թափի մասին։

Մի բան եմ շեշտելու, որով հասկացողների համար պարզ կլինի, թե ի՞նչ է կատարվում Երևան կոչված քաղաքում։

Հյուրանոցիս երրորդ հարկի պատուհանից սկսեցի համրել շինարարական այն հսկա կռունկները, որոնք ցցված էին դեպի երկինք և որոնք ապացուցում էին, որ այնտեղ կատարվում են մեծ շինարարություն, որովհետև փոքր շինությունների համար այդպիսի մեքենաներ չեն գործա-ծում։

Ամբողջ քաղաքը չէի կարող տեսնել, միայն կեսն էր երևում. հաշվեցի՝ 26։ Եթե նույն էլ մյուս կեսումն է, ուրեմն քաղաքում 52 տեղ կատարվում էին շինարարական մեծ աշխատանքներ։ Աշխարհիս ո՞ր քաղաքում է (Երևանի մեծության համեմատ) միաժամանակ կատարվում այդպիսի հսկայական աշխատանք։

Իմ ժամանակի մեծ մասն անցկացնում էի հյուրանոցում, որովհետև, որպես բացառություն և համաձայն իմ խնդրանքի, քույրս և Թամարան էլ սենյակ էին ստացել այնտեղ։ Նրանք գնում էին իրենց սենյակը միայն քնելու, ամբողջ ժամանակ միասին էինք, և մեր խոսակցությանը

վերջ չկար։

Իմացա շատ նորություններ մեր հարազատների մասին, որոնք ինձ տխրեցրին։ Իմացա լուրեր, որ ինձ ուրախացրին։

Մի դեպք պատահեց Երևանում, որն ինձ փաստեց, որ իմ ընտրած ուղին ու ծրագրած գործողությունը ճիշտ է։

Մի առավոտ վաղ էի արթնացել և նստած պատուհանի առաջ՝ նայում էի Արարատին։ Օրը պարզ ու սքանչելի էր։ Նոր բարձրացող արևն իր ճառագայթներով լուսավորել էր մեր սրբության գագաթը, որը ծածկված էր ձյունով։ Ամեն րոպե տեսարանը փոխվում էր, և կարծես արևի ճառագայթները չոյում էին նրա ձյունազարդ գագաթը, որը հազարավոր զանազան գույնի արտացոլումներով արևին վերադարձնում էր իրեն տված համբույրները։

Այս չէր, որ ինձ զարմացրեց ու անչափ ուրախացրեց։

Հյուրանոցից ոչ հեռու փոքրիկ տնակներ կային։ Բնակիչներն արդեն բակում էին և պատրաստվում էին գործի գնալու։ Իմ ուշադրությունը գրավեց գլուխը շալով փաթաթած մի կին, որը մառանից դուրս էր քշում մի կով։ Երբ կինը տեսավ փայլող Արարատի գագաթն ու արևի ճառագայթների արտացոլումը, մոռացավ իր կովը, հպարտությամբ բարձրացրեց գլուխը, նայելով դեպի լեռը՝ խաչակնքեց ու մի քանի վայրկյան քարացած նայում էր տեսարանին։

Միթե՞ այս մի փաստը բավական չէ հրամայելու աշխարհին, որ վերադարձնեն մեզ մեր լեռը, որի վրա, ըստ ավանդության, Նոյյան տապանն է իջել։

Այս տեսարանից հետո հասկացա, թե ի՞նչ է ամեն մի հայի համար, նույնիսկ կոմունիստական Հայաստանում, մեր Արարատը, որը տաճիկներին են նվիրել խաբեբա միջոցներով։ Մի կարճ այցելություն ունեցա Հովհաննես Շիրազի հետ։ Ինձնից նեղացավ, որ մերժեցի ռեստորան գնալ և մի-մի թաս խմել։ «Վարպետ, գործ կա հետո

կիմանաս» հայտնեցի նրան: Գործընկերոջ հետ մինչև մայթ ճամփու դրեց, տաքսիով մեկնեցի հյուրանոց:

Այցելեցի Մյասնիկյանի անվան գրադարանը, որին տարիներ առաջ ուղարկել էի երկուական օրինակ անգլերեն լեզվով Ամերիկայում հրատարակված իմ հինգ գրքերից:

Կառավարիչը ոչ միայն 15 րոպեի ընթացքում բերեց իմ բոլոր գրքերը, այլև հրավիրեց գրադարանի մի խումբ պաշտոնյաների ու նրանց ներկայացրեց գրքերի հեղինակին:

Մոտ կես ժամ շատ սիրալիր խոսակցություն ունեցա նրանց հետ: Նամանավանդ ուրախացա, երբ մի երկուսը հայտնվեցին, որ այս կամ այն գիրքը կարդացել են: Հետաքրքրվեցի, թե արդյո՞ք գրքերս ընթերցողներ ունեն: Ներկաներից մեկը, ցույց տալով գրքերից երեքը, ասաց, որ սրանք ավելի են պահանջվում կարդացողների կողմից, քան մյուսները: Ես բավականացած էի, զուր տեղը չէի ուղարկել:

Իմ՝ Երևան այցելելու որոշված 15 օրն աննկատ անցավ:

Վերադարձիս տոմսը Երևան-Մոսկվա-Փարիզ-Նյու-Յորք էր:

Թողեցի Երևանը: Մոսկվայում անսպասելիորեն նորից երևաց Թամարան: Եկել էր Թիֆլիսից՝ ինձ վերջին անգամ տեսնելու ու համբուրելու, ինչպես ինքն էր բացատրում: Բաժանվելիս հարցրի՝ արդյոք ամերիկյան լրագրերով հետաքրքրվո՞ւմ է: Պատասխանը բացասական էր:

Երբ ամեն ինչ վերջացած էր, և ես կատարել էի իմ ծրագրածը ու նստած բանտում՝ սպասում էի դատավարությանը, ստացա նամակ մերոնցից: Հասցես ես էի ուղարկել:

Թամարան գրել էր, որ հիմա նա միայն հասկացավ, թե ինչո՞ւ ես հարց տվեցի ամերիկյան լրագրերի մասին: Գրում էր, որ հիմա արդեն շատ է հետաքրքրվում, որ իմանա, թե



**Գ. Ցանիկյանի վերջին նկարը ազատության մեջ: 1973 թվականի հունվարի 20:**
**Մեկ շաբաթ անց նա արդեն բանտումն էր, իր հպարտ ուսերին կրելու Հայ Դատի խաչը:**

---

*ինչո՞վ է վերջանալու այս բոլորը: Հիմա արդեն նա գիտե, թե ինչով է վերջացել: Նամակները ոչ հաճախ ստանում եմ նույնիսկ հիմա էլ:*

*Սաթո, սիրելիս, Թամարա, Ջանիկս, մի տխրեք: Ես տխուր չեմ: Ես կատարեցի այն, ինչ իմ կյանքի նպատակն էի դրել: Գուցե մի օր նորից տեսնվենք և այս անգամ ավելի շատ խոսելու բաներ ենք ունենալու...*

*Հույս ունեի, որ, Երևանից վերադառնալով Սանտա Բարբարա, պիտի ունենամ մի նորություն տաճկական հյուպատոսարանից: Սխալվում էի, ոչ մի նորություն: Չէի ուզում ինքս հեռախոսել, որ կասկած առաջ չբերեմ:*

*Բոլոր գրությունները արդեն պահարանի մեջ էի դրել ու հասցեագրել: Երևանում ես խոստացել էի՝ որպես ամերիկացի հայ գրող, իմ անձնական արխիվը (նամակները, զանազան թղթեր, վկայականների օրինակները և այլն) ուղարկել Երևան՝ պետական արխիվ:*

*Թամարային ուղարկեցի իմ բնագիր վկայականները, մեր ընտանեկան նկարներն ու փաստաթղթերը, որտեղ ես էլ էի հիշված, ընդհանրապես ամեն ինչ, որ կարող էր ապագայում պետք գալ նրանց՝ ցույց տալու համար, թե ինչ դիրք էի ունեցել Ամերիկայում: Ուղարկեցի նաև միմի օրինակ իմ մնացած գրքերից:*

*Որովհետև դեռ չգիտեի՝ ինչպե՞ս, որտե՞ղ և ինչպիսի՞ հանգամանքներում պիտի կարողանամ իրականացնել իմ ծրագիրը, ես համենայն դեպս ուսումնասիրեցի «Ով, ով է» հաստ գրքի մեջ իմ ատրճանակը տեղավորելու հնարավորությունը: Դժվար էր, բայց ես ստիպված էի ինքս դանակով թերթերը իրար հետևից կտրել զենքի համեմատ, որ տեղավորվի: Երբ վերջացրի, ունեի մի անմեղ գիրք, որի կողը եթե բարձրացնեիս ու մի 10 երես թերթեիս, հրապարակ էր գալիս զենքը, որ հենված էր մի փոքրիկ զսպանակի: Բավական էր մի չնչին ցնցում, և զենքը բարձրանալով բուռս էր մտնում:*

*Այդ գիրքն էր, որ դատավարության ժամանակ ցույց տալով՝ դատախազը բացականչեց. «Ահա մի գիրք, որը հազար երեսներով փաստում է, որ մեղադրյալը մեղավոր է և նախօրոք պատրաստվել է այս ոճրագործության համար:»: Նույն այդ գիրքն էր, որ իմ փաստաբան Լինդին, ցույց տալով վերջին թերթերը, բացականչեց. «Հասարակ մարդ է արդյոք Յանիկյանը, որը բարձրագույն ատյանի դատավորի կողքին գրավել է իր տեղը այս գրքում, որտեղ տեղ ունենալու համար պետք է արժանավոր լինել: Ոչ, նա հասարակ ոճրագործի անուն չի կարող կրել, ինչպես ցանկանում է պարոն դատախազը»: Բացի պարաբելումից*



**Գուրգեն Յանիկյանը 1973 թվականին, դատավարության ժամանակ**

---

*(զենքի մակնիշ), որը գնել էի Բեվեռլի Հիլզում, 25 տարի առաջ, ես ունեի և մի փոքրիկ ինքնագործ բրաունինգ (ատրճանակի մակնիշ)։*

*Ապահովության համար ցանկություն ունեի փորձել զենքը։ Մասնավոր այդպիսի տեղեր կան, որտեղ թույլատրվում է այդ։ Այդ զենքով ես մի քանի անգամ կրակել էի, երբ քսան տարի առաջ ընկերներով գնացել էինք Վըրջին լեյք (լիճ)՝ ձկնորսության։ Մրցում էին կազմակերպել, և ես զենքով հիսուն քայլի վրա նշան առա ու խփեցի հիսուն*

սենթանոց ամերիկյան արծաթե դրամին, որը՝ որպես հիշատակ, գտնվում էր տուփում, որտեղ զանազան մանր–մունր բաներ կային։

Փորձելու միտքը թողեցի, որովհետև կասկած կարող էր առաջ բերել։ Բավականացա նրանով, որ հետս պիտի ունենամ և բրաունինգը։ Երկու զենքերն էլ քանդելով՝ մաքրեցի, յուղեցի և համարյա համոզված էի, որ մեկն ու մեկը պիտի գործի։ Մի քիչ ծանոթ լինելով զենքերին, որոնց նմանը ես համարյա ամբողջ կյանքումս ունեցել էի, զննելով մասերը ու քննելով՝ տեսա, որ ամեն ինչ կարգին է, և կասկած ունենալու պատճառ չկա։

Եթե մեղքը փամփուշտներին լինի, մտածեցի ես, դա արդեն իմ բախտը կլինի։ Արտաքուստ ես հանգիստ էի, բայց ներսումս խառնաշփոթություն էր։ Ինչ՞ու նամակը չի գալիս։ Ի՞նչ պիտի անեմ, եթե մերժեն, ի՞նչ նոր միջոցներ եմ որոնելու, ի՞նչ կլինի, եթե անսպասելիորեն, առանց հեռախոսելու նրանք վերցնեն մի օր ու գան Սանտա Բարբարա՝ որպես բարեկամներ։ Հասցես ունեն։ Բայց պիտի հրապարակ գա իմ իսկական անունը։ Եվ ամեն ինչ ջուրն ընկնելուց բացի, կարող է որոշ անհանգստություններ ստեղծել ինձ համար։ Անունս կեղծել եմ, ուրեմն մի նպատակ ունեի։ Այսպիսի զանազան հարցեր ավելացնում էին իմ մտածումները։

Մի սքանչելի օր վերջապես ստացա հյուպատոսարանից այնքան թանկագին նամակը, որը տեղակացնում էր, թե Անկարայի կառավարությունը տեղեկացրել է, որ ընդունում են նվերները և հարկ եղածը կարգադրել են իրենց։ Խնդրում են, որ հեռախոսեմ, թե ե՞րբ և ինչպե՞ս պիտի ընդունեն նվերները և որտե՞ղ։

Հիմա արդեն ամենալուրջ հարցն էր, որ պետք է որոշվեր՝ ե՞րբ և որտե՞ղ։ Իմ կյանքում շատ անգամներ է պատահել, երբ ինչ–որ մի բանի մասին սկսել եմ խոսել, որոշակի ծրագիր չեմ ունեցել, խոսակցության ընթացքում



Հայրս՝
Մկրտիչ
Ցանիկյան



Մայրս՝
Եպրաքսիմա



6 տարեկան Գուրգենը



Պատանի Գուրգենը



Սաթենիկ քույրս

անսպասելիորեն ամենահարմար որոշումը հրապարակ է եկել։

Այս փորձառությունը աչքի առաջ ունենալով՝ որոշեցի հետևյալ առավոտ հեռախոսել։ Շատ ուրախացան։

Գլխավոր հյուպատոսի հետ էի խոսում։ Կրկնելով նույնը, ինչ գրել էի նամակում, ավելացրեց, որ չքանչանը կուղարկեն, երբ նվերները տեղ հասնեն։ Հարցրեց, թե ե՞րբ կարող եմ տալ նվերները։ Վճռական րոպեն էր. իմ պատասխանից էր կախված, թե որտե՞ղ է կատարվելու «նվիրատվությունը»։ Հետագա խոսակցությունը տալու եմ մոտավորապես՝ ըստ իմ հիշողության։ Շատ անգամներ բանտում հիշել եմ այս խոսակցությունը։

– Ձերդ վսեմություն, Դուք Սանտա-Բարբարայում եղե՞լ եք,– հարցրի ես։

– Այո, մի քանի անգամ, շատ լավ քաղաք է։

– Դե, ուրեմն դժվա՞ր կլինի Ձեզ համար մի անգամ ևս գալ ու լինել իմ հյուրը նախաճաշին և անձամբ ընդունել նվերները։

– Մի րոպե, միստր Յանի Խան։

Ես լսում էի, թե ինչպես նա խոսում էր մեկի հետ, մի քիչ իմանալով թուրքերեն՝ հասկացա, որ խոսում էր իր օգնականի հետ։

– Այո, վատ գաղափար չէ, որ մենք կգանք Սանտա Բարբարա, մենք երկուսով ենք գալու, Դուք, կլինեք մեր հյուրը։

– Ի՞նչ եք ասում, Ձերդ վսեմություն։ Այդ անհնարին է։ Ձեզ պես հյուրեր ունենալը ինձ համար մեծ պատիվ է։ Կխնդրեմ չզրկեք ինձ այդ հաճույքից։

– (Ծիծաղելով) Տարբերություն չունի. եթե պնդում եք, մենք կլինենք Ձեր հյուրը։ Ե՞րբ և որտե՞ղ հանդիպենք։

Երկրորդ կարևոր հարցը պետք է, որ լուծվեր առանց երկար մտածելու։




**Մոսկվա, ուսանողական շրջան**

*– Ձերդ վսեմություն, ժամանակն ու օրը դուք որոշեք, տեղը՝ իմ բնակարանը:*

*– Աղա Ցանի Խան, մեր բարեկամությունը թույլ է տալիս ինձ անկեղծ լինել ձեզ հետ: Սանտա Բարբարայի հետ մի քիչ ծանոթ եմ: Ձեր բնակարանի հասցեն միջին կարգի բնակիչների տեղն է: Կասկած չունեմ, որ հասկանում եք, որ մենք պաշտոնական ներկայացուցիչներ ենք մեր կառավարության, և միշտ պետք է նկատի ունենանք, թե ո՞ւր ենք գնում և ո՞ւմ ենք այցելում: Մեզ համար մի քիչ անհարմար կլինի Ձեր տուն գալ: Եթե դուք համաձայնվեք, մենք կարող ենք հանդիպել «Բալթիմոր» հյուրանոցի սրահում…*

*Առանց թողնելու, որ նա վերջացներ իր ասելիքը, ես պատասխանեցի.*

*– Սքանչելի է, Ձերդ վսեմություն: Ձեր որոշումը օրենք է ինձ համար: Կտեսնվենք «Բալթիմոր» հյուրանոցում: Ե՞րբ:*

*– Մի րոպե: Թողեք նայեմ իմ օրագիրը: Ամսի 20–ին: Այսինքն՝ եկող շաբաթ օրը:*

*Ամսի 20-ի՞ն: Կայծակի արագությամբ անցավ իմ ուղեղում այդ թվականը: Բոլոր լրագրերը և ձայնասփյուռն ամիսներ ի վեր հոլովում են այդ օրը: Դա Ամերիկայի նախագահական ընտրությունների օրն էր: Ո՛չ, այդ օրը հարմար չէր, թելադրեցին ինձ տրամաբանությունս ու զգացումներս:*

*– Մի րոպե, Ձերդ վսեմություն: Թողեք ես էլ նայեմ իմ օրերի բաժանումը, որովհետև մի ամուսնություն կա Սան Ֆրանցիսկոյում, որտեղ ես քավորն եմ և չեմ կարող բացակայել: Օ՜հ, այո, այդ օրը ես պետք է այնտեղ լինեմ: Ներողություն, այդ օրը անհնարին է, որոշեք մի ուրիշ օր:*

*– Մյուս օրը կարող է լինել միայն մի շաբաթ հետո, որովհետև մյուս բոլոր օրերս զբաղված են: Հունվարի 27, այսինքն 2 շաբաթ հետո: Լավ է: Ժամը 11-ին «Բալթիմորում»:*

*– Սքանչելի է, Ձերդ վսեմություն: Ես ձեզ կդիմավորեմ: Ժամը 11-ին կսպասեմ: Եթե փոփոխություններ կլինեն՝ տեղեկացրեք: Եթե իմ կողմից մի բան պատահի, որը չեմ կարծում, նույնպես կտեղեկացնեմ:*

*Մեր խոսակցությունը վերջացավ, և ես մի խորը շունչ քաշեցի:*

*Ինչպե՞ս ինձ հաջողվեց այս բոլորը, դերասանություն անելով, կարգադրել, չեմ կարող բացատրել, որովհետև եթե մի քիչ խորը մտածենք, իմ հնարագիտությունը շատ սխալ հիմքի վրա էր դրված:*

*Մի մարդ, որ ցանկություն ունի արժեքավոր նվերներ տալ ինչ-որ նշաններ ստանալու համար, կարո՞ղ էր մի ինչ-որ հարսանիքի պատճառով հետաձգել: Երկրորդը՝ երբ բերանիցս դուրս թռավ, որ ես ամուսնության քավոր եմ լինելու, հասկացա սխալս, բայց արդեն ուշ էր: Մուսուլմանները քավոր չեն ունենում:*

*Այս և ուրիշ մանր-մունր փաստեր ապացուցում են,*



Կյանքի ընկերուհին՝ Սուսաննան

Երիտասարդական տարիներ

*որ տաճկական հյուպատոսարանը ստացել էր կարգադրություն՝ ամեն կերպ ստանալ այդ նվերները, որոնցով շատ հետաքրքրված էին Անկարայում։ Եթե հյուպատոսը կամ նրա օգնականը մի քիչ ավելի խելք ունենային և տրամաբանություն կամ ավելի զգույշ լինեին, ու որպես դիվանագետներ պետք է որ լինեին, ես չպիտի կարողանայի հարցը լուծել։*

*Բոլոր դեպքերը և առիթները, որոնք կարող էին երևան հանել իմ կազմած ծրագրի բուն նպատակը, հակառակ ամեն ինչի, լուծվում էին իմ օգտին։ Ես չեմ կարող բացատրել, որ այս միայն իմ վարպետության կամ հմտության արդյունքն է եղել։ Ոչ։ Ես համոզված եմ, որ իմ ճակատագիրն էր ղեկավարում այս բոլորը, որ ես հասնեմ իմ ծրագրած գործի հաջող իրագործմանը։*

*Արդեն հիմա ամեն ինչ պարզ էր։ Հունվարի 27–ը լինելու էր այն օրը, երբ ես հնչեցնելու էի նոր ձևի պատե–*

*րազմի փողը ու հրավիրելու ինձ նման անհատներին՝ կիսատ չթողնել գործը, որը ես սկսելու էի։*

*Երբ այս խոսակցությունը վերջացավ, պառկած իմ անկողնում՝ փակեցի աչքերս և մտքով սլացա այն վայրերը, որտեղ տեսել էի անհամար մարդկային ոսկորներ։ Ո՞վ գիտե, գուցե այդ ոսկորների մեջ կան և իմ հարազատները։ Սխալ եմ ասում՝ ո՞վ գիտե։ Իհարկե, ոչ միայն կան, այլ բոլորն էլ իմ հարազատների ոսկորներն են, իմ տանջված ու սիրելի ցեղի զավակների մնացած հետքերը այս աշխարհում։*

*Մի անորոշ ժամանակ մնացի ոչ արթուն, ոչ քնած դրության մեջ։ Երբ բացի աչքերս, նայեցի չորս բոլորս, հիշեցի ունեցած խոսակցությունս և միայն այն ժամանակ լիովին հասկացա, թե ինչ էր կատարվել այդ 1973 թվականի հունվար 12–ի ժամը 11–ին։*

*Իմ տրամադրության տակ ունեի մոտ 15 օր։*

*Գրեցի որոշ քանակությամբ նամակներ՝ զանազան բարեկամներիս, հարազատներիս։ Սկսեցի մաքրել իմ հարկաբաժինը։ Ուզում էի, որ ոչինչ չմնա այնտեղ։ Կատարեցի մինչև ամսույն վերջը բնակարանիս վճարումը։ Բնակարանն անհրաժեշտ էր հեռախոսի համար։*

*Երիտասարդ ծանոթներիս ու բարեկամներիս սկսեցի նվիրել ունեցածս՝ բացատրելով, որ բնակության համար տեղափոխվելու եմ հյուրանոց, և բոլոր սպիտակեղենը տվեցի ուսանող բարեկամներիս։ Որոշ բաներ տվեցի* Salvation Army*–ին (*«*Գթության բանակ*»*, կազմակեր–պություն, որը օգտագործած իրեր է նվիրատվություն վերցնում, կարիքավորներին ցածր գներով վաճառելու համար)*։

*Ամեն երեկո հանդիպում էի բարեկամներիս և առաջվա նման ժամանակ էի անցկացնում։ Կյանքիս ընթացք չէի փոխել։ Ես նույն ժպտացողն էի։*

*Օրերն անցնում էին, և ես ցանկացա տեղափոխվել*



**Ռոստով,** 1925-1930**թ.**
**Պետական պաշտոն վարելիս**



**Իրան, Թավրիզ, Թեհրան,** 1930-**ից**
**հետո:**

«Բալթիմոր»։ Մտածել էի, որ ես կհյուրասիրեմ հյուրերին իմ բինգալպը–ում (երկհարկանի տուն), որը պիտի վարձեի։

Լրագրերում «Բալթիմորի» մասին կարդացել էի, որ այնտեղ մի քանի անգամ անհամությունններ են եղել երկար մազերի պատճառով։

«Բալթիմորը» ես լավ էի ճանաչում։ Մոնթե Սիթիի ու Սանտա Բարբարաի «ազնվական» համարվող Գլորիալ կազինո–ակումբները միևնույն տիրոջն են պատկանում։

Երկար տարիներ Գլորիալ կազինոյի անդամ լինելուց հետո հրաժարվեցի անդամությունից։

Պատճառն այն էր, որ ես ունեի մի քանի սևամորթ բարեկամներ։ Նրանցից մեկը մեր երկրաչափների ակումբի անդամն էր, նույնիսկ ակումբի վարչության մեջ էր և հաճախ էր ինձ հյուրասիրել։ Ցանկացա մի երեկո նրանց՝ որպես իմ հյուրը, տանել Գլորիալ ակումբ։ Երբ վարչությունն իմացավ, հայտնեց, որ ակումբը privet է (անձնական ) է, և ես չեմ կարող նրանց ունենալ իմ հյուրը։

Ես, իհարկե, կարող էի հարցը դնել օրինական ճանա–պարհով, սակայն համոզված էի, որ կկորցնեմ, որովհետև ակումբի տերը մեծահարուստ կապրիզոտ (քմայքոտ) մի անձնավորություն էր և ուներ շատ ու շատ իր նման հարուստ բարեկամներ, ու ես չէի կարող շահել, ուստի հրաժարվեցի ակումբի անդամությունից։

«Բալթիմոր» հյուրանոց հաճախ էինք գնում ընթրելու։

Խմիչքատան բոլոր ծառայողներն ինձ լավ գիտեին դոլարի շնորհիվ։

Այդ ժամանակ մազերս մի քիչ ավելի երկար էին, քան պահանջվում էր «Բալթիմորի» տիրոջ կարգադրությունը։

Իմանալու համար, թե իմ մազերի երկարության պատճառով կարո՞ղ եմ դժվարություններ ունենալ, երբ «Բալթիմորում» ուզենամ բնակարան վարձել, երեկոյան գնացի խմիչքատուն։ Երբ ապսպրեցի վիսկի, նա ասաց,


34 **տարեկան Յանիկյանը Պարսկաստան մեկնելուց առաջ**


**Գ.Յանիկյանը Իրանում.**

*որ մազերս երկար են, և արգելված է այդպիսի մազեր ունեցողին սպասարկել:*

*Ես բերետ էի դնում: Երկար չմտածելով՝ մազերս հավաքեցի ու պահեցի բերետիս տակ ու կրկնեցի ապսպրանքս: Ծիծաղելով՝ նա ինձ սպասարկեց: Դրությունը պարզ էր. եթե խմիչքատանը չեն սպասարկում, իհարկե սենյակ ստանալս ավելի քան կասկածելի էր դառնում:*

*Վերադարձա տուն ու չցանկանալով գնալ սափրիչի մոտ՝ ինքս կտրեցի մազերս: Երկու օր անց գնացի «Բալթիմորի» գրասենյակ և պատվիրեցի սենյակ՝ մի շաբաթով:*

*Ցույց տվեցին՝ մոտավորապես հյուրանոցի որ մասում է լինելու իմ վարձածը: Ես հավանեցի, և պայմանավորվեցինք, որ հետևյալ երկուշաբթի օրվանից սկսյալ բնակարանը իմ տրամադրության տակ է լինելու:*

*Երկուշաբթի օրը իրերովս տեղափոխվեցի «Բալ-*

*Թիմոր»: Այժմ ես ունեի 2 բնակարան: Հարկաբաժինս պահել էի միայն հեռախոսի համար: Հյուրանոցի հեռախոսից չէի ուզում օգտվել, որ իզուր տեղն անմեղ ծանոթներիս ու բարեկամներիս ապագայում անախորժություն չպատճառեմ:*

*Որպեսզի համոզված լինեմ, որ փոփոխություն չի կատարվել ծրագրում, հեռաձայնեցի հյուպատոսարան: Համոզվելով, որ ոչինչ չի փոխվել, ես սկսեցի ուղարկել գրությունները: Ինքնաշարժս հանձնեցի և վերջին 3 օրն օգտագործում էի բարեկամիս ինքնաշարժը:*

*Ուրբաթ երեկոյան փողոցի նամակարկղերին հանձնեցի մոտ 300 նամակ՝ հասցեագրված Կալիֆոռնիա (ուրիշ տեղերինն արդեն ուղարկել էի): Պահեցի միայն 10–ը, որոնք հասցեագրված էին Սանտա Բարբարայի անհատներին և տեղական լրագրին, որոնք որոշեցի ուշ գիշերը գցել նամակարկղը, որպեսզի շաբաթավերջի արձակուրդից հետո տեղ հասնեին, երբ ամեն ինչ վերջացած կլիներ:*

*Մի վերջին անգամ քննելով ցուցակս, որ համոզված լինեմ, թե ամեն ինչ կատարել եմ, և բաց թողած բաներ չկան, ոչնչացրի այն:*

*«Բալթիմոր» ես գնացել էի միայն իմ մի մաս հագուստեղենով ու մի փոքրիկ պայուսակով, որի մեջ դրել էի իմ մի քանի գրքերից մի–մի օրինակ ու այն ինչ ցանկանում էի, որ անցնի կառավարության ձեռքը, այսինքն՝ իմ գրած նամակների օրինակները, ուժ հասցեով ուղարկված գրքերի բնագրերը և որոշ նամակներրի օրինակները: Դրանք նախագահներ Ջոնսոնի և Նիքսոնի ինձ ուղարկած նամակներն էին:*

*Կարևոր բոլոր թղթերը և հաստատագրերը իմ կարծիքով լավ տեղ էի պահել: Փաստերը մի անգամ ևս եկան ապացուցելու, որ մեր Ամերիկայի Սահմանադրությունը միայն հասարակ անհատների համար է գրված:*



**«ԳՈՒՐԳԵՆ ԹԱՏՐՈՆ» թատերախումբը**

*Բարձր դիրքերի տեղերի համար նա ոչ միայն գոյություն չունի, այլև կառավարության հիմնարկությունների համար նույնպես ծաղրանկար է, երբ էֆԲիԱյ–ը (Դաշնակցային հետախուզության գրասենյակ,) որը կազմված է օրենքները խախտողներին հրապարակ բերելու համար, որպեսզի պատժվեն, ինքն անխիղճ կերպով ոտնատակ է տալիս մեր Սահմանադրությունը: Ի՞նչ անուն կարելի է տալ, երբ առանց դատական որոշման, երկու պաշտոնյաներ, ինքնակամ ոտնատակ տալով Սահմանադրության չորրորդ հավելվածը, համարյա ուժ գործադրելով, սպառնանքով գրավում ու Վաշինգտոն են տանում իմ 2 մեծ պայուսակները, որոնք գտնվում էին մի երրորդ անձնավորության մոտ: Տանելը քիչ է, հարկավոր էր 2 դատական հեռագիր, որ իրենց գողացածները վերադարձնեն 60 օր հետո: Վերադարձրին, բայց ոչ թե ինձ կամ իմ փաստաբանին, այլ դատախազին՝ նախօրոք*



**Իսկ նպատակը դեռ առջևումն է։**

*միջից անհետացնելով իրենց կարծիքով կարևոր փաստաթղթեր, որոնք դատավարության ժամանակ կարող էին օգտագործվել իմ օգտին։*

*Վաշինգտոնում կատարվում է այն, ինչ 12 տարի առաջ ես գրել էի իմ «Ամերիկացու ձայնը» գրքում։*

*... Ուրբաթ օրը, երեկոյան ժամը 11–ին հանձնեցի փոստին մնացած վերջին նամակները։ Լարված դրության մեջ էի, և քունս չէր գալիս։ Գնացի օվկիանոսի եզերքը ու նստած ծովափին՝ տարվեցի հիշողություններով...*

*...Տեսնում էի ինձ մեր Թիֆլիսի տանը, մայրիկիս, ծալապատիկ նստած թախտի վրա, ողջունում էր ինձ դպրոցից վերադառնալիս, «Գուրգեն ջան, հոգնել ես, արի հանգստացիր»։ Եվ ես՝ 16 տարեկան, ռուսական Կամերչեսկի դպրոցի վերջին դասարանի աշակերտս, համբուրում էի մայրիկիս ու գլուխս դնելով ծնկին՝ խնդրում էի պատմել իմ մանկության մասին։ Շոյելով գլուխս՝ սկսում էր. «Քեզնով էի... 1 ամսից պիտի ծնվեիր... Շուն դասաբը*



**Սուսաննա Յանիկյան-Քոմուրջյան,**
**Գուրգեն Յանիկյան միլիոնատեր ամուսինները,**
**Բեվերլի Հիլզ, 1946թ.**

*Նոր զենք էր առել ու փորձելու համար քեռուդ սպանել էր հայրիկիդ խանութի առաջ... Արզրումի ջարդը դրանով սկսվեց... Քեռուդ գիշերով գաղտնի թաղեցինք մեր տան բակում... Զդիմացա... Ժամանակակից 3 շաբաթ առաջ աշխարհ եկար... Տերտեր չկար, հայրիկդ աղոթեց ու անունդ «Ջարդի տղա» դրինք... Մեր տունը Աղջիկ ախպուրեն քիչ հեռու պարսկական հյուպատոսարանի մեծ պարտեզին կպած էր: 27 մեծ ու փոքր ազգականներ հավաքվել էին մեր տանը՝ որպես ավելի ապահով տեղ: Պարսից հյու- պատոսը հայրիկիդ լավ բարեկամն էր... Եկավ մեր տուն և ասաց. «Ջարդը պիտի շատանա, ձերոնց առ ու արի. մեր հյուպատոսարանի մոտ մեծ ախոռ կա, դատարկ է, այնտեղ պահվեք, ավելի ապահով է»: 27 հոգի՝ մեծ ու պստիկ, գնացինք հյուպատոսարանի ախոռը: Քով քովի նստած՝ բոլորը սուս– փուս էին... Դու լաց էիր լինում, ինչ անում*

*էի, ձայնդ չէիր կտրում... Քեռուդ կինը ասաց. «Պրաքսիմա, խեղդիր այդ տղային, որ պատճառ չլինի մեր բոլորի կորստին»: Ճար չունեի, չալիս ծայրը բերանդ կոխեցի... երբ սկսեցիր կապտել, չալս ետ քաշեցի... այսպես մի 2–3 անգամ արի, չաոերը լալիս էին, հայրիկդ նույնպես առանց ձայնի արցունք էր թափում... Էլ չեմ կարող, ասացի, չեմ կարող իմ ձեռքով խեղդել տղայիս, եթե Աստված կամենա, կպաշտպանի տղայիս... Քեզ վերցնելով՝ գնացի այգու հեռավոր անկյունը: Հայրիկդ էլ գիշերները հաց ու ջուր էր բերում ինձ համար»...*

*Կյանքումս միշտ էլ հակառակ էի եղել ուժին, սպանությանը, որովհետև դրանով, ոտնատակ տալով մեկ ուրիշի իրավունքները, նույն չափով կորցնում ես և քոնը: Գիտեի, թե ինչ էր անելու առավոտյան:*

*Հանդեպ նրանց, որոնք ինքնակամ գալու էին ինձ տեսնելու, ես ոչ մի զգացում չունեի: Նրանք ինձ համար միջոց էին՝ հասնելու նպատակիս: Եթե լինեին ուրիշները, ինձ համար տարբերություն չէր ունենալու: Զգացի, որ լալիս եմ: Արցունքները թափվում էին աչքերիցս՝ առանց հեկեկանքի: Բայց այդ խղճալու կամ տատանվելու արցունքներ չէին, այլ կատաղություն, որ դեպքերի ընթացքն այնպես դասավորվեց, որ ես դիմելու եմ մի միջոցի, որին միշտ դեմ եմ եղել: Նպատակիս հասնելու համար պետք է զոհեի իմ տեսակետներից գուցե*




**Յանիկյանի տարբեր ժամանակներում գրած գրքերը**



*Բանտի նկարներից՝ պրոֆիլ և ֆաս*

*(Այս նկարի տակ, գլխատառերով, և նույն դասավորությամբ էր ներկայացրել Գ. Ցանիկյանը: Նկարված է բանտում, այցելություններից մեկի ժամանակ: ԼՈՒՅՍ)*:



MS. MARIA GROLZ 1977 MRS. HELEN RETTIG

*Եանիկեանի անգին «ՀՐԵՇՏԱԿՆԵՐԸ»- Տիկ. ՀԵԼԵՆ ՌԷՏԻԿԸ, ՈՐ 25 ՏԱՐԻ ՄԱՍՆԱԿՑԵԼ ԷՐ ՆՐԱ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ, ԵՒ ՄԻՆՉ ԱՅՍՕՐ ԷԼ ԻՐ ԱՄԵՆԱԹԱՆԿԱԳԻՆ ԸՆԿԵՐ ԲԱՐԵԿԱՄՆ Է ՄՆԱՑԵԼ:*

*ՏԻԿ. ԻՒՄԱՆ, ԾՆՈՒՆԴՈՎ ԳԵՐՄԱՆՈՒՀԻ ՕՐ. ՄԱՐԻԱՄ ԿՌՈԼՑ, ՈՐ ԻՐ ԿՅԱՆՔԸ ԶՈՀԵՑ ԵԱՆԻԿԵԱՆԻ ՀԱՄԱՐ ԵՒ ԴԱՌ. ՏԻԿԻՆ ԻՒՄԱՆ՝ ՓԱՍՏԱԲԱՆԻ ԿԻՆ:*

*ամենագլխավորներից մեկը։*

*Մտքովս երբեք չէր անցնում մի անգամ ևս քննել իմ ծրագրածը։ Քննելու, փոխելու կամ հրաժարվելու խոսք չէր կարող լինել։ Որոշումս վերջնական էր։ Նպատակս այնքան սուրբ էր ինձ համար, որ իմ որոշ անձնական տեսակետների զոհաբերելը մի չատ էլ մեծ բան չէր։*

*... Սրբեցի արցունքներս։ Ժամացույցս ցույց էր տալիս մեկ ու կես... Ես ծովի ափը իջա երեկոյան 10-ին, երեք ու կես ժամ... Ինչ արագ էր անցել ժամանակը... Սթափվիր, Գուրգեն, հրամայեցի ես ինձ ու քայլերս ուղղեցի դեպի իմ սենյակը... Հեռախոսեցի, որ ինձ արթնացնեն ժամը ութին...*

*Իննին գնացի ու մնաս բարով ասացի իմ կյանքի ընկերոջը։ 10–ին արդեն հյուրանոցումն էի և իմ սենյակում տեսնում էի վերջին պատրաստությունը ընդունելության համար։ Ժամը 11–ին իմ հյուրերը գալու էին։ Գնացի դուրս ու ման էի գալիս կանաչած բակում և ավելի հանգիստ էի, քան երբևիցե։ Մտածում էի, թե արդյոք մի բան չէի՞ մոռացել։ Ոչ, կարծես ամեն ինչ կարգին էր։*

*Սպասուհին եկավ հայտնեց, որ սենյակը պատրաստ է։ Վերադարձա և մի անգամ ևս նայելով ու քննելով զենքգիրքը՝ դրեցի այն հայելու առջևի սեղանի վրա։ Քննեցի նաև բրաունինգը ու դրեցի մի կողմ՝ ծածկելով «Թայմ» շաբաթաթերթով։ Ժամը 10-ն անցել էր, երբ գնացի պատշգամբ։ Առավոտը բավականին ցուրտ էր, և ես վերարկու էի հագել ու գլխիս դրել իմ սովորական բերետը։*

*Անցնողները բարև էին տալիս։ Սովորություն էր, որ մոտիկ ապրողները ծանոթ-անծանոթ «բարի լույս» էին ասում միմյանց, որով ցույց էին տալիս (ըստ իրենց ըմբռնումի), որ զարգացած ու խելացի մարդիկ են։*

*Կողքի սենյակի դուռը բաց էր։ Մի խումբ մարդիկ առավոտ կանուխ թուղթ էին խաղում։ Հետագայում նրանցից մեկը դատավարության ժամանակ դատախազի վկան եղավ։ Պարզվեց, որ մեծ դիրքեր ունեցող անձնավո-*



**Սերունդները ԳՈՒՐԳԵՆ ՅԱՆԻԿՅԱՆԻՆ կհիշեն, որպես Հայ Դատի և Պահանջատիրության «ՏԻԳՐԱՆ ՄԵԾ»։**

րություններ են եղել: Բոլորն էլ Կալիֆոռնիայի զանազան քաղաքներում դրամատների կառավարիչներ են և եկել էին ժողովի: Առավոտ վաղ «փոկեր» էին խաղում. լավ ժամանց դրամատների տերերի համար:

Տեսա՝ ինչպես 2 հյուպատոսները, դեռ հեռվից լայն ժպիտը դեմքերին, մոտենում էին ինձ: Ես էլ ժպտալով գնացի դիմավորելու: Մեկին, մինչ այդ, ինչպես ասել եմ, տեսել էի, մյուսին՝ ոչ: Մենք ծանոթացանք և որպես սրտագին հին ծանոթներ ձեռք մեկնեցինք:

– Ուրախ եմ ծանոթանալու Ձեզ հետ, Յանի Խան,– ասաց գլխավոր հյուպատոսը:

– Ուրախությունն իմն է, Ձերդ վսեմություն,– պատասխանեցի ես...

– Ինչ լավ, գեղեցիկ տեղ եք ապրում,– շարունակեց նա:

– Ես այստեղ ժամանակավոր եմ ապրում: Քաղաքում իմ բնակարանը ունեմ: Երբ ցանկանում եմ հանգստանալ կամ մասնավոր այցելողներ ունենալ, այն ժամանակ ես գալիս եմ այստեղ:

– Ես ծանոթ եմ Սանտա Բարբարային, շատ լավ, սքանչելի, հարուստների քաղաք է:

– Ոչ միայն հարուստների քաղաք է, այլ ամեն տեսակ մարդ էլ ապրում է: Այս կողմ, Ձերդ վսեմություն,– և այսպես խոսելով՝ ես առաջնորդեցի նրանց դեպի իմ սենյակը:

Առաջարկեցի նստել բազկաթոռների վրա, իսկ ինքս նստեցի անկողնու անկյունին, այնպես որ երկուսն էլ իմ դիմացն էին: Բազկաթոռների մեջտեղը մի սեղան կար, որի վրա դրված էր իմ ճատրակի հավաքածուն: Ժամանցի համար երբեմն ինքս մենակ լուծում էի որոշ խնդիրներ, որոնք միշտ հրատարակվում են մասնավոր հրատարակություններում: Փոխհյուպատոսն ուզում էր, որ ես նստեի բազկաթոռին, իսկ ինքը քաշեց մի աթոռ, որ նստի: Ես

մերժեցի և ասացի, որ բազկաթոռները հյուրերին են։

Մի քանի վայրկյան խոսելով ճատրակի մասին՝ հյուպատոսը ուշադրություն դարձրեց իմ մի մեծ նկարի վրա, որը մի քանի ամիս առաջ բարեկամս էր քաշել և մեծացրել։

– Գեղեցիկ նկար է Յանի Խան։ Դու գեղեցիկ տղամարդ ես։ Շատ ուրախ եմ, որ մեր երկիրը Ձեզ պես բարեկամներ ունի։ Մեր երկիրն էլ գիտե գնահատել իր բարեկամներին։ Ահա նամակը, որով ինձ տրվում է իրավունք՝ ստանալու նվերները և ուղարկելու Անկարա։

Նամակը մեկնեց ինձ, ես վերցրի և սկսեցի կարդալ։

– Յանի Խան, այդ ստորագրություններով տաճկական դրամը կարո՞ղ եմ տեսնել։

–Իհարկե, Ձերդ վսեմություն,– պատասխանեցի ես և հանելով պայուսակիցս՝ տվեցի իրեն։ Նա սկսեց ուշադրությամբ քննել։ Ես գիտեի, որ ոչ թե պատկերն էր նրանց հետաքրքրողը, այլ դրամը, որը յուրաքանչյուր թանգարանի համար մի գանձ է։

Նա դրամն էր զննում, ես նամակն էի կարդում։ փոխհյուպատոսն իրավունք խնդրեց ծխելու։

Կարդացի նամակը, որ ինձ լիովին բավարարեց։ Գրված էր իմ ուզածի պես։ Կառավարությունը հայտնում էր իր շնորհակալությունը և տեղյակ պահվում, որ հարկ եղածն արդեն կարգադրված էր։

Մի օր այդ նամակը դառնալու է թանգարանի առարկա, բայց այժմ դեռ դատախազի մոտ է մյուս բոլոր թղթերի ու իրերի հետ, որոնք, ըստ բացատրության, կարող են վերադարձնել միայն իմ դատավարության ավարտին։ Բայց քանի որ վերաքննություն ենք արել, դրանք մնալու են իրենց տրամադրության տակ՝ որպես փաստեր։

Ես որոշել էի նախքան գործի անցնելը մի քանի խոսք ասել, որ նրանք գիտենան, թե ինչո՞ւ պետք է ոչնչացվեն, և ո՞վ եմ ես։

Առանց այլևայլության ասացի.

*–Դուք գիտե՞ք, որ ես ՀԱՅ եմ, ծնվել եմ Ֆրգրումում:*

*Մի վայրկյան եղավ նրանց չփոթությունը: Կիսազարմանքով նայում էին ինձ:*

*– Ես գրող եմ. և շատ անգամներ գրել եմ հակառակ ձեր կառավարության, շարունակեցի ես:*

*Հյուպատոսն ավելի դիվանագետ էր, քան իր օգնականը:*

*Դեմքի վրա մի ժպիտ ցույց տալով, որը պարզ երևում էր, որ կեղծավորի ժպիտ է, ասաց.*

*– Շատ էլ լավ ես արել Ցանի Խան: Բայց դա անցխալումն է եղել: Այսօրվանից ամեն ինչ փոխվելու է: Տեսեք, դուք նվերներ եք տալիս մեր երկրին: Մեր երկիրն էլ՝ որպես շնորհակալություն, Ձեզ երկու շքանշան պիտի տա: Ես էլ իմ կողմից խոսք եմ տալիս, որ 5000 դոլար դրամ էլ Ձեզ տրվի, որ դուք այլևս մեզ հակառակ բաներ չգրեք: Չէ որ հիմա մենք բարեկամներ դարձանք:*

*Ծիծաղելով պատասխանեցի.*

*– Բայց դուք չգիտեք իմ իսկական անունը: Ես Ցանի Խան եմ ձեզ համար, միաժամանակ ես Նեգրուգն եմ:*

*Այս անունը, որ իմ Գուրգեն անվան հակառակ կարդալն է, ես տասնյակ տարիներ որպես կեղծանուն օգտագործել էի իմ գրությունների համար. նամանավանդ այն գրվածքների, որոնք տաճիկներին էին վերաբերում: Շատ ոտանավորներ նույն անունով հրատարակված էին զանազան երկրներում և նույնիսկ Տաճկաստանում: Երևի այդ անունը նրանք գիտեին, որովհետև հյուպատոսի ձեռքից դրամը, որը գնում էր, ցած ընկավ: Բայց չկորցրեց իր սառնարյունությունը:*

*Մի քիչ գունատված, բայց շատ սիրալիր ասաց.*

*– Ասացի, որ հիմա բարեկամներ ենք և մոռանալու ենք ամեն ինչ:*

*Ես, արդեն չկարողանալով զսպել ինձ, մի կողմ թողի դերասանությունս, որը մինչ այդ անում էի հաջողությամբ:*

*Կատաղած նայելով ուղղակի հյուպատոսի աչքերի մեջ՝ ասացի.*

*– Բարեկամնե՞ր, գազանների հետ բարեկամ չեմ կարող լինել: Ձեր ցեղը երկու միլիոն մեր ազգից մորթել է: Հիմա ինձ դրամ ե՞ք առաջարկում: Դուք փոխել եք ձեր երկրի կառավարելու ձևը, բայց մնացել եք նույն կեղտոտ ազգը:*

*Այս խոսքերը դեռ չէի վերջացրել, երբ փոխհյուպատոսը, վերցնելով իր կողքին գտնվող աթոռը ու ասելով.*

-You son of a bitch, dirty Armenian, *(Դու, բոզի տղա, կեղտոտ հայ)., –ուզեց հարվածել ինձ: Մի ձեռքով աթոռը իմ գլխից ետ հրելս, վեր ցատկելս մեկ վայրկյան տևեց: Վերցնելով գիրքը, որի մեջ պարաբելումն էր պահված, ասացի.*

*–Այժմ դուք գիտեք՝ ով եմ. ես պետք է ձեզ ոչնչացնեմ:*

*Իմ այս անսպասելի խոսքերը, նամանավանդ ձեռքիս գտնվող անմեղ երևացող գիրքը մի վայրկյան նրանց չփոթության էր մատնել: Ձախ ձեռքով բռնած գրքիս կողքը երբ բացի, միայն հյուպատոսն էր, որ տեսավ, թե ինչպես ատրճանակը բուռս մտավ. փոխհյուպատոսը տեսնում էր միայն գրքի կազմի կողքը, որի վրա անգլերենով գրված էր վերնագիրը:*

*– Պիտի ոչնչացնեմ երկուսիդ էլ,– ասացի և հետո ուրիշ խոսքեր էլ ասացի, բայց, անկեղծ ասած, չեմ հիշում, թե ինչ:*

*Քանի անգամ կրակեցի և երկուսից որին, չեմ հիշում, միայն երբ վերջին իններորդը կրակեցի, երկուսն էլ արդեն գետնին էին ընկած...*

*Թե ի՞նչ արագությամբ են լուրերը հասնում լրագրերին, ես փաստացի տեսա: Դեռ ոստիկանատնից ոչ ոք չկար, բայց լրագրողները իրենց լուսանկարչական ապարատներով արդեն գործողության վայրում էին: Իհարկե նկարեցին մի քանի անգամ, երբ ինձ առաջնորդում էին դեպի ինքնաշարժը: Ես, նայելով չղթայված*

*ձեռքերիս հիշեցի, իմ անմոռանալի հայրիկին. «Տղաս, ձեզ փող թողի թե ոչ, նշանակություն չունի ինձ համար, բայց ես ձեր բազկին պետք է ոսկի ապարանջան տամ ուսումով, որ երբեք չկորչի»։*

*Որքան իրավացի էիր դու հայրիկ ջան։ Իմ անցած կյանքը ապացուցեց դա։ Ափսոս չես տեսնում այս պողպատե շղթաները, որոնցով հիմա շղթայված եմ, համոզվես, որ քո տված ուսումը ապարդյուն չանցավ։ Գիտեմ, սիրելիս, եթե դու ողջ լինեիր, պիտի համբուրեիր քո ամենափոքր որդու ճակատը և ասեիր. «Ապրի՛ս տղաս, շատ ապրի՛ս։ Ես ցանկություն ունեի քեզ նվիրել Ամենակարողին։ Դու քո կամքով քեզ նվիրեցիր քեզ կյանք տվող ազգին։ Ապրի՛ս, Գուրգեն ջան, շատ ապրի՛ս։ Հպարտ եմ քեզնով, որ տվածս ուսումն ապարդյուն չանցավ։ Մեր անթիվ զոհերի անթաղ ոսկորները հիմա կհանգստանան։ Դու իմ սիրելի, ջահակիր որդիս, այստեղ էլ դու մնացել ես նույնը, ինչ էիր երիտասարդ ժամանակ։ Մի՛ զղջա տղաս»...*



Մենք՝ հայերս, դատապարտված լինելով մտագաղութատիրվածության մտահիվանդություններով, շատ քիչ ենք ճանաչում այնպիսի հերոս, մտավորական, գրող, գիտնական, հրապարակախոս մի անձի, որը հայոց պատմության մեջ փորագրեց Գուրգեն Յանիկյան մեծ անունը։ Գուրգեն Յանիկյանի կյանքին ծանոթանալով, մարդ ինքստինքյան իրեն պգում է կյանքի կշռանժարի վրա, թե ո՞վ է ինքը և ի՞նչ արժեք է ներկայացնում իր անձի էությունը տրամաբանաիմաստորեն...

ԱՀՈՒՐԱՄԱՍՏ ԱՐԻԱՅԻ




ԳՈՒՐԳԵՆ ՅԱՆԻԿՅԱՆ







Լույս Տ.Կ.



*Գուրգեն Յանիկյանի հիշատակի առաջին հուշարձանը՝ ԼՈՒՅՍ շաբաթաթերթի նախագծմամբ:*
*(Սև գրանիտ, բարելեֆ սպիտակ մարմարի վրա)*
*Տեղադրված է... միայն այս գրքում:*